

# ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՔ
# ՀՌՈՄԱՅԵՑՒՈՑ
# ՄԱՏԵՆԱԳՐԱՑ



Գ.

Կ. ԿՈՒՐՏԻՈՍ ՌՈՒՓՈՍ

# Կ· ԿՈՒՐՏԵԱՑ ՌՈՒՓԱՑ

## ՎԱՍՆ ԳՈՐԾՈՑ ԵՒ ԱՐՈՒԹԵԱՆՑ

# ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԵԾԻ

ՅՈՐ ԹԱՐԳՄԱՆԵԱԼ Է

Հ· ՅՈՎՍԵՓԱՅ ԳԱԹԸՐՃԵԱՆՑ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ

ԵՒ ԾԱԽԻՒՔ

ԱԶՆՈՒԱԿԱՆ ՊԱՐՈՆ

ԱՂԵՔՍԱՆԴՐԻ

ՌԱՖԱՅԷԼԻ ՂԱՐԱՄԵԱՆ

ՏՈՒՄԱՐ Բ




Ի ՎԻԷՆՆԱ

Ի ՎԱՆՍ ՊԱՇՏՊԱՆ Ս· ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

1844

8 ՍԵՊՏԵՄԲԵՐ ԱՄՍԵԱՆ

# Կ. ԿՈՒՐՏԵԱՑ ՌՈՒՓԱՑ

## ՎԱՍՆ ԳՈՐԾՈՑ

# ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԵԾԻ

---

## Զ ԴՊՐՈՒԹԻՒՆ

## ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. Նկարագիր պատերազմին Ղակեդեմոնացւոց ընդ Մակեդոնացւոց։ Աղեքսանդրոս յաղթէ. շնորհէ խաղաղութիւն Յունաց՝ որ ապստամբեցին ի նմանէ մինչ դեռ ինքն հեռի էր։

Բ. Աղեքսանդրոս որ ոչ յաղթէր ի պատերազմաց, ի դատարկութենէ եւ ի բերկրութենէ ի պարտութիւն մատնեցաւ։ Ելանէ շուինդն ի բանակին, եւ անդէն զարթնու նա ի թմրութենէն։

Գ. Հրապարակախօսն լինել Աղեքսանդրի առ զօրս իւր զի զպատերազմն Ասիացւոց զոր սկսան, ի գլուխ հանիցեն։

Դ. Նկարագիր Զիոբերիս գետոյ որ էր զարմանալի։ Նաւարզանէս գիր առնելով խնդրէ յԱղեքսանդրէ, զի առ նա եկեսցէ եւ կեցցէ, եւ Աղեքսանդրոս խոստանայ թողութիւն։ Իբրեւ մօտ հասանեն ի Կասպից եւ ի Վրկանից ծովն, ընդունի մարդասիրութեամբ զզօրավարս Դարեհի։

Ե. Ընդունի Աղեքսանդրոս զԱրտաւազ մեծաւ մարդասիրութեամբ, ներէ Յունաց որ ձեռնտու լեալ էին Դարեհի. եւ յետ Մարդացւոց յաղթելոյ, կատարէ զոր խընդրէր բամբիշն Ամազոնացն։

Զ. Մակեդոնացիք ցասնուն ընդ բարս եւ ընդ գնացս Աղեքսանդրի. բայց վասն զքրթմնջիւնն խափանելոյ կազմեալ պա-

տրատուր ի մարտ պատերազմի ի վերայ Բե-սեայ: Եւ առնէ սկիզբն պատերազմին խաբկանօք: Նախ երթայ ի վերայ Սատի-բարզանեայ քանզի օտարացեալ իմն էր: Զխուժան ի լերանցն մերժէր եւ առնոյր զԱրտուականն քաղաք:

Է. Դիւմնոս ի վեր հանէ Նիկոմաքայ զդաւաճանութիւն չարեացն ի վերայ Աղե-քսանդրի, եւ Նիկոմաքոս պատմէ Աղե-քսանդրի ի ձեռն Ջեբեղինեայ եղբօր իւրոյ: Եւ նոյն լինէին պատճառք Դիւմնեայ մե-ռանելոյ, որ անձամբ զիւր անձն սպան:

Ը. Փիլոտաս ուստր Պարմենիոնեայ, զորմէ կասկածէին թէ առաջնորդ չարեացն իցէ կամ հաղորդ, ձերբակալ եղեւ ըստ խրատու բարեկամացն Աղեքսանդրի, եւ ածաւ յարքունիսն ծածկեալ զգլուխն:

Թ. Բանն Աղեքսանդրի զոր խօսեցաւ զօրացն, եւ տրտնջել զդաւաճանութենէ չարեացն Փիլոտայ որ եւ առաջի նոցա կամէր խօսել վասն անձին իւրոյ:

Ժ. Պատասխանատուութիւն Փիլոտայ, յորում մերժէ յանձնէ բանիւք բազմօք զամբաստանութիւնն:

ԺԱ. Քանզի ի ցասման էին զօրքն, Բե-ղոն ոմն ձայն բարձեալ գրգռէ ի վերայ Փիլոտայ. եւ յետ սակաւ ինչ միոյ ինքնին Փիլոտաս վասն ի տանջանացն ապրելոյ պատմէ իրս իրս, քարկոծ լեալ մեռանի հանդերձ այլովք զորոց ամբաստանն լեալ էր:

# Կ· ԿՈՒՐՏԵԱՑ ՌՈՒՓԱՑ

## ՎԱՍՆ ԳՈՐԾՈՑ ԵՒ ԱՐՈՒԹԵԱՆՑ

# ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԵԾԻ

## ԱՐՔԱՅԻ ՄԱԿԵԴՈՆԱՑՒՈՑ

## Գ ԴՊՐՈՒԹԻՒՆ

Ա. ՄԻՆՉԴԵՌ այս ամենայն գործ վճարէր յԱսիացւոց աշխարհին, եւ ոչ Յունաց աշխարհն եւ Մակեդոնացւոց ի խաղաղութեան հանդարտեալ էր։ Խռազաւորէր ի Լակեդեմոնացիս Ագիս ուստր Արքիդամայ՝ որ յորժամ ի Թիկունս օգնականութեան Տարենտացւոց երթեալ էր՝ անկաւ յաւուր յորում Փիղիպպոս առ Քերոնեաւ Աթենացւոց յաղթեաց։ Սա քանզի նախանձորդ էր Աղեքսանդրի քաջութեանն, դրդէր գրգռէր զքաղաքացիսն իւր, զի մի յանձն առցեն ժամանակս բազումս զՅունաց աշխարհ ի ծառայութիւն դրաւել. եւ եթէ ոչ կանխագոյն ի ժամու իւրում, ասէ, զգոյշ լինիցիք, այն լուծ առ մեզ անցանիցէ։ Ապա պարտ եւ պատշաճ է գուն

եգեալ ջանալ, մինչ դեռ տակաւին կայ ինչ ոյժ եւ զօրութիւն Պարսից առ ընդդէմ դառնալոյ · այլ յորժամ նոքա ի պարտութիւն մատնիցին, զուր այնուհետեւ զհայրենի ազատութենէն լինիցիք կաթոգին, քանզի չկարիցէք կալ հակառակ սաստիկ զօրութեանն: Իբրեւ այսպէս քաջալերեցան, հայէին խնդրէին գտանել դիւրաւ ժամ դիպօղ պատերազմի զորմէ բուռն հարկանելոց էին: Այսպէս իբրեւ զաջողութիւն տեսին զՄեմնոնեայ, սկսան լինել նորա խորհրդոյն խորհրդակից եւ էին ընդ նմա ի բանի. Թէպէտ եւ նա տարաժամ մեռաւ անդէն իսկ ի սկզբան իրացն աջողութեան, ոչ ինչ ուրեք հեղգութեամբ զգործն վճարէին: Իսկ Ագեայ առ Փառնաբազոս եւ Աւտոփրադատէս երթեալ, առ ի նմանէ երեսուն քանքար արծաթոյ եւ տասն նաւս, եւ առաքեաց զնաւսն Ագեսիղայ եղբօր իւրում, զի ի Կրետացւոց կողմանս նաւարկիցէ. քանզի յայնցանէ որ ի կղզւոջն բնակեալ էին, ոմանք ի Ղակեդեմոնացիս խնամ կամաց ունէին եւ ոմանք ի Մակեդոնացիս:

Արձակեցան եւ հրեշտակք առ Դարեհ, զի խնդրեսցեն բազմազոյն եւս կարասի ի պէտս պատերազմին եւ նաւս բազումս: Թէպէտ եւ ընկան Պարսիկք առ Իսսեաւ, քանզի յայնժամ դիպեցան երքն, բայց չեղեւ ինչ այն խափանիչ գործոց Ղակեդեմոնացւոցն, այլ եւ օգնական եւս ի նոյն: Քանզի զհետ փախստականին մըտեալ՝ ձգեալ երթայր Աղեքսանդրոս ի տեղիս հեռաւորս. եւ ի ճակատուէ իսկ բազում ամբոխ վարձկան զօրաց փախուցեալ գային միջամուխ ի Յունաց աշխարհ, յորոց ութ հազար ած ի վարձու Ագիս պարսկական կարասւովն, եւ նոքօք զբազում քաղաքս Կրետացւոցն առ: Յետոյ իբրեւ Մեմնոն առաքեցաւ յԱղեքսանդրէ յաշխարհն Թրակացւոց եւ յապստամբութիւն զխուժան յօժարեցոյց, եւ Անտիպատրոս ած զօրս ի Մակեդոնացւոց աշխարհէն ի Թրակիա վասն զապստամբութիւնն կարճելոյ, վաղվաղակի զպատեհ ժամն ի կիր արկանէին Ղակեդեմոնացիքն եւ զամենայն աշխարհն Պեղոպոննեսացւոց յուզեալս միաբանէին բաց ի սակաւ քաղաքաց.

դունդ բովանդակեալ քան հազար հետեւակաց եւ երկու հազար հեծելազօր զօրաց ետուն զգլխաւոր իշխանութիւնն Ագեայ։ Իբրեւ ազդ լինէին իրքն Անտիպատրեայ, ի դաշն մտեալ զպատերազմն խաղաղէր. եւ փութանակի մտեալ այարէն յաշխարհն Յունաց՝ ի բարեկամ եւ ի Նիզականկից քաղաքաց զօրաւիգն օգնականութեան դումարէր։ Որք իբրեւ եկին ժողովեցան, համդէս արարեալ գտանէր քառասուն հազար պատերազմողաց։ Նշկեալ հասեալ կայր եւ ի Պեղոպոնեսացւոց աշխարհէն դունդ հարուստ. բայց քանզի գիտէր թէ յերկուանոց են հաւատք նոցա, կեղծաւորեալ թագուցանէր զկասկած մտացն, շնորհակալ լինէր, թէ եկեալ հասեալ են արտի մօզք պաշտպանել պատուոյ Աղեքսանդրի հակառակ Դակեդեմոնացւոցն. դրեցից, ասէ, զայդ թագաւորին, նա առնիցէ ձեզ հատուցումն ի ժամանակի իւրում։ Բայց այժմ չեն պէտք յաճախադունդ բանակաց, չեն պիտոյ. վասն այնորիկ դարձարուք յիւրաքանչիւր աշխարհս, զի լցէք կատարեցէք

զՀարկ ուխտի դաշանցն ։ Սպա-
տուաքէր Հրեշտակս առ Աղեքսան-
դրոս, որ գիտակ առնիցեն զնա
վասն իրաց խռովութեան յուզելոյ
ի Յունաց աշխարհին ։ Նաւ նորա
եկին գտին զԹագաւորն մերձ ի
Բաբելոնի . բայց ի ժամանակին
յայնմիկ յաղթէր Անտիպատրոս եւ
Ագիս սատակէր յԱրկադիացւոց աշ-
խարհին ։ Նա արդարեւ յառաջա-
գոյն իսկ գիտացեալ Աղեքսանդրի
զամբոխ խռովութեան Ղակեդեմո-
նացւոցն, որչափ ինչ ձեռնհաս էր
զգուշանալ՝ զգուշացաւ, թէպէտ եւ
ի բացեայ էր այնչափ աշխարհաց
վայրօք . Հրաման տուեալ էր նորա
Ամփոտերայ նաւարկել Կիւպրացւոց
եւ Փիւնիկեցւոց նաւուք ի Պեղո-
պոնեսոս, եւ Մեննեայ պատուիրէր
երեքհազար քանքար հատուցանել
ի ծովակողմն անդր, զի ի մօտոյ
մատուցէ կարօտի Անտիպատրեայ,
որչափ ինչ նմին պիտոյ լեալ գիտի-
ցէ ։ Քանզի քաջիկ ետես, թէ որ-
չափ ինչ օգուտ լինելոց էր ամենայնի
ցածնուլ խռովութեանցն այնոցիկ,
թէպէտ եւ յետոյ իբրեւ եհաս լուր
յաղթութեանն, ընդ իւրոց գործոցն

հանդիմանեալ զայն պատերազմ, ծաղր արար եւ ասէ. Այն պատերազմ՝ մկանց պատերազմ էր: Բայց սկիզբն պատերազմին այնորիկ աձուղէր Լակեդեմոնացւոցն: Մօտ ի Կոռադոն աւան Մակեդոնացւոյն խառնեցան ի մարտ պատերազմի ընդ զօրսն Անտիպատրեայ եւ յաղթեցին. եւ լուեալ բազմաց զիրս աջողութեանն որ յառաջին կասկածանօք էին եւ բախտին միային, ընդ նոսա միաբանեցին: Բայց մի յեղէացւոց եւ յԱքայեցւոց քաղաքաց Պեղղենէ՝ արհամարհեալ անդոսնէր զդաշնաւորութիւն նոցա, եւ յԱրկադացւոց աշխարհին Մեգաղոպոլիս կայ մնաց հաւատարիմ Մակեդոնացւոց վասն յիշատակին Փիլիպպեայ, յորմէ երախտիս բազում էր գտեալ: Բայց իբրեւ յարգել արկեալ պաշարեցաւ քաղաքն, եւ տուեալ եւս ի ձեռս էր, թէ ոչ Անտիպատրոս ի վերայ հասանէր: Սա իբրեւ ճակատ առ ճակատ յարդարէր եւ ետես թէ թուով զօրացն ինքն առաւել է եւ այլով կազմութեամբ, եդ ի մտի այնուհետեւ վասն իշխանութեանն ճակատ տու-

նալ կռուել․ եւ ոչ Ղակեդեմոնացիքն ինչ անյօժարք ի պատերազմն եղեն։ Նոյնպէս եղեն խառնուրդք ճակատուց եւ սաստիկ վտանգաւորացուցին զՍպարտացիսն։ Քանզի յանձնուկս վայրացն յուսացեալ, յորս պատերազմն լինէր, եւ ուր համարէին թէ չլինիցի ինչ թշնամւոյն պիտանի բազմամարդուն բազմութիւն, քաջութեամբ մարտ եդեալ կռուէին, եւ ոչ դանդաղագոյնս ինչ ի կռիւ կային Մակեդոնացիքն, վասն այնորիկ եւ բազում արիւն եւ ապաժոյժ հեղաւ։ Նոյն իբրեւ անտսուատ Անտիպատրոս այլ գունդ հզօր խուռոցն վտատակելոց ի Թիկունս առձակէր, բեկաւ ճակատն Ղակեդեմոնացւոց եւ սկսան յետս յետս երթալ։ Իբրեւ այնմ դէտ ակն ունէր Ագիս, արքունական գնդաւն համդերձ որ ի քաջացն գումարեալ էր, երթեալ մխէր ի ճգնութիւն պատերազմի, կրճատէր կոտորէր զայնոսիկ որ մտադիւրագոյնս հակառակեալ կռուէին եւ զմեծ մասն թշնամեացն ի բաց մերժէր։ Որ յաղթեցինն՝ սկսան ի փախուստ դառնալ, եւ որ հալածէին զհետ պնդեալ էին

նոցա, մինչեւ ցայն վայր յանխնայ կոտորեալ լինէին եւ ինքեանք զանձանց վրէժ չկարէին խնդրել, մինչեւ եկին հասին ի հարթ եւ յողորկ տեղի: Բայց ի մէջ ամենեցուն Ղակեդեմոնացւոցն առաւելեալ երեւէր Թագաւորն, ոչ միայն զէնու զարդու եւ անդամովքն այլ եւ ոգւոցն առաքինութեամբ, եւ նավին միայն յայլմէ ումեքէ ոչ պարտեցաւ: Յամենայն կողմանց մերթ ի մօտոյ եւ մերթ ի հեռաստանէ նետք ի նա յարձակէին, եւ բազում ժամս շուրջանակի այսր անդր զզէնսն ծօծէր, զկէսս ի նետիցն վահանաւն արգելոյր եւ զկէսս մարմնովն. մինչեւ գեղարդն ընդ զխաւն Թափանցանց անցեալ եւ բազում արիւն գունդագունդ հոսեալ, նուաղեալ անկաւ ի կռուել իւրում: Այնուհետեւ կապարճակիրքն եդեալ զնա ի վերայ վահանին իւրոյ ճեպով ի բանակն ածէին. եւ ի վիրացն խախտելոյ նեղեալ տագնապէր: Բայց ստակայն չԹողին զմարտն Ղակեդեմոնացիքն, վաղվաղակի իբրեւ գտին տեղի հարթ եւ դիպօղ անձանց առաւել քան Թշնամւոյն, Թան-

ձրացան գունդքն առ միմեանս, եւ ճակատուն նոցա որ հոսհոսեալ խաղայր ի նոսա հարան ի դիմի։ Ոչ մի ինչ կարէ ստուգագոյն քան զայս պատերազմն յիշատակեն թէ լեալ իցէ։ Գունդք երկուց ազգաց՝ որ քաջանուն եւ երեւելի ի պատերազմունս էին, հաւասարակ ընդ միմեանս մարտ եդեալ մաքառէին։ Ղակեդեմոնացիքն ընդ առաջին պարծանսն հայէին, եւ Մակեդոնացիքն ընդ այն՝ որ առաջի կայր. նոքա ի վերայ ազատութեան եւ սոքա ի վերայ տէրութեանն գուպարած եղեալ կային. Ղակեդեմոնացւոց զօրավար չգոյր, եւ Մակեդոնացւոց տեղի։ Եւ բազմապատիկ դէպք եւ պատահարք ի միում աւուր մերթ զակընկալութիւնն յաճախէին եւ մերթ զահն երկոցունց կողմանցն, քանզի երբեւ կամակարութեամբ կշիռ հաւասար յօրինէր բախտն զմարտ պատերազմին ի մէջ արանցն քաջաց։ Այլ քանզի վայրքն անձուկ էին, յորում պատերազմն լինէր, ոչ ամենայն զօրքն միանգամայն ի վերայ կարէին յարձակել. վասն այնորիկ եւս բազում այնոքիկ էին որ

ապաւէին քան զայնոսիկ որ զպատերազմն մղէին, եւ որք նետ չկարէին հասուցանել, աղաղակ եղեալ աստի անտի զիւրեանց գունդն քաջալերէին։

Ապա վատթարել սկսաւ ճակատն Պակոնացւոց, եւ չկարէին զպիրծ զէնսն ի քրտանց անտի՝ պնդել ունել ի ձեռսն, յետս յետս սկսան գնալ. իբրեւ շտապ տագնապի թշնամին ի վերայ հասուցանէր, յայտնագոյն իսկ փախստեայ գնային։ «Որքա զհետ պնդեալ երթային յաղթութեամբ, եւ անցեալ յարշաւանի ընդ ամենայն ճակատատեղին Պակոնացւոցն զԱգիս ինքնին զխովլին խնդրէին գտանել։ Իսկ նա իբրեւ զփախուստն իւրոցն ետես եւ զայնոսիկ որք եկեալ հասեալ էին ի թշնամեաց անտի, հրամայեաց զիւր անձն ի վայր դնել. փորձէր զանգամսն, թէ կարիցեն ըստ յօժարութեան քաջութեան մտացն գործ վճարել, իբրեւ զգաց թէ նուաղեն, եւ եկաց ի գուճս, առ զսաղաւարտն պնդակազմ ի գլուխ, վահանաւն զմարմինն ծածկէր, աջով ձեռամբն ճօճէր զնիզակն, մատուցեալ ինքնա-

կամ զԹշնամին կոչէր եւ տայր այսապէս. Թող որ իշխեսցէ զալ, եկեսցէ զերծանել յինէն զկապուտ իմ, զի անկեալը եմ: Նա ոչ ոք էր, որ յանձն առնոյր երԹալ մօտ եւ կռուել: Նետս ի հեռաստանէ ի նա ընկենուին եւ նա զնոյն նետս մխրանդամ ի Թշնամիսն դարձուցանէր, մինչեւ անց զեղարդն ընդ մէջ լանջս նորա. եւ իբրեւ զեղարդնն ի դուրս ձգեցաւ, սակաւիկ մի զգլուխն՝ որ խոնարհեալ նուաղէր, վահանաւն ծածկէր, այսպ իբրեւ ոգիքն Թափեցան եւ արիւնն սպառեցաւ, զգլորեցաւ անկաւ յորսայս ի վերայ զինուն: Ընկալան ի Ղակեդեմոնացւոց Ե հազար եւ Ց. եւ ի Մակեդոնացւոց անտի ոչ աւելի քան զհազար մի. այլ ոչ ոք էր որ ոչ վիրաւոր դարձաւ ի բանակն:

Այս յաղԹուԹիւն ոչ միայն զԱպատրոս եւ զնիզակակիցս նորա, այլ եւ զամենեսին՝ որ ընդ կատարած պատերազմին հայէին, արար սրտապնդել: Գրիտէր զայն եւ Անտիպատրոս, Թէ դէմք երեւաց այնոցիկ՝ որ խնդակից լինէին նմա, չէն միաբան մտաց նոցա. բայց այնմ որ

զօրու կամէր առնել պատերազմին, պարտ էր կարծեցուցանել թէ պա-տրի : Թուէպէտ եւ գեղեցիկ էին աջողութիւնք իրացն, սակայն ի չարականութենէն երկնչէր, զի մեծ եւս էին իրքն քան զչափ առն ա-տիկանի : Վասնզի կամէր Աղեքսան-դրոս թէ ի պարտութիւն մատնէին թշնամիքն, բայց յայտնի իսկ զչա-րեալ խանոտայր, թէ Անտիպատրոս յաղթեաց, զի եթէ ինչ փառք ու-մէք հասանէին համարէր թէ յիւ-րոց փառաց անտի պակասէր։ Վասն այնորիկ Անտիպատրոս՝ քանզի ի քա-ջին գիտէր զմիտս Աղեքսանդրի, չիշխեաց ինքնին ինչ յետ յաղթու-թեանն սահմանել, այլ հարցանէր ցժողովս Յունացն, թէ զինչ կա-միցին լինել։ Իսկ Ղակեդեմոնացիքն ոչ ինչ այլ ինչ ընկալան ի ժողովոյն, բայց զի համարձակ իցէ նոցա աղօթ-կեալս առ թագաւոր անդր առա-քել. եւ Տեգէացիքն առին զթա-ղութիւն ապստամբութեանն, բայց յայնցանէ որ առաջնորդք ապստամ-բութեանն եղեն։ Իսկ Մեգաղոպո-լիտացւոցն, որոց քաղաքն պաշա-րեալ էր ի Նիզակակցաց ապստամ-

բութեանն՝ հրաման առին Աքայեցիքն եւ Եղէացիքն տալ ձի քանքար։ Այս կատարած եղեւ պատերազմին որ յանկարծակի յարեաւ եւ ել յանդ մինչ չեւ Աղեքսանդրի Դարեհի յաղթեալ առ Արբեղօք։

Բ. Այլ վաղվաղակի իբրեւ ի հոգոցն գտին ազիք նորա դիւրութիւն, քանզի առաւել ժոյժ կարէր ունել մարտից պատերազմաց քան հանդստեանն եւ դատարկութեան, հեշտական ցանկութիւնք առին զնա, եւ զոր զէնք եւ սպառազէնք Պարսից ոչ խորտակեցին, յաղթեցին յուռութիւնք նոցա. առաբաժամ խրախութիւնք, եւ անմիտ քաղցրութիւն ըմպելեաց եւ ուտելեաց, եւ խաղք եւ դասակք հարճից եւ ամենայն ինչ յօտար սովորութիւն զառածեալ։ Եւ ըստ նոյն սովորութիւն նախանձ եղեալ որպէս թէ ազնուագոյն քան զիւր սովորութիւնն իցէ, այնպէս ժողովրդեան մտաց եւ աչաց խոչ եւ խութ առաջի անկանէր, զի ի բազմաց ի բարեկամացն թշնամի համարեալ էր։ Եւ որք հաստատուն զիւրեանց կարգն ունէին, եւ որք

սովորքն էին սակաւ ինչ եւ վարկ-պարագի կերակրով վճարել զընութեանն կարօտութիւն, Հարկ առնէր նոցա յօտարոտի եւ ի պարտելոց ազգաց վատթարութիւնս դառնալ: Նման այնորիկ բազում անգամ բազում նենգութիւնք նութեցան ի գլուխ նորա եւ հերձուած զօրաց եւ համարձակ ցուցք եւ տրտունջք ի մէջ միմեանց. եւ յետ այնորիկ մերթ ցասուցին թագաւորին եւ մերթ կասկած մտացն՝ զոր սարապարտ ահն եւ երկեւղն գրգռեալ յուզէր. եւ այլ եւս ինչ նոյնպիսի որ յետ այսորիկ պատմեսցի:

Այնուհետեւ տարածեալ խռախութեամբք զտիւ եւ զգիշեր մռչէր եւ ընդ զմայլութիւն կերակրոցն զխաղողն խառնէր. չհամարեցաւ բաւական զամբոխ արուեստականացն, զորս ածեալ էր ի Յունաց աշխարհէն, քանզի հրաման առնուին կանայք երգեցիկք ի դերելոցն նուագել ըստ իւրեանց սովորութեանն զշինական երգսն իւրեանց, եւ զխիստս օտարն լսելեաց: Տեսեալ զմի ոք ի նոցանէ թագաւորն, զի քան զայլսն տրամադոյն էր; եւ ընդ այնմիկ՝ որ զնա

յառաջ բերէին, կռուէր ամօթխածութեամբ: Առաւել իմն էր գեղ երեսաց Նորա, եւ զգեղեցկութիւնն ամօթն զարդարէր. զաչս ի գետին արկեալ եւ ոռշամփ ինչ օրէն էր զերեսն ծածկէր, վասն այնորիկ եղեւ կասկած ի միտս թագաւորին, թէ գուցէ ազնուական ոք ի կանանց է, որպէս զի չիցէ պարտ երեւել ի մէջ խաղալկաց խրախութեանցն: Արդ իբրեւ հարցաւ, թէ ո՛ կամ ուստի՞ իցէ, ետ Նա Նմա պատասխանի թէ ի զաւակէ Ովքայ եմ, որ սակաւ մի յառաջագոյն թագաւորեաց իսկ ի Պարսից աշխարհին. յորդւոյ անտի Նորա ծնայ, եւ կին լինել է իմ Վշտասպայ: Եւ Վշտասպէս ազգական էր Դարեհի եւ մեծի գնդի զօրավար: Գոյր տակաւին ի միտս թագաւորին առաջնոց բարուցն նշխար: Վասն այնորիկ եդ մեծարանս կնոջն՝ որ յարքունական զարմէ էր, եւ զհայրական անունն մեծարէր, ոչ միայն հրաման տայր արձակել, այլ եւ զամենայն ինչսն այրոյն ի Նա դարձուցանել, եւ խնդրել եւս զայր Նորա, զի եթէ գտանիցի, տացէ զնա Նմա:

Իսկ ի փաղչել անդր պատուէր տայ Հեփեստիոնեայ, զի հրաման տացէ ամենայն զերւոյն յարքունիսն գալ։ Ընդ հայեցեալ ընդ իւրաքանչիւր ազնուականութիւն, բաժանեաց զա-ռոյց ի խառնաղանձ ամբոխէն զայ-նոսիկ որոց ազնուազոյն առհմն էր։ Եւ էին միանգամայն հազար մի. ընդ որս գտաւ եւ Աքսանթրէս եղ-բայր Դարեհի, որ ազնուագոյն եւս էր քան զնա ոչ եթէ մեծութեամբն, այլ ոգւոցն առաքինութեամբ։ Վաթսուն եւ վեց հազար քանքար միանգամայն ժողովեցաւ ի մօտաւոր առէ եւ աւարէ. յորոց երկոտասան հազար ի պարգեւ զօրացն ծախե-ցաւ. եւ նոյնչափ կարասի նենգու-թեամբ պահապանացն պակաս գը-տաւ։ Նոյն եւ Աքսիդատէս պարսիկ ազնուական, որ գլխապարտ լեալ էր ի Դարեհէ եւ արգելեալ կայր ի կապանս, զնա ազատեալ տայր զնա-խարարութիւն Մարաց աշխարհին, եւ զեղբայր Դարեհի առնոյր ի գունդ բարեկամացն, եւ զամենայն զառաջին փառաւորութեան պատիւն շնորհէր։

Անտի խաղացին գնացին ի Պար-թեւս, որ յայնժամ ազգ մի անարգ

էր, բայց այժմ գլուխ ամենեցուն ազգաց, որ յայնկոյս գետոցն Արածանւոյ եւ Դկղաթայ կան, մինչեւ ցկարմիր ծովն Պարսից: Սկիւթացիք զդաշտայինն եւ զերբրի գաւառն ունին եւ են սահմանորդ բնակիչք ահագինք: Ունին նոքա բնակութիւն եւ յԵւրոպացւոց աշխարհին եւ յԱսիացւոց որք ի վերայ քան զԲոսպորոս բնակեն, Ասիացւոց համարին. այլ որք յԵւրոպացւոց կողմանս են, ի ձախմէ Թրակացւոց աշխարհին հասանեն դէպ ուղիղ ի Բորիսթենէս գետ, եւ անտի ի մեւս եւս գետ Տանայիս: Եւ Տանայիս ընդ Եւրոպացւոց եւ Ասիացւոց աշխարհն ընդ մէջ անցանէ: Այսպէս իսկ է առանց երկմտութեան թէ Սկիւթացիքն, որ Պարթեւացն եղեն շինիչք, ոչ եթէ ի Բոսպորայ, այլ յԵւրոպացւոց նահանգէն ելին գնացին միջամուխ:

Էր ի ժամանակին՝ յայնմիկ քաղաք մի երեւելի Հեկատոմպիղոս անուն, որ ի Յունաց շինեցաւ. անդ էր ճանապարհ թագաւորին, զի ամենայն ուստեք անդր գային ժողովէին համբարքն: Անդ յանկարծակի համ-

քաւ յաճախէր ըստ սովորութեան վատթարութեան դատաւորի եւ պարապորդ զօրաց, եւ չգտանէր ոք այնր առաջնորդ, որպէս թէ շատ համարեցաւ թագաւորն զերան զօր վճարեաց, եւ վաղվաղակի կամի գտանալ ի Մակեդոնացւոց աշխարհն։ Անթանայլն այսր անդր ըստ նմանութեան շամշելոց յերբաքանչիւր վրանս, եւ զամենայն կահ եւ զկազմած պատրաստէին ի ճանապարհ. գողցես նշան առեալ թէ անօթք ժողովեսցին։ Եհաս ամբոխ խռովութեանն ի թագաւոր անդր, զի խռովեալ բանակն ամենայն սասաւ զերբեանց վրանակիցս խնդրէին՝. անոտի զպայլան, եւ զվաչան ընուլին։ Հաւատարիմ ցուցանէին զհամբաւն որ խառն ի խուռն սփռէր, Յունացն զօրականք. որոց հրաման առեալ էր դառնալ յաշխարհն իւրեանց, եւ միում միում ի հեծելազօրացն նոցա առեալ էր վեց վեց հազար դահեկան։ Նոյն կարծեցին թէ եւ ինքեանց վախճան հասեալ է զինուորութեանն։ Իսկ թագաւորն ըստ պատաշաճի խրացն զահի հարեալ, որ կամէր առակաւքն հատանել անցանել

ընդ Հնդիկս, եւ ընդ վերջին կողմանս արեւելից, զզօրաւորս եւ զասպարապետս զօրացն միանգամայն ի խորանն կոչէր. եւ զարտասուս հարեալ սկսաւ խօսել եւ ասէ: Ի կէս ճանապարհէ պարծանաց իմոց կոչիմ այսօրէն յետս, իբրեւ պարտեալ եւ վատթարեալ երթամ ի հայրենի գաւառ իմ, եւ ոչ յաղթութեամբ. բայց ոչ եթէ վատութիւն ինչ զօրացն է որ խափան լինիցի, այլ դիցն չարակնութիւն որք յանկարծակի զանձուկ հայրենի աշխարհին ի միտ արկին արանցն քաջաց, որ յետ սակաւ ինչ միոյ ապաքէն դառնալոց են ի նոյն աշխարհ մեծաւ եւս դրուատեօք եւ համբաւաւ: Ապա ամենեքին խոստանային ի նոյն ջանալ, եւ խնդրէին ի նմանէ որ ինչ դժուարին էր եւ ասէին, թէ եւ զօրքն դառնան յարքանեկութիւն, եթէ մեղմ եւ զգօն բանիւք ցածուցանես զմիտս նոցա, զի ոչ երբեք վհատեալք եւ սրտաբեկք մեկնեցան ի քէն, քանիցս անգամ տեսին զզուարթ երեսս քո, եւ լուան զբան քաղցրութեան քո: Նա ետ նոցա պատասխանի թէ առնեմ զայս ամե-

նայն, թէ միայն դուք զլանէլիս ամբոխին պատրաստիցէք բանից իմոց ։ Նա եւ իբրեւ կազմեցաւ՝ յարդարեցաւ ամենայն՝ որ ինչ ի դէպ թուէր, հրամանն տայր զզօրսն ի խօսսն կոչել, եւ ճառ արկեալ բարբառէր ընդ զօրացն զայս դոյն ձեւ օրինակի բանից ։

Գ. Զեզ՝ որ ինքնին իսկ տեսէք զիրս եւ զարուութիւնս զոր վճարեցաք, ով զօրականք, չէին ինչ զարմանք թէ եւ ցանկութիւն հանդըրտեան անկաւ ի միտս ձեր եւ յաղեցայք փառօք ։ Յաղթեալ զՂիւրիկեցիս եւ զՏրիբաղացիս եւ զԲիսալտացիս եւ զԹրակացիս եւ զաշխարհն Սպարտացւոց, եւ զԱքայեցիս եւ զՊեղոպոնեսոս, յորոց զկէսս ես ինքնին իսկ հասեալ նուաճեցի, եւ զկէսս հրամանաւ իմով եւ իշխանութեամբ. ահաւադիկ յԵզզեսպոնտեայ առ սկիզբն պատերազմի. զՅոնիացիս եւ զաշխարհն Եւողացւոց ի ծառայութենէ բարբարոսացն ապրեցուցաք. զԿարիացւոց աշխարհն, զԼիւդացւոց, զԳամրաց, զՓռիւգացւոց, զՊափղագոնացւոց, զՊամփիղեացւոց, զՊիսիդացւոց, զԿիզիկեցւոց,

զաշխարհն Ասորւոց եւ զՓիւնիկէ եւ զՀայաստան աշխարհ եւ զկողմանս Պարսից եւ Մարաց եւ Պարթեւաց ունիմք այժմ ընդ ձեռամբ. բազում զաւառս ի բուռն առի առաւել քան զքաղաքս զոր այլոց առեալ իցէ, եւ չգիտեմ թէ յորժամ ի համար արկեալ թուէի, մոռացայ ինչ արդեւք ի բազմաց անտի։ Սական այնորիկ եթէ գիտէի, թէ հաւաստեաւ ստացայ զկողմանսն, զոր այնպէս փութանակի նուաճեցաք, եւ ես, ով զօրականք, ի տուն իմ, առ մայր իմ եւ առ քորս իմ եւ առ այլ եւս քաղաքակիցս ճեպէի երթալ, թէպէտ եւ դուք արդելուկք եւս զիս, զի անդէն առաւելագոյն վայելեցեմ ի յարգանսն եւ ի պարծանսն, ուր կան մնան մեզ յաճախագոյն վարձք յաղթութեանն, ուրախութիւն եւ ցնծութիւն որդւոց մերոց եւ կանանց մերոց եւ հարց եւ մարց մերոց, խաղաղութիւն եւ հանգիստ եւ ստացուած զգուշաւոր իրաց մերոց, զոր քաջութեամբն շահեցաք։ Նախ ի նոր իշխանութեանս յայսմիկ եւ եթէ զճշմարիտն ինչ կամիցիմք խօս-

տանել, ի մուրացածոյ աղքատութեանս, քանզի տակաւին դժուարաւ մնեալ տանին զլուծ նորա բարբարոսք, ժամանակ պիտոյ է, ով զօրականք, զի մեղմացեալ ցածնուցուն ի միտս իւրեանց եւ քաղցրախառն սովորութիւնն զգօնացուցէ զգազանացեալսն։ Նա եւ արմտիք երկրի ի ժամանակի իւրեանց ակն ունին հասանել առողջութեամբ. զի եւ նոքին իսկ թէպէտ եւ անզգայք են, սակայն իւրեանց օրինօքն ամոքանան։ Եւ արդ զիա՞րդ. համարիցի՞ք, թէ այնչափ անչափ ազգք՝ որ ընդ այլոյ իշխանութիւն եւ ընդ անուան ընդելեալ էին, եւ չունէին ինչ ընդ մեզ հաղորդութիւն ոչ սովորութեամբ եւ ոչ պաշտամամբք եւ ոչ բարբառով, նովին պատերազմաւ՝ որով ի պարտութիւնն մատնեցան, նուաճեալ մնին ընդ ձեռամբ մերով։ Ի ձերոց զինուց կան դրաւեալ եւ ոչ յիւրեանց բարուց սովորութենէ, թէպէտ եւ այժմ, յորժամ մօտն կամք, երկնչին ի մէնջ, այլ յորժամ ի բաց երթայցեմք, եղիցին թշնամիք։ Ընդ գազանաց վայրի գործ հասեալ է մեր,

որք յորժամ ըմբռնիցին եւ ի դառաջեղ արկանիցին, քանզի ի բնէ չցածնուն, բազում աւուրք ցածուցանեն զնոսա:

Այլ ես տակաւին այնպէս ինչ խօսիմ, որպէս թէ զամենայն որ ընդ ձեռամբ էր Դարեհի, զայն նուաճեցաք զինուք եւ սպառազինօք: Զվերկանից աշխարհն հասեալ կալաւ Նաբարզանէս. իսկ Բեսոս՝ որ զնենգն գործեաց, ոչ միայն զթագաւորին ունի, այլ եւ յաճախէ սպառնալ. Սոգդիացիք եւ Դահք եւ Մազքութք եւ Շակք եւ Հնդիկք ինքնօրէն աղխկամի են: Այդքա ամենեքին յորժամ տեսանիցեն զթիկունս մեր, միանգամայն զհետ պնդեալ խաղասցեն: Զի նոքա ի միօջէ ազգէ են, եւ մեք օտարածինք եւ արտաքինք: Ամենայն ոք դիւրաւ իւրայոցն անսայ, թէպէտ եւ այնպիսի ինչ ոք իցէ որ իշխիցէն, զի եւ խիստ եւ ահարկու իցէ: Ուստի կամ զումէ բուռն հարաք, պարտ է ի ձեռաց թողուլ, կամ զոր ոչն ունիմք, զայն երթալ առնուլ ի բուռն: Զոր օրինակ եւ ի մարմինս խօթացեալս, ով զօրականք, ոչ ինչ

որ ինչ վնասակարն է, թողուն բժիշկք, նոյնպէս եւ մեք որ ինչ արգել առերութեանս իցէ, զայն ի բաց կորեացուք: Նաղում անգամ փոքր ինչ կայծակունք էին եւ արհամարհ թուեցան, բայց կայծակունքն հրդեհ մեծ բորբոքեցին: Չիք ինչ զոր մարթ իցէ անկասկած անարգ եւ արհամարհ համարել ի թշնամեաց վերայ. զի զոր արհամարհն հաշուիս, զօրագոյն կազմես անփոյթն առնելով: Այլ ոչ Դարեհ ժառանգութեամբ առ զՊարսից հարստութիւնն, այլ նստաւ նա յաթոռն Կիւրոսի գտեալ երախտիս ի Բագոյվայ ներքինւոյ: Այլ մի համարիցիք ինչ զուք, թէ մեծաւ ինչ վտանգիւք դրաւելոց է Բեսոս զդատարկ թագաւորութիւնն:

Բայց մեք յանցեաք, ով զօրականք, եթէ Դարեհի վասն այնորիկ յաղթեցաք, զի ծառայք նորա առացուք զտէրութիւն նորա. զի նա ի յետին իսկ ոճիրս մատաբերեաց. զիւր թագաւոր որ եւ արտաքին օգնականութեան կարօտ էր, որում եւ մեք որ յաղթեցաք, խնայեալ էաք, զնա իբրեւ գերի մի վտարանդի ի

կապանօք արգելեալ ունէր, եւ ապա զի մի եւ ի մէնջ պահիցի կենդանի, ասպան: Իսկ դուք ներիցէք արդեւք, զի սա կացցէ թագաւոր, փութամ ճեպիմ, թէ ի խաչ բեւեռեալ տեսանէի զնա, զի տայցէ հատուսցէ զարժան պատիժ պատուհասին ամենայն թագաւորաց եւ ազգաց եւ հաւատոց զոր ոչ պահեաց: Նաեւ արդարեւ իսկ, թէ արդ զորս ձեզ հասանէր, եթէ զՅունաց քաղաքս եւ զԵղլեսպոնտոս քանդեալ աւերէ, որչափ արամէկք, ախրէկք, թէ Բեսոս զվարձս յաղթութեան ձերոյ հասեալ գրաւեաց: Յայնժամ աճապարէիք երթալ առնուլ, յայնժամ զէն զանձամբ առնուիք: Բայց արդ որչափ լաւ իցէ, մինչ դեռ տակաւին զահի հարեալ իցէ եւ չիցէ իւրոց մտաց տէր, արկանել ի բուռն: Մնայ մեզ չորից աւուրց գնաց ճանապարհի որ զայնչափ ձիւնս կոխեցաք ոտիւք մերովք, ընդ այնչափ գետս անցաք եւ ընդ այնքան լերանց սարս յայնկոյս արշաւեցաք: Ոչ այսուհետեւ ծով եռանդմամբն յարուցեալ՝ զճանապարհն արգելու ալեացն ծփանօք, եւ յապաղէ զմեզ ի գնալն

մերում, եւ ոչ անձուկք եւ կիրճք Կիլիկեցւոց աշխարհին արգելուն զմեզ. ամենայն ինչ հարթ եւ դիւր է. եւ ամենայն ինչ դիւրին: Անդր իսկ ի սեամս յաղթութեանն հասեալ կամք: Սակաւաւորք մնացին փախստեայք եւ տիրասպանք: Արդարեւ մեծ գործ քաջութեան եւ անուն քաջութեան յետ ձեր թողուցուք, եւ ի համար արկեալ թուեսցի այդ գործ քաջութեան ձերոյ ընդ առաջին գործս պարծանաց ձերոց, զի զվրէժ խնդրեցէք դուք զապականողաց Դարեհի որ թշնամի էր ձեր, եւ ցուցանիցէք թէ յանդ ելեալ է ոխութիւն ձեր զկնի մահուն նորա, եւ թէ ոչ ոք յամպարշտաց ապրեցաւ ի ձեռաց ձերոց: Եթէ զայն առնիցեմք, որչափ յօժարեալս յարքանեկութիւն համարիցիք զԴարուհկան լինել, յորժամ ի միտ առնուցուն թէ դիւցապաշտութեան պատերազմ յանձն առեալ է ձեր, եւ ոչ եթէ անուան ինչ նոցա, այլ Բեսեայ անօրէնութեանն էք ցասուցեալ:

Դ. Իբրեւ լուան զբանսն զօրականքն, զուարճացեալ զուարթացան

եւ ատեն. յո՛ կամ լիցէ, տար զմեզ։ Բայց եւ ոչ թագաւորն յապաղեաց ինչ զհամարձակութիւն քաջալերութեանն նոցա. երթեալ ընդ աշխարհն Պարթեւաց հասանէր յաւուրն երրորդի ի սահմանակողմն Վրկանից աշխարհին, թողոյր զԿրատերոս հանդերձ զօրօք որոց նա զօրավար էր, եւ գնդաւն զոր տանէր Ամինտաս. յաւելոյր եւ վեցհարեւր հեծեալ եւ աղեղնաւորս նոյնչափ, զի յապատակէ հինիցն պահեսցեն զաշխարհն Պարթեւաց. հրամայէ տալ Երիգեայ զկահ եւ զկազմած տանել ընդ ճանապարհ դաշտականօքն եւ տայր սակաւ պահապանս ի ձեռն։ Ինքն գնդաւն հանդերձ եւ հեծելազօր զօրօքն անցեալ ճԾ մղոնաւն, բանակ ամրութեան գործէր ի հովիտն, ընդ որ մտանեն յաշխարհն Վրկանից։ Այս անդ մայրի հովանաւոր, բարձրաբերձ եւ անտառախիտ ծառովք, եւ է հովիտն գէր եւ պարարտ, զի ջուրք, որ ի ծայրից ի վերուստ բըխեալ իջանեն, ոռոգանեն զերկիրն։ Անտի իսկ ի լեռնոտանցն Զիոբերիս գետ ելանէ, որ համօրէն երիս վըտաւանս յերկայնութիւն հոսէ, ապա

ընդ վէմն որ ի միջի կայ ջուրցն հատանաց, բախեալ գնայ ընդ երկուս առաջս այսր անդր զջուրսն բաշխեալ: Անտի հեղեալ եւ սաստկացեալ բռնութեամբ ի քարանց անտի ընդ որ խաղայ, հոսեալ ի վերուստ ի գետին մտանէ: Ընդ Յ վտաւանս ծածկեալ ի ներքոյ երկրի, եւ միւսանգամ իբրեւ յայլմէ ականէ բխեալ ելանէ, եւ ընդ նորագ ձոր տարածեալ անցանէ եւ ձորն լայնագոյն եւս քան զառաջին ձորն է: Քանզի սփռի ի լայնութիւն երեքտասան վտաւանս, եւ միւսանգամ անձկագոյն գետեզերօքն արգելեալ, արագագոյն եւս գնայ զճանապարհ իւր. ապա երթեալ անկանի ի միւս եւս գետ, որում անուն է Ռիդագնոն: Ասէին որ անդն բնակէին, թէ որ ինչ արկանիցի յանձաւ անդր՝ որ մօտ է յաղբերսն, միւսանգամ ելեալ կայ ուր է միւս եւս բերան գետոյն: Վասն այնորիկ հրաման տայր Աղեքսանդրոս երկուս ցուլս ընդ կողմն ընդ որ ի գետին ջուրքն մտանեն, արկանել, եւ որք առաքեցանն առնուլ զդէշ նոցա, յորում վայրի միւսանգամ գետն

բխեր, անտառաւ եւ ցուլքն եղէն եկին ի դուրս:

Նաւ տայր յայնմ վայրի չորեքաբեայ ժամանակ ի հանդիստ զօրացն. տայր հասանէր հրովարտակ Նաբաքոդոնեսայ, այն՝ որ զԴարեհ սպան ընդ Բեսեայ, որոյ պատճէն այս էր. Թէ ես չէի թշնամի Դարեհի, նա մանաւանդ որ ինչ օգուտ թուէր ինձ, զայն խրատ եւտու նմա. եւ քանզի խորհուրդ հաւատարմութեան եւտու թագաւորին, փոքր մեւս եւս եւ սպանեալ էի ի նմանէ: Վասնզի այսպէս խորհէր Դարեհ զպահպանութիւն անձին իւրոյ տալ ի ձեռս զօրաց օտարազգաց հակառակ իրաւանց եւ օրինաց, կասկածեալ յիւրմէ ժողովրդենէ, որ երկերիւր եւ երեսուն ամ կացին մնացին հաւատարիմ թագաւորաց իւրեանց: Իսկ ես քանզի ի դահավիժութեան կայի, ի մօտաւոր հարկէ անտի առի խորհուրդ իմաստութեան: Նաւ Դարեհ ինքնին յորժամ զԲագովաս սպան, այսպիսի չմեղադրութիւն բեր ի մէջ ժողովրդեանն. Թէ սպանի զնա, վասն զի դաւաճանեալ էր ինձ: Զիք ինչ քան զշունչ կենդանութեան սի-

րելի եւ ցանկալի մարդոց՝ որ ի թշուառութիւնս իցեն։ Նա գութ կենաց իմոց յայնպիսի սաստիկ իրս յօժարեցի մատաբերել։ Բայց զհետ զնացի մանաւանդ այնպիսի իրաց եւ ոչ ցանկացայ։ Ի վիշտս հառաչակաց ներդութեան իւրաքանչիւր ոք զիւրն խորհի եւ զանձին իւրոյ հոգայ։ Եթէ տաս դու հրաման, զի եկից, գամ առանց զանգիտելոյ։ Ոչինչ երկընչիմ, թէ յորժամ հաւատ տայցես այնպիսի թագաւորդ, չիցես պահելոյ. զի դիք ի դից ոչ խաբին։ Այլ եթէ չհամարիցիս արժանի տալ ինձ հաւատ, բազում կան տեղիք, երթամ վտարանդի փախուցեալ. յորում վայրի ընտրիցէ իւր տեղի այր հզօր, անդ է հայրենի աշխարհ նորա։ Իսկ Աղեքսանդրոս ետ նմա հաւատ ըստ Պարսից օրինակի, եւ խոստացաւ զի եթէ գայ, կացցես ողջանդամ։

Բայց ինքն յուղի անկեալ երթայր չորեքկուսի բանակաւն կարգեալ տողեալ, լռեալ ընդ ժամանակս ժամանակս արձակէր, զի տեսցեն զվայրսն։ Որ թեթեւսն վառեալ էին, առաջի երթային, եւ զունդն զհետ խաղայր նոցա. իսկ

յետ հետեւակացն՝ կահն եւ կազմածն։ Բայց քանզի դոռ պատերազմօղ էր ազգն, եւ դժուարին առմառաչել անդիքն էին, հողայրինամավ թագաւորն։ Ջի ծոր մի երկայնաձիգ յոյժ բացեալ հատանէր մինչեւ ցծովն Կասպից։ Իբրեւ զքաղուկս ի դուրս կարկառեալ կան երկոքին կողմանք աշխարհին. եւ միջոց աշխարհին տակաւին ինչ թխրեալ դող եւ խորշ գործէ, ըստ նմանութեան լուսնի յորժամ եղջեւրք արձակիցին, մինչ չեւ տակաւին զամենայն բոլորն բոլորակ լցեալ առտեղն։ Սերկետացիք եւ Մոսխնացիք եւ Քաղիբայիք ի ձախմէ կուսէ են. եւ յաջմէ Ղեւկասորիք եւ դաշտավայրք Ամազոնացն. եւ հայի ընդնոսա երկիրն ի հիւսիսակողմն կուսէ. իսկ ընդ սոսա ի կողմանց արեւմտից։ Բան զայլ ամենայն ծովս քաղցրագոյն է ծովն Կասպից. եւ սնուցանէ օձս յաղթանդամս մեծութեամբ, իսկ ձկանցն երանգք այլակերպք են յայլոց ձկանց։ Ոմանք անուանեալ կոչեն Կասպից ծով, եւ ոմանք Վըրկանից. են եւ ոմանք, որ կարծեն թէ Ծովակն Մէովտեան յայն ծով

Թափի. եւ յանդիմանութիւն իմն զայն ի մէջ բերեն, թէ վասն այնորիկ ջուր նորա, քանզի քաղցրագոյն է քան զամենայն ծովս, յորժամ ջուր մեծամեծան ծովակին ի նա խառնիցի, մեղմագոյն լինի։ Ի հիւսիսակողմն կուսէ զեղու յեզերան ծովն, զալիսն յորդեալ արկանէ բաց ի բաց, եւ զմեծ մասն ծովեզերացն եռացեալ ի խորոց անդնդոցն դարձուցանէ յաղտաղտուկս։ Եւ նոյն ծով, յորժամ այլազգ ինչ եւ հակառակ առաջնոցն հողմքն շնչիցեն, միւսանգամ զջուրսն յինքն ընդունի, եւ այնպէս ուժգնութեամբ, որպէս յառաջն յորդեալ զեղաւ, այսրէն յետս դարձեալ թողու զերկիրն ի կերպարանս բնութեան իւրոյ։ Եւ ոմանք կարծեցին թէ ոչ Կասպից ծովն է, այլ ի Հնդկաց աշխարհէն ի Վրկանս իջանէ, որոյ աշխարհի բարձրաբերձ գագաթն է, նա որպէս կանխագոյն ասացաւ, խորք եւ խորաձորք են ի ներքոյ։

Ընտի խաղայր գնայր Թագաւորն ի վտաւան ընդ շաւիղս անկոխս, յորոց վերայ անտառքն էին, նա եւ հեղեղատք եւ ուղխք զճանապարհն

արգելուլն։ Բայց նա մեծեալ եր-թայր, քանզի ոչ գոյր թշնամի՝ որ ընդ առաջ ելանէր նմա մինչեւ եկն եհաս անդր իսկ ի ներքին կողմանսն։ Բաց յայլոց համբարոց՝ որով լի էր յայնժամ աշխարհն, ծնանէին անդ եւ բազում միրգք եւ երկիրն առա-տաբեր է խաղողոյ։ Կան անդ եւ յաճախ տունկք որոց կաղնւոյ կեր-պարանք են, եւ տերեւք նոցա թա-նան մեղու, այլ եթէ ոչ յառաջ քան զծագել արեւու կանխեսցեն բնակիչք աշխարհին, յորժամ եւ տակաւին ինչ գոլանայցէ, հիւթն ապառի։

Իբրեւ գնաց անտի յառաջադէմ Լ մղոնաւն, Փրատափերանէս ընդ առաջ պատահէր, այր նա զանձն եւ զայնոսիկ՝ որ փախուցեալ էին յետ մահուան Դարեհի. ընդունէր զնոսա մարդասիրութեամբ թագաւո-րին, եւ ինքն երթեալ հասանէր ի քաղաքն Արուսայս։ Անդ ընդ առաջ պատահէին նմա Կրատերոս եւ Երի-գիոս։ Ածեալ էին նոքա ընդ իւ-րեանս զկուսակալ ազգին Տապուրա-ցւոց զՓրադատէս։ Նա զսա իսկ առ ընկալեալ թագաւորն մեծ պաշտա-

պանութիւն, եւ եղեւ նա օրինակ բազմաց զչափ առնելոյ զհեզութեան թագաւորին։ Նաեւ կացուցանէր զՄենապիս ի վերայ Վրկանից աշխարհին. սա պանդխտութեամբ եկեալ էր առ Փիղիպպոս յորժամ թագաւոր էր Ովքոս. դարձոյց անդրէն ի Փրադատէս եւ զիշխանութիւն եւս Տապուրացւոց ազգին։

Ե. ԻԲՐԵՒ մնացեալ էր նա ի սահմանս վերջինս Վրկանից աշխարհին, ընդ առաջ գայր Արտաւազ, զուէ տասացայք թէ հաւատարիմ էր Դարեհի, հանդերձ ջերմօքն Դարեհի եւ որդւովք իւրովք եւ փոքու գնդաւ Յունաց զօրականաց։ Իբրեւ եկն, մատոյց նմա զաջ ձեռն թագաւորն. քանզի եւ հեւր լեալ էր Փիղիպպեայ, յորժամ պանդխտեալ էր նա առ թագաւորութեամբն Ովքայ, եւ այն առաւելոյր քան զզրաւականս հիւրութեանն, զի կաց նա հաւատարիմ իսպառ թագաւորին իւրում։ Նա ընկալաւ նա մարդասիրութեամբ։ Դու, ասէ, արքայ, միշտ ծաղկեալ փիթթիցիս երանելի երջանիկ։ Բայց ես ուրախ եմ ամենայնիւ, այսու եւեթ տան-

ջիմ, զի յանցեալ ծերութեան եմ եւ չկարեմ բազում ժամանակս ի բարութեան քում վայելել: Իննսուն եւ հինգ ամաց էր: Մանկունք ինն զայլին ընդ հօրն իւրեանց, համամայրք. մօտ տարաւ զնոսա Արտաւազ ձեռին թագաւորին, եւ խնդրէր, թէ ցայն վայր կացցեն կենդանի, ցոր վայր պիտանիք Աղեքսանդրի լինիցին: Առաւել հետիոտս գնայր զճանապարհ իւր թագաւորն. բայց յայնժամ երիվարս հրամայեաց մատուցանել իւր եւ Արտաւազդայ, զի մի յորժամ ինքն հետի գնայցէ, ամաչիցէ երիվարաւ երթալ ծերն:

Ապա իբրեւ բանակ հարկանէր, հրաման տայր միանգամայն կոչել զՅոյնսն զոր Արտաւազդայ ածեալ էր. այլ նոքա տային պատասխանի, թէ եւ Ղակեդեմոնացւոց եւ Սիկոնացւոց չտացին հաւատք, խորհեցուք ի միջի մերում, թէ զինչ պարտ իցէ մեզ առնել: Էին նոքա հրեշտակք Ղակեդեմոնացւոցն, որ առաքեցան առ Դարեհ, եւ իբրեւ նա ի պարտութիւն մատնեցաւ, գնացին յարեցան ի Յոյնս՝ որ զինուորեալ էին Պարսից: Իսկ թագաւորն ի բաց

թողեալ զկատարմունսն եւ զուխտսն, հրամանն տայր նոցա գալ առ ինքն եւ անսալ այնմ, զոր ինքն հրամայեսցէ։ Յապաղեցին ժամանակս բազումս եւ իբրեւ բազումք ազգի ազգի խորհուրդս յածախէին, ապա ուրեմն խոստացան թէ գամք։ Նայց Դեմոկրատէս աթենացի՝ որ առաւելագոյնն միշտ հակառակ կայր Մակեդոնացւոց տէրութեանն, յուսահատ եղեալ իններեւյթ թողութեանն, զնէք սուսեր ընդ պատուով եւ երթայր զիւրովք։ Իսկ այլքն, որպէս խորհեցանն, տային զանձինս յիշխանութիւն Աղեքսանդրի։ Հազար եւ հինգհարիւր զօրականք էին. եւ բաց ի նոցանէ հրեշտակք՝ որ առ Դարեհ առաքեցան, ինքնաւան։ Զօրքն բաշխեալ բաժանեցան ի գունդս իւրաքանչիւր ի կատարումն բովանդակութեան, իսկ այլքն՝ որ մնացին, արձակեցան յիւրաքանչիւր աշխարհս բաց ի Ղակեդեմոնացւոյն, վասն որոց եւս հրաման ունել ի դիպահւոջ։

Սրկանից աշխարհին սահմանակից էր ազգն Մարդացւոց, որ փայրենադիպք էին մարտուք եւ ընդ աւազակութիւն ընդելեալ։ Նոր ազգ

դամ անկեան ի դետին. եւ անտի իբրեւ յայլմէ արմատոյ եւս առաւել զուարճացեալ դալարանան բունք: Եւ դոյզն չտան ըստ սովորութեան բնութեանն ի չափ հասանել, զի ընդ միմեանս հիւսեն իբրեւ աղխելով, որք իբրեւ տերեւազգեստ լինիցին, ծածկեն զերկիրն: Վասն այնորիկ ծածուկ հիւղք ստացեն իբրեւ խեղդք եւ Թակարդք ցանդապատ զճանապարհն փակիցեն: Զայս մի ինչ հնար էր առնել, հատանելով բանալ զխոխոմն, բայց եւ այն աշխատութիւն մեծ էր: Քանզի հանդոյցքն խիտ առ խիտ զբուսմանն պնդէին, եւ զի ոստք ծառոցն ի միմեանս մտեալ ի նմանութիւն կախաղանաւորն շրջանակաց, հարուածքն ի դերեւ ելանէին վասն կակուղ շառաւիղաց ոստոցն: Իսկ բնակիչքն՝ որ սովոր էին զօրէն գազանացն մտեալ ղօղել ընդ բարունակքն, եւ յայնժամ իսկ մտին ի խոխոմն եւ ծածուկ նետիւք զԹըշնամիսն. նետեալ տագնապէին:

Իսկ նա ըստ որսորդացն օրինակի զորջս եւ զմորիս յուզեալ եւ խընդրեալ, զբազումս կոցէր. այսպէս հրա-

մեան տայր զօրացն գալ շուրջ զխո-
խոմբիւքն, զի ընդ կողմն ուր տեղի
ինչ յայտնիցի, դիմեսցեն ի վերայ։
Բայց բազումք ընդ տեղիս անծա-
նօթս մոլորեալ թափառէին, եւ
ոմանք անկան իսկ ի բուռն, ընդ որս
եւ երիւար թագաւորին զոր Բուկե-
փաղն կոչեն. զոր ոչ իբրեւ զմի յայլոց
անասնոց համարէր Աղեքսանդրոս։
Զի նա չտայր այլում ումեք նստել ի
նուսիւր, եւ յորժամ հեծանել կամէր
թագաւորն, խոնարհ իջեալ ի գուճս,
ընդունէր զթագաւորն, եւ կարծե-
ցուցանէր այսպէս, եթէ զգայ իմն
թէ զո՛ կրիցէ։ Տրտմեցաւ գժգմեցաւ
զայրացաւ գրգռեցաւ առաւել քան
զարժանն թագաւորն, հրամանն տայր
յուզել եւ խնդրել զերիւարն, եւ ի
ձեռն թարգմանին պատուիրէր ասել,
զի եթէ ոչ տան, ոչ ոք կացցէ ի
նոցանէ կենդանի։ Իբրեւ զայս լուան,
զահի հարան եւ եկին բերին այլ
եւս պատարագօք հանդերձ զերիւ-
արն։ Բայց եւ ոչ այնպէս ինչ մեղ-
մացաւ ի ցասմանէն, զանտառն հրա-
մայէր հատանել, եւ բերեալ կու-
տեալ հող ի լերանց զդաշտն՝ յորում
առաքն էին, լնուլ ի վեր։ Իբրեւ

ասկաւիկ ինչ բարձրացուցին զգործն, յուսահատ եղեն բարբարաք զաշխարհն՝ զոր ունէին, պահել, եւ ետուն ի ձեռս զազգն իւրեանց։ Իսկ Թագաւորն առեալ պատանդս ի նոցանէ, հրաման տայր նոցա՝ փրադատայ հնազանդ լինել։

Անտի յաւուր հինգերորդի դարձաւ ի ճամբարն։ Ապա զԱրտաւազ պատուեալ կրկին ի վերայ առաջնոյ պատուոյն զոր Դարեհի տուեալ էր նմա, արձակէր յաշխարհն իւր։ Ինքն հասին ի քաղաքն Արկանից, յորում արքունիքն էին Դարեհի։ Անդ Նաբարզանէս յետ զխոստմունսն ընդունելոյ, ընդառաջ ելանէր՝ բերեալ պատարագս մեծամեծս։ Յորս էր եւ Բագովաս այր ներքինի գեղեցիկ տեսլեամբ եւ ի ծաղկի փթթեալ տիոցն, զոր Դարեհ սիրեաց, ապա սիրեաց եւ Աղեքսանդրոս. եւ վասն նորին աղաչելոյ ներեաց Նաբարզանեայ։ Զոր օրինակ յառաջագոյն ասացաք, Արկանից աշխարհին սահմանորդ էր ազգ Ամազոնացն՝ որ ի Թեմիսկիրայ դաշտան բնակեն զԹերմոդոն գետով։ Թաղեստրիս տիկին էր նոցա՝ որ իշխէր

ամենեցուն ի Կաւկասու լեռնէ մինչեւ
ցգետն Փասիս: Այս ցանկացեալ
տեսանել զԹագաւորն, եւ ի սահ-
մանաց տիկնութեան իւրոյ. եւ իբրեւ
մերձ եղեւ, առաջի արձակէր՝ որ յայտ
առնիցեն թէ տիկինն հասեալ է, եւ
ցանկայ գալ եւ տեսանել զնա:
Իբրեւ վաղվաղակի թոյլ ետ գալ,
երեքհարիւր կանամբ ընդ իւր առեալ
չոգաւ, այլոցն հրաման առեալ
անդէն կալ: Նա իբրեւ ետես յան-
դիման զԹագաւորն, վաղեալ էջ նա
յերիվարէ անտի իւրմէ եւ ունէր
երկուս նիզակս աջով ձեռամբն: Իսկ
հանդերձ Ամազոնացն ոչ զամենայն
մարմինն ծածկէ. զի ահեակ կողմն
լանջացն մերկ է, բայց այլ եւս կող-
մանք ծածկեալ են: Նա ոչ հան-
դերձք նոցա զոր կապեալ հանդրի-
ճեալ ժողովեն, ի խոնարհ քան
զծունգսն իջանեն: Մի ստին ի
ստեանց անտի ողջ պահի, որով
կանայք սնուցիչ մանկանցն լինին.
իսկ զաջակողմանն այրեալ կիզուն,
զի աղեղն դիւրաւ ձգիցեն եւ նետս
արձակիցեն: Նուանց երկեղի պշու-
ցեալ հայէր ի Թագաւորն Թաղես-
տրիս, զի տեսանէր խիստ աչօքն,

թէ չէին կերպարանք նորա ըստ համ-
բաւոյ իւրայն : Վասնզի ամենայն
բարբարոսք զմարմնոյն յաղթանդա-
մութիւն համարին մեծարոյ. եւ
ոչ զայլ ոք մեծամեծ ինչ քաջու-
թեանց ձեռնհաս կարծեն, բայց
միայն որոց արժանիս համարեցաւ
զգեղեցիկ եւ զյաղթ կերպարանս
տալ պարգեւ՝ բնութիւնն : Այլ
իբրեւ հարցաւ նմա, թէ կամիցի
խնդրել ինչ. խոստովան եղեւ եւ
ասէ թէ վասն այնորիկ եկեալ եմ,
զի զաւակք լինիցին ինձ յազգէ
թագաւորին. եմ իսկ արժանի զի
յինէն ծնցին նա ժառանգս թագաւո-
րութեան իւրոյ: Զիգականն ազգն
ինձ առնում, եւ զարուն հօրն տամ:
Իսկ Աղեքսանդրոս հարցանէր թէ
կամիցի ընդ նմա երթալ ի մարտ
պատերազմի. եւ նորա պատճառեալ
թէ այնպէս առանց պահապանի
թողում զարքայութիւն իմ, եւ
յաճախէր խնդրել, զի մի տացէ նմա
երթալ դատարկացեալ ի յուսոյ
անտի իւրմէ: Ստիպեաց իմն սաստիկ
աստղկանն ցանկութիւն կնոջն քան
եթէ թագաւորին, զի կացցէ անդ
աւուրս սակաւս : Եւ ծախեցան

աւուրք ԺԳ ի տենչանան։ Այս նա ի թագաւորութիւն իւր, եւ թագաւորն երթայր ի Պարթեւս։

Զ. ԸՆԴ յայտնի իսկ ցանկութեանցն համարձակեցուցանէր, եւ զժուժկալութիւն եւ զհամ դնել ամենայնի, որ կարեւոր իսկ բարութիւնք են ի փառաւորութիւնսն մեծամեծս, զայն յամբարտաւանութիւն եւ ի լկտութիւն դարձոյց։ Զբարսն հայրենիս եւ զխրատ Մակեդոնացւոցն թագաւորաց զկարգեալն օգտակարութեամբ եւ զկերպարանս իւրոցն քաղաքացեաց իբրեւ ցոփ ինչ եւ թեթեւ իւրում մեծաշուք փառաւորութեանն համարեցաւ, նախանձ եղեալ նմանէր Պարսից արքունեացն, հանդոյն եւ հաւտասար դիցն իշխանութեան։ Կամէր իմն, զի ի գետին թաւալեալ անկանիցին մեծարել զնա, եւ առ սակաւ սակաւ ստրկութեան պաշտամանս ի վերայ արկանէր եւ հաւասարս կամէր առնել գերելոցն զայնոսիկ որ այնչափ անչափ ազգաց յաղթեցին։ Վասն այնորիկ զպատկերն ծիրանի ընդ սպիտակ խառնեալ, որպէս Դարեհ ունէր, ի գլուխն

դնէր, եւ տայանէր զպատմուճանն պարսիկ եւ ոչ յըղձութենէն զան-գիտեաց թէ գուցէ ի յաղթութեանն հանդերձից անցցէ ի կերպարանս այնորիկ որ ի պարտութիւն մատնեցաւ։

Նոյն ասէր թէ զԴարեհ կապուտն կրեմ. այլ ընդ հանդերձիցն եւ զկարգն նոցա զգեցաւ. եւ զհետ ամբարտաւանութեան հանդերձիցն կերպարանաց գայր եւ ոգւոյն ամբարհաւաճութիւն։ Նաեւ զհրովարտակն զոր յԵւրոպայն առաքէր, առաջնով մատանեաւն դրոշմէր, իսկ ի վերայ այնոցիկ՝ զոր գրէր յաշխարհն Ասիացւոց, դրոշմէր մատանւոյն Դարեհի. զի յայտ լիցի թէ մի ոգի չէ բաւական երկոցունցն բաւել։ Զբարեկամսն եւս եւ զհեծելազօրս, քանզի նոքա իսկ իշխանք զօրացն էին, ի հանդերձս Պարսից զարդարէր. որ թէպէտ եւ անդոսնէին, բայց ընդդէմ չկարէին դառնալ։ Հարճք Ց եւ Ի, որչափ Դարեհի լեալ էր՝ զարքունիսն լնուին, զորոց զհետ խաղային եւ ներքինեացն դասակք, որոց եւ ընդելեալ իսկ էր զկանանցն կրել։

թիւն իւրն զառածանեցին, պարտ էր ընդ դատարկութիւնն պատերազմ խառնել, որոյ գոյր իսկ նիւթ ի մօտոյ։ Վասնզի Բեսոս առ զանձամբ պատմուճան արքունի եւ հրաման տայր զանձն Արտաշէս կոչել, եւ զՍկիւթացիս եւ զայլսն որ առ Տանայիս գետով բնակէին, գումարէր։ Զայս պատմէր Սատիբարզանէս՝ զոր ընկալ իսկ ի կողմն իւր, եւ ի վերայ գաւառին՝ զոր յառաջն ունէր, կացոյց։ Բայց քանզի ծանրացեալ էր բանակն աւարիւ եւ աւարաւ եւ հանդերձիւ, չկարէր խաղալ, հրաման տայր նախ զիւր բեռինսն եւ ապա զամենայն զօրուն բերել կուտել ի մէջ, բայց միայն յայնցանէ՝ որ յոյժ կարեւորք էին։ Եւ էր դաշտ մեծատարած՝ յոր եկին բերին զայլսն ակաղձեալս բեռամբք։ Իբրեւ ամենեքին ակն կալեալ մնային թէ զինչ ապա հրաման տայցէ, հրամայեաց զգրաստսն ի բաց տանել, եւ մատուցեալ նախ ջահ իւրոցն բեռանց, եւ զայլսն եւս հրամայէր այրել։ Եւ ի տերանց անտի լուցեալ այրէին, յայնցանէ որք բազում անգամ զբոցսն շիջուցին վասն զայն

ամենայն անապատ ի քաղաքաց Թըրնամեացն հանելոյ, եւ ոչ ոք էր՝ որ լալ իշխէր զգինս արեան իւրոյ, զի նոյն հուր էր որ կիզոյր եւ զինչս Թագաւորին: Յետ այնորիկ սակաւ ինչ բան Թագաւորին զցաւան ցածոյց, եւ կազմք ի մարտ պատերազմի եւ ամենայնի իսկ եւ բնաւի պատրաստեալք ուրախ լինէին Թէ զերծինան մանաւանդ կորուսաք քան եԹէ զերաստ զգաստուԹեանն: Նոյնահետեւ ի Բակուրիացւոց դաւաճան երԹային:

Եւ Նիկանոր որդի Պարմենիոնեայ յանկարծակի անկեալ մեռանէր եւ զամենեսին լի ասնէր մեծաւ անձկով: Իսկ Թագաւորն որ սաստիկ քան զամենեսին արտմեցաւ, կամէր ինքն անդէն կալ մնալ, զի դացէ ի յուղարկաւորուԹեանն, բայց քանզի պաշարքն նուազեալ էին, հարկ համարէին այնուհետեւ ճեպել երԹալ վաղվաղակի: Սակայն այնորիկ անդէն Թողու Փիլոտաս երկու հազար եւ վեցհարիւր արամբք հանդերձ, զի Թաղեսցէ զեղբայր իւր. եւ ինքն դէմ եդեալ երԹայր առ Բեսոս:

զաւմ ծառաստանիք անկեալ են ի նմին, եւ գոյ աղբեւր մշտաբուխ ի նմին՝ ուստի ջուրք յորդեալ խաղան։ Այլ քարանձաւն է շուրջանակի Լ եւ Բ վտաւան. ի գագաթանն կայ դաշտ խոտաւէտ։ Հրամանն առեալ էր թագաւորացն ամբոխին բազմութեանն՝ որ ոչ պիտանի ի պատերազմ էին, անդէն գագարել. եւ ինքեանք ընդ կողմն քարանձաւին բունս ծառոց եւ քարինս բերեալ կուտէին, արգելուլ զճանապարհն։ Այլ էին ԺԳ հազար վտաւեալ։ Թող զԿրատերոս, զի պաշարեսցէ նա զնոսա, եւ ինքն անձապարէր հասանել առ Սատիբարզանէս։

Այլ քանզի գիտաց թէ յոյժ իսկ ի բացեայ է նա, դարձաւ վանել վկանդել զայնոսիկ՝ որ զլեռինսն բարձունս ունէին։ Այլ նախ հրամանն տայր որբել ջնջել զվայրսն, յոր մատչելոց էին. ապա իբրեւ ապառաժք եւ քարախիժութիւն ընդ առաջ պատահէին, զուր աշխատութիւնն թուէր վասն բնութեանն հակառակ կալոյ։ Իսկ նա, քանզի այնպիսի իսկ միտս ունէր, զի հանապազ ընդ դժուարին իրս ոգորեալ

կռուէր, եւ զի դժուարին էր յառաջ մատչել եւ վշտագին դառնային յետս, ազգի ազգի խորհուրդս ածէր զմըտաւ, մերթ զայն խորհէր ի մտի խլրում եւ մերթ զայս, որպէս ինչ ամփոփութիւն իցէ լինելոյ, յորժամ զառաջին խորհուրդսն լաւ չհամարիցիմք: Իբրեւ կայր վարանեալ, զայն խորհուրդ իմաստութեան՝ զոր միօքն ոչ կարաց խորհել, բախտն մատուցանէր: Ընչեաց հողմ սաստիկ յարեւմտից. եւ բազում նաւթ էր կորեալ զօրականացն, որ ջանացան բառնալ մուտ ընդ քարինսն: Այն նաւթ վառեցաւ բորբոքեցաւ՝ ի տապախառն դոլոյ, այնուհետեւ այլ ծառս եւս՝ ի վերայ հրամայէր կուտել եւ տալ հրոյն ճարակ, եւ արագ արագ խռիւս կուտեալ հարթեալ հաւասարէր բարձրութիւն լերինն: Ապա հուր արկեալ յամենայն կողմանց ընդ հանուր տարածանէր: Զբոցն յերեսս թշնամեացն հողմն տանէր, եւ ծուխն սաստիկ իբրեւ զամպ ծառացեալ յերկին կցէր: Եւ հնչեալ շառաչէին թանձրախիտ մայրիքն ի հրոյն հրդեհէ. եւ ինչ ինչ որ մօտ կայր

եւ չէր լուցեալ զօրացն՝ հուր ան-կեալ անդէն կերզուրն : Իսկ բարբարոսքն ի վերջին իսկ տանջանացն կամէին փախուցեալ ապրել մազապուր ընդ կողմն յոր չեւ էր հրոյ հասեալ, այլ ուր հուր չդոյր՝ անդ թշնամիքն ընդդէմ կացեալ արգելուին : Այնուհետեւ աստի անտի կոտորեալ մաշէին . կէսք ի հրոյն միջի այլք ի վիմաց զանձինս զարա-հոս ընկենուին, ոմանք ի ձեռս թշնամեացն տային զանձինս, եւ սակաւք խանձատեալք ի բուռն ան-կանէին :

Անտի շրջեցաւ եկն առ Կրատերոս՝ որ զԱրտակականայ պաշարեալ ունէր : Նա զամենայն ինչ կազմեալ պատրաստեալ միայն թագաւորին գալոյ, զի նմա տացէ զպարծանս քաղաքին առնլոյ որպէս եւ էր իսկ ի դէպ : Այնուհետեւ զպաշարականս հրամայէր մատուցանել Աղեքսանդրոս . եւ ի տեսլենէ իւրացն զահի հարեալ բարբարոսացն ձեռս ի պարսպացն կարկառէին, աղաչել սկսան եւ ասեն թէ զարամութիւն բարկութեան քո, արքայ, ի Սատիբարզանէս որ առաջնորդ ապստամ-

պահովայեալ էր թագաւորն յար-տաքնոյն քննութենէ, այլ եւ ա-ռանց պարտաւորութեան էր. ի ներքուստ նիւթէր ի վերայ նորա նենգութիւն: Դիմնոս, որ ոչ կարէր ինչ ճոխ եւ սիրելի էր թագաւորին, սիրէր նա զպատանի ոք որում անուն էր Նի-կոմաքոս: Սա որպէս եւ յերեսաց մարթէր յայտնի լինել, իբրեւ յի-մարեալ եւ հիացեալ առանձինն ընդ պատանեկին եմուտ ի մեհեան մի, խոստանայր թէ ծածուկս եւ լռու-թեան ինչ ասելոց եմ, եւ իբրեւ առակաւրին պատանեակն վարանեալ կայր ակնկալութեամբն, աղաչէր զի դնէ վասն հաւատարար սիրոյն եւ խնամոց մարդոյ երկոցունց երդմունս լիցի, զի զոր նմայն ասելոց իցէ, լու-եղեալ թագաւորէ: Իսկ նա զմտա-ծեալ թէ ոչ այնպիսի ինչ ասելոց իցէ զի եւ երդմնազանցութեամբ պարտ իցէ ի մէջ բերել, երդմնի լինէր յաստուածն որ անդէն մօտ էին: Ապա Դիմնոս ի վեր հանէր թէ նենգ պատրաստեալ է թագաւորին յօրն երրորդ եւ ես արքայիցն քաղաքաց եւ երեւելեաց որ ի նմին խորհրդեան են կցորդ եմ եւ հաւատարորդ:

Իբրեւ զայն լուաւ պատասխանեացն. Իմ չէ, ասէ, երդուեալ ի գործ ազատութեան եւ չզոհ իսկ կրօնք երկիւղածութեան ուստի ստիպեցիմ թագուցանել զգործդ: Իսկ Դիմնոս առ զուլթն եւ առ տագնապի երկիւղին յիմարեալ զաջոյ ձեռանէ պատանեկին բուռն հարեալ եւ արտասուէր. Նախ սկսաւ աղաչել զի լինիցի խորհրդեանն բաժանակից եւ հաղորդ եւ կցորդ գործոցն. եւ եթէ զայդ; ասէ, յանձն չկարիցես առնուլ, սակայն ինձ մասն մի լինիր, զի թէ արդարեւ գութ անկեալ է իմ ընդ քեզ բաց յայլոց բազմաց նշանակաց եւ զայս նշանակ հաւատարմութեան ունիս, զի զգլուխ իմ յանձն արարի հաւատոց քոց զորոց տակաւին զչափ չէր առեալ: Ապա իբրեւ ետես թէ ի նոյն միտս պընդեալ չկամի ընդ գործն, մահու երկիւղիւն խուճապեցուցանէր, եւ ասէր թէ ի քումմէ գլխոյդ սկիզբն առնիցեն դաւաճանք գեղեցիկ գործոյդ: Ապա մերթ կոչէր զնա կնատ եւ երկչոտ իբրեւ զկին եւ մերթ մատնիչ եւ զանհեծ այնր որ սիրէ զքեզ, երբեմն խոստանայր մեծա-

մեծս եւ երբեմն թագաւորութիւն եւս խոստանայր, եւ ասնէր բերել զմիասս պատանեկին որ բացէ ի բաց գարշէր խորշէր յայնպիսի անօրէն գործոյ։ Յետ այնորիկ մերկացեալ զասուածսն պղովատիկ մերթ ի պարանոց նորա ձգէր եւ մերթ յեւր պարանոցն. ապա որոգայթելովն եւ ապաւինալով առ խոստումն ի նմանէ ոչ զի լուեացէ միայն այլ զի եւ գործակից իւրացն լինիցի։ Վասնզի հաստատուն միտք էին նորա եւ արժանի էր թէ ամօթխած լեալ էր, վասն այնորիկ յառաջին կամացն ոչ շրջեցաւ այլ ըմբռնեալ ի գութն Դիմենայ կեղծաւորեցաւ զամենայն յանձն առնուլ։ Այլ հարցանել սկսաւ թէ ընդ որոց ի գաշն մտեալ իցէ վասն իրացդ այդորիկ. քանզի մեծ իմն է գիտել թէ որպիսիք ոք այնպիսի մեծի գործոյն ձեռն արկանելոց իցեն։ Իսկ նա շամշեալ սիրովն եւ անօրէն գործովն, շնորհակալ լինէր եւ խնդայր թէ որ քան զամենայն պատանիս քաջ եւ առաքինի էր յարեցաւ ի Դեմետրիոս անձնապահ եւ ի Պեւկողայոս եւ ի Նիկանովր։ Յաւելոյր ի նոսա եւ զԱփե-

գովելով զնա փաղփաղանկի մտանէ առ Աղեքսանդրոս, եւ բազում բանս զայլոց իրաց ընդ միմեանս խօսեցեալ, ոչինչ յայնցանէ զոր ի Կերաղինեայ լուաւ, պատմէ: Իսկ ընդ երեկս յորժամ եւ պատահեաց նմա պատանեակն ի գաւթի անդ արքունեացն, մատուցեալ հարցանէր թէ զհրամանն կատարեցե՞ր: Նա նորա պատճառեալ թէ չգտի պարապ թագաւորին առնուլ բանից իմոց, եւ այնպէս եւ գնաց: Ի վաղիւ անդր յորժամ եկն նա յարքունիսն, մատեաւ առ նա Կերաղինոս, եւ յորժամ ի ներքս մտանէր յուշ առնէր նմա վասն իրացն զոր երէկ խօսեցաւ նա ընդ նմա: Նա պատասխանի ետ եւ ասէ թէ փոյթ է ինձ վասն իրացդ. բայց եւ ոչ յայնժամ ինչ հան ի վեր թագաւորին զոր լուեալն էր: Սակայն եւ սկսաւ վասն նորա Կերաղինոս: Վասն այնորիկ զմտաւ ած թէ այլ չէ պարտ յամել, եւ պատանւոյ ումեմն որոյ Մեարոն անուն էր եւ էր ի վերայ զինուց տանն, երթեալ գուշակ լինէր թէ նենգութիւն նիւթի: Իսկ նա զԿերաղինոս թագուցեալ ի զինուց տանն փաղփա-

զանկի չորքաւ եցոյց թագաւորին զինչ պատահեաց նմա գուշակն, եւ լուանայր յայնժամ թագաւորն:

Առաքէր թագաւորն անձնապահս ձերբակալ առնել զԴիմնոս, եւ ինքն ի զինու առանձն մնայր: Ընդ ցնծացեալ ուրախ լինէր Կեբաղինոս, եւ ասէր՝ թէ տեսի զքեզ ողջանդամ ապրեալ ի ձեռաց ամպարշտաց: Ապա հարցեալ մի ըստ միոջէ Աղեքսանդրի զոր ինչ գիտէրն պատմէ էր, գիտաց զամենայն կարգաւ: Եւ միւսանգամ պնդեցաւ խնդրել հարցանել թէ քանիերորդ օր է յորմէ հետէ Նիկոմաքոս ետ նմա զդոյց, եւ նա իբրեւ խոստովանեցաւ, թէ այս երրորդ օր է, համարեցաւ թէ ոչ հաւատարիմ միտք յետ այնչափ աւուրց պատմիցէ զոր լուեալ իցէ, եւ հրամայէր կապել: Նա սկսաւ բողոք բարձեալ գոչել թէ ի նմին իսկ ժամանակի յորում լուայ ընթացայ առ Փիղոտաս. թող նմա հարցցի: Դարձեալ հարցանէր թէ գտե՞ր զՓիղոտաս եւ ժտեցար զի հասցեն առ իս բանքն, եւ իբրեւ ասէր թէ գտի եւ ժտեցայ եւ աղաչեցի, զձեռս յերկինս տարածանէր եւ յարտասուս հարեալ աղ-

խաբէր թէ այս ուրեմն հաստատութեամբ իցէ ինձ ի բարեկամէ իմմէ որ սիրելի քան զամենայն բարեկամս իմ էր ։ Յայնմ ժամանակի Դիմէոս քանզի գիտաց թէ վասն որոց պատճառանաց կոչեցի ի թագաւորէն, սուսերան զօր ընդ մէջ ածեալ ունէր կարեվէր զիւր անձն խոցէր, բայց ի սուրհանդակացն ի վերայ հասանելոյ արգելեալ լինէր. եւ առեալ ածէին զնա յարքունիս, ընդ որ հայեցեալ թագաւորին. զինչ խորհուրդ չար ասէ խորհեցայ ի վերայ քո, Դիմէէ, զի քան զիս արժանի Մակեդոնացւոց թագաւորութեան թուեցաւ քեզ, Փիլոտաս ։ Բայց նուաղեալ էր նա ի բարբառոյ ։ Ասան այնուրիկ յոգւոց հանեալ եւ զերեսն ի բաց դարձուցեալ յերեսաց թագաւորին, անդէն թաւալեալ սատակէր ։

Ետ հրաման թագաւորն զի եկեսցէ Փիլոտաս յարքունիս. Կեբալինոս, ասէ, վերջին իսկ տանջանաց արժանի է, եթէ զնենգութիւնն որ պատրաստեցաւ ի գլուխ իմ, թաքոյց աւուրս երկուս. Նա զՓիլոտաս պարտ այսոց չարեաց կացոյց զի ասէ թէ իսկ եւ իսկ երթեալ գուշակեցի

Փիղոտայ։ Որչափ մերձաւորագոյն ես ի բարեկամութիւն իմ, դոյնչափ մեծ են յանցանք անփոյթ առնելոյ քո. եւ ես խոստանամ թէ այդ-մանաւանդ կերպարանեալ ի դէպ է եւ ոչ Փիղոտայ։ Օգնական քեզ ունիս զդատաւորդ, թէ միայն կարիցես յուսատու լինել յայնմանէ զոր ար-դարեւ արժան չէր գործել։ Լուեալ զայս ամենայն Փիղոտայ առանց զան-դիտելոյ, եթէ յերեւացն մարթի-ցի ոգւոցն յայտնի լինել, համար-ձակ այլ պատասխանի թէ կե-րաղինոս զմալելոյ ուրուք բանս ած-առ իս, այլ ես չհաւատացի այն-պիսում ցափ եւ թեթեւ մարդոյ, եւ կասկածէի թէ գուցէ յորժամ զկոադն որ հոմանեայ ընդ անամօթի ուրուք իցէ ի մէջ բերիցեմ, այլքն ի ծաղր դառնայցեն. բայց քանզի Գրիմնոս անձամբ անձին արար, չէ պարտ այնուհետեւ լռել, որպիսի ինչ եւ իրքն իցեն։ Նա գիրկս ար-կեալ զթագաւորական աղաչել սկսաւ, զի յառաջին կեանսն մանաւանդ հայեցի եւ ոչ ի յանցանսն որ լռու-թեան յանցանք են եւ ոչ գործոյ իրիք։ Նա գիւրաւ չկարեմ ընտրել

զայս պատասահար գոյ զթշնամին վատ-
թարելոյ, եւ զթութեանն պատ-
ճառանօք զթշնամութիւնն թաքու-
ցեալ. Երանի թէ ի սկզբան իսկ
ասէ, խրատս այսոցիկ ընդ մեզ կամէիր
խորհուրդ առնուլ: Խորասա առեալ
էր մեր քեզ զի եթէ ներել ինչ կա-
միցիս Փիլոտայ, յանձն առցես մա-
նաւանդ թէ մի գիտասցէ նա թէ
որչափ ինչ պարտիցի նա քեզ, քան
եթէ յետ ի տագնապ երկիւղի մա-
հուն հատանելոյ ստիպիցես առնուլ
զվճարս վտանգի իւրոյ բազում ան-
գամ խորհել եւ ոչ զքոց երախտեաց:
Զի նա ցանդ կարիցէ ներել քեզ,
եւ դու ոչ միշտ ներել մարթասցես
Փիլոտայ: Այլ մի այսպէս համարիցիս
թէ նա որ յայնպիսի ինչ ժամեցաւ
ներելոյն կարիցէ փոփոխել. գիտէ
նա թէ որք զգթութիւն աղաչիցեն,
այնուհետեւ չկարեն յուսալ: Նմա
թէպէտ եւ ինքն կամ ապաշխարանօքն
կամ պարտեալ յերախտեաց գործոց
քոց կամիցի հանդարտել, եւ գիտեմ
թէ հայր նորա Պարմենիոն որ այն-
չափ զօրացն զօրավար է, եւ հին իմն
իշխանութիւն է նորա առաջի զօրացն
քոց եւ ոչ կարի ինչ ի վայր է քան

զբարձրութիւն մեծութեան քո՛ չկարէ ժայժ ունել թէ զկենդանութիւն որդւոյ իւրոյ քեզ պարտիցի։ Այն ինչ երախտիք զոր տուեալք։ Ամաչեմ խոստանալ թէ արժանի է նա մահու։ Դարձեալ նա լաւ համարի կարծել թէ զրկեցաւ եւ ոչ թէ զարիւն ի քէն ընկալաւ։ Ուստի եւ զայդ դիտաւորջիր թէ կռուել եւ մաքառել կայ քեզ ընդ նմա ի վերայ կենաց քոց եւ փրկութեան։ Այն տակաւին թշնամիք զորս կամիմք երթալ առնուլ ի բուռն, նոքին բաւական են. բայց աղէ դու ամրացո զկողս քո յընտանի թշնամեաց քոց. Թէ զսոսա ի միջոյ բառնայցես յարտաքնոցն մի ինչ զանգիտեր։

Այսպէս զայն ձեւ Կրատերոս. եւ այլքն եւս հաւատարիմ զբանսն տանէին թէ ոչ թաքուցանէր արդեւք զբան այնր որ դուշակն եղեւ նենգութեանն, եթէ ինքն առաջնորդ չէր կամ կցորդ։ Ո՛չ ի՞ դք ասեն, որ տաղքինի եւ լաւ դք իցէ, ոչ միայն ի բարեկամաց այլ եւ յետին իսկ ռամկէն, որ լուիցէ զայն որ նմայն պատմեցաւ եւ ոչ փող տաթագաւորն ընթացեալ հասանիցէ.

չէ՞ր պարտ եւ ի Կեբաղինեայ իսկ ուսանել որ իբրեւ լուսաւ յեղջերէն եկեալ պատմեաց նմա, այն որ որդի էր Պարմենիանի եւ զօրավար Հեծելազօր զօրաց եւ գիտէր զամենայն ծածուկս թագաւորին. կեղծաւորեցաւ եւս թէ չէր պարտ թագաւորին անսալ բանից նորա. զի մի զայլ ոք խնդրեսցէ գուշակն: Արիստանդրոս որ եւ երդմնի իսկ ի դիւան լեալ էր, անճապարեաց զխիղճ մտացն պարզել. իսկ Փիլոտաս խաղաւ եւ ծաղու գրեթէ զօրն ամենայն մաշէր. եւ ծանրացեալ տաղտկալի զառակաւորիկ ինչ բանս որ վասն գլխոյ թագաւորին էր, խառնել ընդ երկայն երկայն բանս խօսիցն, թերեւս եւ ընդ աւելորդս իսկ: Այլ ասէ թէ ոչ հաւատացի մանկութեան որ զայնպիսին պատմէին: Իսկ արդ հի՞մ երկուս աւուրս ձգեալ յերկարէր. որպէս թէ հաւատարիմ զգուշակութիւնն համարիցի. զԿեբաղինոս պարտ էր ի բաց արձակել, եթէ արդարեւ անգոսնէր զբանս նորա: Ամենայն ոք ի վիշտս սագնալի իւրոյ առաջինի մտօք պարտի ունել. բայց յորժամ զկենաց թագաւորի երկիցէ ոք, դիւրահաւան

պարտի լինել. եւ նոցին իսկ որ զանօտիան պատմիցեն անուալ : Մանկունքն այնուհետեւ խրատս տային հարց եւ վարժ առնել. զի ի մէջ բերելով ցուցցէ զայնոսիկ որ ընկեր կցորդեալ իցեն գործոյն : Իսկ թագաւորն պատուիրէր լուր լինել վասն իւրոց խորհըրդեանն եւ անդէն արձակէր :

Յետ այնորիկ հրաման տայր ազդառնել թէ ի վաղիւ յուղի անկանելոց իցեն. զի մի կարծիս տայցէ թէ նոր ինչ խորհուրդ խորհեցան : Հրաւիրեցաւ եւ փիղասս ի խրախութիւն որ էր նմա մերձին, եւ թագաւորն ոչ միայն ընթրել յանձն առ ընդ նմա, այլ եւ ընդանեկաւոր լինէր նմա խօսակից, զոր դատապարտեալն էր. այսպէս յերկրորդում պահու գիշերոյն իբրեւ զճրագունս ի մայր դարձուցին, տակաւաւորք եկին մտին միանգամայն յարքունիսն : Հեփեստիոն եւ Կրատերոս եւ Կլինաս եւ Երիգիոս որ ի բարեկամաց անտի էին. եւ ի զինակրաց անտի Պերդիկկաս եւ Ղեոննատոս : Հրաման տուաւ ի ձեռն նոցա զի որք պահէին զպահպանութիւն արքունեացն վառեալք արթուն կայցեն : Եւ առ

ամենայն զօրութեան կարգեալ կազմեալ կայլին հեծեալք, որոց հրաման տուեալ էր եւ զգնացս ճանապարհացն պաշարել, զի մի առ Պարմենիոն ոք որ յայնժամ ի վերայ Մարաց աշխարհին եւ յաճախագունդ զօրաց հրամատար էր գաղտ պրծեալ երթիցէ : Իսկ Աթաւուխաս երեքհարիւր վառելովք եմուտ միջամուխ յարքունիսն, տուան նմա տասն տուրհանդակք զօրոց զմիոյ միոյ զհետ երթային տասն տասն կապարճակիրք : Այլքս բաշխեալ բաժանեցան երթալ ըմբռնել զայլս ի նենգագործաց անտի : Աթաւուխաս որ երեքարիւրովք առաքեցաւ առ Փիղոտաս ջանայր խորտակել զդրունս ապարանիցն քանզի աղխեալ էին. յիսուն ժիր եւ քաջ երիտասարդք զինովք էին. զի այլոցն հրաման տուեալ էր պատել յամենայն կողմանց ապարանիցն զի մի զանխուլ ելեալ պրծանիցի Փիղոտաս : Իսկ նա կամ վասն զի յանհոգս էր կամ զի աշխատաբեկ լինեալ էր, ի քուն եղեալ ննջէր. իսկ Աթաւուեայ ի վերայ հասեալ ձերբակալ առնէր մինչ դեռ նա ի թմբրութեան էր :

Ապա իբրեւ զթմբրութիւնն ի բաց թօթափեաց եւ արկան շղթայք ընդ անձն : Յաղթեաց, առէ, բարութեան՝ քում, արքայ, ժամանութիւն թշնամեաց իմոց : Նա եւ առաւել ինչ քան զայն ոչ խօսեցաւ, այլ առին ածին զնա ծածկեալ զգլուխն յարքունիսն :

Իսկ ի վաղիւ անդր Հրամայեր թագաւորն զի ամենեքին որ վառեալ իցեն ի մի վայր եկեալ ժողովեսցին . եկին ժողովեցան իբրեւ վեց հազար զօրականաց . եւ բաց ի նոցանէ ամբոխ ջրակրացն եւ փայտակրացն խճողեալ զարքունիսն լնուին : Զփիղոստոս բանսարկուն իւրեանց ծածկէին զինակիրքն, զի մի երեւիցի ամբոխին մինչ չեւ խօսեալ թագաւորին ընդ զօրացն : Զի վաղն դատաստանաց մահու զօրքն առնէին հարցափորձ քննութեան ըստ առաջին սովորութեան Մակեդոնացւոցն, իսկ ի խաղաղութեան՝ ռամիկն . եւ ոչ ինչ իմիք ձեռնհաս էին թագաւորքն մինչ չեւ յայտնի եղեալ ճախութեանն :

Թ. ԱՅՆՈՒՀԵՏԵՒ նախ զԴիմնեայ դիակն ի մէջ բերեն . եւ բազումք

յարժամ եւ զառաջնորդս գործոյն ի մէջ բերել ցուցից, զորոց տակաւին զանգիտեմ յիշել, եւ որպէս թէ ապրել մարթասցեն, զանուանս չկամիմ ասել: Բայց սակայն պարտ է առաջնոյ սորոյն յաղթել, եւ զխորհուրդ նենգութեան ամպարիշտ քաղաքացեաց մերոց յայտնութեամբ ի մէջ ածել: Իսկ արդ զիա՛րդ զայնպիսի անօրէն գործոյ լուռ լինիցիմ. Պարմենիոն՝ յայնպիսում տիս հասակի, որոյ բա՛զում երախտիս յինէն եւ ի հօրէ իմմէ գտեալ է եւ քան զամենայն բարեկամս մեր առաջին է, այնպիսում գործոյ առաջնորդ զանձն կացոյց: Սպասաւոր նորա Փիղոտաս զՊեւկողայոս եւ զԴեմետրիոս եւ զայս Դիմնոս զորոյ զդին նշմարէք եւ զայլսն եւս զնորին անմտութեան խորհրդակիցս, հրապուրեաց ի գլուխ իմ:

Հնչէր յամենայն կողմանց շշնջիւն զայրացելոցն եւ քրթմնջելոցն ի ժողովն անդ որպէս սովորութիւն իցէ ի բազմամբոխ բազմութեան դէպ լինել, մանաւանդ ի զօրականացն բազմութեան, ուր կամ թէկն ածելով կամ ցասմամբ բնաւին վճարի:

զայս պատուհասը գոյ զԹշնամին վտա-
Թարելոյ, եւ զԹուԹեանն պատ-
ճառանօք զԹշնամուԹիւնն Թաքու-
ցեալ. Երանի Թէ ի սկզբան իսկ
ասէ, իբրացս այսոցիկ ընդ մեզ կամէիր
խորհուրդ առնուլ: Իրաւ առաւել
էր մեր քեզ զի եԹէ ներեալ ինչ կա-
մեցիր Փիղատոյ, յանձն առցես մա-
նաւանդ Թէ մի գիտասցէ նա Թէ
որչափ ինչ պարտիցի նա քեզ, քան
եԹէ յետ ի տագնապ երկիւղի մա-
հուն հասանելոյ ստիպիցես առաւել
զվշտաց վտանգի իւրոյ բազում ան-
գամ խորհել եւ ոչ զքոց երախտեաց:
Օ՜ր ի նա ցանդ կարիցէ նենգել քեզ,
եւ դու ոչ միշտ ներել մարԹայցես
Փիղոտայ: Նու մի այսպէս համարիցիս
Թէ նա որ յայնպիսի ինչ ժտեցաւ
ներելոյն կարիցէ փոփոխել. գիտէ
նա Թէ որք զգԹուԹիւն սպառիցեն,
այնուհետեւ չկարեն յուսալ: Այլ
Թէպէտ եւ ինքն կամ սորջանօքն
կամ պարտեալ յերախտեաց գործոց
քոց կամիցի համդարաբել, եւ գիտեմ
Թէ հայր նորա Պարմենիոն որ այն-
չափ զօրացն զօրավարն է, եւ հին իմն
իշխանուԹիւն է նորա առաջի զօրացն
քոց եւ ոչ կարէ ինչ ի վայր է քան

զխոնարհութիւն մեծութեան քո՝ չկարէ ժոյժ ունել թէ զկենդանութիւն որդւոյ իւրոյ քեզ պարտիցի։ Այն ինչ երախտիք զոր առեալք։ Ամաչեմ խոստանալ թէ արժանի է նա մահու։ Դարձեալ նա լաւ համարի կարծել թէ զրկեցաւ եւ ոչ թէ զարիւն ի քէն ընկալաւ։ Աստի եւ զայդ գիտասջիր թէ կառուել եւ մաքառել կայ քեզ ընդ նոսա ի վերայ կենաց քոց եւ փրկութեան։ Այն տակաւին թշնամիք զորս կամիմք երթալ առնուլ ի բուռն, նոքին բաւականեն. բայց աղէ դու ամրացո զկողս քո յընտանի թշնամեաց քոց. Թէ զսոսա ի միջոյ բառնայցես յարտաքնոցն մի ինչ զանգիտեր։

Զայսպէս զայն ձեւ կրատերոս. եւ այլքն եւս հաստատարիմ զբանսն առնէին թէ ոչ թագուցանէր արդեւք զբան այնր որ դաւաճանն եղեւ նենգութեանն, եթէ ինքն առաջնորդ չէր կամ կցորդ։ Զի՞ ոք ասեն, որ առաքինի եւ լաւ ոք իցէ, ոչ միայն ի բարեկամաց այլ եւ յետին իսկ ռամկէն, որ լուիցէ զայն որ նմայն պատմեցաւ եւ ոչ վաղ առ թագաւորն ընթացեալ հասանիցէ.

չէ՞ր պարտ եւ ի Կեբաղինեայ իսկ ուսանել որ իբրեւ լուաւ յեղբօրէն եկեալ պատմեաց նմա, այն որ որդի էր Պարմենիոնի եւ զօրավար հեծելազօր զօրաց եւ գիտէր զամենայն ծածուկս թագաւորին. կեղծաւորեցաւ եւս թէ չէր պարապ թագաւորին անսալ բանից նորա. զի մի զայլ ոք խնդրիցէ գուշակն: Աղեկսանդրոս որ եւ երդմնի իսկ ի դիւան լեալ էր, աճապարեաց զխիղճ մտացն պարզել. իսկ Փիղոտաս խաղու եւ ծաղու դրեթէ զօրն ամենայն մաշէր. եւ ծանրացեալ տաղտկալի զաւակաւին ինչ բանս որ վասն գլխոյ թագաւորին էր, խառնել ընդ երկայն երկայն բանս խօսիցն, թերեւս եւ ընդ աւելորդս իսկ: Այլ ասէ թէ ոչ հաւատացի մանկաւոյն որ զայնպիսիսն պատմէին: Իսկ արդ հէ՞մ երկուս աւուրս ձգեալ յերկարէր. որպէս թէ հաւատարիմ զգուշակութիւնն համարիցի. զԿեբաղինոս պարտ էր ի բաց արձակել, եթէ արդարեւ անգոսնէր զբանս նորա: Ամենայն ոք ի վիշտս տագնապի իւրոյ առաջինն միտս պարտի ունել. բայց յորժամ զկենաց թագաւորի երկիցէ ոք, դիւրահաւան

պատրաստ լինել. եւ նոցին իսկ որ զանօ- թիւն պատմիցեն անուալ: Մանկերն այնուհետեւ խրատ առայլին հարց եւ փորձ առնել. զի ի մէջ բերելով ցուցցէ զայնոսիկ որ ընկեր կցորդեալ իցեն գործոյն: Իսկ թագաւորն պատուիրէր լուռ լինել վասն իւրոց խորհրդեանն եւ անդէն արձակէր:

Յետ այնորիկ հրամայեաց տալ ազդ առնել թէ ի վաղիւ յուղի անկանելոց իցեն. զի մի կարծիս տայցէ թէ նոր ինչ խորհուրդ խորհեցան: Հրաւիրեցաւ եւ Փիղոտաս ի խրախութիւն որ էր նմա վերջին, եւ թագաւորն ոչ միայն ընթրել յանձն առ ընդ նմա, այլ եւ ընդանեբար լինէր նմա խօսակից, զոր դատապարտեալն էր. ապա յերկրորդում պահու գիշերոյն իբրեւ զճրագան ի մայր դարձուցին, ասկաւաւորքն եկին մտին միանգամայն յարքունիս: Եփեստիոն եւ Կրատերոս եւ Կիւնոս եւ Երիգիոս որ ի բարեկամաց անտի էին. եւ ի զինակրաց անտի Պերդիկկաս եւ Ղեւոնատոս: Հրաման տուաւ ի ձեռն նոցա զի որք պահէին զպահպանութիւն արքունեացն վառեալք արթուն կայցեն: Նա եւ առ-

ամենայն դրանն կարգեալ կազմեալ կային հեծեալք, որոց հրաման տուեալ էր եւ զգնացս ճանապարհացն պաշարել, զի մի առ Պարմենիոն ոք որ յայնժամ ի վերայ Մարաց աշխարհին եւ յաճախագունդ զօրաց հրամանատար էր գաղտ պրծեալ երթիցէ ։ Իսկ Աթառիաս երեքհարեւր վառեալք եմուտ միջամուխ յարքունիսն , տուան նմա տասն սուրհանդակք զորոց զմիոյ միոյ զհետ երթային տասն տասն կապարճակիրք ։ Սոքա բաշխեալ բաժանեցան երթալ ըմբռնել զայլս ի նենգագործաց անտի ։ Աթառիաս որ երեքարիւրովք առաքեցաւ առ Փիլոտաս ջանայր խորտակել զդրունս ապարանիցն քանզի աղխեալ էին . յիսուն ժիր եւ քաջ երիտասարդք զնովաւ էին . զի այլոցն հրաման տուեալ էր պատել յամենայն կողմանց ապարանիցն զի մի զանխուլ ելեալ պրծանիցի Փիլոտաս ։ Իսկ նա կամ վասն զի յանհոգս էր կամ զի աշխատաբեկ լինեալ էր , ի քուն եղեալ ննջէր . իսկ Աթառեայ ի վերայ հասեալ ձերբակալ առնէր մինչ դեռ նա ի թմբրութեան էր ։

Ապա իբրեւ զթմբրութիւնն ի բաց թօթափեաց եւ արկան շղթայք ընդ անձն ։ Յաղթեաց, առէ, բարութեան՝ քում, արքայ, ժանտութիւն թշնամեաց իմոց ։ Նա աւելի ինչ քան զայն ոչ խօսեցաւ, այլ տարին ածին զնա ծածկեալ զգլուխն յարքունիսն ։

Իսկ ի վաղիւ անդր Հրամայէր թագաւորն զի ամենեքին որ վառեալ իցեն ի մի վայր եկեալ ժողովեսցին. եկին ժողովեցան իբրեւ վեց Հազար զօրականաց. եւ բաց ի նոցանէ ամբոխ ջրակրացն եւ փայտակրացն խճողեալ զարքունիսն լնուին ։ Զփիղատտաս բանակաւն իւրեանց ծածկէին զինակիրքն, զի մի երեւիցի ամբոխին մինչ չեւ խօսեալ թագաւորին ընդ զօրացն ։ Զի վասն դատաստանաց մահու զօրքն առնէին հարցափորձ քննութեան ըստ առաջին սովորութեան Մակեդոնացւոցն, իսկ ի խաղաղութեան՝ ռամիկն. եւ ոչ ինչ իմիք ձեռնհաս էին թագաւորքն մինչ չեւ յայտնի եղեալ ճոխութեանն ։

Թ. ԱՑՆՈՒՀԵՑԵԻ նախ զԴիմնեայ դիակն ի մէջ բերեն. եւ բազումք

յօրժամ եւ զառաւշնորդս գործոյն ի մէջ բերեալ ցուցից, զորոց տակաւին զանգիտեմ յիշել, եւ որպէս թէ ապրել մարթայցեն, զանուանս չկամիմ տալ: Բայց սակայն պարտ է առաջնոյ սորոյն յաղթել, եւ զխորհուրդ նենգութեան ամպարիշտ քաղաքացեաց մերոց յայտնութեամբ ի մէջ ածել: Իսկ արդ զխորհուրդ զայնպիսի անօրէն գործոյ լուռ լինիցիմ. Պարմենիոն՝ յայնպիսում տիս հասակի, որոյ բազում երախտիս յինէն եւ ի հօրէ իմմէ գտեալ է եւ քան զամենայն բարեկամս մեր առաջին է, այնպիսում գործոյ առաջնորդ զանձն կացոյց: Ապրասաւոր նորա Փիղոտաս զՊեւկողայոս եւ զԴեմետրիոս եւ զայս Դիմնոս զորոյ զդին նշմարէք եւ զայլսն եւս զնորին անմտութեան խորհրդակիցս, հրապուրեաց ի գլուխ իմ:

Ոնչէր յամենայն կողմանց շշնջիւն զայրացելոցն եւ քրթմնջելոցն ի ժողովէ անդ, որպէս սովորութիւն իցէ ի բազմամբոխ բազմութեան դէպ լինել, մանաւանդ ի զօրականացն բազմութեան, ուր կամ թէկն ածելով կամ ցասմամբ բնաւն վճարի:

Ապա Նիկոմաքոս եւ Մետրոն եւ Կեբաղինոս ի մէջ անցին, եւ զինչ իւրաքանչիւր ուրուք պատմեալ էր՝ զայն ի մէջ բերէին։ Բայց եւ ոչ ի միոյ ուրուք գուշակութենէ յայտնի ինչ լինէր, եթէ իցէ Փիղոտաս կցորդ գործոյն։ Վասն այնորիկ դադարեալ առ վայր մի ի զայրագին ցասմանէ, բարբառոյ գուշակացն միտ եդին լռութեամբ։ Ապա թագաւորն հարցանէր թէ որպիսի՞ ոք ձեզ թուիցի որ զայսց իրաց գուշակութիւն յինէն թագուցանիցէ։ Եւ զի ոչ ընդունայն ինչ գուշակութիւնն էր, յայս Դիմնեայ անցք առնեն։ Կեբաղինոս ի տանջանաց ոչ զանգիտեաց յորժամ զանկայտ իւր եկն պատմել, Մետրոն եւ ոչ մի վայրկեան ժամանակի յամեաց գալ պատմել, մինչ զի անդր ուր լուանայր դիմեալ եկն. Փիղոտաս միայն ոչ երկեաւ յիմեքէ, ոչ հաւատաց իմիք։ Ո՛հ առաքինի ոգւոյն. զրժգմել պարտ էր ընդ վիշտս վտանգի թագաւորին, զդէմս երեսացն փոփոխել եւ այնմ որ այնպիսի իրաց գուշակ լինէր մտադիւրութեամբ լսել։ Քանզի ընդ լռութեամբն գործ չա-

րութեան կայ, եւ ցանկութիւն ակըն-
կալութեան թագաւորութեան գա-
հավէժ պարահոս ի յետին իսկ
անօրէնութիւն մղեալ կործանեաց
զանձն նորա ։ Ի վերայ Մարաց աշ-
խարհին է հայր նորա ։ Եւ ինքն
հզօր եւ կարող է զօրօք իմովք առաջի
բազում զօրավարաց զօրացն , եւ
մեծամեծս եւս քան զայնոսիկ որոց
հասու է , խնդրէ ։ Եւ անզաւակու-
թիւն իմ , քանզի անորդի եմ , ար-
համարհ թուի ։ Այլ սխալէ Փիլո-
տաս ։ Զձեզ եւ որդիս եւ հարս եւ
ազգականս եւ թայրաթոտս ունիմ .
յորժամ դուք ողջ իցէք, ես անզաւակ
չկարեմ լինել ։

Ապա զթուղթն Պարմենիոնի որ
անկաւ ի ձեռս զոր առ որդիս իւր
առ Նիկանովր եւ առ Փիլոտաս
գրեալ էր , ընթեռնոյր , որ ոչինչ
նշանակ ունէր զչարի իրիք խորհըր-
դեան ։ Զի բովանդակութիւն նորա
էր այսպէս . Նախ զձէնջ հոգ ի միտ
կալարուք , ապա զձերայոցն . զի այն-
պէս զոր ի մտին եղաք վճարիցեմք ։
Ածէր զնոքիմբք թագաւորն թէ
այնպէս իսկ գրեալ է թուղթս՝ զի
եթէ առ որդին իւր հասանիցէ,

քանզի իրադէտ են նոքա իրացն, իմանայցի. եւ եթէ ի բուռն անկանիցի, զանդէտսն պատրեսցէ: Ո՛չ զի Գրիմմա զՓիզոտաս ոչ անուանեաց, յորժամ զպյլոց որ կցորդգործոցն էին յայս արար, այն ոչ եթէ նշանակ ինչ անմեղական մտաց նորա է, այլ զօրութեանն, զի եւ նոքին իսկ երկնչէին ի նմանէ որ մնանելն կարող են զնա, մինչ զի յորժամ զանձանց լինիցին խոստովան, զնա թագուցանեն: Ո՛չ զՓիզոտաս յայտ նորին իսկ կեանք առնեն: Սա իրադէտ եւ չարեաց կցորդ յարեցաւ Ամբիոնայ որ Հօրեղբօրորդի էր իմ եւ ի Մակեդոնացւոց աշխարհինիութեաց նենգութիւն ամպարշտութեան ի գլուխ իմ: Սա Աստաղեայ քան զոր դժնդակագոյն թշնամի ոչ ոք էր ինձ, զքոյրն եա ի կնութեան: Սա՝ յորժամ գրեցի եւ նմա վասն ընտանութեանն եւ բարեկամութեան, թէ արդիւք ինչ վիճակ եւ ի հրամանէ պատասխանւոյ Արամազդայ Համոնեայ, իշխեաց այսորէն գրել ինձ թէ խնդակից եմ քեզ զի ի համար աստուածոցն մտեր, այլ ողորմիմ այնոցիկ որ առ-

քեան կեցցեն, զի զայսմանաւ չա-
փոյ մարդոյ անցուցանեն։ Այս նշա-
նակք են եւ յառաջագոյն իսկ մտաց
նորա, որ օտարացեալ էր յինէն եւ
խառնակեալ ընդ փառս պարծանաց
իմոց. զայս ամենայն պահեցի ի սրտի
իմում, ով զօրականք, ցորչափ ժա-
մանակս արժանին էր։ Ոչ համարէի
այսպէս՝ թէ զմասն մի աղետաց իմոց
կոտորեցեմ, եթէ զայնսանիկ՝ որոց
մեծամեծան շնորհեալ էի, յանար-
գութիւն հասուցանիցեմ։ Բայց
այսուհետեւ ոչ եթէ զբանսն պարտ
իցէ պատժել. ժպրհութիւն լեզուի
եհաս ցուցանելս իսկ։ Ուսեալսն
իւր որեաց ինձ սայրասուր փիղոսս
եթէ արդարեւ հաւատայք ինձ։
Արդ եթէ զայս ամենայն փիղոսս
գործեաց, յո՞ երթայց կամ յո՞ ան-
կայց, ով զօրականք, ո՞ւմ հաւատա-
ցայց զգլուխ իմ։ Ի վերայ հեծելա-
զօր զօրաց որ ընտիր մասն է զօրաց
իշխանաց ազնուաց ի մանկտւոյ ան-
տի, զնա միայն կացուցի սպարապետ.
հաւատոց նորա եւ խնամոց նորա
յանձն արարի զկեանս իմ եւ զմոյս
իմ եւ զյաղթութիւն իմ։ Ոչ հայր նո-
րա ի նոյն պատուի բարձրութեան յոր

զիս եղբք, հաստուցի, զՄարտասատան քան զոր չէք աշխարհ ընչաւէտ նմա ետու, եւ զայնչափ հազարաւորս քաղաքացեաց եւ նիզակակցաց արկի ընդ իշխանութեամբ նորա: Ուստի պահեստն խնդրեալ էի տնտի յայտնեցաւ վիշտ վտանգի: Նաւ էր արդեւք թէ ի ճակատու անկեալ էի, զի լինէի աւար թշնամւոյ եւ ոչ եթէ կոտորեալ յառնէ քաղաքացւոյ: Այժմ զերծեալ ապրեալ յամենայն տագնապէ յորոց միայն երկնչէի, յայն անկայ յորմէ չէր ինձ իսկ պարտ երկնչել: Սովոր իսկ էք երբէք երբեք խնդրել յինէն, ով զօրականք, զի խնայեալ զընդդացայց կենաց իմոց: Դուք իսկ կարէք առնել զոր ինչ ինձ խրատ տայք գործել: Ի ձեռս ձեր եւ ի զէնս ձեր ապաստանեալ կամ, առանց ձերոց կամաց կենդանի չկամիմ լինել. եւ եթէ կամիք, սակայն թէ ոչ ի ձէնջ պաշտպանիցիմ, կենդանի չմարթեմ կալ:

Ապա հրաման տայր զՓիլոտաս ի մէջ բերել կապեալ ձեռս յետս եւ ծածկեալ արկանելեաւն հնոտւով: Դիւրաւ գոյ ի միտ առնուլ եթէ հարան նոքա ի միտս իւրեանց իբրեւ

զողորմ կերպարանսն տեսոյն, ընդ որ սակաւիկ մի յառաջագոյն չարակնելով հայէին։ Նորէկ տեսեալ էին զնա զի զօրաւոր էր այրուձիոյն. գիտէին թէ ի խրախուսնս թագաւորին էր։ Յանկարծակի պարտաւոր եւ դատապարտեալ մանաւանդ թէ եւ ի կապանս նշմարէին, յիշէին եւ զՊարմենիոնեայ վիշտսն զայնպիսի զօրավարի եւ զերեւելի քաղաքացւոյ, որ անդէն յերկուց որդւոցն ի Հեկտորէ եւ ի Նիկանովրայ անկեալ, ընդ միւսումն որ ի վշտաց անտի մեռացեալ էր, ի դատաստան հասեալ էր մինչ դեռ հեռուին իսկ էր։ Վասն այնորիկ Ամինտաս հազարապետ թագաւորին, միւսանգամ բանս դժնդակութեան ի Փիղոտաս խօսէր եւ զկծեցուցեալ դրդուէր զամբոխն որ ի գութ էր դարձեալ. եւ ասէր թէ մատնեցան նոքա բարբարոսաց եւ ոչ ոք ի նոցանէ դարձցի այսրէն առ կին իւր եւ յաշխարհ իւր եւ առ հայր եւ մայր իւր. իբրեւ մարմին մի հատեալ ի գլխոյ, առանց շնչոյ, առանց անուան, յօտար երկրի լինիցին խաղալիկ թշնամւոյն։ Ոչ հաճոյ թուեցաւ բանն Ամինտայ

թագաւորին որպէս ինքն ակն ունէր, զի զկանանց եւ զաշխարհէ ճառս ի մէջ բերեալ հեղգագոյնս առ այլ եւս գործս արար զնոսա ։

Ապա Կիւռոս թէպէտ եւ ամուսնացուցեալ էր իւր զքոյրն Փիղոստայ, այլ սաստկագոյնս քան զամենեսին ամբաստան լինէր զՓիղոստայ, բաղաք բարձեալ գոչէր թէ նենգիչ է թագաւորին եւ գահին եւ մատնիչ աշխարհի եւ զօրաց, եւ զվէմն որ առաջի սորին կայր ի ձեռն առ եւ ի նա կամէր արկանել. զի որպէս բազումք կարծեցին՝ զի ի տանջանացն կամեցաւ զնա ապրեցուցանել ։ Այլ արգել զձեռն նորա թագաւորն եւ ասէր, թէ պարտ եւ պատշաճ է նախ համարձակեցուցանել պարտաւորին յայտ առնել զիւրոյ դատաստանէն եւ ոչ այլ իմն ազգ կամիմ դատել ։ Ապա ուրեմն խօսել սկսաւ Փիղոստաս հիացեալ եւ յապշութիւն կործանեալ, կամ վասն մտացն խղճի եւ կամ ի մեծութենէ վշտացն վտանգի ոչ զաչս ի վեր իշխէր հանել ամբառնալ եւ ոչ բերան բանալ ։ Յետ այնորիկ մինչ դեռ հօտէին արտասուք յաչացն փղձկեալ

ի նա յենոյր որ ունէրն զնա. եւ ընջեալ զաչսն հանդերձիւն նորա, առակաւ ոգի առեալ կազդուրէր եւ ձայնն ի նա դառնայր, եւ մինչ դեռ խօսելն կամէր՝ հայեցաւ ի նա թագաւորն. Մակեդոնացիքն, ասէ, դասս կամին տեսանել վասն քո. հարցին զքեզ թէ զաւառակա՞ն բան արկանելոց իցես ի կիր: Նա է յայնժամ փիլիսոփայ, թէ Ոչ միայն Մակեդոնացիք, այլ եւ բազումք եկեալ հասեալ են ոյք որպէս կարծեմ դիւրագոյն ի միտ առնուցուն զոր ասիցեմ, եթէ զնոյն բարբառ ի կիր արկանիցեմ որով դուք խօսեցայք, ոչ վասն այլ ինչ իրիք, որպէս ինձ թուի, բայց զի ի բազմաց իմանայցին բանք քո: Յայնժամ ասէ թագաւորն, ստեղանեօք զի եւ ի զաւառական բարբառոյն տառաղանկայ փիլիսոփայ. քանզի նա միայն է որ զայն բարբառ չկամի խօսել: Նայց խօսեցի որպէս ինչ նմա հաճոյ թուեցաւ, բայց դուք զայն ածէք զմտաւ՝ թէ նա առ հասարակ ի բարուց մերոց եւ ի բարբառոյ բանից մերոց զարշի եւ խորշի: Եւ այնպէս ել գնաց ի ժողովոյ անտի:

Ժ. Ա՜ՊԱ խօսել սկսաւ Փիլոստրատոս եւ ասէ, այնմ որ առանց մեղաց է՝ դիւրին է զատանել բանս, այլ ի չափու բանիցն կալ դժուարին է տառապելոյ: Վասն այնորիկ ի մէջ բարուոք խղճի մտաց եւ տառապանաց անիրաւութեան կամ անկեալ. ոչ գիտեմ որպէս կամ զի՞նչ օրինակ անսասցիք մտաց իմոց եւ ժամանակիս այսմիկ: Չիք դատաւոր քաջ դատաստանաց իմոց. եւ արդարեւ ոչ առնում ի միտ թէ Հիմ չկամի նա ինքնին լսել ինձ, ուր զի յորժամ դիտասցէ զիրս դատաստանաց իմոց եւ դատապարտել կարէ եւ արձակել, եւ եթէ ոչ լսիցէ, չկարեմ ապրել ի նմանէ յորժամ Հեռի իցէ, զի յորժամ մօտն էր դատապարտ եղէ: Ա՜յլ թէպէտ եւ ան որ ի կապանս իցէ ոչ միայն աւելորդ է պատասխանատուութիւնն այլ եւ ի թշնամութիւն եւս դրդուէ, զի այսպէս իմն կարծեցուցանէ՝ թէ ոչ եթէ գիտուն ինչ զդատաւորն առնիցէ, այլ յանդիմանեալ կշտամբիցէ. բայց զի՞նչ օրինակ եւ զանձնէ իշխանութիւն իցէ ինձ խօսել, ոչ թողից ոչ լքից զանձն իմ եւ ոչ յանձին կալայց՝ զի եւ յանձնէ

յիմոց բանից դատապարտեալ երեւ-
եցիմ։ Զինչ վնաս իմ գործեալ է
զայն ինչ ոչ գիտեմ։ Ոչ ոք է ի
միաբանելոց անտի որ անուանիցէ
զիս. Նիկոմաքոս չասաց ինչ զինէն.
Կեբաղինոս աւելի ինչ քան զոր
լուեալ էր չմարթէր գիտել։ Այլ
զլուխ միաբանելոցն համարի զիս
ուրեք։ Իսկ արդ մա՞րթ ինչ էր
Դիմնեայ զանց առնել զնովաւ զորոյ
զհետ երթայր։ Մանաւանդ զի յոր-
ժամ նա ընկերս խնդրէր պարտ, էր
եւ սուտ իսկ անուանել զանուն իմ
զի այնպէս դիւրաւ գայցէ ի հաւան
այն որ ի փորձութեանն էր։ Վասնզի
ոչ եթէ ի յայտնելն զգործն զանց
արար զանուամբ իմով, զի կարծիցէ
թէ խնայիցէ ի կցորդ իւր եւ յընկեր.
Նիկոմաքոս՝ զորմէ կարծէր թէ լը-
ուեալ պահիցէ զծածուկն որ վասն
անձին իւրոյ էր, խոստովան եղեւ,
զայլսն անուանեաց եւ զինէն միայն
լռեաց։ Աղէ ո՞վ զինուորակիցք, եթէ
Կեբաղինեայ առ. իս չէր եկեալ եւ
չառնէր զիս իրիք գիտակ վասն իւրոց
միաբանութեանն, եկեալ կայի՞ ար-
դեւք ի դատաստան այսօր, առանց
ուրուք անուանելոյ զիս։ Բայց թող

տակաւին կենդանի իցէ Դրիմեոս եւ
խնայիցէ ինձ. իսկ այլ քն զի՞նչ: որք
զանձանց խոստովան լինին, զինէն
լուեն: Զարտաքամ են մի շալք, եւ փա-
սակարն յորժամ իւրոցն տանջանօք
ըմկիցի, դեռ լինի նմա այլոյն տան-
ջանօք: Այնչափ իրաւեւոք կան զոր-
ծոյն. եւ ի պըրկոցին եւս եղեալ չա-
րիցեն զճշմարտութիւնն: Այլ ոչ
ոք է որ զընդդայ յայն որ մեռանելոց
իցէ, եւ ոչ նա ուժք խնայէ որ մե-
ռանելոց է, որպէս ես կարծեմ:

· Այլ ժամ է ի ճշմարիտ փառսան
դալ որ եւ մի է եւ միայն. Թէ ըն-
դե՞ր զիրացն որ պատմեցաւ քեզ
լուռ եղեր. հի՞մ այնպէս անհող-
լուար: Այս որպիսի ինչ զինչ իցէ,
յորժամ խոստովան եղէ, թողեր դու
ինձ, Աղեքսանդրոս, ուր ուրեք եւ
իցես. բուռն հարեալ կալայ զաջոյ
ձեռանէ քումէ որ նշանակ հաշտու-
թեանն էր. եւ էի ընդ քեզ յըն-
թրիսն: Եթէ հաւատացեր դու ինձ,
լուծայ, եթէ խնայեցեր ինձ, ապա
արձակեցայ. դնէ զքո իսկ դատաս-
տան պահես: Զի՞նչ ինչ գործեալ
է իմ յայսմ գիշերի յորմէ հետէ ելի
ի սեղանոյ քումէ. զինչ գործ նոր

չարութեան պատմեցաւ քեզ եւ շրջեաց զմիտս քո։ Ո՛ւանէր քնով հանգուցեալ էի մինչ դեռ չարիք հասեալ կային ի վերայ իմ եւ թշնամիք իմ զարթուցին զիս ի քնոյ անտարի իմմէ յորժամ կապելն կամէին։ Ուստի՞ իցէ նենգաւորի եւ մատնչի այնպիսի խոր քուն։ Արդ զանօրէնսն գործեալ իցէ ցանգ խիղճ մտացն բողոքէ եւ ի քուն չկարեն լինել եւ ընդղայլք խռովեն զնոսա, ոչ միայն յորժամ բովանդակեալ կատարիցեն զսպանութիւնն այլ եւ յորժամ ըզնենգութիւնն խորհեալ նիւթիցեն։ Այլ ինձ զանհոգ հանդարտութիւնն նախ անմեղութիւնն իմ եւս եւ ապա քո իսկ աջդ. ոչ ինչ զանգիտէի թէ գուցէ այլոց անազորունութիւն զօրացի առաջի քո քան զհեզութիւն գթութեան քո։ Բայց զի մի ընդայն ինչ սարջացիս զի հաւատասցես ինձ, ասացից. ի մանկանէ միոջէ ինձ իրքն պատմէին, որ ոչ վկայ զոք կամ գրաւական գուշակութեան ի մէջ բերել կարէր, եւ զամենեսին ահիւ լի առնելոց էր եթէ սկիզբն լինէր անսալոյ բանից նորա։ Զհամանեաց կոզա կարծեցի լսել հէքս եւ թշու-

առակաւն. եւ չհամարեցայ հաւատա-
րիմ զբանս նորա, զի ոչ ինքնին
եկեալ պատմէր այլ զերդայրն ի մէջ
արկանէր։ Երկեայ թէ գուցէ ասիցէ
թէ իմ չիք պատուիրեալ Կեբադի-
նեայ ասել ինչ. եւ ես երեւեցիմ
այնուհետեւ բազմաց ի բարեկամաց
պատճառք լեալ վշտաց թագաւո-
րին։ Այսպէս յորժամ միտս ումեք
ոչ գործեցի, քայն հասի զի առաւել
կամին կորուսանել զիս քան եթէ
կալ ողջանդամ. զմտաւ ածէք որչափ
թշնամութիւնս յանձն առնոյի թէ
զանպարտն տարապարտ ձգձգէի։
Այլ Գրիմնոս զիւր անձն սպան։ Իսկ
ըղձանալ ինչ կարէի արդեւք թէ
զանձն սպանանելոց իցէ. ոչ երբէք։
Այս այդ որ հաւատարիմ արար
զբան գուշակին, չկարէր հաւանեցու-
ցանել յայնժամ զիս, յորժամ ի Կե-
բադինեայ ասացաւ ինձ բանն։

Այլ եթէ ընդ Գրիմնեայ միաբա-
նեալ էր իմ ի գործն, ինձ չէր պարտ
անփոյթ զիրացն առնել զաւուրսն
երկուս, զի մատնեալ իսկ էաք.
իսկ զԿեբադինոս իսկ գլխովին հնար
էր դիւրաւ սպանութեամբ ի միջոյ
բառնալ։ Իսկ յետ գուշակութեանն

պատմելոյ ինձ որով տատանեալցն էի, մտի միայն ի սենեակ թագաւորին եւ սուսեր ընդ մէջ ածեալ էի։ Զի՞մ յապաղեցի զգործն վճարել։ Միթէ առանց Դիմենեայ չիշխեցի՞ առնել։ Ապա նա ուրեմն է առաջնորդ միաբանութեանն, եւ Փիղոտաս ընդ հովանւով նորա թագչէր որ թագաւորութեան ակն եդեալ էր Մակեդոնացւոցն։ Ո՞ ոք ի ձէնջ եղեւ կաշառաբեկ. զո՞ ոք ի զօրավարաց կամ զո՞ ոք յոստիկանաց մտադիւրագոյնս մեծարանօք յանկուցի։ Ինձ մեղ դնեն թէ անգոսնեմ զխօսս հայրենի բարբառոյ իմոյ եւ զի տաղտկամ ընդ բարս Մակեդոնացւոցն։ Ապա այսպէս իմն իշխանութեանն՝ զոր դարշելի համարիմ, ցանկացեալ եմ։ Արդ յառաջագոյն իսկ բարբառ ծնընդեան սովորութեան խափանեցաւ վասն ընդ միմեանս հաղորդութեան այլոց ազգացն, պարտ է եւ այնոցիկ որ յաղթեցինն եւ որ յաղթեցան ուսանել լեզու օտարոտի։ Արդարեւ չեն դոքա ինձ աւելագոյն մնաս քան զայս զի Ամիւնտաս որդի Պերդիկկայ դարան գործեաց թագաւորին. եւ զի բարեկամութիւն

էր իմ ընդ նմա, ոչ ինչ ուրանամ. զի չէր պարտ արդեւք եղբօր Թագաւորին օրինելի լինել մեզ: Ապա եթէ հարկ էր շուք դնել այնմ որ յայնմ աշտիճանի էր. մինթէ եւ զի ոչ իմացայ յառաջագոյն, պարտաւո՞ր իցեմ. մինթէ եւ ամպարշտացն բարեկամաց որ անպարտ իցեն մեռանե՞լ պարտ իցէ: Ապա եթէ այսպիսի ինչ իրաւունք իցեն, հի՞մ կամ կենդանի. եւ եթէ այն անիրաւ իցէ, ընդէ՞ր մեռանիմ: Այլ զի գրեցի իմն թէ ողորմիմ այնոցիկ որ առ Նովաւն կեցոց իցեն որ որդի համարեցաւ զանձն Արամազդայ: Ով հաւատք բարեկամութեան, ով վշտադին համարձակութիւն ճշմարիտն խրատու, դուք պատրեցէք զիս, դուք էիք որ յօժարեցուցէք զիս, զի լուեցից զայն ինչ զոր ի միտ իմում խորհէի: Խոստանամ թէ զայգ ամենայն գրեցի Թագաւորին, բայց ոչ եթէ զԹագաւորէն: Օհ ոչ եթէ չարախնեալ խանդացի այլ զանդիտեցի վասն նորա: Առաւելագոյն արժանի կարծեցաւ ինձ թէ զաւակ Արամազդայ լուելեայն զանձն գիտասցէ Աղեքսանդրոս, բայց մի հաշակ հարեալ պան-

ծածցեալ պարծիցի : Բայց քանզի հաւատարիմ է հրաման պատասխանւոյն, եղիցին դիք ի մօտոյ վկայ բանից իմոց : Կալարուք դուք զիս ի կապանս մինչեւ հարցցի Ամոն վասն ծածուկ եւ գաղտնի գործոյն : Որ որդւութեանն իւրում արժանի արար զթագաւորն մեր, չառնու յանձն թէ թաքիցէ ոք յայնցանէ որ դարանակալ են զաւակի նորա : Այլ եթէ հաւատարմագոյն քան զհրաման պատասխանւոյ զառանջանան համարիցիք, եւ ոչ ինչ աղաչեմ, այլ եւ այնպէս ընծայեցուցանեմ զճշմարտութեանն ստուգութիւն :

Սովորութիւն է պարտաւորացն ի մէջ բերել ձեռ զիւրեանց հարս եւ մարս : Նորոգ իսկ կորուսի զերկոսին եղբարս իմ . իսկ զհայրս չմարթեմ ցուցանել եւ չկշռեմ կարդալ, զի եւ նա այնպիսի վտանգի պատժապարտ է : Փոքր ինչ է զի այն որ երբեմն այնչափ որդւոց հայր էր եւ ընդ իս ուրախ լինէր որ միայն մնացեալ էի, եւ յինէն եւս անկանիցի, բայց միայն եթէ եւ ինքն չդնիցի ի վերայ խարուկիս իմոյ : Ապա, հայր սիրելի, եւ վասն իմ մեռանիցիս եւ

ընդ իս մեռանիցիս ։ Ես զարեւն քո հատանեմ , եւ չիջուցանեմ զծերութիւն ալեաց քոց ։ Ո՞վ իսկ ծնար զիս զհէքս եւ զթշուառական եթէ ընդդէմ դիքն դառնային . վասն այնորիկ ծնար դու զիս զի զայս շահս կթիցես դու յինէն որ կանն եւ մեռան քեզ ։ Ես ոչ գիտեմ թէ ո՛ր աւելի եղկելի եւ ողորմելի իցէ, մանկութիւն իմ եթէ ծերութիւն քո . եւ աստէն յուժի տիոց իմոց ի միջոյ յափշտակիմ . եւ դահիճ քաղէ հանէ զոգիմն քո , զոր եթէ բախտն դանդաղէր առնուլ, սակայն բնութիւնն պահանջէր ։ Խորատեցին զիս յիշատակք հօր իմոյ թէ որչափ երկիւղածութեամբ եւ յամելով պարտիցիմ յայտ առնել զոր ինչ Կեբաղինեայ պատմեալ էր ինձ ։ Զի Պարմենիոնի լուեալ թէ թոյն կազմեալ է թագաւորին ի Փիլիպպեայ բժշկէ, երկեցուցանել զնա կամեցաւ թղթով գրեալ թէ մի ըմպեր զդեղն զոր բժիշկն կամի տալ ։ Ոչ թէ հաւատացա՞ւ հօրն իմում , միթէ եղե՞ւ ինչ ճոխութիւն թղթոյ հօր իմոյ ։ Նա եւ իսկ զխորվին քանիցս անգամ չարգայ

պատմեցի զոր լուեալն էի, Թշնամանս դիւրահաւան մտաց առեալ ի բաց մերժեցայ: Ապա թէ յորժամ յայտն առնեմք, չեմք ճշմարիտք, եւ յորժամ լուռ լինիմք ընդ կասկածանօք եմք, զի՞նչ պարտ իցէ գործել: Եւ յորժամ մի ոմն յամբոխէ այնոցիկ որ շուրջն կային աղաղակեաց թէ Երախտաւորաց չգործի նենգութիւն: Իսկ Փիղոտաս. Ուղիղ, ասէ, խօսեցար ո ով իցես: Վասն այնորիկ եթէ դարան գործեալ է իմ չպաղատիմ վասն պատժոցն եւ յանդ հանեմ զբանս իմ, քանզի յետին բանքն սաստկագոյնք լսելեաց թուեցան: Յետ այնորիկ նոքին որ նմա պահ ունէին ի բաց տարան:

ԺԱ. Նոր ի մէջ զօրավարացն Բողոն անուն ոմն, այր կաշըմբուան զօրաւոր, անտեղեակ արուեստի խաղաղութեան եւ քաղաքային կարգաց, զինուոր հինօրեայ, եւ ի խոնարհագոյն կարգէ յայն պատիւ, յորում էրն յայնժամ, հասեալ. որ՝ ի լռել ամենեցուն, սկսաւ յուշ առնել նոցա յանդուգն համարձակութեամբ, եթէ քանիցս անգամ մեր-

ժեալ խցեն նաքա յիւրեանց օթեւանացն, զի ամենայն արք վատթարք որ ի Փիղոտեայ աւազէին անդր գնիցին, ուստի զինուորակիցքն մերժեալ լինէին: Ամենայն ճանապարհք, ասէ, լի են կառօք նորա, որ բարձեալ տանին ոսկի եւ արծաթ. եւ ոչ մօտ իսկ յիջավան անդր ի զինուորակցաց ոք իշխէր օթ առնել, հեռացուցանէր զնոսա ի ձեռն պահապանացն, զորս ի կիր արկանէր մեղկն այն. զի մի շշնջիւն քրթ[illegible]անացն մանաւանդ թէ լռութիւնն զարթուցանիցէ զնա ի քնոյ անտի: Ողբ եւ խաղ լինիմք նմա, որք չինականք եւ փռիւգացիք եւ պափղագոնացիք ի նմանէ անուանիմք, որ չպատկառէ իսկ, թէպէտ եւ մակեդոնացի եւս է ծննդեամբ ընդ արանց համալեզուաց թարգմանաւ խօսել: Եւ ընդէր իսկ բնաւ կամիցի այժմ զԱմոն հարցանել, որ յանդիմանեացն զստութիւն Արամազդայ, յորժամ նա զԱղեքսանդրոս իւր որդի ծանեաւ, կասկածեալ՝ զի մի լիցի վնասակար այն՝ զոր աստուածքն մատուցանէին նմա: Յորժամ դարմանակալ լինէր թա-

դաւորին եւ բարեկամացն, չեհարց ինչ զԱրամազդ, այլ այժմ խնդրէ պատգամս, զի հրապուրեսցէ զհայր իւր լինել առաջնորդ ի Մարաց աշխարհին, եւ զանձիւքն՝ որոց պահպանութիւն նմա հաւատացեալ էին, արս անօրէնս ամպարիշտս հաղորդ եւ բաժանորդ չարեացն արասցէ։ Առաքելոց եւս ի հրամանն անդր պատասխանւոյ, ոչ զի զԱրամազդ հարցանիցեն, զոր ինչ ծանեանն ի Թագաւորէն, այլ զի շնորհակալ լինիցին եւ հատուցեն զուխտն՝ զոր արարեալ էին վասն փրկութեան մեծի Թագաւորին։ Յայնժամ ամենայն ժողովն առհասարակ բողոքէր բարկութեամբ, եւ յառաջ քան զամենեսեան պահապանքն զաղաղակ բարձեալ ասէին, եթէ պարտ եւ պատշաճ է զտիրամատնեննկն զտիրադրուժն մերով ձեռամբ յօշել եւ պատառել։ Օ՜ այն բարբառ Փիղոսոս, որ յանհնարին եւս տանջանաց զարհուրեալ ատագնապէր, ոչ ինչ դժկամակ մտօք լսէր։

Այլ Թագաւորն դարձեալ ի ժողովն, կամ վասն ի բանդին զնա տանջելոյ կամ Թերեւս վասն բա-

րուոց ի վերայ իւրացն հաստատելոյ, ի վաղուէ օրն զխորհուրդն Թողոյր։ Նա Թէպէտ օրն տարաժամեալ էր, սակայն հրաման տայր բարեկամացն ի մի վայր գումարել։ Հաճոյ Թուեցաւ ոմանց ըստ Մակեդոնացւոցն սովորութեան քարամբք սպանանել զնա, այլ Հեփեստիոն եւ Կրատերոս եւ Կիւնոս ասէին եթէ պարտ է տանջանօք զճշմարտութիւնն ի մէջ ածել. եւ նոքին իսկ, որ այլազգ ինչ ի մտի եդեալ էին ի սոցա խորհուրդն փոխեցան։ Իբրեւ ժողովն արձակէր, յառնէր Հեփեստիոն ընդ Կրատերեաւ եւ ընդ Կիւնեաւ մուծանել զՓիղոտաս ի հարցափորձ։ Կոչեաց Թագաւորն զԿրատերոս, եւ խօսեցաւ ընդ նմա բանս որ ոչ ելին ի վեր եւ ապա գնաց ի ներքին կողմն իւրոյ օթեվանին, եւ կայր մնայր անդ առանձինն ցմեծ ժամս գիշերւոյն ելից հարցափորձին։ Յայնժամ դահիճքն եդին առաջի Փիղոտայ զամենայն գործիս անտագորոյն տանջանաց։ Նա նա ինքնակամ կամօք, Զի՞ յապաղէք, ասէ, սպանանել զնա, որ խոստովան լինի զանձնէ եթէ Թշնամի է Թագաւորին,

եւ ապանօղ, զի՞ պիտոյ իցէ հանդէս հարցափորձի, զմտաւ ածի, կամեցայ։

Արատերոս ստիպէր, զի զոր խոստովան եղեւ, զնոյն եւ ի տանջանսն ասասցէ, եւ իբրեւ կալան զնա, եւ զաչսն կապեցին, եւ մերկացուցին ի զգեստուցն, զհայրենի աստուածան, եւ զիրաւունս ազգաց ի զուր յօգնութիւն կոչէր առաջի խլացելոցն։ Նպա անհնարին եւ դառն տանջանօք տանջեալ լինէր, որպէս եթէ հատեալ իցէ վճիռ դատապարտութեան նորա, զի եւ թշնամիքն եւս վասն սիրոյ թագաւորին չարալլուկ տանջեալ խոշտանգէին զնա։ Եւ յառաջնումն թէպէտ եւ յորժամ աստի հուր եւ անտի հարուածք գանից ոչ ի հարցափորձ ինչ այլ ի պատիժս յաճախէին, սակայն ոչ միայն զձայնն, այլ եւ զհեծութիւնս եւս կարաց արգելուլ։ Իսկ իբրեւ մարմինն ի չարաչար վիրաց անտի այտնուլ սկսաւ, եւ չկարէր ժոյժ ունել հարուածոցն զոր ի մերկ ոսկերսն ընդունէր, սկսանէր այնուհետեւ խոստանալ, եթէ մեղմացուսցեն զտանջանսն սակաւիկ մի,

տանել զոր ինչ միանգամ գիտէին կամիցին։ Սակայն կամէր զի երդումն տայցեն յարեւն Աղեքսանդրի եթէ լինիցի արդարեւ զբաւ հարցափորձին։ Իբրեւ զերկուսին եւս ընկալաւ, ասէ ցԿրատերոս, ասա դու ցիս, զինչ կամիս զի տացից։ Նարկացաւ Կրատերոս զի ծաղր եղեւ. իբրեւ միւսանգամ զդահիճսն կոչէր, սկսաւ նա խնդրել ժամ եւ ժամանակ զի ոգի առեալ կազդուրեսցի եւ զամենայն զոր ինչ գիտէր խոստանայր պատմել։

Յայնժամ վայրի մեծամեծք եւ զօրավարք հեծելազօրացն եւ առաւել այնոքիկ որ ազգականք մերձաւորք էին Պարմենիոնեայ, իբրեւ լու եղեւ թէ Փիղոտաս ի տանջանս է, երկեան յօրինաց անտի Մակեդոնացւոցն, զի օրէնք էին թէ մերձաւորք այնոցիկ որոց դարան գործեալ իցէ թագաւորի, ընդ նոսա սպանցին, եւ վասն այնորիկ կէսք անձամբք յանձինս լինէին ձեռնամուխ եւ կէսք ելեալ երթային փախստեայ ընդ լերինս անկոխս եւ ընդ անապատս. եւ էր ահ մեծ եւ երկեւղ հասեալ մածեալ ի վերայ ամենայն բանակին,

մինչեւ ծանուցեալ թագաւորին զամբաւս խաղաղութեանն, Հրաման տայր թողութիւն առնել օրինացն որ վասն պատժոց անպարտ ազգականացն էր։

Եւ թէ ճշմարիտ ինչ եթէ սուտ բանիւք ի տանջանաց զանձն կամեցաւ ապրեցուցանել Փիլոտաս, չէ ինչ յայտ, մարթի եւ այսպէս եւ այնպէս կարծել. քանզի նոյն վախճան ցաւոց առաջի ցուցանէր այնոցիկ՝ որ զճշմարիտն լինիցին խոստովան եւ որոց սուտն խօսիցին. Թէ որպէս ընտանութեամբ էր, ասէ, Հայր իմ ընդ Հեգեղոքեայ, այնմ չէք ինչ անտեղեակ. զայնմ Հեգեղոքեայ ասեմ որ ի ճակատու անկաւ, նա ամենայն չարեաց պատճառք եղեւ մեզ. քանզի յորժամ զառաջինն Հրաման ետ թագաւորն ողջունել զնա Արամազդայ որդի, նա զչարեցաւ եւ ասէ, Այսուհետեւ զատ ծանիցեմք թագաւոր, որ զՓիլիպպոս չհամարի արժանի իւր Հայր կոչել, ապա վճարեալ է վասն մեր եթէ եւ այգամ ամենայնի կարասցուք համբերել, ոչ եթէ զմարդկամբ միայն այլ եւ զդիւան արհամարհեաց,

զի աստուած իսկ պահանջէր համարել: Կորուսաք զԱղեքսանդրոս, կորուսաք զԹագաւոր. եկայք անկայք ի հպարտութիւն ամբարտաւանութեան որում ոչ դիքն ժուժալ կարեն, որոց զանձն հաւատար կացոյց, եւ ոչ մարդիկ յորոց զանձն ի բաց հան: Մինթէ մերո՞վ ինչ արեամբ զնա աստուած կացուցաք, որ դարձի եւ տաղտկայ ի մէնջ, որ չկամի մնանել ի ժողովս մարդկան. անսացէք ինձ, հաւատացէք, զի եւ մեք եթէ քաջասցուք եւ լիցուք արք, յորդեգիրս ի դիցն ընկալցուք: Ո՞ էր որ զհաւոյ նորա զԱղեքսանդրի, ո՞ էր որ զԱրքեղայ, ո՞ էր որ զՊերդիկկայ մահուան վրէժ խնդրեաց, եւ սա ներեաց այնոցիկ որ սպանին զհայր նորա: Զայս ասէր Հեգեղոքոս ի վերայ ընթրեացն. ի վաղիւ անդր ընդ այգն ընդ առաւօտն կոչեցայ ի հօրէ իմմէ: Տրտմեալ տխրեալ էր նա, եւ զիս տեսանէր ի տրտմութեան: Զի լուեալ էր մեր բանս, որ արկին հոգս ի միտս: Վասն այնորիկ զի իմասցուք թէ արդեւք վասն զի ի գինւոյ ծանրացեալ էր, այնպիսի բանս խօսեցաւ, եթէ կամօք

եւ խորհրդով զայն զոր ի մտի նիւ-
թեալ պահէր, կամեցաւ կոչել զնա
Նա եկն, եւ աւելի եւս քան զնոյն
բանս յանձնէ խօսեցաւ. եթէ գուցէ
ասէ, համարձակեալ առաջնորդ լի-
նիցիք իրացն, եւ եղէց ձեզ ի մօտոյ
ձեռնտու, ապա թէ զանգիտիցէք
լուռ լինիցիք զիրաց խորհրդեանն
այսորիկ: Իսկ Պարմենիոնի անժամ
իմն իւրն թուէին ցորչափ կենդանի
էր Դարեհ. քանզի ոչ եթէ անձանց
ինչ օգուտ գործիցեմք ասէ, եթէ
սպանանիցեմք զԱղեքսանդրոս, այլ
թշնամւոյն. իսկ յորժամ Դարեհ
ի միջոյ բարձցի, եւ սպանանիցեմք
զթագաւորն, աշխարհն Ասիացւոց,
եւ ամենայն արեւելք ի մեզ անցա-
նիցէ, որ սպանաքս, եւ այն լինիցին
վարձք սպանութեանն: Նա իբրեւ
համոյ թուեցաւ խորհուրդն, վասն
նորին տուաւ եւ առաւ հաւատ:

Իսկ վասն Դիմնեայ իրացն, եւ
ոչ ինչ գիտեմ, եւ ի միտ առնում,
թէ որովհետեւ զայսմ ամենայնէ
խոստովան եղէ, չէ ինձ այն օգուտ
զի չիցեմ մտաւոր գործոյ նենգու-
թեանն բաժանակից: Նորա միա-
անգամ զտանջանսն մատուցանէին,

եւ նիզակօքն իսկ զեբրայանն եւ զաչան-
դան հարկանէին, եւ այնպէս սատի-
պեցին զի եւ զայնմ մնաւ է խոստա-
վան լինիցի։ Նոյա իբրեւ խնդրեցին
զի զկարգ նուիթեայ նենդութեանն
ի մէջ բերիցէ, եւ պատասխանի թէ
արամհետեւ այսպէս խնն թուէր թէ
բազում ժամանակս ունելոց են սա-
իւրեանս Բաշկարիք զթագաւորն,
երկեալ, զի մի դուցէ հայր իմ եւ թա-
նասանամեայ որ այնչափ զօրաց զօրա-
վար էր եւ այնքան կարասեայ պատհա-
պան, մեռանիցի ի ժամանակիս, եւ
ես մերկացեալ յայնչափ զօրութենէ
չկարիցեմ սպանանել զթագաւորն։
Վասն այնորիկ եւ ճեպեցի իսկ
յարժամ զգոյշ զօրութիւն ի ձեռին
խմուած, ի դլուխ հանել զխորհուրդն.
եւ եթէ չաւատայք թէ այսց խոր-
հրդոց խորհրդակից չէ հայրս, տա-
նու յանձն եւ զատանջանան թէպէտ եւ
ժոյժ չկարէ ունել։ Իսկ նոքա խօսե-
ցան ընդ միմեանս եւ ասեն, թէ արդ
քաջ կատարեցաւ հարցափորձ քըն-
նութեանն, եւ դարձան առ թա-
գաւորն։

Իսկ թագաւորն ի վաղիւ անդր
հրամայէր կարդալ զամենայն զօր ինչ

խոստովան եղեալ էր Փիղոտայ. եւ զՓիղոտաս գլխովին, քանզի չկարէր ինքնին ի ներքս մտանել հրամայեաց բերել: Իբրեւ նա զամենայն ինչ յանձն առնոյր, Դեմետրիոս որ յանդիմանեալ լինէր թէ կցորդ է մօտաւոր նենգութեանն, ի մէջ գայր. առ բազում հաստատութեամբ մտօք եւ առանց զանգիտելոյ ուրանայր զիրսն, թէ իմ չիք ինչ խորհեալ ի թագաւոր անդր. եւ զլկանան եւս մտադեւր առնոյր յանձն: Իսկ իբրեւ Փիղոտաս շուրջ հայէր տեսանել, ետես զԿաղիս զոմն, որ ոչ հեռի կայր ի նմանէ, հրամայեաց մօտ առ ինքն մատչել: Խոռովէր տարակուսէր այրն եւ իբրեւ առնոյր յանձն անցանել առ նա, առնո՞ւս, ասէ, յանձն զի ստեսցէ Դեմետրիոս եւ ես միաբանգամ ի տանջանս մտանիցեմ: Իսկ Կաղիս թալացաւ կաց անբարբառ. եւ Մակեդոնացիքն կարծէին եթէ զանպարտն պարտաւորս կամի կացուցանել Փիղոտաս, զի ոչ է Նիկոմաքեայ եւ ոչ ի Փիղոտայ իսկ յորժամ ի տանջանսն կայր, անուանեցաւ պատանեակն: Նոյն Կաղիս իբրեւ ետես զոստիկանս թա-

դաւողին զի կային շուրջ զիւրեաւ, խոստացաւ թէ Դեմետրիոս եւ ինքն իսկ գլխովին խորհեցան զայն խորհուրդ չարութեան: Ապա ամենեքին որոց անուանք ի Նիկոմաքեայ անուանեցան, ըստ գաւառական սովորութեանն, յետ նշանին տալոյ քարկոծ եղեն:

# Կ. ԿՈՒՐՏԵԱՅ ՌՈՒՓԱՅ
## ՎԱՍՆ ԳՈՐԾՈՑ
# ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԵԾԻ

---

Է ՏՊՐՈՒԹԻՒՆ

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. Աղեքսանդրոս հրամայէ սպանանել զԱղեքսանդրոս Ղիւնկեստէս զի էր յանցաւոր առ թագաւոր անդր ։ Ապա կացուցանէ դատաստան ի վերայ Ամիւնտեայ եւ Սիմեայ բարեկամացն Փիղոտայ · եւ նոքա սաստկութեամբ ջատագով իւրեանց արդարութեանն մտանեն ։

Բ. Ամինտաս եւ եղբայր նորա արդարացեալ ի բարեկամութիւն դառնան ։ Առաքէ զՊողիդամաս թագաւորն ի Մարաստան սպանանել զՊարմենիոն ։ Եւ այն լինէր պատճառք խռովութեան որ ցածեաւ վաղվաղակի ։

Գ. Աղեքսանդրոս նուաճէր ազգս բազումս, եւ անցանէր յեւթնեւտասան աւուր ընդ Կաւկաս զօրօք իւրովք ։

Դ. Բեսոս սահմանէ ի հացի տալ մարտ պատերազմի ընդ Աղեքսանդրի եւ չառնու յանձն զքաջ խրատն Կոբարեայ ։ Յայնմ ժամանակի հասանէր Աղեքսանդրոս ի գաւառն Բակտրիացւոց եւ անդ լսէր նա զապստամբել Յունացն եւ զմեռանել Սատիբարզանեայ որ ի մենամարտիկ կռուի մեռաւ ։

Ե. Անցանէ գունդն Աղեքսանդրի քաջութեամբ ընդ Ոքսոս գետ ։ Զբեսոս ձերբակալ արարեալ խաբէութեամբ ածեալ կացուցանեն առաջի Աղեքսանդրի որ

տայ զնա Ոքսաթրեայ եղբօր Դարեհի զի ի խաչ հանիցէ ։

Զ. Աղեքսանդրոս առնու քաղաքս բազումս մտադիւրութեամբ բարբարոսացն եւ Մակեդոնացւոցն ։ Տայ շինել քաղաք մի Աղեքսանդրիա անուն առ Տանայիս գետով եւ վաղվաղակի զգործն ի գլուխ հանէ ։

Է. Աղեքսանդրոս մինչ դեռ տակաւին խօթ էր ի վիրացն, խորհուրդ առնոյր ընդ իւրոցն երթալ տալ մարտ պատերազմի ընդ Սկիւթացիսն ։ Արիստանդրոս կազմէ ըստ կամաց թագաւորին զնշանակ ըղձութեանն զոր յընդերս զոհիցն եգիտ ։ Մենեդեմոս ի պարտութիւն մատնեալ սատակի երկուք հազարօք հետեւակացն, եւ երեքարիւր հեծելովք Մակեդոնացւոց ։ Աղեքսանդրոս ծածկէ իմն զպարտութիւնն ։

Ը. Մինչ դեռ կազմեալ պատրաստէր զօրն ի պատերազմ, հրեշտակք ի Սկիւթացւոց հասանէին, եւ խօսին բանս գեղեցիկս խաղաղութեան ընդ Աղեքսանդրի ։

Թ. Աղեքսանդրի առաքեալ յետս ըզպատգամաւորսն անցանէ ընդ Տանայիս, տայ պատերազմ ընդ Սկիւթացւոց, եւ առնէ մարդասիրութիւն պարտելոցն ։

Ժ. Անհնարին քաջութիւն ազնուականաց Սոգդիացւոցն ։ Պատուհաս Բեսեայ ։ Ստուարանայ զունդն Աղեքսանդրի նորոգ զօրօք ։

ԺԱ. Աղեքսանդրոս առնու զամուր եւ զանառիկ քաղաքն զՊետրա ։

## Կ. ԿՈՒՐՏԵԱՑ ՌՈՒՓԱՑ

## ՎԱՍՆ ԳՈՐԾՈՑ ԵՒ ԱՐՈՒԹԵԱՆՑ

# ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԵԾԻ

## ԱՐՔԱՅԻ ՄԱԿԵԴՈՆԱՑՒՈՑ

## Է ԴՊՐՈՒԹԻՒՆ

Ա. ԹՒԷՊԷՑ եւ համարէին իմն զօրքն թէ յիրաւի եւ յարժանի կրեաց տանջանս Փիղոտաս յորժամ նորոգ իմն ի մէջ եկեալ կային նշմարանք գործոց նորա, յետոյ իբրեւ թշուառացաւ, թշնամութիւնն ի գութ դարձաւ: Խանդաղատեցուցանէր զնոսա մեծապայծառ փառաւորութիւն երիտասարդութեան տիոյն եւ ծերութիւն հօրն նորա եւ անկանել յորդւոց իւրոց: Սա նախ հորդեաց զաշխարհն Ասիացւոց առաջի թագաւորին հաղորդ եւ հաւասարորդ ամենայն վշտաց նորա, եւ ցանգ զմեւս թեւն ինքն ունէր ի ճակատամարտի, եւ բարեկամ քան զամենայն բարեկամսն էր նա Փիղիպպեայ, եւ այնպէս իսկ հաւատարիմ Աղեքսանդրի,

զի ոչ զայլ ոք քան զնա ընտրեաց
ապաստաւոր յորժամ զԱտտաղոս կա-
մեցաւ սպանանել: Զայս ամենայն
խոկացեալ զմտաւ ածէին զօրքն եւ
խռովութեան բարբառաք ի թագաւոր
անդր հառաչէին: Նա ոչ ինչ ի
բանիցն զանգիտեալ զարհուրէր, եւ
զի հմուտ էր, թէ չարիք դատար-
կութեանն աշխատութեամբ փարա-
տին, անդէն տայր հրաման զի ամե-
նեքին դայցեն հատանիցեն ի գաւիթ
արքունական բնակութեանն: Իբրեւ
ազդ եղեւ նմա թէ ամենեքին հա-
մագունդ հասեալ կան, ել եւ կա-
մէր խօսել: Սփարիաս ըստ յառա-
ջագոյն կարգելոյ որ առանց կար-
ծեաց է, մատուցեալ սկսաւ խրն-
դրել զի Աղեքսանդրոս զենեկեստա-
ցի. որ յառաջ իսկ բազում ժամա-
նակս քան զՓիղատոս սպանանել
կամեցաւ զարքայ, ի մէջ մատուսցի:
Ամբաստանեցաւ նա յերկուց գուշակաց
անտի, որպէս կանխագոյն իսկ ասա-
ցաք, եւ երեք աւուր էին զի կայր նա
ի դիպահուղ: Յայս եւս եղեւ թէ
միաբանեալ է նորա ընդ Պաւսանեայ
ի սպանութիւնն Փիղիպպեայ. բայց
քանզի նախ ինքն ազդեալ էր Աղե-

քսանդրի ի թագաւորէն նորա ի պատժոցն իմն ապրեցաւ եւ ոչ ի պատժապարտութենէն։ Եւ յայնժամ բարեխօսութիւնն Անտիպատրեայ աներոյ նորա յամեցուցանէր իմն զարդար ցասումն թագաւորին։ Բայց միւս անգամ զարթուցաւ ցաւն որ թմրեալ կայր. քանզի հոգք մօտաւոր վտանգին զյիշատակս առաջնոց վշտացն նորոգէին։ Այնուհետեւ գայ ի դուրս Աղեքսանդրոս ի պահէ անտի, եւ հրաման առեալ խօսել, թէպէտ եւ երեքամեայ ժամանակաւ խորհեալ էր տալոյ պատասխանի, սակայն վարանօք եւ կասկածանօք եւ դողալով, սակաւ ինչ յայնցանէ զոր տողեալ էր, բարբառէր, այլ ոչ միայն ուշն վերացաւ այլ եւ անմիտացեալ յապշութիւն կործանեցաւ։ Բայց ամենեցուն իսկ յայտ էր, այնու հետեւ թէ դանդաչելն նշանակ խղճի մտացն էր եւ ոչ եթէ տկարութիւն ինչ ուշոյ յիշատակացն։ Վասն այնորիկ որ մօտն կային առ նմա անդէն նիզակօք հարեալ սատակեցին մինչ դեռ տակաւին ընդ մոռացութեանն ողոքէր։

Իբրեւ հանաւ ի բաց գիւղէն, հրաման տայր թագաւորն զԱմինտաս եւ զՏիմիկաս ի ներքս ածել. քանզի Պողեմոն որ կրսերագոյն էր յեղբարցն, իբրեւ գիտաց թէ ի ըկանս է Փիլոտաս, ապրեալ էր փախուստեայ: Աղքա սիրելի քան զամենայն բարեկամս էին Փիլոտայ, ի մեծ եւ ի պատուական սպասաւորութիւնս պաշտաման մանաւանդ նորին բարեխօսութեամբ յառաջադէմ մատուցեալ էին. եւ մինչէր թագաւորն թէ մեծաւ փութով եւ հոգաբարձութեամբ նորա բարեկամացն նոքա նմա, եւ համարէր թէ եւ այոց վերջին խորհրդոց խորհրդակից են նոքա: Այլ իսկ, ասէ, կասկածանօք էի ես ընդ նոսա առեալ թուղթ ի մօրէ իմմէ, յորում պատուիրէր ինձ զգուշանալ կենաց իմոց ի սոցանէ: Նամլ. ես չկամէի հաւատալ չարաց իրաց, բայց այժմ ի յայտնի իսկ գուշակութեանց հասանեալ հրամայեցի կապել: Քանզի միով աւուրբ յառաջագոյն քան զյայտ լինել Փիլոտայ իրացն, գիտեմ թէ էին նոքա ընդ նմա ի ծածուկ: Նաեւ եղբայրն

խակ, որ պղծեալ գնաց փախստեայ, յորժամ լինէր հարցափորձ զՓիլոտեայ, յայնս արար զպատճառս փախըստեանն: Նոյն փոքր մի ինչ ժամանակ յառաջագոյն արտաքոյ քան զընդդիմականն սովորութիւնն իւր եւ ի պատճառս պաշտաման մեծարանաց, հեռացուցեալ բացագոյն զայլսն, եկին մերձեցան ի կողս իմ առանց իրիք պատճառանաց. Եւ զիս զարմանք կալան զի ոչ եթէ բնաւ կարգի ինչ իւրեանց այնպիսի սպասաւորութիւն հարկանէին, եւ իմ զահի հարեալ յաղմկէ նոցա վաղվաղակի դարձայ ի զինակիրսն որ առընթեր երթային: Նոյն յայսր վերայ, յորժամ Անտիփանէս դպիր հեծելազօր զօրացն առաջեաց ասել Ամփինեայ, միով աւուրբ կանխագոյն քան զյայտնել իւրացն Փիլոտեայ, զի երիւարս յերիւարաց անտի իւրոց բնաւ սովորութեանն տայցէ այնոցիկ որոց զերիւարս իւրեանց կորուսեալ էր, հպարտագոյնս տուեալ պատասխանի առէր. Եթէ չդադարեսս դու միրացդ յայդցանէ, վաղ առցես ի միտ ո ես իցեմ: Այնպիսի ժպրհութիւն յանդգնութեան բանից որ յիս ձգէին,

չէ ինչ այլ ինչ բայց չարաց խորհրդոց դուշակ եւ յայտարար։ Իթէ արդարեւ ճշմարիտ իցէ այդ ամենայն, նմին պատճառի արժանի են նոքա զոր Փիղոտաս կրեաց, ապա թէ սուտ իցեն, տայցեն պատասխանի։ Յետ այնորիկ ի մէջ մատուցեալ Անտիփանէս զերիվարացն չտուելոց եւ զսպառնալեացն ամբարտաւանութեամբ յաճախելոց յայտ առնէր։

Ապա իբրեւ լինէր թողութիւն խօսելոյ, սկսաւ ասել այսպէս Ամինտաս. Եթէ ոչինչ մնաս իցէ թագաւորին, խնդրեմ զի մինչ դեռ խօսիմս, ազատ իցեմ ի կապանաց։ Զերկոսին եւս քակել հրամայէր թագաւորն. եւ յորժամ ցանկացաւ Ամինտաս զի եւ զինակրի կերպարանք տայցին նմա, նիզակ հրամայէր տալ։ Իբրեւ առ ձախու ձեռամբն զնիզակն, ի բաց գնացեալ ի տեղւոջէն յորում վայրի սակաւիկ մի ինչ յառաջ անկեալ դնէր դիակնն Աղեքսանդրի. Որպիսի ինչ անցք եւ անցանիցեն, ասէ, ընդ մեզ, սակայն խոստովան լիցուք, արքայ, եթէ աջող ինչ կատարած լինելոց իցէ, այն ի

քէն լինելոց է մեզ, ապա թէ չար
ինչ՝ զայն բախտին համարեսցուք։
Առանց կանխակալ դատաստանաց
խօսիմք զանձանց մերոց մարմնովք
եւ ոգւովք ազատացեալք։ Դու կեր-
պարանս եւս զայն դարձուցեր ի մեզ
որով սովոր էաք շրջել ընդ քեզ։
Յարդարութենէ դատաստանաց մե-
րոց չկարեմք զանգիտել, դադարես-
ցուք երկնչել ի բախտէ անտի։ Բայց
դու աղէ թոյլ տուր ինձ այնմ նախ
տալ պատասխանի, որ յետոյ ուրեմն
ընդդէմ բախեցաւ մեզ։ Մեք ոչինչ
գիտեմք զանձանց մերոց, թէ ընդ
հակառակս ինչ քեզ խօսեցեալ իցէ
մեր, արքայ։ Ասէի իսկ թէ վաղ
իսկ յաղթեալ իցէ քո նախանձու
եւ ի վեր իցես քան զխանտաւորու-
թիւն, եթէ չգտցէ ինչ վտանգ ի
միջի, թէ գուցէ եւ յայլոց եւս չա-
րախօսութեան բանից ողջք բանիւք
զանձն կարծիցիմ արդարացուցանել։
Այլ թէպէտ եւ խիստ ինչ բան լսելի
լինիցի ի զօրականէ քումէ կամ յոր-
ժամ ի բանակի նուաղիցի եւ վաս-
տակաբեկ լեալ իցէ, կամ ի ճակատու
ի տագնապի կայցէ, կամ ի վրանի
խօթ իցէ եւ վիրաւոր իցէ, այսպէս

իսկ արժան էր վասն գործոյ քաջութեանն նոցա զի նեղութեան ժամանակին այնորիկ զբանսն գրէիր եւ ոչ ժամացն սրտի: Յորժամ չար ինչ պատահիցէ, ամենեքին պատժապարտ են, քանզի ձեռս անձամբք յանձինս ի մարմինս մեր մխեմք եւ արդարեւ ոչ տեսանեմք զմարմինս մեր. այնուհետեւ թէ հարք որդւոց պատահեն, ապաշնորհք եւ թշնամիք լինին: Նմին հակառակ յորժամ պարգեւօք մեծարիցիմք եւ վարձուք հատուցմանցն լցեալ գոհանայցեմք, ո՞ է որ մեզ ժոյժ ունել կարիցէ. ո՞ է որ զուրախութիւն սրտից մերոց ի չափու ունել մարթայցէ: Այնոցիկ որ ի պատերազմի երթայցեն, ոչ ցասումն չափով է, եւ ոչ ուրախութիւնն: Յամենայն իսկ ցանկութիւնս ուժգինս ձգեալ երթամք: Պարտուեմք եւ յաղթեմք, ողորմիմք եւ ցասնումք որպէս ինչ զինչ իրքն որ առաջի կան ազդեցուցանեն. Մերթ կամիմք ի Հնդիկս երթալ եւ յՈվկիանոսն, մերթ զկանայս եւ զորդիս եւ զհայրենիս գաւառ մեր յիշեմք: Բայց այս ամենայն խորհրդոց եւ բանից այնոցիկ որ ընդ միմեանս

խօսիցին, փոխն զրաւ տանիցէ յոր-
ժամ հնչեալ նշանակիցէ, միանգա-
մայն յիւրաքանչիւր գունդս ընթա-
ցեալ յօրինիմք, եւ ցասուցմն բար-
կութեանն որ ի խորանին գրգռեցաւ-
այն ի գլուխս թշնամեացն թափի։
Նորանի թէ եւ փիղոտայ բանիւք չափ
միայն էր մեղուցեալ։ Նստատին յայն
եկից վասն որոյ պատժապարտն իսկ
եմք։

Զբարեկամութենէ որ էր մեր ընդ-
փիղոտայ ոչինչ եմ յուրաստ, եւ
խոստանամ թէ եւ խնդրեցաք եւս
զնա տանել մեզ բարեկամ, եւ յա-
ճախագոյն պտուղս ի բարեկամու-
թենէ անտի նորա շահեցաք։ Մի-
թէ ընդ այն ինչ զարմացեա՞լ իցես,
թէ զՊարմենիոնի որդի, զայնր՝ զոր
կամեցար զի իցէ քեզ պատուական,
զփիղոտաս որ քան զամենայն բա-
րեկամսն քո առաւել էր պատուեալ,
պատուեցաք մեք։ Եթէ զճշմարտու-
թիւն կամիս լսել, արքայ, այոր ատա-
դնալի պատճառք դու ես։ Զի՞
այլ ոք նա էր, որ կարդեաց թէ որք
թագաւորին կամիցին հաճոյ լինել,
առ փիղոտաս ընթասցին։ Նովաւ
եւ ի ձեռն նորա յայդ աստիճան բա-

րեկամութեան քո հասեալ եմք, զի այնպիսի ոք էր նա առաջի քո, զի եւ բարեկամութեան նորա ցանկալ կարէաք, եւ ի սրտմտութենէ նորա երկնչել։ Ո՞չ ապաքէն վասն բանից քոց ամենեքին երդմնի եղեաք, եւ առաջնորդէիր բանիցն եւ մեք զկնի կցէաք թէ թշնամիս եւ բարեկամս զոր դու ունիցիս զնոյն եւ մեք կալցուք։ Արդ այսպէս երդմնի եղեալ դիւցապաշտութեամբ, հեռանա՞լ ինչ եւ ուծանալ պարտ էր յայնմանէ զոր դու նախամեծար քան զամենեսին առնէիր։ Արդ եթէ այս վնաս է, ապա սակաւաւորս ունիս որ առանց յանցանաց իցեն, մանաւանդ թէ եւ ոչ զոք։ Քանզի կամէին իմն ամենեքին Փիղոտայ բարեկամս լինել, բայց ոչ ամենեքին որ կամեցանն, կարացին լինել. ապա եթէ յայնցանէ որ իրազէտ չարեաց գործոց իցեն չընտրես զայս բարեկամս, եւ ոչ ի բարեկամաց անտի զատանիցես զայնոսիկ որ բարեկամն կամեցան լինել։ Իսկ արդ զի՞նչ նշանակ ի մէջ բերիցէ յայտ առնել թէ իրազէտ իցեմք չարեացն։ Որպէս ինձ թուի այն իսկ՝ զի միով աւուրբ յառաջա-

դոյն ընտանեբար եւ առանձինն խօսեցաւ նա ընդ մեզ: Ո՛չ ես չկարէի զանձն արդարացուցանել թէ կանխագոյն միով աւուրբ էր իմ ինչ փոխեալ յառաջնումն կարգէ անտի իմմէ: Բայց արդ եթէ որպէս զամենայն աւուրս առնէաք արարաք եւ այն օր վասն որոյ կասկածն է, սովորութիւնն ջնջեսցէ զյանցանացն դատախազութիւն:

Բայց երկուարս Անտիփանեայ չտուաք: Եւ միով աւուրբ յառաջագոյն քան զպայտն լինել իրացն Փիղոսայ այս անցք անցին ընդ Անտիփանէս. սա եթէ զմեզ ընդ կասկածանօք կամի արկանել զի չտուաք այն օր երկուար, ինքն զիւր անձն, վասն զի երկիւղար խնդրեաց չկարէ արդարացուցանել: Բանզի յերկուցունց կողմանց իմն յանցանք են, եւ այնր որ առ իւր պահեաց, եւ այնր որ խնդրեաց, մանաւանդ թէ առաւել անմեղ նա է որ զիւրն չտայ, քան զայն որ զայլոցն խնդրէ: Դարձեալ տասն միայն երկուար ունէի, արքայ, եւ ի տասանց անտի զութ բաշխեաց Անտիփանէս այնոցիկ որոց զիւրան կորուսեալ էր: Եւ համօրէն

երկու երիւար ունէի, իբրեւ զնոսա եւս կամեցաւ հանել հպարտն եւ ամբարտաւան, մանաւանդ թէ անիրաւ իսկ եւ անօրէն քան զամենայն մարդիկ, հարկ համարեցայ առ ի պահել զի մի հետիոտս երթայցեմ ի պատերազմ: Եւ յայնմանէ չեմ ինչ յուրաստ թէ ազատօրէն համարձակ խօսեցայ ընդ ժանտին որոյ այս գործ միայն է ի պատերազմի, զի զայլոց երիւարս բաշխիցէ այնոցիկ որ պատերազմելոց իցեն: Յայն իմն հասաք զի ցուցանիցեմ զերաւունս բանից իմոց Աղեքսանդրի եւ Անտիփանեայ միանգամայն:

Այլ մայր քո գրեաց զմէնջ թէ թշնամի իցեմք քո: Երանի թէ իմաստնագոյնս էր հոգացեալ վասն որդեկին իւրոյ, եւ ոչ թէ տարապարտ կարծիս առ յոյժ հոգոցն յաճախէր: Զի՞մ ոչ անդէն զպատճառս երկիւղին առ նմին յաւել. ընդէ՞ր զառաջնորդ իւրացն ոչ եցոյց: Յի՞նչ գործոց կամ յորո՞ց բանից մերոց կարծիս առեալ այնպէս կակածանաց թուղթ գրեաց քեզ: Եղուկ եմ ես, զի թերեւս լաւ իսկ եւ առանց վտանգի իցէ լուռ լինել

քան եթէ խօսել։ Բայց որպէս ինչ զինչ լինելոց իցէ, սակայն լաւ իսկ համարիմք զի պատասխանատուութիւն իմ չթուիցի քեզ հաճոյ քան եթէ ընծայութիւն դատաստանի իմոյ։ Գիտես իսկ զոր ինչ ասելոց իցեմ. քանզի յիշես իսկ թէ յորժամ առաքեցեր դու զիս բերել զօրս ի Մակեդոնացւոց աշխարհէն, ասացեր դու ցիս թէ բազում կան պատանեակք հուժկուք ի տան մօր քոյ։ Պատուիրեցեր դու ինձ մի ընդդէմ հայել բաց ի քէն, եւ զայնոսիկ որ զինուորել չկամիցին, ածել առ քեզ։ Զոր եւ վճարեցի իսկ, եւ այնպէս որպէս ինձ չէր օգուտ հանի զհրամանն քո ի գլուխ։ ԶԳորգի եւ զՀեկատէոս եւ զԳորգատաս անուանի բերի քեզ, եւ վարիս գործովք քաջութեան նոցա։ Իսկ արդ զինչ քան զայս անիրաւ կայցէ, զի ես որ եթէ չէր իմ հնազանդեալ քեզ, յիրաւի եւ յարժանի տայի վրէժս, այժմ մեռանիցիմ վասն զի հնազանդեղէ։ Զի ոչ ինչ այլ ինչ պատճառք կան չարախօս զմէնջ լինելոյ մօրդ, բայց այս զի զքո օգուտն նախամեծար քան զբարեկամութիւն կնոջն

տարարաք։ Վեց հազար հետեւակաց Մակեդոնացւոց եւ Ո հեծեալ բերի, յորոց մաան մի չէր դալոց զիմ կնի, եթէ կամեցեալ էի ներբել այնոցիկ որ ընդ զինուորութիւն չկամէին։ Ապա զայսր զհետ դայ, թէ վասն զի նա վասն այսորիկ ցասուցեալ է մեզ, ցածուցեա դու զնա զի մայր է նա քո, եւ զի դու եառուր զմեզ ի ցասումն նորա։

Բ. ՄԻՆՉ դեռ զայն խօսէր Ամբիոնտաս, դէպ եղեւ զի եկին հասին ի վերայ որք զեղբայր նորա զՊադեմոն՝ զորմէ յառաջադոյն ասացաւ, հասեալ ի փախստեանն կալեալ առեալ բերէին։ Հազիւ հազ թէ ցածուցին զամբոխն որ թշնամութեամբ քարինս ըստ խրոում ամբոխութեան ի նա կամէր արկանել։ Իսկ նորա ոչ ինչ զանդիտաեալ. Ոչ վասն իմ ինչ, ասէ, աղաչեմ ներել, միայն մի փախուստն իմ վնաս ինչ համարեսցի անմեղական մնաց եղբարցն իմոց։ Եթէ չմարթի անմեղ մնաց նոցա առանց ազգատանաց երեւել, այն իմ մեղ է։ Ողջա վասն նորին իսկ առաւելագոյն արդար երեւին, զի զինէն վասն զի փախեայ, կասկած

եղեւ։ Նաեւ իբրեւ նա զայս խօսեցաւ, յանձն առ ամենայն բազմութիւնն. եւ արտասուօք յամենեցունց վիճել սկսան, եւ այնպէս յանկարծակի ի գութ դարձան զի ի նա առաւել յանկէին որ առաւելն մնաս գործեալ էր։ Զի պատանեակ էր ի չափ հասեալ յառաջնում ծաղկի տիոցն, որ յաւէտ անտի օտարին ընդ հեծեալսն որ խառնվեցան ի տանջանացն Փիղոտայ, փախուցեալ էր. իբրեւ թողեալ լքաւ յուղեկցաց անտի եւ ի վարան մնեալ խորհէր եթէ դառնայցէ արդեւք յետս եթէ փախուցեալ երթայցէ, որ զհետն պնդեալ էին, հասին կալան։ Առ լալ սկսաւ եւ զերեսս կոծել, արտամեալ ոչ ընդ ինքն ինչ, այլ ընդ եղբարսն որ վասն իւր կային ի վտանգի։ Նաեւ ոչ միայն զժողով բազմութեանն այլ եւ զթագաւորն իսկ գլխովին ի գութ էր դարձուցեալ, բայց եղբայր նորա միայն կայր առանց խանդաղատելոյ, եւ ահագին դիմօք երեսացն ընդ նա հայեցեալ. Յայնժամ, ասէ, անմիտ, արտասուել պարտ էր, յորժամ մտրակ ի կուշտ երիվարին առնէիր, թողեալ լքեալ զեղբարս քո եւ

եղեալ ուղեկից այնոցիկ որ թողեն եւ գնացին։ Զուսուականն, յո՞ կամ ուստի՞ փախչէիր։ Այնպիսի ինչ գործ գործեցեր, զի որ պատմապարտս եմ գլխոյ՝ զդատախազի բանս ի կիր արկանիցեմ։ Նա խոստովան լինէր թէ մեղաւ եւ առաւել յեղբարսն իւր քան յանձն իւր գլխովին։ Այլ անհնարին արտասուք եւ գոչումն յաճախէին, որով զինեամ յօժարութեանն ամբոխ բազմութեանն յայտ առնէր։ Միաբան առ հասարակ բարբառ հնչէր թէ խնայեսցես արանց արդարոց եւ քաջաց։ Նոյն իբրեւ եղեւ մուտ ողորմութեանն, միաբանգամայն յատն կացին բարեկամքն եւ լալով աղաչել սկսան զթագաւորն։ Իսկ թագաւորն իբրեւ լռութիւն լինէր. Եւ ես, ասէ, ինքնին արձակեմ զԱմինտաս եւ զեղբարս նորա։ Բայց դուք, ով պատանեակք, լաւ համարիմ եթէ առնիցէք մոռացօնս երախտեաց իմոց, քան եթէ յիշիցէք զտագնապ վտանգի ձերոյ։ Այնպէս հաւատարմութեամբ դարձջիք այսորէն ի սէր բարեկամութեան իմոյ, որպէս ես ի ձեզ։ Եթէ իմ չէր յուզեալ եւ խնդրեալ զամ-

բաստատանութիւնն որ վասն ձեր էր, մարթ էր կասկածել ի լաւութենէ իմմէ։ Ոսկելաւագոյն այն է արդարանալ քան կարծեօք եւ կասկածանօք շրջել։ Օմնաւ ածէք թէ չիք ոք որ արձակել մարթիցի, բայց այն որ առայցէ դատապարտութեանն պատասխանի։ Նու դու Ամենասա թող եղբօր քում։ Նու այն եղիցի նշանակ մտաց քոց թէ արդարեւ միաբանութեամբ հաշտեցար ընդ իս։

Ըսպա յարժամ արձակեաց զժողովն, զՊողիկրատեաս հրամայէր կոչել։ Էր նա կարի սիրելի Պարմենիոնի, եւ առ նմին սովոր էր կալ ի ճակատու։ Ոտէպէս եւ ի խիղճ մտացն յուսացեալ եկն յարքունիսն, սակայն իբրեւ հրաման առ ի մէջ մատուցանել զեղբարսն իւր որ կարի մանուկ էին, եւ ոչ ծանօթ թագաւորին վասն մատաղ տիոցն, ի յուսոյ անկեալ ի վարսն մտեալ ասարակաւսէր, զանգիտել եւ դողալ սկսաւ, եւ բազում անգամ զայն առաւել խորհէր, թէ զինչ այն ինչ իցէ որ զնոսա նմա ատանել կարիցէ, եւ ոչ եթէ զայն որովք արդարանալն կարիցէ։ Ոսկին բերին զնոսա կապարճա-

կիրքն, որոց պատուէր տուեալ էր, եւ հրաման տայր Պողիդամեայ, որոյ արիւն առ ահին հատեալ էր՝ մօտագոյնս մերձենալ. եւ ի բաց հանեալ զամենեսին. Ի վերայ ամենեցուն մեր, ասէ, միանգամայն խորհուրդ չարութեան խորհեցաւ Պարմենիոն, մանաւանդ յիմ եւ ի քո վերայ, եւ բարեկամութեանն պատճառանօք պատրեաց զմեզ: Արդ իմ ի մտի եդեալ է զքեզ սպասաւոր առնել, զի ունիցիս զնա եւ պատժիցես, տես դու որչափ հաւատարիմ համարիմ զքեզ: Եւ մինչ դեռ զայս գործ վճարիցես, եղիցին եղբարքն քո ի պատանդս: Եւ զնա դու յաշխարհն Մարաց, եւ տար դու առ նախարարս իմ թուղթ գրեալ իմով ձեռամբ: Բայց արագութեան պէտք են, զի քան զարագութիւն համբաւոյ կանխեալ հասանիցես: Կամիմ զի գիշերի հասանիցես դու անդր, եւ ի վաղիւ անդր որ ինչ գրեալ իցէ հան ի գլուխ: Եւ առ Պարմենիոն եւս տարցիս թուղթս, մի յինէն, եւ միւս եւս գրեալ յանուն Փիլոտայ: «Նշան մատանւոյ նորա առ իս կայ: Եթէ հաւատասցէ հայր նորա թէ

յորդւոյ անտի խուռն դրօշմեալ է, յորժամ զքեզ եւս տեսանիցէ, ոչ յիմիքէ երկնչիցի այնուհետեւ։

Պաղեստինա իբրեւ ապրեցաւ յայնպիսի կասկածանաց, մտադիւրադոյնս քան որչափ ինչ ի նմանէ պահանջէր, վճարել խոստանայր։ Նա զտեալ զօվութիւն ի թագաւորէն եւ քաջալերեալ պարգեւացն խոստմամբք, զհանդերձն ի բաց եդեալ զոր զգեցեալ էր, եւ ագանէր արտաքացի։ Նա տուան նմա ուղեկիցք այլք երկու արտաքացիք, որոց կանայք եւ մանկունք կային ի պատանդս առ թագաւորին, իբրեւ կապանս հաւատոյ։ Նա երթեալ ուղտուք ընդ անապատ տեղիս եւս վասն երաշտութեանն, յետ մետասան աւուր եկին հասին յո դէմ եդեալ էին։ Նա մինչ չեւ պատմեալ էր զալուստ նորա, միւսանգամ առ Պաղեստինաս հանդերձ մակեդոնացի, եւ եկն եհաս ի խորանն Աղէքսանդրի ի չորրորդում պահու գիշերի, եւ Աղէքսանդրոս էր հազարապետ արքունի։ Նա տուեալ զթուղթն խորհեցան առաւօտու երթալ ի միասին առ Պարմենիոն։ Նանգի եւ

ոյլոց եւս բերեալ էր թուղթ ի թագաւորէ անտի: Նա եւ իբրեւ կամէին գալ առ Պարթենիոն, զորս ետուն Պարթենիոնեայ թէ Պողիդամաս եկեալ է: Նա զուարճանայր յանձին իւր թէ բարեկամ նորա եկեալ էր, եւ ցանկայր եւս գիտել թէ զինչ գործ գործիցէ թագաւորն, քանզի բազում ժամանակս չէր առեալ նորա գիր ի թագաւորէն, եւ հրամայէր խնդրել զՊողիդամաս: Իջաւանք աշխարհին այնորիկ վայրս ինչ մեծամեծս եւ գեղեցիկս ունէին մատաղատունկ անտառօք. եւ այն էր մանաւանդ ուրախութիւն եւ բերկրութիւն թագաւորացն եւ նախարարացն: Օգնայր Պարթենիոն յանտառին ի մէջ զօրավարացն, որոց հրաման առեալ էր ի թղթի անդ թագաւորին, զի ապաւինեսցեն: Նա եւ սահմանեալ էր նոյա ժամ իւրացն վճարելոյ յորժամ Պարթենիոն ըղթուղթն առեալ ի Պողիդամայ սկիզբն առնիցէ ընթեռնուլ: Պայր Պողիդամաս ի հեռաստանէ, իբրեւ ետես զնա Պարթենիոն, ընթացաւ դիրկս արկանել զնովաւ, եւ երեաքն զնշանակ ուրախութեանն ցուցա-

նէին, եւ ուրախ լինէին ընդ մի-
մեանս. եւ Պողիքարպոս այր նմա
ձեռն ի ձեռն զԹուղԹն գրեալ ի
Թագաւորէն: Պարմենիոնի քակեալ
զկապս Թղթոյն հարցանէր Թէ զինչ
Թագաւորն գործիցէ: Նա այր
պատասխանի Թէ ի Թղթոյ այտի
իմասցիս: Իբրեւ ընթերցաւ Պար-
մենիոն. Պատրաստ է, ասէ, Թա-
գաւորն արշաւան ասպատակի ի վե-
րայ Արաքոսիացւոց: Այր քաջ է,
ասէ, եւ առանց դադարելոյ: Բայց
այժմ ժամ է խնայել եւ ղընդալ ի
կեանս իւր յետ այնչափ փառաւոն
ստանալոյ: Ընթեռնոյր եւ զմիւս
եւս Թուղթ որ գրեալ էր յանուն
Փիղոտայ ուրախութեամբ որպէս ի
գիմացն մարթ էր ճանաչել: Յայն-
ժամ հար զկողս նորա Կղէանդրոս
սրով, ապա հար զպարանոց նորա.
եւ այլքն սկսան խոցոտել յորժամ
անշունչ եւս անկեալ դնէր:

Իսկ զինակիրքն որ առաջի ան-
տառին կային, իբրեւ զսպանու-
Թիւնն իմացան, եւ զպատճառանն
չգիտէին, պնդեալ ի բանակն հա-
սանէին եւ խռովութեամբ զդէպս
ասուեալ զզօրսն դրդուէին: Նոքա

վառեալք միանգամայն խուռնըն-
թաց առհասարակ յանտառն գի-
մերն, յորում վայրի սպանութիւնն
գործեալ էր. եւ բարբառեալ ասէին
այսպէս, թէ Պողիդամաս եւ այլք
որ նմին յանցանաց հաղորդքն իցեն
տացին ի ձեռս, ապա թէ ոչ զորմն
որ զանտառաւն է կործանեսցուք,
եւ ամենեցուն ձեր արեամբ եւ
ապաժուժաւ արասցուք պատարագ-
քաւութեան զօրավարի մերում:
Աղէքսանդրոս զգլխաւորս ի զօրակա-
նացն հրամայէր ի ներքս թողուլ,
եւ ընթեռնույր զթուղթ թագաւո-
րին որ առ զօրսն գրեալ էր, յորում
կայր ներողութիւնն զոր խորհեցաւ
Պարմենիոն ի վերայ թագաւորին,
եւ աղաչել թագաւորին զի պաշտ-
պանեսցեն նորա նմա: Ապա իբրեւ
յայտնի եղեն կամք թագաւորին,
թէպէտ եւ զայրացուածն ոչ, սա-
կայն խռովութիւնն հանդարտեցաւ:
Նազովմք եղեն մի ընդ միոջէ ի բաց
եւ մնացին սակաւաւորք, որք աղա-
չէին դոնէ թողուլ զդին նորա թա-
ղել: Զաւրին զայն յանձն բազում
ժամս, քանզի երկնչէր Աղէքսանդրոս
թէ դուցէ ցասուսցէ զթագաւորն:

Ապա իբրեւ պնդեալ աղաչէին, զմտաւ ած թէ զպատճառս խռովութեանն պարտ է ի մէջոյ ի բաց բառնալ, զկառափն ի բաց կտրեալ, թողլ տայր զդին թաղել։ Իսկ զգլուխն առաքեցաւ թագաւորին։

Այս էր վախճան Պարմենիոնեայ, որ այր երեւելի էր ի պատերազմի եւ ի խաղաղութեան։ Բազում ինչ նա գործ գործեաց աջողութեամբ առանց թագաւորին, իսկ թագաւորին առանց նորա եւ ոչ ինչ։ Հաճեաց նա զմիտս բախտաւոր թագաւորի, որ եւ զամենայն ըստ չափոյ բախտի իւրոյ խնդրէր։ Եւթանասնամեայ էր եւ զերիտասարդ զօրավարք եւ բազում անգամ՝ զխառնաղանճ զօրականին իսկ գործ վճարէր. իմաստուն խորհրդով, հզօր ձեռամբ, սիրելի իշխանաց, եւ հաճոյ ամբոխի զօրացն։ Մարթի իմն տարակուսել երկմտել թէ արդեւք այս ամենայն արկ զնա ի թագաւորութեանն ցանկութիւն, եթէ ընդ այնպիսի կասկածանօք միայն արկ զնա. քանզի եւ ի սկզբանն իսկ յորժամ առաւելն մարթէր յայտնի լինել իրացն, երկբայութիւն եղեւ, թէ արդարեւ ճըշ-

մարխա խօսեցաւ Փիզոստոս յորժամ ի վերջին տանջանացն ի պարտութեան մատնեցաւ, զի եւ արգիւնք իւրացն չկարէին զտանեան տանել հաւատարիմս, եթէ սուտ բանիւք կամեցաւ զըրաւ տանել տանջանացն։

Խորհեցաւ Աղեքսանդրոս զայնոսիկ որոց համարձակ արտանջեալ էր զմահուանէն Պարմենիոնի, բաժանել յամենայն զինդէ եւ զատուցանել ի գունդ մի, եւ տայր նոցա զօրավար զՂեւոնիդաս, եւ էր նա ընտանեցեալ յայժ երբեմն ընդ Պարմենիոնեայ։ Նա գրեթէ նոքին իսկ էին որք եւ յառաջնմէ թշնամութեամբ էին ընդ թագաւորին։ Վ՚Հանդր իբրեւ զչափ իմն կամեցաւ տանուլ զզօրականացն մտաց, պատուէր նա թէ որ թուղթս ի Մակեդոնիա առ իւրեանց ընտանիս կամիցին գրել, նոցա տայցեն զորինչըն առաքիցէ զի տարցին հաւատարմութեամբ։ Իւրաքանչիւր ոք գրեալ էր միամտութեամբ առ ազգականս իւր զոր ինչ եւ կամէր. կիսոց ծանր թուէր զինուորութիւնն, եւ բազմաց ոչ ինչ տաղտուկ։ Այսպէս ի բուռն անկանէին թուղթք

եւ այնոցիկ որ շնորհական լինէին եւ որք տրանջէինն։ Որոց առաջակացեալ զաշխատութիւնէ դրով արքատունջ լեալ էին, հրամայէր նոցա դունդ լինել եւ բացադոյն յայլոց զօրաց երթալ թշնամեանց վտան, եւ վարել ուժով նոցա ի պատերազմի. զի զայնպիսի համարձակ բանս կարծիցէ ի դիւրահաւան լսելեաց։ Դու թէպէտ եւ թերեւս ժպրհութեան էր խորհուրդն, քանզի թշնամանօքն զկծեալք եւ զայրացեալք էին պատանեակքն առաքինիք, բայց որպէս եւ այլ եւս գործք թագաւորին, նոյնպէս եւ սա աջողեցաւ։ Ոչ ոք յօժարագոյն եւ պատրաստագոյն ի մարտ պատերազմի առաւել քան զնոսա գտաւ։ Վասնզի ցանկութիւն զթշնամանսն ի բաց ընջելոյ յորդորէր յարութիւն քաջութեան, եւ այն զի գործոց քաջութիւն չմարթի ի տակաւառաւորան թաքուցեալ մնալ։

Գ. ԽՈՐԷՆ այս այսպէս յօրինեալ կարգէր, Աղեքսանդրի կացուցեալ շահապ ի վերայ Արեաց, հրամայէր յուղի անկանել ի վերայ Արիմասպացւոցն, զօրս եւ յայնժամ

իսկ փոփոխեալ զանունն կոչէին Եւերգետս, ի ժամանակէ յորժամ է ցրտոյ եւ ի չքաւորութենէ կերակրոցն տարակուսեալ էր բանակն Կիւրոսի, յարկս եւ պաշարս մատուցին նոցա: Հինգերորդ օր էր յորմէ հեաւէ ի գաւառ անդր հասեալ էր: Անդ լինէր նմա թէ Սատիբարզանէս որ առ Բեսսոս հաստուածեալ էր, միաբանեալ հեծելազօրօք յԱրիս յարձակեցաւ: Վասն որոյ Ո հեծեալք զԿարանեայ եւ զԵրիգեայ զհետ երթային Արտաւազաւ եւ Անդրոնիկեաւ հանդերձ եւ վեց հազարօքն Յունաց: Ինքն զաւուրս վաթսուն կարգէր յօրինէր զազգս Եւերգետաց, եւ տայր նոցա պարգեւ զանձս բազումս վասն ի Կիւրոս գեղեցիկ հաւատոց նոցա: Յետ այնորիկ թողեալ նոցա վերակացու զԱմենիդէս որ էր դպիր Դարեհի, երթեալ զԱրաքոսիացիս նուաճէր, որոց աշխարհն երթեալ հասանէ ի Պոնտիկոս ծով: Յայնմ վայրի ի զօրսն որ ընդ Պարմենիոնիւ էր, հասեալ խառնեցաւ: Եւ էին վեց հազար Մակեդոնացւոց եւ Մ ազնուականք եւ հինգ հազարք Յու-

նաց երկերիւր հեծելովք հանդերձ. եւ այն էր դժ ամենայն զօրաց թագաւորին ։ Տուաւ Մենոն հազարապետ Արշաքունեացն թողեալ առ նմա Դ հազար հետեւակաց եւ հեծեալս Ո ի պահպանութիւն ։ Ինքն թագաւորն երթեալ մնայր զօրօքն յազգ մի որ եւ ոչ սահմանորդացն ինչ ծանօթ էր, քանզի ոչ ինչ շահավաճառ կամէր առնել առնլով կամ տալով ։ Ընդունեալ կոչէին Պարապամիսադացիք ազգ մի վայրենի մարդկան, եւ յոյժ իսկ բրտագոյնք ի մէջ բարբարոսացն ։ Սայրացն խստութիւն եւ զմիտս մարդկանն ի խստութիւն էր դարձուցեալ ։ Վասնզի մեծ մասն աշխարհին հայի ընդ ցրտագոյն կողմանս հիւսիսակողմանն. յարեւմտից ի Բակտրիացիս կից են, իսկ հարաւակողմն դատուին ձգի ի ծովն Հնդիկ ։ Խուղս յաղիւսոյ ի ներքուստ ի վեր կազմեն, եւ քանզի ամուլ եւ անբեր է երկիր նիւթոյ, եւ մերկ իսկ ուս լերինն, մինչեւ ցկատարած բարձրութեան շինուածոցն նովին աղիւսով վարին ։ Նալ կազմածն լայնագոյն է յատակացն, եւ տակաւ ի վերանալն նեղա-

ցեալ անձկանայ. այլա ուրեմն ի մի-
ջեանս երկոցին կողմանցն եկեալ
յարին իբրեւ զկերպարանս նաւացն
կողից: Ընդ ծակ թողուն զի ի
վերուստ անտի լուսաւորութիւն ի
միջոց տանն ընդունիցին: Արթք եւ
ծառաստանկք եթէ տեւեն եւս
այնպիսում խառնութեան երկրին,
փտասին: Նոյն ձմերայնի ամենեւին
իսկ թողեալ թագչին: Նոյն յորժամ
ձիւնն քակիցի եւ սկսանիցի հողն
երեւել, միւսանգամ զօդ եւ զարեւ
տեսանեն: Այլ այնպէս իսկ թան-
ձրացեալ ունին ձիւնաբերքն զերկիր
յորժամ սեղմեալ պնդիցեն ի սա-
ռամանեաց եւ ի հանապազօրդ ցրտոյ,
զի եւ ոչ հաւուց անգամ կամ գա-
զանի իրիք նշմարանք հետոց երեւին:
Լոյս խաւարին, մանաւանդ թէ
ստուեր իսկ, իբրեւ զգիշեր ունի
զերկիրն, զի հազիւ հազ թէ որ ինչ
մօտ կայցէ, մարթիցի նշմարել:
Յայնմ միութեան յորում չգոյր
ինչ նշանակ մարդկեղէն դարմանոց
կային առանց օգնականութեան
զօրքն, եւ որ զինչ վիշտս եւ մար-
թիցի ուժեք կրել՝ կրեցին, զչքաւո-
րութիւն, զցուրտ եւ զվաստակս եւ

դյուրահաւատութիւն ։ Օ՜ բազմաց ոգիս քաղէր անընդդել ցուրտ ձիւնաբերացն ․ զբազմաց ոտս խարշատէր ․ եւ բազմաց մանաւանդ աչացն վնասակար լինէր ։ Վասնզի աշխատեալք եւ վաստակեալք անդէն ի սառամանիսն նուաղեալ անկեալ տարածանէին ․ եւ իբրեւ դադարէին ի շարժելոյ անտի, այնչափ պնդէր սաստկութիւն ցրտոյն զի չկարէին միւսանգամ յառնել ։ Եւ որ թմրեալքն էին զարթուցեալ լինէին ի զինուորակցաց իւրեանց, եւ ոչ այլ ինչ դարման գոյր իւրացն բայց ստիպել խաղալ յառաջ ։ Յայնժամ դրդռեալ ջերմութեան կենդանութեանն, զօրութիւն ինչ յանդամսն պատանայր ։ Իսկ որք ի խուղս խուժադուժ բարբարոսաց կարացին մտանել, վաղվաղակի արծարծէին ։ Բայց այնպիսի մեզ եւ մառախուղ էր, զի զշինուածսն ոչ ինչ այլ ինչ ցուցանէր բայց ծուխն յորդեալ ։ Իսկ նոցա քանզի չէր տեսեալ այր պանդուխտ ի սահմանս իւրեանց, իբրեւ տեսին վառեալս, յանկարծակի յահէ անտի ոգիքն քաղէին, եւ որ ինչ ի խուղսն կայր՝ առեալ

բերէլին եւ աղաչէլին խնայել կենաց նոցա։ Թագաւորն շրջէր հետիոտս զբանակաւն, զոմանս որ անկեալ դնէին ի վեր կանգնէր, եւ զոմանս որք դժուարաւն գային զհետ յինքն իսկ յեցուցանէր։ Մերթ երթեալ հասանէր առաջի բանակին եւ մերթ ի միջոց բանակին եւ երբեմն ի վերջին կողմն եւ այնպէս բազմապատիկ աշխատ լինէր։ Ապա եկին հասին ի շէն տեղիս. եւ արձարձեալ առատ ուռճկոք զօրացն, եւ որք չկարացին հասանել զհետ, հասին ի բանակ անդր։

Անտի խաղացին գնացին զօրքն ի լեառն Կաւկասոս եւ ուս լերինն այնորիկ բաժանէ զաշխարհն Ասիացւոց երկայնեալ զագաթամբն․ աստի ծովն որ ընդ Կիլիկիաւ է եւ անտի ծովն Կասպից եւ Երասխ գետ եւ այլ եւս անապատ տեղիք Սկիւթացւոց աշխարհին։ Եւ Տաւրոս որ երկրորդ լեառն է մեծութեամբ, խառնի ընդ Կաւկաս, եւ ամբարձեալ ի Գամրաց աշխարհէն անցանէ ընդ Կիլիկիա եւ երթայ խառնի ի լերինս Հայաստան աշխարհին։ Այսպէս ընդ միմեանս կարգեալ տողեալ խառնէին սարք լե-

բանիցն եւ դրեթէ անտի խաղան ամենայն գետք Ասիացւոց աշխարհին կէսք ի ծովն Կարմիր եւ կէսք ի ծովն Կասպից եւ ոմանք ի Վրկանից եւ ի Պոնտիկոս ծով։ Զեւթնեւտասան օր անց զօրն ընդ Կաւկաս։ Պարաժայաք լերինն շուրջանակի ծ վտաւան եւ չորս վտաւանս ի բարձրութիւն, յորում ասեն հինք թէ Պրոմեթեւս կապեալ կայ։ Եւ ի լեռնոտին ընտրեցաւ տեղի շինուածոյ քաղաքի։ Խոյլ եւ թագաւորն ԺԲ հազարաց ծերոց Մակեդոնացւոցն եւ զօրացն որ այնուհետեւ անպիտան էին նմա ի նոր քաղաքին նստել։ Եւ զնա եւս Աղեքսանդրիա անուանեալ կոչեցին բնակիչք քաղաքին։

Դ. ԻՍԿ Բեսսոս զահի հարեալ յարագութենէն Աղեքսանդրի, զոհս ըստ օրինացն մատուցանէր դիցն գաւառականաց, եւ որպէս բարք իսկ են արանցն այնոցիկ ընդ բարեկամացն եւ ընդ զօրավարաց զօրացն ի հացի անդ զպատերազմէն խորհուրդ խորհէր։ Նոքա ծանրացեալք անապակաւն սկսան զանձանց զօրութիւն մեծացուցանել, եւ մերթ

ղլանդդնութիւն Թշնամեացն անդոսնել եւ մերթ զաւկաւաւորութիւնն: Անհաւանող Բեսսոս ամբարտաւաններ բանիւք եւ հպարտացեալ էր ընդ թագաւորութիւնն զոր չարեօքն ստացաւ, շամբեալ խօսել սկսաներ եւ ասէր թէ առ վատութեանն Դարեհի յաճախեաց անուանի լինել Թշնամին: Զի ընդ առաջ գնաց նմա, ասէ, յանձուկ կիրճս Կիլիկեցւոց աշխարհին, յորժամ ձեռնհաս էր յետս դառնալ եւ ածել զնոսա առ չզգուշանալոյ՝ ի անեղիս անկոխս բնութեանն դրիւ. այնչափ գետք եւ վտակք առաջի կային եւ այնչափ դարանք լերանց, յորս ի բուռն անկաներ Թշնամին եւ փախչել իսկ չկարէր, թող թէ ընդդէմ դառնալ: Ինձ այսպէս հաճոյ թուի, ասէ, ի Սոգդիացւոց դառնալ, եւ զՈքսոս գետ իբրեւ պարիսպ ամրութեան առաջի Թշնամեացն արկանել, մինչեւ գայցեն հաստանիցեն հարուստ թիկունք օգնականութեան յազգաց սահմանորդաց: Գալոց են, ասէ, Քորասմիացիք եւ Դահք եւ Սակք եւ Հնդիկք, եւ որք բնակեալ են անդր քան զՏա-

Նոյնս գտեա Սկիւթացիքն, յորոց չիք ոք որ այնպէս խոնարհ իցէ զի, չկարիցէ հաւասար լինել ուս Նորա գլխոյ զօրացն Մակեդոնացւոց ։ Միաբան գոչիւն բարձեալ աղաղակէին արբեալք, թէ այս խորհուրդ միայն քաջ է եւ փրկութեան պատճառք. եւ Բեսսոս առաւել եւս հրաման տայր զգինին պաշտել, զի կամէր իմն ի վերայ սեղանոյն պարտել զԱղեքսանդրոս ։

Այր ի հացին Կոբարէս մար յազգէ, եւ երեւելի եւ հոյակապ առաւել անուամբ մոգութեան արուեստին եւ ոչ գիտութեամբ, թէ միայն արգարեւ արուեստ իցէ եւ ոչ խաղալիկ մարդոյ յամբարհաւաճութիւն հատելոյ, բայց զգաստ էր եւ առաքինի ։ Սա նախ խօսեցաւ թէ գիտեմ զի լաւ է առն ծառայի հնազանդել քան զիւր խորհուրդն ընծայեցուցանել, քանզի նոքա որ հնազանդինն զնոյն կրեն զոր այլքն ամենեքին, իսկ որք խրատն տան, միշտ վտանգի է անձանց նոցա ։ Իսկ Բեսսոս զբաժակն զոր ի ձեռին ունէր տայր ձեռն, ի ձեռն զոր իբրեւ առ Կոբարէս. Եւ վասն սորին իսկ

այսորիկ, ասէ, մարթի զմարդկան բնութիւն չար եւ ծախող անուանել զի բթացոյցք իմն են ամենեքին յայն որ ինչ անծանց է, եւ սրացոյնք յայն որ այլոցն: Պղտորեալ են խորհուրդք այնոցիկ որ անծանց զանծանց խորասատան: Միսոց ահն եւ երկեւղն արգել լինի եւ կխսոց ցանկութիւնն եւ երբեմն զուլթ ինչ եւ սէր ի բնէ յայն զոր իւրն հնարիւք զմրտաւ ածեալ իցէ. քանզի չլինին զքէն ամբարտաւանութեան կարծիք: Օփարծ առեալ զխսես թէ իւրաքանչիւր զայն ինչ զոր իւր իմացեալ իցէ կամ մի միայն համարի կամ քան զամենայն ազնուագոյն: Նեռն մեծ բարձեալ կրեո ի գլուխ քո զպսակս թագաւորաց: Սամ չափաւորն պայմանաւ այնմ պարտ է ժոյժ ունել կամ այդրէն ի քեզ յանձն քո կործանեսցի. ընդ որ չկամիմ իսկ: Խորհրդեան եւ ոչ եթէ ուժգնութեան են պէտք: Նշա զնոքիմբք ածեալ յաւելոյր զայն զոր սա հաստարակ ի մէջ Բակտրիացւոցն ի կիր արկանեն թէ շուն երկչոտ սաստկագոյն ոռնայ եւ ոչ թէ սանու, եւ թէ գետք խորաջուրք սաւանց

հնչելոյ խաղման։ Զայս ամենայն տողեցի զի ցուցից թէ որպիսի ինչ իմաստութիւն իցէ ի մէջ բարբարոսացն։ Սա ի վարանս եւ ի տարակուսանս առնէր զլսելեացն ականկալութիւն։ Նոյա մերկանայր եւ զխորհուրդն իւր որ օգտուան էր Բեսսեայ բայց ոչ ինչ հաճոյ։ Ի գաւթի աստ, ասէ, արքունեաց քոց, եկեալ հասեալ կայ թեթեւագնաց թագաւորն։ Նա շարժեացէ վաղ զբանակ իւր մինչ չեւ քո շարժեալ զանեղանդ։ Նոյժմիկ ի Ցանայեայ կոչես զօրս, եւ զինուց եւ զարդուց զզեստուն ընդդէմ դնես։ Մինթէ ընդ որ դու փախչելոց իցես, չկարիցէ՞ գալ զհետ թշնամին։ Պեզ եւ Նմա հասարակաց ճանապարհ է, եւ առաւել զգուշագոյն այնմ որ յաղթիցէ։ Ինչպէս եւ քաջ եւ թեթեւագնաց զերկեւղն համարիցիս, սակայն յոյժ եւս երագագոյն է։ Նոյն ընդէ՞ր չաճապարես բարեկամել ընդ զօրագունի քան զքեզ եւ չասաս զանձն քո. զինչ օրինակ եւ իւրքն եղանիցեն ի գլուխ, լաւ լիցի քեզ թէ անձնատուր լինիցիս, քան եթէ եղիցես թշնամի։ Օտարին թագաւո-

որութիւն է թագաւորութիւն զոր ունիս եւ վասն այնորիկ դիւրագոյն է քեզ թողուլն։ Խնդրեա ապա սկսանիցիս արդարութեամբ թագաւոր լինել, յորժամ ինքն կացուցէ զքեզ թագաւոր, որ եւ տալ կարող է քեզ զթագաւորութիւնդ եւ հանել։ Այդ քեզ խորհուրդ հաւատարիմ է, իսկ եթէ յամառեսցես կատարել, ապա աւելորդ ինձ լինիցի։ Նորիւր ազնիւ եւ ի ստուերէ իւր զաւազանի ընթանայ ուղղորդ. իսկ որ յուլն եւ ծոյլ իցէ եւ խթանաւ չգրգռի։ Իսկ Բեսսոս որ ի բնէ իսկ վայրենի էր եւ անապականն եւս վայրենագոյն, այնպէս զայրացեալ բորբոքեցաւ զի հազիւ հազ թէ ի բարեկամաց անտի արգելեալ խափանէր զի մի սպանցէ զնա, զի եւ զդաշոյնն ի պատենիցն մերկացեալ էր։ Վաղեաց եւ ի հացէ անտի շամշեալ։ Մինչ դեռ նոքա զաղմկաւն էին Կոբարէս պըրծեալ անկանէր առ Աղեքսանդրոս։

Ութնհազար վառեալ ի Բակտրիացւոց ունէր Բեսսոս, որք զառաջինն կարծէին թէ վասն օդոյն դժնդակութեան ի Հնդիկս երթալոց են Մակեդոնացիքն, եւ հնազան-

դեալ զհրամայեալսն վճարէին. իսկ իբրեւ ազդ եղեւ թէ Աղեքսանդրոս հասեալ է, յիւրաքանչիւր գեղս ափուէին եւ զԲեսսոս լքեալ թողուին: Նա ծառայիցն գնդիւ որոց հաւատարիմ մնացեալ էր, անցեալ ընդ Ոքսոս գետ, եւ զնաւակսն հրձիգ արարեալ որովք անցեալն էր զի մի ի կիր արկանիցէ զնոսին թշնամին, ի Սոգդիացւոց նոր գունդ բովանդակէր:

Ընդ Կաւկաս անցեալ էր Աղեքսանդրի, որպէս կանխագոյնն ասացաւ, այլ առ չքաւորութեան ցորենոյ գրեթէ հասեալ անկան ի նեղութիւն սովոյ: Հիւթոյն ի կնճրթանէ մզելոյ իբրեւ իւղով զյօդսն օծանէին: Բայց մի մի սափոր հիւթոյն այնորիկ էր երկերիւր քառասուն դահեկանաց, եւ մեղու՝ երեքարիւր իննսուն դահեկանաց, եւ անօթ մի գինւոյ երկերիւր դահեկանաց. իսկ ցորեան գտանէր եւ ոչ մի կամ թէ սակաւ յոյժ: Զի գետանափորս իմն ունէին բարբարոսքն զոր կոչէին Սիրոս, եւ այնպէս ճարտարութեամբ զտեղիսն թագուցանեն, զի ոչ այլ ոք ձեռնհաս է գտանել

բայց այն որ փորեացն. ի գետնափորան անդ մթերեալ կային ամբարքն։ Նա ի չգոյէ ամբարոց ձկամբք գետոյն եւ բանջարօք զքաղցն զօրքն Հարկանէին։ Իբրեւ եւ այն կերակուր պակասեաց, զգրաստսն եւս որովք զբեռինսն բարձեալ տանէին Հրամանն առին կոտորել, եւ մսովք նոցա ձգեալ յերկարէին զկեանսն իւրեանց մինչեւ եկին Հասին ի Թակորիացիսն։

Բազմապատիկ եւ ազգի ազգի իմն է երկիրն Թակորիացւոց։ Ի միում վայրի ծառաստունկք բազմաբերք եւ մրգաբերք են, եւ այգեստանք Հասուցանեն պտուղ ամոքացեալ. եւ բազում աղբերակունք ոռոգանեն զերկիրն պարարտ. իսկ ուր կակուղ տեղիքն են, արկանեն ի նոսա ցորեան եւ արմտիս, եւ այլ եւս տեղիք են յարօտս Հօտից եւ անդւոց։ Յետ այնորիկ զմեծ մասն երկրին ամուլ եւ անծին աւազքն ունին. եւ ցամաքեալ գաւառն երաշտութեամբ ոչ մարդոյ եւ ոչ արմտեաց սնուցիչ լինի։ Իսկ յորժամ Հողմք ի Պոնտիկոս ծովէ շնչիցեն, զխիճն եւ զաւազն որ ի դաշտսն կան, միանգամայն յարուցեալ տա-

նին։ Նաեւ ուր կան կուտեալ շեղջա-
շեղջ, ի հեռաստանէ զմեծամեծ խնչ-
բլրոց կերպարանս երեւեցուցանեն,
եւ ամենայն հետք աւազին ճա-
նապարհացն խաղաղեալ կորնչին։
Նման այնորիկ որ անցանենն ընդ
դաշտամն՝ ըստ օրինակի նաւորդացն
գիշերի զաստեղան նշմարեն, եւ ըստ
նոցա գնացիցն զճանապարհն գնան,
եւ գրեթէ եւս պայծառագոյն է
ստուեր գիշերոյ քան զլոյսն։ Նաեւ
զցերեկ առաւոտ ճանապարհ գնալոյ
է աշխարհն, քանզի եւ ոչ հետ
ընդ որ երթայցեն, գտանեն, եւ
փոշիլեւն տաստեղացն միգով եւ մա-
ռախուղով ծածկի։ Նաեւ եթէ ըմ-
բռնիցէ զոք հողմն որ ի ծովէ անտի
ելանէ, ծածկէ զնա ընդ աւազովն։
Բայց ուր կակղագոյն է երկիրն,
անդ մարդ շատ եւ երիւար բազում
ծնանի։ Նման որոյ էին Բակտրիա-
ցիքն հազար հեծեալք։ Նաեւ Բակ-
տրիքն իսկ, գլուխ քաղաքաց աշխար-
հին այնորիկ, կայ ընդ լերամբն Պա-
րապամիսեաւ։ Բակտրոս գետ ան-
ցանէ առ պարսպօքն։ Ի սմանէ
անուն կոչեցաւ քաղաքին եւ աշ-
խարհին։

Մինչ գեռ անգէն բանակ հա-
րեալ նստէր Թագաւորն, լուր լինէր
ի Յունաց աշխարհէն թէ Պեղոպո-
նեացիք եւ Լակոնացիք ապստամբե-
ցին։ ՎՀանողի չեւ էին ի պարտու-
թիւն մատնեալ, յորժամ ելին եկին
պատմել զսկիզբն խռովութեանն։
Ընդ լինի նմա մեւս եւս երկեւղ ի
մօտոյ թէ Սկիւթացիք որ յայնկոյս
Տանայիս գետոյ բնակեն, գան թի-
կունք օգնականութեան լինել Բեսո-
սեայ։ Ի նմին ժամանակի եկեալ
պատմէին որ ինչ յազգի անդ Արեացն
Կարանոս եւ Երիգիոս գործեցին։ Նու
եզեն խառնուրդք ճակատուց Մակե-
դոնացւոց ընդ Արիս։ Սատիբարզա-
նէս որ հատուածով փախուցեալ էր,
ոստիկան կայր բարբարոսացն. սա
իբրեւ ետես թէ դանդաղագոյն հար-
կանի պատերազմն, եւ հաւասար են
երկոքին կողմանքն զօրութեամբ,
ձի արկեալ յառաջին դունդ անդր
հասանէր, եւ զսաղաւարտն ի բաց
հանեալ, եւ արգելեալ զայնոսիկ որ
զնետսն արձակէին, մատուցեալ զղջ
ի մէջ կոչէր թէ կամիցի՞ ոք միայն
ընդ միայն կռուել, եւ ես տաց, կա-
լայց մերկ զգլուխ իմ ի պատերազմի։

Ոչ ինչ համբերէր Երիգիոս որ էր ծե-
րացեալ հասակաւ, բայց ոչ ինչ ի
վայր քան զմի ոք ի պատանեկաց
մտացն եւ մարմնոյն քաջութեամբ
եւ ուժով։ Սա հանեալ զսաղաւարտն
ի գլխոյ իւրմէ եւ զալիսն ցուցեալ.
Եկն օր, ասէ, եհաս ժամ զի կամ
յաղթութեամբ կամ մեծարանաց
մահուամբ յայս արարեալ ցուցից
թէ որպիսի բարեկամս եւ զօրականս
Աղեքսանդրոս ունիցի։ Նա ոչ ինչ
ունելի յաճախեալ խօսել երիւարաւն
ի թշնամին անդր հասանէր։ Գոդ-
ցես իբրեւ պատուէր իմն տուեալ
այնպէս երկոքին ճակատքն զզէնսն
կարճեցին։ Վաղվաղակի յետս յետս
չոգան եւ միջոց անջրպետութեան
ի միջի թողուին, միւս եղեալ ի կա-
տարած յաղթութեանն եւ պար-
տութեանն ոչ երկուցն միայն այլ
եւ անձանց իսկ, քանզի զայլոյն
վտանգի զհետ կամէին երթալ։ Նախ
խուժադուժն զնիզակն ի վերայ ար-
ձակէր, իսկ Երիգիոս սակաւիկ ինչ
խոնարհեալ զգլուխ իւր՝ ապրէր, եւ
մտրակ ի կուշտ արարեալ երիւարին,
ի փող անդր բարբարոսին զտէգն
վարէր եւ ընդ վիզն թափանցանց

երեւեցուցանէր։ Ընկեալ կործանեալ յերկիւղէ անտի, կռուէր իմն ընդդէմ տակաւին։ Այլ նորա հանեալ զանէգն ի վերէ անտի միւսանգամ ի բերանն վարէր։ Իսկ Սատի-բարզանէս բուռն հարեալ ձեռաքն օգնական եւս լինէր հարուածոյ թըշնամւոյն զի վաղագոյն եւս սաստակիցի։ Իսկ բարբարոսքն իբրեւ կորուսին զզօրավար իւրեանց, զորս ի հարկէն զհետ երթեալ էին եւ ոչ կամաւ, զմտաւ ածեալ մի ըստ միոջէ զիրս քաջութեանցն Աղեքսանդրի, զզէնսն Երիգեայ տային ձեռն ի ձեռն։ Ընդ այս ամենայն առաւելապէս ուրախ լինէր Թագաւորըն, բայց զՍպարտացւոցն կայր ի կասկածի, սակայն քաջալերութեամբ համբերէր նա ապստամբութեան նոցա եւ ասէր թէ մինչ չեւ գիտացեալ նոցա թէ ի սահմանս Հնդկաց աշխարհին հասեալ եմ, զխորհուրդս մտաց իւրեանց չիշխեցին մերկանալ։ Ինքն զհետ մտեալ Բեսսեայ զզօրսն խաղացուցեալ տանէր. ընդ առաջ լինէր նմա Երիգիոս բերեալ զգլուխ բարբարոսին, գեղեցիկ աւար պատերազմին։

Ե. ԱՅՆՈՒՀԵՏԵՒ թողեալ Արտաւազդայ զաշխարհն Բակտրիացւոց, զկահ եւ զկազմած անդէն թողլոյր պահպանօքն հանդերձ։ Ինքն մը-խեալ երթայր թեթեւ գնդաւ ի տեղիս անապատս Սոգդիացւոցն. եւ գիշերայն տուեալ զզօրսն տանէր։ Իսկ ջուրցն չքաւորութիւն, որպէս կանխագոյն ասացաւ, յառաջ քան զըմպելոյն ցանկութիւն յուսահատութեամբ գիւտի ջուրցն զծարաւն վառէր։ Ընդ չորեքհարիւր վտաւանս անցեալ գնացին, եւ ոչ գտաւ սա-կաւ մի ինչ ջուր։ Իսկ ջերմ տապ արեգականն զաւազն ջեռուցեալ բոցբոցէր. եւ յորժամ աւազն տա-պանայր իբրեւ ստէպ հրդեհաւ այն-պէս վառեալ ամենայն տօչորէր։ Ապա մէգ եւ մառախուղ ի սաստիկ տապոյ երկրին ժողովեալ՝ զլոյս արեգականն ծածկէին. եւ ոչ այլ ինչ տեսիլ կերպարանաց էր դաշտացն, բայց յաղթ եւ համատարած ծովու։ Ասուել դիւրին երեւէր գիշերի ճա-նապարհ առնել. քանզի ի ցօղոյ անտի եւ յառաւօտին ցրտոյ գիւ-րէին մարմինքն։ Այլ յորժամ ընդ ծագել լուսոյն սաստկանայ տապ

ջերմութեան, եւ երաշտութիւնն զամենայն տամուկ խոնաւութիւն բնութեանն ցամաքեցուցանէ, այրելով տոշորին ամենեւին բերանք եւ ադիք : Վասն այսորիկ նախ ոտիքն վհատանել սկսան եւ ապա նուաղէին մարմինք նոցա : Եւ կայն եւ խաղաղն տաղաւուկ թուէր : Սակաւք առեալ տեղեկութիւն յայնցանէ որ տեղեակ աշխարհին էին, յառաջագոյն ջուր պատրաստէին հրամանաւ։ Այն ցածուցց սակաւուկ մի զծարաւոյն տագնապ : Ապա իբրեւ սաստկացաւ տապ խորշակին, միաւանգամ բորբոքեցաւ ծարաւոյն ցանկութիւն: Արդ որ ինչ գինի կամ ձէթ ի տեղւոյն գտանէր զայն ըմպէին. եւ այնչափ քաղցր ըմպելին թուէր զի չածէին ամենեւին զմտաւ թէ եւ յետ այնորիկ եւս ծարաւիցեն: Եւ յետ այնորիկ ծանրացեալք ի բազում ըմպելոյ անտի զզէնսն չկարէին տանել եւ ոչ գնալ զճանապարհն. եւ առաւել երանելի իմն թուէին որոց պակասեաց ջուր. քանզի որք յանչափս արբին ստիպէին փախել եւ հանել ի դուրս : Իբրեւ տարակուսեալ կայր թագաւորն ընդ նե-

զութիւն վշտացն, գայլին պատառէին զնովաւ բարեկամք նորա եւ աղաչէին զի եւ զանձն յիշեսցէ. միայն քաջութիւն մնաց քոց դարման է, ասեն, զօրացս նուաղելոց. եւ անդէն գայլին հասանէին, որ յառաջագոյնն երթեալ էին գտանել տեղի բանակաց, եւ երկուք ի նոցանէ ընդ առաջապատահէին, որ տանէին տիկովք ջուր, զի իւրեանց որդւոց, զորս գիտէին թէ ի գնդի անդ են, եւ ծարաւեալ նեղին, տացեն ըմպել: Սոքա իբրեւ պատահեցան ի թագաւոր անդր, մի ոմն յերկուց անտի քակեալ զտիկն, զամանն զոր ընդ իւր տանէր, ընդլի եւ կարկառեալ տայր թագաւորին: Սա առ, եւ հարցեալ թէ որոց զջուրն տանիցին, իմացաւ թէ որդւոց իւրեանց: Նա զբաժակն տայր անդրէն լի, որպէս մատուցաւ. Չառնում, ասէ, յանձն թէ միայն ըմպիցեմ, եւ ոչ զայն սակաւ ջուր ամենեցուն կարեմ բաժանել: Դուք երթայք տուք որդւոց ձերոց, զի վասն նոցա իսկ բերէք:

Նա գայր հասանէր յՈքսոս գետ զրեթէ յառաջնում երեկորին:

Բայց մեծ մասն զօրացն չկարացին հասանել զհետ նոցա. վասն այնորիկ խաղայիս հրամայեր ի բարձու լերին լուցանել. զի որք դժուարաւն զհետ գային, գիտասցեն թէ չեն հեռի ի բանակէ անտի: Իսկ այնոցիկ որ առաջինքն էին ի գնդին՝ հրամայեր վաղ առնուլ կերակուր եւ ըմպել եւ կազդուրել եւ տալ ոմանց լնուլ տիկս եւ ոմանց զինչ եւ այլ առման ջրոյ եւ երթալ յօգնականութիւն իւրոցն: Բայց որք անչափին արբին, արգելեալ շնչոյն՝ սատակեցան. եւ առաւելագոյն թիւ համարոյ ոսկոյ էր քան զոր ի պատերազմի ուրեք կորոյս: Այլ եւ ինքն տակաւին ագուցեալ զզրահն եւ ոչ առեալ կերակուր կամ ըմպելի, ընդ որ զօրքն գային կայր արձանացեալ. եւ մինչ չեւ անցեալ գնդին, ինքն ոչ գնաց ի գարման մարմնոյն. եւ զցայգն ամենայն անցուցանէր մեծաւ հոգովք եւ հանապազորդ աշխութեամբք: Այլ ոչ ի վաղիւ անդր զուարճացաւ ուրախութեամբ, զի նաւս չունէր եւ կամուրջ չէր մարթ կանգնել, քանզի երկիրն որ զգետովն էր, մերկ էր, եւ մանաւանդ

զրոս անց ընդ Ռուսս գետ, զԴասափիռնէս եւ զԿասմինէս, զորս Հաւատարիմն Համարէր Բեսոս, ի բանտի առնէր։ Նոքա մատադիւրագոյնս քան որչափ աղաչէինն, Հասանէին առ նա. եւ ածեալ ուղթ երիտասարդս Հուժկուս, այսպիսի ինչ նենգութիւն նիւթեցին։ Սպիտամէնէս եւ զնոյն առ Բեսոս, եւ ածեալ զնա մեկուսի. Գիտացի, ասէ, թէ Դասափիռնէս եւ Կասմինէս քեզ զարան գործեն, զի խորհին կենդանւոյն տալ զքեզ Աղեքսանդրի. եւ ես կալեալ կապեցի զնոսա։ Իսկ Բեսոս զարմացեալ ընդ երախտիսն որպէս կարծէր, շնորհակալ լինէր, եւ ցանկացեալ վաղվաղակի զպատիժ պատուՀասին ի վերայ Հասուցանել, Հրամայէր զնոսա առ ինքն բերել։ Նոքա ինքնակամ ձեռօք կապելովք ձգձգէին ի խորհրդականաց խորհրդոյն. Հայեցեալ ի նոսա Բեսոս խոժոռադէմ երեսօք, յառն եկաց, եւ կամէր ձեռն մխել ի նոսա։ Իսկ նոցա զկեղծաւորելն ի բաց եդեալ պատեցան զնովաւ. եւ մինչ գենա զուր ընդդէմ ոգորէր, կալան զերկեցին եւ զխոյրն արքունի Հանին

ի գլխոյ Նորա, եւ զձործն պատառեցին, զոր ագուցեալ էր ի Հանդերձից անտի սպանելոյ Թագաւորին: Նա խոստովան լինէր եւ ասէր թէ դիքն Հասին առնուլ զվրէժ գործոյ սպանութեան իմոյ. եւ զնովիմբ ածեալ յաւելոյր, թէ ոչ ինչ անիրաւ գործէք Դարեհի, զի այնպէս զվրէժ Նորա առնուք, բայց դուք ձեռնտու եւ օգնական լինիք Աղեքսանդրի, զի Նորա յաղթութեանն միշտ զօրաւիգն էր եւ թըշնամին: Բայց այն չէ յայտ թէ զվրէժ ինչ կամէր արդեւք առնուլ զԲեսսեայ ամբոխն, եթէ ոչ ստեալ որ կազմեցինն՝ ասէին թէ հրամանաւ Աղեքսանդրի առնեմք, եւ այնպէս զվարանեալսն եւ զտարակուսեալսն չէին երկեցուցեալ: Եւ Հանեալ զնա յերիւար, տարան տալ Աղեքսանդրի: Յայնմ ժամանակի թագաւորն ընտիր ընտիր զօրացն իբրեւ Զ. ոց տայր երկու երկու տաղանդ հեծելոցն, իսկ հետեւակացն երիս հազարս դենարաց. եւ հրաման տայր երթալ յաշխարհն իւրեանց եւ ծնանել զաւակ: Իսկ այլոցն գոհութիւնս յանձնէր, զի խոստանային

ճգնել եւ ի միացեալ մարտս պատերազմացն։ Ի նմին ժամանակի եւ զՔեռսոս առձեռն։ Եկին հասին ի փոքր քաղաքին մի, եւ քաղաքին բնակիչք Բրանքիդացիք էին։ Երբեմն ի Միղետոսյ ելեալ Հրամանաւ Քսերքսի յորժամ դառնայր նա ի Յունաց աշխարհէն, անցեալ եկեալ էին, եւ դադարեալ ի նմին տեղւոջ, քանզի զմեհեանն որ անուանեալ կոչէր Դիդիմեան, բանադատեալ էին վասն Քսերքսեայ։ Բայց բարքն նոցա հայրենիք չեւ էին ջնջեալ, այլ երկլեզուեան իսկ էին, զի առ սակաւ սակաւ յընտանեայ անտի յօտար լեզու փոփոխէին։ Ամնուհետեւ ուրախութեամբ եւ խնդութեամբ զԹագաւորն ընդունէին, զքաղաքն եւ զանձինս տային միանգամայն։ Իսկ նա Հրաման տայր Միղետացւոցն որ նմայն զինուորեալ էին, գալ ժողովել առ իւր։ Բայց Միղետացիքն հին իսկ ոխութիւն քինու ի Բրանքիդացւոց ազգ անդր մթերեալ պահէին, վասն այնորիկ նոցա կամացն առնէր յանձն՝ առնել ընդ Բրանքիդացիս զինչ ինքեանք կամիցին, կամ զողորմութեանն

զմբէժն խնդրել, կամ զոկիզըն ծաղ-
մանեն յիշել: Նա եւ իբրեւ պէսպէս եւ
աղդի աղդի կարծիք ի միջի լինեին,
Նա զանձն յայս աւանէր խորհել զինչ
լաւ եւ բարի իցէ: Ի վաղիւ անդր
այնոցիկ որ ընդ առաւօլ զայլին նորա՝
ընդ իւր հրամայէր ի Բրանկըխդս
դալ: Նա իբրեւ եկին հասին ի քա-
ղաք անդր, ինքն թեթեւ գնդաւ
ընդ դուռն ի ներքս մտանէր: Իսկ
դռնպան անձնայն հրամանն առնոյր
պատել զղարսպաքն քաղաքին, եւ ի
առաջնչանին զքաղաքն քակել քան-
դել, զդարան թագաւորան մատըն-
առուացն եւ զնստա զլխովին միան-
դամայն առուր ի վերայ եդեալ կոտո-
րել: Որքա անդէնք տապաստ ան-
կանէին, զի ոչ հաղորդութեանն
լեղուի, եւ ոչ աղաչանաց կամ պա-
ղատանաց կամ բարեխօսաց մարթ էր
անդադարութեանն կարճել: Նպա
զէ զքաղաքն կործանեցեն, զհի-
մունս պարսպացն ի յատակաց խար-
խալէին, զի եւ ոչ հետք անգամ
քաղաքին կացցեն: Զանտառս եւս
եւ զմայրիս մեհենականս ոչ կոտորեն
միայն այլ եւ արմատաքի խլեն, զի
ամենեւին անէր եւ անապատ եւ

անբեր երկիրն լինիցի, համեստալ կը-արեալ եւ զարմանալին։ Ուէ այս ամենայն ի նոսին իսկ յառաջնորդս մտանութեանն հասանէին, արդար վրէժխնդրութիւն իւրեն թուէին եւ ոչ անապարտութիւն. բայց այժմ ըղյանցանս նախնեացն յետինքն տուժեցան, որոց զՄիղէոսս իսկ չէր անեսեալ, նմին իրի եւ քանրըքսի չկարէին մտանել։

Ընտի խաղացեալ համանէր ի Տանայիս գետ։ Ընդդ հասուցանէին եւ զԲեսսոս, ոչ միայն կապեալ կըծկեալ, այլ եւ մերկացեալ յամենայն ձորձոց մարմնոյն։ Սպիտամենէս բուռն հարեալ ունէր զնա, արկեալ շղթայս ի վիզ, եւ ոչ միայն Մակեդոնացւոցն, այլ եւ խուժադուժ բարբարոսացն հաճոյ էր տեսիլն։ Յայնժամ խօսէր Սպիտամենէս եւ ասէ. Ահա զվրէժ քո եւ զԴարեհի, զթագաւորաց իմոց, կալայ անձի զոտբասպանդ, եւ կապեցի զնա ձեռբակալ, զոր օրինակ նա կապեաց զԴարեհ։ Ընացցէ այսուհետեւ Դարեհ զաչս իւր ի տեսիլ իրացս այսոցիկ։ Ելցէ ի սանդարամետաց որ չէրն այնց անձնանաց արժանի, այլ

այսմ մխիթարութեան արժանաւոր: Յարգեալ գոլէր Աղեքսանդրոս զԱպիոնամենէս, եւ դարձեալ ի Թեսասաս կոյս. Որո՞յ, ասէ, գազանի կատաղութիւն անկաւ ի խելս քո, զի զԹագաւորն քո զբարերար եւ զերախտաւոր նախ կալեալ կապեցեր, եւ ապա մատնեցեր սպանանել: Բայց զայնր տիրասպան նենգութեան զվարձսն սուտ անուամբ թագաւորութեանն հատուցեր: Իսկ նա յայնմ վայրի, քանզի ոչ իշխեաց զգործ սպանութեանն յանձնէ թօթափել. Ցայն սակս, ասէ, զանուն թագաւորի յանձն առի, զի զարգն իմ քեզ տալ մարթայցեմ. զի եթէ ես չառնուի, այլ ոք առնելոց էր զթագաւորութիւնդ: Իսկ Աղեքսանդրոս հրամայէր Ոքսաթրեայ եղբօր Դարեհի զոր ընդ անձնապահսն ունէր, մօտադրյնս մերձենալ, եւ զԲեսոս տալ նմա, զի ի խաչ հանեալ եւ զունչս եւ զականջս հատեալ, նետիւք հարցեն զնա բարբարոսք, եւ զմարմինն պահեսցեն, զի եւ հաւք անգամ ոչ մերձեսցին ի նա: Ոքսաթրէս խոստանայր զամենայն ինքն հոգալ. իսկ զհաւուց

պատերազմի ի մէջ նահատակացն, հարուանեալս, որ ի սրունս մխեալ թող զծայրն ի ներքս: Մակեդոնացիքն արամեալք եւ ապշեալք ածէին զնա ի բանակ անդր. բայց եւ խուժքըն իմացան թէ ի բաց գնաց նա ի ճակատուէն. քանզի ի բարձրաւանդակ լեռնէ անտի զընաւ նշմարէին: Ի վաղիւ անդր արձակեցին հրեշտակս առ Թագաւոր անդր, եւ նա հրամայեր վաղվաղակի ի ներքս մուծանել, եւ զպատասխանեան քակեալ թագուցանէր իմն զմեծութիւն վիրին, եւ զորաւնան բարբարոսացն ցուցանէր: Նոքա իբրեւ հրաման առին նստել, Ով իմն ընդհատ, ասեն, ի Մակեդոնացւոց եւ մեք արամեցաք, իբրեւ գիտացաք թէ դու վէրս առեր. եւ եթէ զառնիցեմք զայն որ եհարն, տացուք զնա քեզ ի ձեռս: Ով ընդ զինն գոռալ, մեհենազերծ ամպարշտելոց մերայն է: Ամէն մեք, ասեն, տամք զարդքն մեր քեզ հաստատել զաշխնս ի միջի, զի ի քաղցութենէ քումէ ի պարտութեան մատնեցաք: Տայր հաւատ թագաւորն. եւ առեալ պայրէն ըզգերին նուաճէր զորդզն: Ընտ

չուեալ խաղայր բարձեալ զինուորական պատրաստականաւ, վասն որոյ հակառակութիւն իմն ի միջի լինէր հեծելոցն եւ հետեւակացն, թէ ո՞յք առնիցին: Վասնզի ընդ հեծելոցն սովոր էր թագաւորն մտանել ի ճակատ, իւրեանց իմն զայն հեծեալքն համարէին. իսկ հետեւակքն նոցին հակառակ՝ քանզի նոքա սովոր էին զվիրաւոր զինուորակիցսն բարձեալ տանել, տրտնջէին թէ հանեն ի մէնջ զօգնան մեր յայնժամ մանաւանդ յորժամ հասեալ իցէ զթագաւորն բառնալ եւ տանել: Իսկ թագաւորն իբրեւ ետես թէ այնպէս զուպարած ի միջի կայ երկոցունց կողմանցն, եւ դժուարին է նմա ընտրել եւ ծանր ընդունել զերկելոցն զընտրութիւնն, հրաման տայր մերթ սոցա եւ մերթ նոցա բարձեալ կրել:

Անտի յետ չորից աւուրց եկեալ հասանէր ի Մարականդ քաղաք. պարիսպք քաղաքին էին շուրջանակի Հ վտաւան, եւ էր զմիջնաբերդաւն այլ որմ պատեալ: Թողեալ անդէն պահապանս, զարուարձանեայ գեղջն աւար հարեալ քանդեալ հրձիգ առնէր:

Յետ այնորիկ Աբխազւոցն Սկիւթացւոց հրեշտակք ի վերայ հասանէին, որ ազատութեամբ էին, յորմէ հետէ վախճանեալ էր Կիւրոսի. եւ այժմ գային մտանել ընդ հնազանդութեամբ: Սոքա արդարք եւ իրաւացիք քան զամենայն բարբարոս կարծէին. ի զինուց ժուժկալէին եթէ չզրկէր ոք զնոսա. չափաւոր եւ հասարակախառն զազատութիւն պահեալ՝ զանարգոն հաւասարս իշխանացն կացուցանէին: Խօսէր ընդ սոսա Թագաւորն սիրով մարդասիրութեամբ, եւ առ այն Սկիւթացիս, որ յԵւրոպացւոց աշխարհին բնակեն, զՊենիդաս զոմն յիւրոց բարեկամաց անարի արձակէր, զի երթեալ պատուիրեսցէ սոցա մի ըստ Տանայիս գետ աշխարհին անցանել առանց հրամանի Թագաւորին: Հրաման տայր եւ նմին առն, զի դիտեսցէ զդիր վայրացն, եւ լրտեսեսցէ եւ զայն եւս Սկիւթացիս որ ի վերայ քան զԲոսփորոս բնակեն: Ընտրեալ էր նորա տեղի շինուածոյ քաղաքին ի վերայ քան զեզերս Տանայեայ, զի արգելեալ փակիցէ եւ զայնոսիկ զորնուաճեալ էր եւ զորս ի մտի եդեալ էր

թէ ոչ ի հաւատոց ինչ եւ ոչ ի զօրութենէ թագաւորին թերահաւատ եմք, եւ հրամանն այնին այրուձիոյն եղանել առաջոյ քան զպարիսպն. ապա ապանջականութեամբ ընդունէին զնոսա. եւ իբրեւ ծանուցան ի կերպակրոց անտի եւ ի քաւն մաքին, ի վերայ անկեալ ի տարածեալ ժամու գիշերոյն՝ անդէն տատանկէին։ Աղեքսանդրոս՝ որպէս ի դէպ էր, զայրացաւ զժդմեցաւ, շուրջանակի պատեալ պաշարէր զքաղաքն, զոր չէր մարթ յառաջնում յարձակել անդ առնուլ, քանզի ամուր էր։ Վասն այնորիկ զՄելէագրոս եւ զՊերդիկկաս յաւելոյր ի պաշարումն անդր, որ զԿիւրոպողիս, որպէս յառաջագոյն ասացաւ, պաշարեալ ունէին։ Բայց ի մտի եղեալ էր քաղաքին խնայել, վասն զի ի Կիւրոսէ էր շինեալ, քանզի ոչ ընդ այլ ազ յազգաց անտի առաւել զարմանցեալ էր, որչափ ընդ այն թագաւոր եւ ընդ Շամիրամ, զորոց համարէր թէ ոգւոցն մեծանձնութեամբ եւ մեծապայծառ արութեամբ եւ քաջութեամբ պայծառացան։ Այլ քաղաքացեացն հեստութիւն զդրդեցին

բորբոքեցին զցասումն ։ Ստան այնորիկ զ.քաղաքն առնել, Հրամայէր քակել քանդել եւ ի հիմանց խլել ։ Ապա՝ քանզի ոչ յանիրաւի ինչ Թշնամի Մեմակեննացւոց էր, առ Մեղէագրոս եւ Պերդիկկաս դաւանայր ։ Բայց ոչ քաղաք ինչ յայլոց քաղաքաց եւս հզօրագոյնս ժուժկալ եղեւ պաշարմանն. քանզի քաջք ի զօրականացն անկան, ինքն Թագաւորն հաս ի յետին տագնապ վտանգի ։ Քանզի հարան վէրք նորա վիմաւ, մինչեւ խաւար եւ մութ կալաւ զաչս նորա, անդէն անկաւ Թաւալեցաւ, եւ ոչ մնաց իսկ տէր էր. եւ զօրքն հեծէին եւ հառաչէին իբրեւ այն թէ մեռաւ ։ Այլ նորա ոչ մատնեալ ի պարտութիւն յայնժամ ամենայնէ որ զայլսն զարհուրեցուցանիցէ, մինչ չեւ վիրացն բուժեալ՝ սաստկացուցանէր զպաշարումն, զի եւ ցասումն եւ սրտմըտութիւն զընակաւոր երագութիւնն գործեցուցանէին ։ Արդ հատեալ գետնափորս ի ներքոյ պարսպացն՝ բացաւ խրամ անհնարին, ընդ որ ի ներքս մտեալ, յաղթեալ՝ հրաման տայր զ.քաղաքն ի բաց քանդել ։

Ընդ որ զՄեննդեմոս Գ. հազարօք հետևակաց և Պ հեծելովք առձակէր ի քաղաքն Մարականդա։ Սպիտամենէս որ հատուած էր եկեալ յառաջագոյն անդր ի բաց հանեալ զպահապանս Մակեդոնացւոցն, մտեալ փակէր զանձն ի մէջ պարսպաց քաղաքին, թէպէտ և չկամէին հաճոյ քաղաքացեացն ապըստամբութեան խորհուրդն։ Նոյնց ակայն կարծէին թէ զհետ նորա երթալ, քանզի արգելուլ չէին ձեռնհաս։ Այնմ ժամանակի դարձեալ զայր Աղեքսանդրոս ի Տանայիս գետ, և որչափ վայրս կալեալ ունէր բանակն, որմ ածեալ պատէր։ Այս էր որմ քաղաքին Կ վտաւան. և այնմ նոււ քաղաքի հրամայէր անուն կոչել Աղեքսանդրիա։ Այնչափ փութանակի գործն վճարեցաւ, զի յետ եւթնեւտասան աւուրց, յորմէ հետէ պարիսպքն կանգնեալ էին, և յարկք նոււ քաղաքին ի գլուխ ելին։ Այս էր անհնարին ճիգն զօրականացն, թէ ո՛ նախ զիւր գործ ի գլուխ հանեալ ցուցանիցէ, զի իւրաքանչիւր անցնիւր գործ բաժանեալ էր։ Այս տուան բնակիչք նորոյ քաղաքին ի

զերեացն՝ զորս հան նա յազատութիւն աւետալ փրկանս աերանցն, որոց զաւակքն մինչեւ ցայժմ յետ այնչափ ամաց ի վերայ անցելոց երեւելի եղեն առ Նոսա. վասն յիշատակին Աղեքսանդրի։

Է. Իսկ Թագաւորն Սկիւթացւոց, որոյ իշխանութիւն էր յայնժամ յայնկոյս Տանայիս գետոյ, զմտաւ ածեալ թէ քաղաքն զոր ի գետեզերին Մակեդոնացիքն շինեցին, լուծ իմն ի վերայ պարանոցաց իւրեանց եդաւ, զիւր զեղբայր Կաթասիս անուն, բազում հեծելազօր զօրօք առաքեր երթալ քակել զքաղաքն, եւ հանել վարել ի գետեզերէ անտի ի բաց զզօրս Մակեդոնացւոցն։ Տանայիս զԲակտրիացիսն ի Սկիւթացւոց՝ զորս Եւրոպէացիս կոչեն, բաժանէ։ Եւ նոյն սահման է ի մէջ Ասիացւոց եւ Եւրոպացւոց աշխարհին։ Այլ Սկիւթացւոց ազգն որ ոչ հեռի ի Թրակացւոց աշխարհէն բնակեալ է, յարեւելից ի հիւսիսակողմն հասանէ, եւ Սարմատացւոցն՝ որպէս ոմանք կարծեցին, ոչ եթէ սահմանորդ, այլ մասն է։ Եւ բնակէ նա ի միւսում

եւս գաւառաւ ի դէպ ուղիղ յայնմ վայրէ անդր քան զիատէր գետ, եւ ի վերջին կողմանս Ասորւոց աշխարհին, ուր Բակտրիք են, Հասանէ։ Բնակեալ նստին եւ ի կողմանս որ մերձաւորագոյն ի Հիւսիսի են։ Նու անտի սկիզբն առնեն մայրիքն եւ անապատք մեծամեծք. եւ միւսանգամ ընդ կողմն որ Հայի ի Ցանայիս եւ ի Բակտրիս, մարդկեղէն բնակութեան նշմարանք երեւին։ Նախ Աղեքսանդրոս իբրեւ կամեցաւ առ մարտ պատերազմի ընդ ազգին ընդ այնմիկ, քանզի չէր յառաջագոյն զպատերազմն պատրաստեալ, եւ առաջի նորա ձի արկեալ խաղայր թշնամին, եւ մինչ դեռ տակաւին խօթ էր ի վիրաց անտի, եւ մանաւանդ ձայնն նուաղեալ՝ վասն սակաւ կերակրոյն եւ պարանոցին ցաւոց, հրամայէր զբարեկամսն ի խորհուրդ կոչել։ Երկեցուցանէր զնա ոչ թէ թշնամին՝ այլ ժամանակացն անհարթութիւն. քանզի ապստամբեալ էր Բակտրիացւոցն, եւ Սկիւթացիքն խլրտէին. եւ ինքն ոչ յերկրի կարէր երթալ, եւ ոչ յերիւար հեծանել, ոչ ուսուցանել եւ ոչ

յորդորել զնուրան: Պատեալ պաշարեալ յերկոցունց կողմանց, դիցն եւս լինէր մեղադիր. տրտնջէր թէ յուլութեամբ անկեալ գնի, յորոյ երագութենէ ոչ ոք յառաջագոյն կարէր ապրել. եւ թէ իւրքն հազիւ թէ կարեն առնուլ յանձն թէ չկեղծաւորի ի խօթութիւն:

Այսպէս որ յետ Դարեհի իպարտութիւն մատնելոյ զերղձս եւ զհաւատս ոչ եւս սովոր էր հարցանել, միաբանգամ յընդունայն կարծիս շրջեցաւ ի խառն մարդկեղէն մտաց. Հրաման տայր Արիստանդրի, որում հաւատարիմ իմն կարծիս ցուցանէր, դիտել զելս իրացն զոհիւք: Բարք այս էին ընձիցն զընդերսն առանց թագաւորի դիտել, եւ թէ զինչ ընդերքն գուշակիցեն, զալ պատմել թագաւորին: Յայնմ ժամանակի թագաւորն, մինչ դեռ յաղիս նախորացն քննէին ելք իրացն անյայտից, հրամայեր բարեկամացն մօտագոյն առ իւր մատուցեալ նստել, զի մի, յորժամ բարբառոյն բուռն առնիցէ, զվէրսն որ տակաւին կային, զայրացուսցէ: Եւ եկին մտին ի վրան անդր Եփեստիոն եւ Կրատերոս եւ

յետ այնորիկ երթալ եւ հնազան-դել: Բայց յանձնեցոյց զնա ի խոր-հրդոց իւրոց Սոգդիացւոց ապըս-տամբութիւնն որ պատմեցաւ նմա, զի եւ Բակտրիացիք ի նոյն միաբա-նեցին. եւ էին միանգամայն Է հա-զարք հեծելազօր զօրաց. եւ այլք եւս բազումք զհետ նոցա անկեալ երթային: Աղեքսանդրոս զՍպիտա-մենէս եւ զԿատենէս յորոց Բեսոսն մատնեցաւ, հրամայէր յառաջ կոչել, այսպէս ածեալ զմտաւ թէ նոքա կարեն նուաճել զնոսա, որ զխռովու-թիւնսն գործէին: Այլ սոքա քան-զի ինքեանք իսկ առաջնորդք ապըս-տամբութեանն էին, վասն որոյ հրա-մանն առնոյին երթեալ ցածուցանել, հանեն համբաւ, թէ յայն սակս կոչէին զամենայն հեծեալք Բակտրիա-ցւոցն ի թագաւորէ անտի, զի սպան-ցեն. եւ թէ ինքեանք չառնուն յանձն զայնպիսի հրաման ի գլուխ հանել, զի մի գործ անօրէն եւ առանց քաւու-թեան ի ժողովուրդ անդր իւրեանց գործիցեն: Եւ ոչ, ասեն, կարեմք հանդուրժել տանել խստութեան Աղեքսանդրի առաւել քան տիրա-պան նենգութեանն Բեսոսայ, այն-

պես զայնոսիկ՝ որ ինքնակամն իսկ յաւելեալ եւ զարդարեալ էին, զիւրաւ պատածոցն անհիւ առաւել եւս ի զէնս զրդեցին։

Իսկ թէ զգաստ լինէր Աղեքսանդրոս զապստամբելոյ փախստէիցն եկելոց հաստուած առ նա, հրամայէր Կրատերեայ զԿիւրոպօլիս յարդել արկեալ պաշարել. ինքն զայլ քաղաք աշխարհին իբրուն առնոյր, եւ տայր նշան թէ ամենեքին որ հասեալ ի շառ տարուծեան իցեն կատարեացին, իսկ այլն ամենայն առ աւար եւ ապուռ յաղթողացն լինէր. քակեալ քանդէր քաղաքն զի ընդ նա հայեցեալ եւ այլոցն՝ կարծեացին։ Անմակենացիք, ազգ հզօր, ի մտի եդին ոչ միայն պատուով ժոյժ պաշարմանն ունել, այլ եւ ի զգուշութեան եւս զանձինս կացուցանել։ Իսկ թագաւորն Ծ հեծեալս առաջի արձակէր եղթալ ցածուցանել զհեռռեալ յամառութիւն նոցա եւ հրամանն եւս տայր հրեշտակացն ցուցանել զհեզութիւն իւր այնոցիկ որ անձնատուրն լինիցին, եւ միանգամայն ի պարտեալն զանագորոյն միտսն։ Աղքա եաւան պատասխանի

թէ ոչ ի հաւատոյ ինչ եւ ոչ ի դօրութենէ թագաւորին թերահաւատ եմք, եւ հրաման տային այրուձիոյն ելանել արտաքոյ քան զպարիսպն. ապա տապնջականութեամբ ընդունէին զնոսա. եւ իբրեւ ծանրացան ի կերակրոց անտի եւ ի քուն մտին, ի վերայ անկեալ ի տարաժամ ժամու գիշերոյն՝ անդէն սատակէին: Աղեքսանդրոս՝ որպէս ի դէպ էր, զայրացաւ դժգմեցաւ, շուրջանակի պատեալ պաշարէր զքաղաքն, զոր չէր մարթ յառաջնում յարձակել անդ առնուլ, քանզի ամուր էր: Վասն այնորիկ զՄելէագրոս եւ զՊերդիկկաս յաւելոյր ի պաշարումն անդր, որ զԿիւրոպոլիս, որպէս յառաջագոյն ասացաւ, պաշարեալ ունէին: Բայց ի մտի եդեալ էր քաղաքին խնայել, վասն զի ի Կիւրոսէ էր շինեալ, քանզի ոչ ընդ այլ ոք յազգաց անտի առաւել զարմացեալ էր, որչափ ընդ այն թագաւոր եւ ընդ Շամիրամ, զորոց համարէր թէ ազգացն մեծանձնութեամբ եւ մեծապայծառ արութեամբ եւ քաջութեամբ պայծառացան: Այլ՝ քաղաքացեացն հեստութիւն զզգուեցին

բորբոքեցին զցասումն ։ Վասն այնորիկ զքաղաքն առնել, հրամայէր քակել քանդել եւ ի հիմանց խլել։ Այլ՝ քանզի ոչ յանիրաւի ինչ թշնամի Մեմակեդոնացւոց էր, առ Մեղէագրոս եւ Պերդիկկաս դառնայր։ Բայց ոչ քաղաք ինչ յայլոց քաղաքաց եւս հզօրագոյնս ժուժկալ եղեւ պաշարմանն. քանզի քաջք ի զօրականացն անկան, ինքն թագաւորն հաս ի յետին տագնապ վտանգի։ Քանզի հարան վէրք նորա վիմաւ, մինչեւ խաւար եւ մութ կալաւ զաչս նորա, անդէն անկաւ թաւալեցաւ, եւ ոչ մնաց իսկ տէր էր. եւ զօրքն հեծէին եւ հառաչէին իբրեւ այն թէ մեռաւ։ Այլ նորա ոչ մատնեալ ի պարտութիւն յայնմ ամենայնէ որ զայլսն զարհուրեցուցանիցէ, մինչ չեւ վիրացն բուժեալ՝ սաստկացուցանէր զպաշարումն, զի եւ ցասումն եւ սրտմտութիւն զբնակաւոր երագութիւնն դրդուեցուցանէին։ Արդ հատեալ գետնափորս ի ներքոյ պարսպացն՝ բացեալ խորամ անհնարին, ընդ որ ի ներքս մտեալ, յաղթեալ՝ հրամանտայր զքաղաքն ի բաց քանդել։

դերեացն՝ զորս հան նա յազատու- թիւն տուեալ փրկանս աերանցն, որոց զաւակքն մինչեւ ցայժմ յետ այնչափ ամաց ի վերայ անցելոց երեւելի եղեն առ նոսա. վասն յիշատակին Աղեքսանդրի։

Է. Իսկ թագաւորն Սկիւթացւոց, որոյ իշխանութիւն էր յայնժամ յայնկոյս Տանայիս գետոյ, զմտաւ ածեալ թէ քաղաքն զոր ի գետեզերին Մակեդոնացիքն շինեցին, լուծ իմն ի վերայ պարանոցաց իւրեանց եդաւ, զիւր զեղբայր Կաթասիս անուն, բազում հեծելազօր զօրօք առաքեր երթալ քակել զքաղաքն, եւ հանել վարել ի գետեզերէ անտի ի բաց զզօրս Մակեդոնացւոցն։ Տանայիս զԲակտրիացիսն ի Սկիւթացւոց՝ զորս Եւրոպէացիս կոչեն, բաժանէ։ Նա եւ նոյն սահման է ի մէջ Ասիացւոց եւ Եւրոպացւոց աշխարհին։ Ազգ Սկիւթացւոց ազգն որ ոչ հեռի ի Թրակացւոց աշխարհէն բնակեալ է, յարեւելից ի հիւսիսակողմն հասանէ, եւ Սարմատացւոցն՝ որպէս ոմանք կարծեցին, ոչ եթէ սահմանորդ, այլ մասն է։ Նա եւ բնակէ նա ի միասին

եւս գաւառաւ ի դէպ ուղիղ յայնմ վայրէ անդր քան զԻատէր գետ, եւ ի վերջին կողմանս Ասորւոց աշխարհին, ուր Բակտրիք են, հասանէ։ Բնակեալ նստին եւ ի կողմանս որ մերձաւորագոյն ի Հիւսիսի են։ Եւ անտի ակիզբն առնեն մայրիքն եւ անապատք մեծամեծք. եւ միւսանգամ ընդ կողմն որ հայի ի Տանայիս եւ ի Բակտրիս, մարդկեղէն բնակութեան նշմարանք երեւէին։ Նախ Աղեքսանդրոս իբրեւ կամեցաւ տալ մարտ պատերազմի ընդ ազգին ընդ այնմիկ, քանզի չէր յառաջագոյն զպատերազմն պատրաստեալ, եւ առաջի նորա ձի արկեալ խաղայր թշնամին, եւ մինչ դեռ տակաւին խօլ էր ի վիրաց անտի, եւ մանաւանդ ձայնն նուաղեալ՝ վասն սակաւ կերակրոյն եւ պարանոցին ցաւոց, հրամայէր զբարեկամսն ի խորհուրդ կոչել։ Երկեցուցանէր զնա ոչ թէ թշնամին՝ այլ ժամանակացն անհարթութիւն. քանզի ապստամբեալ էր Բակտրիացւոցն, եւ Սկիւթացիքն խլրտէին. եւ ինքն ոչ յերկրի կարէր երթալ, եւ ոչ յերիվար հեծանել, ոչ ուսուցանել եւ ոչ

յորդորել զհուրան։ Պատեալ պաշարեալ յերկոցունց կողմանց, զիցն եւս լինէր մեղադիր. տրտնջէր թէ յուլութեամբ անկեալ գնի, յորոյ երագութենէ ոչ ըզ յառաջագոյն կարէր ապրել. եւ թէ իւրքն հազիւ թէ կարեն առնուլ յանձն թէ չկեղծաւորի ի խօթութիւն։

Այսպէս որ յետ Դարեհի իպարտութիւն մատնելոյ զիղձս եւ զհաւադէսս ոչ եւս սովոր էր հարցանել, միւսանգամ յընդունայն կարծիս շըջեցաւ ի խաղս մարդկեղէն մտաց. հրաման տայր Արիստանդրի, որում հաւատարիմ իմն կարծիս ցուցանէր, դիտել զելս իրացն զոհիւք։ Նարք այս էին ընձիցն զընդերան առանց թագաւորի գիտել, եւ թէ զինչ ընդերքն գուշակիցեն, զալ պատմել թագաւորին։ Յայնմ ժամանակի թագաւորն, մինչ դեռ յաղիս նախորացն քննէին ելք իրացն անյայտից, հրամայէր բարեկամացն մօտագոյն առ իւր մատուցեալ նստել, զի մի, յորժամ բարբառոյն բուռն առնիցէ, զվէրան որ տակաւին կային, զայրացուսցէ։ Եւ եկին մտին ի վրան անդր Եփեստիոն եւ Կրատերոս եւ

Եղիցիս պահապանդք հանդերձ։ Պատերազմ, ասէ, հասեալ զրաւեաց զիս, որ առաւելագոյն դիպող է ժամու թշնամեացն քան ժամու խմուամ։ Բայց քան զիմաստութիւն յառաջագոյն է հարկն, մանաւանդ ի պատերազմի, յորում անօր երբեք համարձակ է զժամանակն ընտրել։ Ապստամբեցին Բաբելոնացիքն զօրս ի վերայ հասեալ Նուաճել կամեաք, եւ թէ որչափ զօրութիւն իցէ ի մեզ, զայն յօտարացն պատերազմէ ուսանիմք։ Արդարեւ եթէ թողումք զՍկիւթացիս որ զինուք ինքնակամ եկին ի վերայ մեր, արդ արհամարհեալք եւ անզգուշեալք դառնամք առ այնոսիկ որ ապստամբեցին ի մէնջ. իսկ եթէ ըստ Ցանայիս անցանիցեմք, եւ ցուցանիցեմք Սկիւթացւոց սատակմամբն եւ արեամբն թէ ամենայն ուրեք առանց պարտութեան եմք, ո՞ որ այնուհետեւ չհնազանդիցի մեզ որ եւ Եւրոպացւոց աշխարհին յաղթեցաք։ Ախաղէ որ ոք զսահմանս փառաց մերոց վայրագք եւ անջրպետութեամբ, ընդ որ անցանելոց եմք, չափէ։ Ան դեռ ընդ մէջ անցանէ, ընդ որ եթէ

անցանիցեմք, հատանիցեմք զմեռս ի վերայ Եւրոպացւոց աշխարհին։ Նու քանիօն այն մեծ իցէ, զի յորժամ զԱսիա նուաճեալ իցեմք, յայլում եւս իմն աշխարհի նշան յաղթութեան կանգնիցեմք. եւ զոր բնութիւն երկայնաձիգ անջրպետութեամբն թուիցի ի միմեանց զատանել, միով յաղթութեամբ յանկարծակի փաղփաղակի ի միմեանս եկեալ խառնեսցի։ Եւ արդարեւ եթէ առկաւին մի ինչ յամիցեմք, զհետ թիկանց մերոց հասեալ կայցեն Սկիւթացիքն։ Անթէ մե՞ք միայն իցեմք, որ ընդ գետս ի լեւղ անցանել կարիցեմք։ Բազում ինչ է, որ այսորէն ի մեր վերայ անկեալ կործանեսցէ, որով մինչեւ ցայժմ մեք յաղթէաք։ Քանզի այս իսկ բարք են բախտի, պարտելոցն եւս ուսուցանել զարուեստ ճարտարութեան մարտի։ Յառաջ քան զակաւ մի ցուցցուք մեք օրինակ ակով ըստ գետս անցանելոյ. եթէ Սկիւթացիքն այնմ չգիտիցեն լինել նմանօղ, Բակտրիացիք ուսուսցեն զնոսա։ Բաց յայսմ ամենայնէ, մինչեւ ցայժմ մի զունդ եկն յաղթէ

խորհուրդսն, զերկեւղ պաշտամանցն, որոց չկարէր լինել ժուժկալ թագաւորն, կամէր ի միտ արկանել. եւ ասէր, թէ Եւ դիքն զիմաստարձ ենն խորհրդեանն, եւ վիշտք մեծամեծք գուշակեալ են թէ ըստ դեռ անդր անցանիցեն: Մինչ դեռ Երիգիոս ի վրան անդր թագաւորին մտանէր, ընդ առաջ հասանէր Արիստանդրոս, յայտ առնէր թէ չեն ընդերքն աջող. զայս իմացեալ յըղձէ անտի պատմէր Երիգիոս: Արգել զնա թագաւորն, եւ ոչ միայն զայրացաւ ցասմամբ այլ եւ լի եղեւ ամօթով զի երկեւղ պաշտամանցն զոր թագուցեալ էր, եկն յայտ. եւ զԱրիստանդրոս հրամայէր կոչել: Իբրեւ նա եկն, հայեցաւ ի նա. Ոչ, ասէ, թագաւոր եմ, այլ դպիր ոք: Տալ եւս հրաման մատուցանել զոհս, եւ զինչ զոհիւն գուշակէր հի՞մ այլում յայտնեցեր բաց յինէն: Երիգիոս զծածուկս իմ եւ զգաղտնիս ի քէն ծանեաւ: Բայց ես այսպէս կարծեմ, թէ ահն իսկ նորա թարգման ընդերացն եղեւ: Բայց եւ քեզ պատուէր տամ որչափ ինչ ձեռնհաս իցեմ, զի եւ

ընդերս, տեսի, բայց ամենեւին ստորս յառաջնոցն. յայնժամ, ասէ, հոգովք տագնապեցուցին զիս, իսկ այժմ ամենեւին իսկ բարձան ի միջոյ։

Եւ որ ինչ յետ այնորիկ մի ըստ միոջէ պատմեցաւ թագաւորին, եղծ եւ խանգարեաց զկարգ յաջողութեան իւրոյ նորա։ Օլենեգեմոս, որպէս կանխագոյն ասացաւ, արձակեալ էր երթալ պաշարել զՍպիտամենէս զառաջնորդ Բակտրիացւոց ապստամբութեանն։ Սա իբրեւ զիտաց զհասանել թշնամւոյն, զի մի իցէ թէ ի պարիսպս քաղաքին արգելեալ փակիցի, եւ մանաւանդ յուսացեալ թէ մարթի ի բուռն արկանել զնա ի տեղւոջ ընդ որ գիտէր թէ գայ, դարանեալ նստէր։ Նա էր ճանապարհ անտառախիտ պատեհ առ ի թագուցանելոյ զդարանակալութիւնն, եւ անդէն զԴահացիս առնէր ի թագստի։ Ձիաւորքն երկուս երկուս վառեալս բարձեալ ունէին, յորոց մին փոխանակաւ յանկարծակի վազեալ իջանէր եւ այնպէս զկարգ հեծելազօրաց մարտին խռովէին։ Նա էր կէս հասարակ երազութեան երիւարացն

մարդկանն երագութիւն: Հրաման տայր նոցա Սպիտամենէս զխոխոման պաշարել եւ միանգամայն յառջմէ եւ յաՀեկէ, յառաջոյ եւ յետոյ երեւեցուցանէր զնոսա Թշնամեացն: Իսկ Մենեդեմոս յամենայն կողմանց արգելեալ փակեալ, Թէպէտ եւ ոչ Թուոյն զօրք եւ Հաւասար էր, մեծ ժամս կայր նոցա Հակառակ. գոչիւն բարձեալ աղաղակէր, Թէ չէք՝ ինչ այսուՀետեւ Հնարս կամ պատճառանս պատճառել, զի ի վշտագին տեղիս եկայք անկայք, այս միայն կայ մխիթարութիւն մեծարոյ մաՀուն, յորժամ ի սրոյ Թշնամեացն անկանիցիմք: Ինքն յերիւար Հարուստ Հեծեալ գնայր բազում անգամ այնպէս երիւարաւն ի գունդս բարբարոսացն դիմեալ ուժգնագոյնս, կոտորած սաստիկ ի վերայ Հասուցեալ, անդէն ցանեալ ցրուեալ վարատէր: Բայց քանզի ամենեքին զնա միայն խնդրէին, բազում վէրս յանձն առեալ կիսամեռ զՀիփսիդէս ոմն ի բարեկամաց անտի աղաչէր, զի յերիւար Հեծանիցի եւ զնա փախըստեամբ պրծեալ ապրեցուցանիցէ: Մ՝ինչ դեռ նա զայն խօսէր, անդէն

ոտիքն սպառեցան, եւ դիմն անկաւ յերիւարէ անտի ի գետին։ Իսկ Հիփարիդէս թէպէտ եւ ապրել կարող էր, սակայն լաւ համարեցաւ մեռանել յետ կորնչելոյ առն բարեկամի։ Զմիոյն եւեթ փոյթ ի մտի կայր, թէ մի առանց վրէժ խնդրելոյ անկանիցի։ Նմին իրի խթեալ զերիվարն ի մէջ թշնամեացն, երթայր միջամուխ, եւ տուեալ երեւելի մարտ պատերազմի, առապատառ անկանէր ի զինուցն եւ ի սպառազինաց։ Զոր իբրեւ տեսին որ ի կոտորածէ անտի մնացեալ էին, զբլուր մի որ քան զայլսն բարձրագոյն էր, հասեալ կալան, զորս եւ Սպիտամենէս արգելեալ պաշարեաց, եւ սովով կամէր ի բուռն առնուլ։ Անկան ի ճակատուն Բ հազար հետեւակաց եւ Յ հեծելոք։ Զայս կոտորած թաղոյց Աղեքսանդրոս իմաստութեամբ, մահու սպառնալիս սահմանեալ այնոցիկ, որ ի ճակատուէն եկեալ էին, եթէ սփռէին զինչ իրք գործեալ էին։

Ը. ԱՅԼ իբրեւ չկարէր ընդ երկար կեղծաւորել, մեկնեցաւ ի վրանն իւր, զոր էր տուեալ խորհրդով ի վերայ

հարկ ինչ էր աւելի քան զայս բանս խօսել, եւ ոչ Թագաւորն կարող էր վասն հիւանդութեանն։ Այլ այնչափ յօժարութեամբ զօրքն զլաստան կցեցին, զի յերիս աւուրս իբրեւ ԺԲ հազարք գործեցան։ Իբրեւ զամենայն կազմեցին պատրաստեցին անցանել, հրեշտակք Ի ի Սկիւթացւոց անտի անցեալ երկվարգք ընդդանալին ըստ սովորութեան ազգին այնորիկ, պատուիրէին ասել ցԹագաւորն, թէ կամիմք պատգամս առ նա հասուցանել։ Իբրեւ ի ներքս ի խորան անդր մուծան, եւ առին հրաման նստել, սկսան պշուցեալ հայել յերեսս Թագաւորին. ինձ թուի թէ վասն զի ի մարմնոյ յաղթանդամութենէ զքաջութիւն կշռէին, փոքր կերպարանք նորա ոչ հաւասար ինչ համբաւոյն երեւէին։ Բայց ոչ որպէս այլոց բարբարոսաց, նոյնպէս եւ Սկիւթացւոց բիրտ եւ թանձր միտք են. ոմանք, ասեն, ի նոցանէ եւ իմաստութեան խելամուտ են, որչափ հասու կարիցէ լինել ազգ մի, որ համակ ընդ զէնս եւ ընդ սպառազէնս իցէ։ Այսպէս զայն ձեւ ասեն նոցա

անտի, իսկ այլոցն տակաւին անկն կայ։ Որպէս ի պատերազմէ փախուցեալ, պատերազմ պարտեմք, եւ զմարտ պատերազմի զոր կարեմք ի վերայ հասուցանել, ստիպեսցուք կրել։ Յայտնի իսկ եւ գուշակաւոր է քաջութիւն խորհրդոց իմոց։ Բայց թէ թողուն ինձ Մակեդոնացիքն ըստ կամաց մտաց իմոց գործել, ընդ այն կարծեօք եմ. քանզի յորմէ հետէ վէրս առի, ոչ յերիւար հեծայ, եւ ոչ գնացի հետիոտս։ Այլ եթէ կամիք զհետ իմ գալ, կարող եւ ձեռնհաս եմ, բարեկամք։ Ի՛ է իմ ոյժ եւ զօրութիւն բաւական այսմ ամենայնի ժուժկալ լինել, կամ թէ կենաց իսկ իմոց վախճան հասեալ իցէ, զի՞նչ քան զայս ազնուագոյն գործ կայցէ. ի դիմին իսկ մեռայց։

Զայս ամենայն խօսեցաւ տակաւին բեկեալ բարբառով, մինչ զի երբեք երբեք նուաղել իսկ, եւ հազիւ թէ լսելի մօտակայացն լինէր. ամենեքին շրջել սկսան զթագաւորն ի վաղվաղ խորհրդենէ անտի, մանաւանդ Երիգիոս որ չկարէր վճարել ինչ ճոխութեամբն, վասն զի պնդեալ յամառեալ էր նա յառաջին

խորհուրդսն, զերկեւղ պաշտամանցն, որոց չկարէր լինել ժուժկալ Թագաւորն, կամէր ի միտ արկանել. Եւ ասէր, Թէ Եւ դիքն դիմադարձ են խորհրդեանն, եւ վերջաք մեծամեծք գուշակեալ են Թէ ըստ գետ անդր անցանիցեն: Մինչ դեռ Երիգիոս ի վերան անդր Թագաւորին մտանէր, ընդ առաջ հասանէր Արիստանդրոս, յայտ առնէր Թէ չեն ընդերքն աջող. զայս իմացեալ յըղձէ անտի պատմէր Երիգիոս: Սրդել զնա Թագաւորն, եւ ոչ միայն զայրացաւ ցասմամբ այլ եւ լի եղեւ ամօԹով զի երկեւղ պաշտամանցն զոր Թագուցեալ էր, եկն յայտ. եւ զԱրիստանդրոս հրամայէր կոչել: Իբրեւ նա եկն, հայեցաւ ի նա. Ոչ, ասէ, Թագաւոր եմ, այլ գդյդն ոք: Տալ եւտու հրաման մատուցանել զոհս, եւ զինչ զոհիւն գուշակէր հի՞մ այլում յայտնեցեր բաց յինէն: Երիգիոս զծածուկս իմ եւ զգաղտնիս ի քէն ծանեաւ: Բայց եւ այսպէս կարծեմ, Թէ առհն իսկ նորա Թարգմանն ընդերացն եղեւ: Բայց եւ քեզ պատուէր տամ որչափ ինչ ձեռնհաս իցեմ, զի եւ

ինձ յայտ առնիցես զինչ յընդերացն ծանեար, զի մի յուրաստ ինչ կայցես, որպէս թէ չասացեր զայն զոր ասացերն։ Այս ապշեալ յիմարեալ կայր, եւ առ ահին ապշնալոյ եւ բարբառն արգելեալ. այլ ուրեմն առաջնայեալ ի նմին երկիւղէ, զի մի ասասցէ կալ մնալ սպասել թագաւորին. Զմեծի, ասէ, աշխատութեան, բայց ոչ անօգուտ եւ զաստրկ վաստակոյ պատերազմ ի վերայ Հասնեալ պատմեցի. ոչ արուեստ իմ զէս, այլ խնամքն մատակարարութեան խոստովանեցուցանեն։ Զօրաբութիւն առողջութեան քո ականնեմ, եւ որչափ ինչ ի քեզ միայն արդարանան է, գիտեմ։ Կասկածեմ թէ զուցէ չկարիցես լինել բաւական մտաւոր բանիւքն քում։ Իսկ թագաւորին Հրամանն առնեալ համաձակել վստահութեամբ ի յառողջութիւն իւր, անդէն արձակէր։ Զի եւ վասն այլ եւս իրաց, ասէ, շնորհեն ինձ գիրք զփառս։ Իբրեւ խորհուրդ խորհէր ընդ նոսա թէ որպէս ընդ գեան անցանիցեն, ի վերայ հասանէր Արփատանդրոս, Ոչ այլ ուրեմն, ասէ, եւս ողջութեան քան զայն

ընդերս, ասէի, բայց ամենեւին օտարս յառաջնոցն. յայնժամ, ասէ, Հոգովք տագնապեցուցին զիս, իսկ այժմ ամենեւին իսկ բարձան ի միջոյ։

Նմա որ ինչ յետ այնորիկ մի ըստ միոջէ պատմեցաւ թագաւորին, եղծ եւ խանգարեաց զկարգ յաջողութեան իւրոց նորա։ ՕՄենեդեմոս, որպէս կանխագոյն ասացաւ, արձակեալ էր երթալ պաշարել զՍպիտամենէս զառաջնորդ Բակտրիացւոց ապստամբութեանն։ Սա իբրեւ գիտաց զհասանել թշնամւոյն, զի մի իցէ թէ ի պարիսպս քաղաքին արգելեալ փակիցի, եւ մանաւանդ յուսացեալ թէ մարթի ի բուռն արկանել զնա ի տեղւոջ ընդ որ գիտէր թէ գայ, դարանեալ նստէր։ Եւ էր ճանապարհ անտառախիտ պատնէշ առ ի թագուցանելոյ զդարանակալութիւնն, եւ անդէն զԴահացիս առնէր ի թագստի։ Երիւարքըն երկուս երկուս վառեալս բարձեալ ասանէրին, յորոց մին փոխանակաւ յանկարծակի վազեալ իջանէր եւ այնպէս զկարգ հեծելազօրաց մարտին խռովէին։ Եւ էր կշիռ հաւասարակ երագութեան երիւարացն

մարդկանն երագութիւն։ Հրաման տայր սոցա Սպիտամենէս զխոխոման պաշարել եւ միանգամայն յաղթել եւ յաՀեկել, յառաջոյ եւ յետոյ երեւեցուցանել զնոսա Թշնամեացն։ Իսկ Մենեդեմոս յամենայն կողմանց տագելեալ փակեալ, Թէպէտ եւ ոչ Թուոյն զոյգ եւ Հաւասար էր, մեծ ժամս կայր Նոցա Հակառակ. գոչիւն բարձեալ աղաղակէր, Թէ չիք՝ ինչ այսուՀետեւ Հնարս կամ պատճառանս պատճառել, զի ի վշտագին անդր եկայք անկայք, այս միայն կայ մխիթարութիւն մեծարոյ մաՀուն, յորժամ ի սրոյ Թշնամեացն անկանիցիմք։ Ինքն յերիվար Հարուստ Հեծեալ զնայր բազում անգամ այնպէս երիվարաւն ի գունդս բարբարոսացն դիմեալ ուժգնագոյնս, կոտորած սաստիկ ի վերայ Հասուցեալ, անդէն ցանեալ ցրուեալ վարատէր։ Բայց քանզի ամենեքին զնա միայն խնդրէին, բազում վէրս յանձն առեալ կիսամեռ զՀիփսիդես ոմն ի բարեկամաց անտի աղաչէր, զի յերիվար Հեծանիցի եւ զնա փախըստեամբ ապրեալ ապրեցուցանիցէ։ Մ՝ինչ դեռ նա զայն խօսէր, անդէն

ոգիքն սպառեցան, եւ դլին անկաւ յերիվարէ անտի ի գետին: Իսկ Հիփոլիդէս Թեպէտ եւ ապրեալ կարող էր, սակայն լաւ համարեցաւ մեռանել յետ կործանելոյ առն բարեկամի: Զմիոջէ եւեթ փոյթ ի մտի կայր, թէ մի առանց վրէժ խնդրելոյ անկանիցի: Նմին իրի խթեալ զերիվարն ի մէջ թշնամեացն, երթայր միջամուխ, եւ տուեալ երեւելի մարտ պատերազմի, տապաստ անկանէր ի զինուցն եւ ի սպառազինացն: Զոր իբրեւ տեսին որ ի կոտորածէ անտի մնացեալ էին, զբլուր մի որ քան զայլսն բարձրագոյն էր, հասեալ կալան, զորս եւ Սպիտամենէս արգելեալ պաշարեաց, եւ սովով կամէր ի բուռն առնուլ: Անկան ի ճակատուն Բ հազար հետեւակաց եւ Յ հեծեալք: Զայս կոտորած թագոյց Աղեքսանդրոս իմաստութեամբ, մահու սպառնալիս սահմանեալ այնոցիկ, որ ի ճակատուէն եկեալ էին, եթէ սփռէին զինչ իրք գործեալ էին:

Ը. ԱՅԼ իբրեւ չկարէր ընդ երկար կեղծաւորել, մեկնեցաւ ի վրան իւր, զոր էր տուեալ խորհրդով ի վերայ

զետակզերն կանգնել : Ընդ աւանձինն կշռէր զամենայն խորհուրդս իւր, եւ այնպէս զգիշերն ամենայն տրամութեամբ ձգեալ հանէր, բազում անգամ զվրանափեղկս խորանին իւրոյ ի վեր առեալ, հայէր ընդ խարոյկս թշնամեացն, զի անտի առնուցու ի միտ, թէ որչափ բազմութիւն մարդկանն իցէ : Իբրեւ առաւօտն մերձենայր, զգեցեալ ըզզրահս իւր, ելեալ կայր յանդիման զօրացն, եւ էր այն առաջին երեւել այնպէս յետ վիրացն զոր ի վերջնումն առ : Այնչափ ակն ածեալ մեծարէին նորա զթագաւորն, զի վաղվաղակի զխորհուրդ վշտաց եւ վտանգին, յորմէ զողացեալ էին, յանձանց ի բաց թօթափեցին, առեալ մօտ զթագաւորն : Ցնծացեալք ուրախութեամբ եւ իջուցեալ խնդութեան արտասուս միանգամայն ողջոյն տային նմա, եւ զպատերազմն զոր յառաջագոյն շատանուքն յանձն, խնդրէին քաջացեալք : Նա կայր պատուիրէր լաստուիւք զայրուձին եւ զգունդն յայնկոյս անցուցանել . իսկ թեթեւազգոյնս վառելոցն հրամայէր ի վերայ ակաց երթալ ի լեռն : Ոչ

հարկ ինչ էր աւելի քան զայս բանս խօսել, եւ ոչ թագաւորն կարող էր վասն հիւանդութեանն: Այլ այնչափ յօժարութեամբ զօրքն զլխաւորն կցեցին, զի յերկու աւուրս իբրեւ ԺԲ հազարք գործեցան: Իբրեւ զամենայն կազմեցին պատրաստեցին անցանել, հրեշտակք Ի ի Սկիւթացւոց անտի անցեալ երիվարօք ընդ բանակին ըստ սովորութեան ազգին այնորիկ, պատուիրէին ասել ցթագաւորն, թէ կամիմք պատգամս անա հասուցանել: Իբրեւ ի ներքս ի խորան անդր մուծան, եւ առին հրաման նստել, սկսան պշուցեալ հայել յերեսս թագաւորին. ինձ թուի թէ վասն զի ի մարմնոյ յաղթանդամութենէ զքաջութիւն կշռէին, փոքր կերպարանք նորա ոչ հաւասար ինչ համբաւոյն երեւէին: Բայց ոչ որպէս այլոց բարբարոսաց, նոյնպէս եւ Սկիւթացւոց բիրտ եւ թանձր միտք են. ոմանք, ասեն, ի նոցանէ եւ իմաստութեան խելամուտ են, որչափ հասու կարիցէ լինել ազգ մի, որ համակ ընդ զէնս եւ ընդ սպառազէնս իցէ: Այսպէս զայն ձեւ ասեն նոցա

առաջի Թագաւորին խօսել : Թերեւս օտար ինչ ի մերոց բարուց առաջ բանքն իցեն, որ աղնուազգոյն ժամանակաց եւ մեծաց դիպեցաք . այլ թէպէտ եւ արհամարհ նոցա ճառն թուիցի, սակայն մեր հաւատարմութիւնն ոչ . որ ինչ զինչ օրինակ աւանդեցաւ իցէ, անեղծ եւ անարատ բերցուք ի մէջ: Որդ զմիոջէ ի նոցանէ զերկիցագոյնէ լուաք խօսեալ այսպէս:

Եթէ կամք այսպէս էին լեալ դիցն զշատ մարմնոյ քո կչիռ հաստարակ ցանկութեան ողւոյ քո յօրինել, աշխարհս չլինէր բաւական տանել զքեզ. միով ձեռամբ զարեւելս, եւ միւսովն զարեւմուտս շօշափէիր, եւ յետ այսորիկ տակաւին կամէիր գիտել թէ յորում վայրէ ճաճանչք այնպիսի մեծի դիցն թագչիցին : Այս եւ այնպէս եւս ցանկաս որոց չես հասու : Յեւրոպացւոց աշխարհէ գաս յԱսիա, եւ յԱսիացւոց աստի անցանես յԵւրոպն. յետ այսորիկ եթէ զամենայն ազգ. իսկ մարդկան պարտիցես, ընդ անտառաց եւ ընդ ձորոց եւ ընդ գետոց եւ ընդ զազանաց վայրի տայցես մարտ պատերազմի : Իսկ արդ զիմ՛րդ,

չգիտիցե՞ս դու, թէ ծառք մեծաբերձք հարուստ ժամանակս անձին, եւ ի միում ժամու խլէն արմատաքի։ Անմիտ է որ ընդ միրգս նորա հայի, եւ ի յաղթ մեծութենէն ոչ զանգիտէ։ Տես, զգոյշ լեր․ մի, մինչ ի գագաթն ջանայցես հասանել, ստորոտքն իսկ զորոց բուռն հարեալ իցես, ի վայր հոսիցիս։ Եւ առեւծ իսկ երբեմն մանր մանր ինչ թռչնոց կեր եւ ճարակ եղեւ․ եւ զերկաթ բազում անգամ ժանգ մաշէ։ Ոչ ինչ գոյ այնպէս հաստատուն, որում չհասանիցէ վտանգ ի վերայ, եւ ի տկարէ եւս եւ յանզօրէ։ Զի՞ կայ մեր եւ քո։ Հուպ երբեք յերկիր քո ոչ եղեաք․ ո՞ ոք իցես, կամ ուստի՞ եկեալ իցես, արժան ի՞նչ իցէ արդեւք այնոցիկ որ ի մեծամեծ մայրիսն բնակեն, տգիտանալ։ Ոչ ծառայ լինել ումեք կարեմք, եւ ոչ իշխել ցանկանամք։ Զի մի անգիտանայցես զազգէն Սկիւթացւոց, հարկիք եզանց եւ արօտ եւ նիզակ եւ աղեղն եւ տաշտ պարգեւք տուեալ են մեզ։ Զսոսա ի կիր արկեալ վարեմք, եւ ընդ բարեկամաց մերոց եւ ընդդէմ թշնամեաց մերոց։ Տամք

բարեկամաց մերոց զլերս, որ յաշ-
խատութենէ եղանցն ժողովեմք .
աաշտուե ընդ բարեկամաց մերոց
գինի դիցն Նուիրեմք . իսկ զԹշնա-
միս մեր աղեղամբ ի հեռաստանէ
եւ Նիզակաւ ի մօտոյ հարկանեմք ։
Այսպէս Ասորւոց Թագաւորին , եւ
յետ այնորիկ Թագաւորին Պարսից
եւ Մարաց յաղԹեցաք , եւ հորդե-
ցաւ մեզ ճանապարհանդր իսկ մին-
չեւ յաշխարհն Եգիպտացւոց ։ Այլ
դու որ ձեռն յանձին հարեալ պար-
ծիս Թէ վասն զաւազակս հալածելոյ
գաս , ամենայն ազգաց յորս հասեր,
զող ես եւ աւազակ ։ ԶՊխդա-
տան առեր . զԱսորիան դրաւեցեր .
զՊարսից աշխարհն ունիս . Բակ-
տրիացիք ընդ քով ձեռամբ են .
երԹեալ ի Հնդիկս հասեր , եւ այժմ
ի խաշինս մեր զժլատ եւ զանյագ
ձեռս քո կարկառես ։ Զինչ պէտք
քեզ մեծուԹեան իցեն , զի մեծու-
Թիւն տայ քեզ քաղցնուլ ։ Դու
միայն գտար զի ի լիուԹեան ամե-
նայնի եւ ի յագեցուԹեան քեզ
սով գործեցեր . զի որչափ շատ ու-
նիցիս , դոյնչափ շատ , զոր չունիսդ
ցանկանայցես ։ Ջանծնօ դու զմտաւ

թէ որչափ ժամանակս զԲակարիոզք գեգերեալ կայցես, մինչ դեռ զնոսա նուաճեցեր, Սոգդիացիք ի պատերազմ գրգռեցան: Պատերազմ ծնանի քեզ ի յաղթութենէ քումմէ, զի որչափ եւ մեծ եւ հզօրագոյն քան զայլ ոք իցես, սակայն չէ ոք որ օտարազգի անտառն ժոյժ կամիցի ունել:

Միայն անց դու ընդ Տանայիս, ապա իմասցիս եւ ի միտ առցես թէ որչափ ընդարձակ դաշտաքն իցեն. սակայն զՍկիւթացւոց զհետ չկարիցես հասանել: Մեր աղքատութիւն թեթեւագոյն եղիցի քան զգունդս զօրաց քոց որ զայնչափ անչափ ազգաց զառ եւ զաւար կրէ: Դարձեալ մինչ դեռ հեռի զմեզ կարծիցես, ի բանակի քում նշմարիցես: Քանզի նովին արագութեամբ զհետ հասանեմք եւ փախչիմք: Լսեմ թէ Յունաց եւ յառակս եւս են անապատք Սկիւթացւոցն, այլ մեք մանաւանդ յաւեր եւ յամայի ի մարդկանէ անդիս, քան ի քաղաքս եւ յագարակս մեծատանց երթամք: Սան այնուրիկ պնդեալ զձեռս քո այնպէս կալ զլախտ քո: Լպիրծ է

եւ յանկամայ չմարթի կալ դրաւեալ: Օ՛խրատն օգտակար տուեալ քեզ քան զմօտաւորն առ յապա ժամանակն ցուցանէ. արկ ասնձ փառաւորութեան քում եւ այնպէս դիւրագոյն վարիցես: Մերքն ասեն թէ առանց ոտից է բախտ եւ ձեռս եւ թեւս եւեթ ունի. յորժամ զձեռս կարկառիցէ, եւ զթեւսն չտայ ըմբռնել: Բայց արդ եթէ դիք ոք իցես, երախտիս մարդկան պարտիս շնորհել, եւ ոչ զնոցայն հանել. ապա եթէ մարդ իցես, զայն ինչ զոր ինչ ես, զմտաւ ած թէ ես իսկ միշտ եւ հանապազ: Անմտութիւն իմն է զայն ամենայն յիշել վասն որոյ մոռացօնս անձին գործիցես: Ընդ որոց չտայցես ճակատս, զնոսա կարիցես լաւ բարեկամս ունել: Քանզի հզօրագոյն է ի մէջ հաւասարից բարեկամութիւն, եւ հաւասարք այնոքիկ երեւին, որ ոչ ինչ փորձ փորձեցին զզօրութեան ի միջի իւրեանց: Դու զգուշ լեր, մի բարեկամս քեզ զայնոսիկ, որոց յաղթեցեր, համարիցիս. ի մէջ տեառն եւ ծառայի բարեկամութիւն չիք. եւ ի խաղաղութեան եւս պատերազմի

իրաւունք պահին ։ Մի՛ հաւատայցես թէ երդմնի լինելով բարեկամութեան դաշինս քեզ Սկիւթացիք կռեն, զի երդնուն զհաւատարմութիւնն պահելով ։ Այն զգուշութիւն Ցուցանայ է որ զդաշինսն կռեալս դրոշմեն, եւ զդիսն կարդան. Մեք այսպէս գիտեմք թէ կրօնք հաւատք մեր են ։ Որ ի մարդկանէ չածեն ակն, դիցն խորամանկեն ։ Բայց եւ ոչ բարեկամի զորոյ զինամոց կաս-կածիցես, պէտք են քեզ ։ Այլ զմեզ եւ Ասիացւոց եւ Եւրոպացւոց աշխարհին պահապանս ունիցիս. եւ զԲակտրիս, եթէ ոչ ընդ մէջ կարեւ-ցէ Տանայիս, շօշափեսմք. յայնկոյս Տանայեայ մինչեւ ի Թրակիա բնակեմք. ասեն զՄակեդոնիայ առ երի Թրակացւոց աշխարհին լեալ ։ Զմըտաւ ած թէ զսահմանորդս երկոցունց իշխանութեանց քոց, թշնամիս՝ եթէ բարեկամս կամիցիս ունել ։

Թ. ԶԱՑՍ այսպէս զայն գոյն օրինակի բանիցն խուժադուժն ։ Իսկ թագաւորն տայր նոցա պատասխանի, թէ վարեցայց բախտիւ իմով եւ խորհրդեամբք ձերովք. զի զհետ երթայց բախտի իմոյ յուսացեալ ի

նա, եւ անտառացից խորհրդեան խորա-
տաւացն, զի մի ինչ խառն ի խուռն
եւ յանդգնութեամբ գործիցեմ։
Նաեւ արձակեալ զհրեշտակն, զզօրսն
ի վերայ պատրաստելոց լատինիցն
հանէր։ Յաւաղջակողմն անդ զվա-
հանաւորսն կարգէր եւ ի ծունկս
հրամայէր կալ, զի զգուշագոյնք
լինիցին ի նետաւորիցն հարուածոց։ Յետ
սոցա որ զազգի ազգի մեքենայն
ունէին, կային. եւ յաջմէ եւ յա-
հեկէ եւ յառաջոյ սպառազէնք պա-
տէին զնոքօք։ Իսկ այլքն որ յետ
մեքենայիցն միախառն կային վա-
հանափակ, զեկավարին սոյ զրահս
եւս ազուցեալ էր պաշտպանէին։
Նոյն կարգ եւ յայն լաստս պահե-
ցաւ, որ զայրուձին տանէին։ Բազ-
մագոյնք յետոյ կողմանէ լաստին
փոկավք զերիւարսն ձգէին ի լիւղ։
Ամենոցա, զորս ուիկքն կրէին լցեալք
յարդիւ, պաշտպանէին լաստքն յա-
ռաջոյ։ Նաւ ինքն Թագաւորն ըն-
տիր ընտիր արամբք զիւր լաստն քա-
կեր եւ ի գետեզրն հրամայէր ուղ-
ղել։ Ընդ Ակիւթացիքն մատուցեալ
զգունդս հեծելազօր զօրուն ի գե-
տեզերի անդ ընդդէմ դաանայն,

մինչ զի չկարէին լաստաքն ի հող մեր-
ձենալ։ Նաւք բայց ի տեսլենէ ստախ
զօրսն որ ի գետեզերին կային ի պա-
հու, անհնարին եւս երկեւղ ի վե-
րայ նաւարկելոցն հասանէր. զի նաւ-
ավարքն չկարէին ուղիղ վարել,
քանզի կողմանակի ինձ գետոյն հո-
սեալ արգել լինէր. եւ զօրացն գե-
գեւեալ եւ տատանեալ թէ զուցէ
ի գետ անկցեն հոսիցին, զնաւորդացն
սպառնալորութիւն խաւսլէին եւ ոչ
նոցա անգամ զօրութեամբ կարէին
արձակել. քանզի այնմ ինձ նախ
ուշ ունէին, թէ առանց վտանգի
կայցեն, եւ ոչ թէ զթշնամին խա-
ցիցեն։ Բազմապատիկ փրկութեան
պատճառք մեքենայքն եղեն, ո-
րովք ի բազմամբոխ թշնամիս անդր
եւ որ խառն ի խուռն զանձինս ի
ներքս մխէին, նետք տեղային եւ այն
ոչ դատարկս ինչ։ Բարբարոսք եւս
բազում նետս ի վերայ լաստիցն թօ-
թափեցին. եւ ոչ գտաւ վահան որ
չէր բազում նետիւք ծակոտեալ։
Իբրեւ հուպ յափն լաստքն եղեն,
միանգամայն յոտն եկաց վահանաւ-
որ ճակատն, եւ պատրաստեցեալ զգե-
ղարդունսն առանց վրիպելոյ ի լաս-

առաջի Թագաւորին խօսել ։ Թերեւս օտար ինչ ի մերոց բարուց սատի բանքն լցեն, որ ազնուազգին ժամանակաց եւ մտաց դիպեցաք. այլ Թէպէտ եւ արհամարհ նոցա ճառն Թուիցի, սակայն մեր հաւատարմութիւնն ոչ. որ ինչ զինչ օրինակ աւանդեալ իցէ, անեղծ եւ անարատ բերցուք ի մէջ։ Արդ զմիոջէ ի նոցանէ զերկիցագոյնէ լուաք խօսեալ այսպէս։

Եթէ կամք այսպէս էին լեալ դիցն զչափ մարմնոյ քո կշիռ հաստատակ ցանկութեան ոգւոյ քո յօրինել, աշխարհս չլինէր բաւական տանել զքեզ. միով ձեռամբ զարեւելս, եւ միւսովն զարեւմուտս շօշափէիր, եւ յետ այսորիկ տակաւին կամէիր գիտել թէ յորում վայրի ճաճանչք այնպիսի մեծի դիցն Թագչիցին ։ Նա եւ այնպէս եւս ցանկաս որոց չես հասու ։ Յեւրոպացւոց աշխարհէ գաս յԱսիա, եւ յԱսիացւոց աստի անցանես յԵւրոպն. յետ այսորիկ եթէ զամենայն ազգ. իսկ մարդկան պարտիցես, ընդ անտառաց եւ ընդ ձորոց եւ ընդ գետոց եւ ընդ գազանաց վայրի տայցես մարտ պատերազմի ։ Իսկ արդ զիարդ,

չգիտիցե՞ս դու, թէ ծառք մեծաբերձք հարուստ ժամանակս աճեն, եւ ի միում ժամու խլին արմատաքի։ Անմիտ է որ ընդ միրգս նորա հայի, եւ ի յաղթ մեծութենէն ոչ զանգիտէ։ Տես, զգոյշ լեր. մի, մինչ ի գագաթն ջանայցես հասանել, սատովքն իսկ զորոց բուռն հարեալ իցես, ի վայր հոսիցիս։ Նա եւ առեւծ իսկ երբեմն մանր մանր ինչ թռչնոց կեր եւ ճարակ եղեւ. եւ զերկաթ բազում անգամ ժանգ մաշէ։ Ոչ ինչ գոյ այնպէս հաստատուն, որում չհասանիցէ վտանգ ի վերայ, եւ ի տկարէ եւս եւ յանզօրէ։ Զի՞ կայ մեր եւ քո։ Հուպ երբեք յերկիր քո ոչ եղեալք. ո՞ ոք իցես, կամ ուստի՞ եկեալ իցես, արժան ի՞նչ իցէ արդեւք այնոցիկ որ ի մեծամեծ մայրիսն բնակեն, տգիտանալ։ Ոչ ծառայ լինել ումեք կարեմք, եւ ոչ իշխել ցանկանամք։ Զի մի անգիտանայցես զազգէն Սկիւթացւոց, հարկիք եզանց եւ արօտ եւ նիզակ եւ աղեղն եւ տաշտ պարգեւք տուեալ են մեզ։ Զսոսա ի կեր արկեալ վարեմք, եւ ընդ բարեկամաց մերոց եւ ընդդէմ թշնամեաց մերոց։ Տամք

բարեկամաց մերոց զերս, որ յաշ-
խատութենէ եղանցն ժողովքն․
տաշտաւ ընդ բարեկամաց մերոց
գինի դիցն նուիրեմք․ իսկ զԹշնա-
միս մեր աղեղամբ ի հեռաստանէ
եւ նիզակաւ ի մօտոյ հարկանեմք։
Այսպէս Ասորւոց Թագաւորին, եւ
յետ այնորիկ Թագաւորին Պարսից
եւ Մարաց յաղԹեցաք, եւ հորդե-
ցաւ մեզ ճանապարհ անդր իսկ մին-
չեւ յաշխարհն Եգիպտացւոց։ Այլ
դու որ ձեռն յանձին հարեալ պար-
ծիս Թէ վասն զաւազակս հալածելոյ
դաս, ամենայն ազգաց յորս հասեր,
գող ես եւ աւազակ։ ԶԼիւդա-
տան առեր․ զԱսորիոն գրաւեցեր․
զՊարսից աշխարհն ունիս․ Բակ-
տրիացիք ընդ քով ձեռամբ են․
երԹեալ ի Հնդիկս հասեր, եւ այժմ
ի խաշինս մեր զժլատ եւ զանյագ
ձեռս քո կարկառուս։ Զի՞նչ պէտք
քեզ մեծուԹեան իցեն, զի մեծու-
Թիւն տայ քեզ քաղցնուլ։ Դու
միայն գտար զի ի լիուԹեան ամե-
նայնի եւ ի յագեցուԹեան քեզ
սով գործեցեր․ զի որչափ շատ ու-
նիցիս, դոյնչափ շատ, զոր չունիցիս,
ցանկանայցես։ Ջանծեօ դու զմտաւ

թէ որչափ ժամանակս զԲաւկարիզք դեգերեալ կայցես, մինչ դեռ զնոսա նուաճեցեր, Սոգդիացիք ի պատերազմ դրդուեցան։ Պատերազմ ծնանի քեզ ի յաղթութենէ քումմէ, զի որչափ եւ մեծ եւ հզօրագոյն քան զայլ ոք իցես, սակայն չէ ոք որ օտարազգի առաւն ժոյժ կամիցի ունել։

Աիսայն անց դու ընդ Տանայիս, ապա իմասցիս եւ ի միտ առցես թէ որչափ ընդարձակ դաշտաքն իցեն. սակայն զՍկիւթացւոց զհետ չկարիցես հասանել։ Մեր աղքատութիւն թեթեւագոյն եղիցի քան զզօրանդս զօրաց քոց որ զայնչափ անչափ ազգաց զառ եւ զաւար կրէ։ Դարձեալ մինչ դեռ հեռի զմեզ կարծիցես, ի բանակի քում նշմարիցես։ Զանզի նոյնն արագութեամբ զհետ հասանեմք եւ փախչիմք։ Լսեմ թէ Յունաց եւ յառակս եւս են անապատք Սկիւթացւոցն, այլ մեք մանաւանդ յաւեր եւ յամայի ի մարդկանէ տեղիս, քան ի քաղաքս եւ յագարակս մեծատունս երթամք։ Աաան այնորիկ պնդեալ զձեռս քո այնպէս կալ զբախտ քո։ Լպիրծ է

եւ յանկամայ չմարթի կալ դրաւեալ: Զխրատն օգտակար տաւեալ քաջ քան զմօտաւորն առ յապա ժամանակն ցուցանէ. արկ սանձ փառաւորութեան քում եւ այնպէս դիւրագոյն վարիցես: Մերքն ասեն թէ առանց ոտից է բախտ եւ ձեռս եւ թեւս եւեթ ունի. յորժամ զձեռս կարկառիցէ, եւ զթեւսն չասայ ըմբռնել: Բայց արդ եթէ դիք ոք իցես, երախտիս մարդկան պարտիս շնորհել, եւ ոչ զնոցայն հանել. ապա եթէ մարդ իցես, զայն ինչ զոր ինչ ես, զմտաւ ած թէ ես իսկ միշտ եւ հանապազ: Անմտութիւն իմն է զայն ամենայն յիշել վասն որոյ մոռացօնս անձին գործիցես: Ընդ որոց չտայցես ճակատս, զնոսա կարիցես լաւ բարեկամս ունել: Պանծալի հզօրագոյն է ի մէջ հաւատարից բարեկամութիւն, եւ հաւատարք այնուքիկ երեւին, որ ոչ ինչ փորձ փորձեցին զզօրութեան ի միջի իւրեանց: Դու զգոյշ լեր, մի բարեկամս քեզ զայնոսիկ, որոց յաղթեցեր, համարիցիս. ի մէջ տեառն եւ ծառայի բարեկամութիւն չիք. եւ ի խաղաղութեան եւս պատերազմի

իրաւունք պահին ։ Մի՞ հաւատայցես թէ երդմամբ լինելով բարեկամութեան դաշինս քեզ Սկիւթացիք կուեն, զի երդնուն զհաւատարմութիւնն պահելով ։ Նոյն զգուշութիւն Յունաց է որ զդաշինսն կուեալս դրոշմեն, եւ զդիւսն կարդան. մեք այսպէս գիտեմք թէ կրօնք հաւատք մեր են ։ Որ ի մարդկանէ չածեն ակն, դիցն խորամանկեն ։ Բայց եւ ոչ բարեկամի զորոյ զխնամոց կասկածիցես, պէտք են քեզ ։ Նաեւ զմեզ եւ Ասիացւոց եւ Եւրոպացւոց աշխարհին պահապանս ունիցիս. եւ զԲակտրիս, եթէ ոչ ընդ մէջ կարեսցէ Տանայիս, շօշափեմք. յայնկոյս Տանայեայ մինչեւ ի Թրակիա բնակեմք. ասեն զՄակեդոնիայ առ երի Թրակացւոց աշխարհին լեալ ։ Զմըտաւ ած թէ զսահմանորդս երկոցունց իշխանութեանց քոց, թշնամիս՝ եթէ բարեկամս կամիցիս ունել ։

Թ. ԶԱՅՍ այսպէս զայն գոյն օրինակի բանիցն խուժադուժն ։ Իսկ թագաւորն տայր նոցա պատասխանի, թէ վարեցայց բախտիւ իմով եւ խորհրդեամբք ձերովք. զի զհետ երթայց բախտի իմոյ յուսացեալ ի

նա, եւ անստացից խորհրդեան խորա-
տուացն, զի մի ինչ խառն ի խուռն
եւ յանդգնութեամբ գործիցեմ :
Նւ արձակեալ զհրեշտակսն, զզօրսն
ի վերայ պատրաստելոց լաստիցն
հանէր : Յառաջակողմն անդ զվա-
հանաւորսն կարգէր եւ ի ծածկս
հրամայէր կալ, զի զգուշագոյնք
լինիցին ի նետաիցն հարուածոց : Յետ
ոսցա որ զազդի ազդի մեքենայսն
ունէին, կային. եւ յաջմէ եւ յա-
հեկէ եւ յառաջոյ ապառաժէնք պա-
տէին զնոքօք : Իսկ այլքն որ յետ
մեքենայիցն միախառն կային վա-
հանափակ, զեկավարին որոյ զրահս
եւս ագուցեալ էր պաշտպանէին :
Նոյն կարգ եւ յայն լաստս պահե-
ցաւ, որ զայրուձին ունէին : Բաղ-
մագոյնք յետոյ կողմանէ լաստին
փոկովք զերիվարսն ձգէին ի լիւղ :
Մյլնոցա, զորս առկքն կրէին լցեալք
յարդիւ, պաշտպանէին լաստքն յա-
ռաջոյ : Նախ ինքն Թագաւորն ըն-
տիր ընտիր արամբք զիւր լաստն քա-
կէր եւ ի գետեզրն հրամայէր ուղ-
ղել : Մնդ Սկիւթացիքն մատուցեալ
զգունդս հեծելազօր զօրուն ի գե-
տեզերի անդ ընդդէմ դաանային,

մինչ զի չկարէին լաստաքն ի հող մերձենալ: Նաւլ բայց ի տեսլենէ աստի զօրուն որ ի գետեզերին կայր ի պահու, անհնարին եւս երկեւղ ի վերայ նաւաւարկելոցն հասանէր. զի նաւավարքն չկարէին ուղիղ վարել, քանզի կողմանակի իմն գետոյն հոսեալ արգել լինէր. եւ զօրացն գեղեւեալ եւ տատանեալ թէ գուցէ ի գետ անդր հասիցեն, զնաւարդացն ապաստաւորութիւն խուսէին եւ ոչ նետս անդամ զօրութեամբ կարէին արձակել. քանզի այնմ իմն նախ աւշ ունէին, թէ առանց վտանգի կայցեն, եւ ոչ թէ զթշնամին խոցիցեն: Բազմապատիկ փրկութեան պատճառք մեքենայքն եղեն, որովք ի բազմամբոխ թշնամիս անդր եւ որ խառն ի խուռն զանձինս ի ներքս մխէին, նետաք տեղային եւ այն ոչ դատարկս ինչ: Բարբարոսք եւս բազում նետս ի վերայ լաստիցն թօթափեցին. եւ ոչ դասաւ վահան որ չէր բազում նետիւք ծակոտեալ:

Իբրեւ հուպ յափն լաստաքն եղեն, միանգամայն յառն եկաց վահանաւոր ճակատն, եւ ազատեցեալ զգեղարդունան առանց վրիպելոյ ի լաս-

ակցն արձակէին ։ Նաւ երբեւ տեսին զԹշնամին զարհուրեալս եւ զերիւարսն ի փախուստ դարձեալս, քաջալերեալ զմիմեանս յորդորելով ի ցամաք վազեցին ։ Սկսան պնդել սաստկուԹեամբ զհետ խուռովելոցն ։ Յետ այնորիկ զունդք հեծելոցն. որոց երիւարք սանձաւ եւ Թամբաւ էին, զգունդ բարբարոսացն բեկին ։ Յայնմ՝ ժամանակի, այլք որ ի գնդէ պատերազմողացն պաշտպանեալ լինէին, կազմեցին պատրաստեցին զանձինս ի մարտ պատերազմի ։ Ինքն իսկ Թագաւորն զպակասուԹիւն զօրուԹեան մարմնոյ որ տակաւին խօԹ էր, մտացն հաստատուԹեամբ լնոյր ։ Թէպէտ եւ բարբառէր յորդորելով զնոսա, բայց չկարէր լինել բարբառն լսելի, քանզի չեւ էր տակաւին ազի վէրացն պարանոցի նորա քաջ կցեալ, բայց Թէ կռուէր՝ ամենեքին տեսանէին ։ Վասն այնորիկ ինքեանք զզօրավարաց գործ վճարէին, զմիմեանս քաջալերեալ, մոռացեալ զկեանս անձանց իւրեանց, ի Թշնամի անդր սկսան յարձակել ։ Յայնժամ ոչ տեսլեան եւ ոչ զէնուց եւ ոչ աղա-

ղակի թշնամեացն տանել բարբարոսքն կարէին, եւ ամենեքին միանգամայն փութացուցեալ զերիւարսն, քանզի հեծելազօրաց էր ճակատն, խուճապեալ ի փախուստ դառնային։ Իսկ թագաւորն թէպէտ եւ տկար մարմնոյն ըկանաց չկարէր լինել ժուժկալ, սակայն ընդ Զ վտաւանս պնդեալ երթայր զհետ նոցա։ Եւ իբրեւ նուաղեցաւ, իւրոցն տայր հրաման, թէ մինչ դեռ աւուր կայցէ, մոցեն զհետ փախստէիցն. ինքն պարտասեալ ի զօրութենէ, մեկնեցաւ ի բանակն եւ հանգարտեաց։ Հատեալ անցեալ էին ընդ սահմանս Սպանդարամետին, որ նշանակեալ կային ի տեղիս տեղիս քարամբք կարգելովք եւ բարձրաբերձ ծառովք, զորոց ընովք բաղեղունք պատեալ մանեալ էին։ Բայց սրտմտութիւն բարկութեանն յառաջ եւս վարեալ տարաւ զՄակեդոնացիսն. քանզի դրեթէ զհասարակ գիշերաւ դարձան, զբազումս կոտորեցին, զբազմագոյնս ի գերութեան վարեցին, եւ բերին ՌՊ երիվարս։ Եւ անկան ի Մակեդոնացւոց անտի հեծեալք Կ, եւ հե-

աեւանկք Ճ մի, եւ վիրաւորք Հազար ։ Այս արշաւան առաջատակի Համբաւաւ դիպող յաղթութեանն զաշխարհն Աոխացւոց, որ մեծաւ մասամբ յապստամբութիւն դրդուեր, ցածոյց ։ Նուանց պարտութեան զՍկիւթացիս Համարէին. եւ իբրեւ նոքա եւս բեկան, խոստանային այնուհետեւ թէ չիք ազգ, որ Մակեդոնացւոց զինուց կարիցէ ընդդէմ դառնալ, վասն այնորիկ Սակք Հրեշտակս արձակեցին, զի խոստանայցեն թէ առնել ազգն զամենայն որ ինչ Հրամայիցի ։ Ոչ առաւել ընդ քաջութիւն թագաւորին էին զարմացեալ, քան ընդ Հեզութիւնն ի վերայ Սկիւթացւոցն պարտելոց. քանզի զգերիս ձրի առանց գնոց փրկանաց այսրէն արձակեաց, զի յայտ արասցէ թէ ընդ ազգացն այնոցիկ որ գազանագոյն քան զամենայն ազգս էին, ոչ վասն սրտմտութեան կռիւ էր նորա այլ վասն քաջութեան ։ Նորա ընկալեալ զՀրեշտակս, առակայն սիրով մարդասիրութեամբ, եւ զՃքոկիպինոն տայր նոցա ուղեկից որ տակաւին կարի էր երիտասարդ, եւ բարեկամեալ նմա

ի ծաղիկ հասակին. որ թէպէտ եւ հաւատար էր Հեփեստիոնեայ տեսլեամբ մարմնոյ իւրոյ, բայց չունէր նա զառնի միտս նորա։ Իսկ ինքն հրամանն առեալ Կրատերեայ մեծամասամբ զօրացն ընդ կարճ ճանապարհս գնեա գալ, ի Մարականդ քաղաքն եկեալ հասանէր. անտի Սպիտամենէս իմացեալ զգալուստ նորա, ի Բակտորիս էր փախուցեալ։ Վասն այնորիկ աւուրս չորս անցեալ ընդ բազում վայրս ճանապարհին թագաւորն, հաս ի տեղին՝ յորում Բ հազարս հետեւակաց եւ Յ հեծեալ կորուսեալ էր զօրավարութեամբն Մենեդեմայ։ Հրաման տայր զոսկերոտին բլուր գործեալ ծածկել, եւ զոհս քաւութեան անդրադարձեայց ըստ դասական սովորութեանն մատուցանէր։ Յայնժամ Կրատերոս որոյ հրաման առեալ էր զնդաւն զհետ գալ, եկեալ հասանէր ի թագաւոր անդր։ Վասն այնորիկ զի ամենեքին որ յետոյ կացեալ էին, զնոյն օրինակ վշտաց պատերազմի նեղիցին, զզօրսն բաժանէր, զանդս եւ զագարակս հրձիգ հրամայէր առնել, եւ զամե-

նայն մարդ ի չափ հասեալ առոր ի վերայ եդեալ կատորել:

Ժ. ՍՈԳԴԻԱՑԻՈՑ աշխարհն ամայի է մեծաւ մասամբ, զրեթէ ութհարեւր վտաւան ի լայնութիւն անապատք են: Գոն եւ վայրք ինչ ընդարձակք ի տափակողման աշխարհին, ընդ որ գետ մի զոր Պողիտիմետոս բնակիչքն կարդան, ընթանայ արագ: Գետեզերքն անձկացուցանեն զնա. յետոյ այրք ընդունին զնա, եւ տանին ընդ երկրաւ: Եւ նշանակ ծածուկ գնացիցն ձայն հոսելոյ ջրոյն է, զի ինքն հողն ընդ որով այնպիսի գետ հոսէ, եւ ոչ սակաւիկ ինչ տամկութեամբ թանայ: Ի գերւոյ անտի Սոգդիացւոցն Լ արք ազնուականք հարուստք եւ զօրաւորք ածան առաջի թագաւորին, որք իբրեւ թարգմանաւ գիտացին թէ հրամանաւ թագաւորին ի տանջանս երթան, երգս ուրախութեան սկսան հնչեցուցանել, եւ ոստոստանելով եւ կաքաւով ոտից սկսան զուարթութիւն ոգւոցն յայտ առնել: Զարմանք կալան զթագաւորն թէ այնպէս արութեամբ մտօք ընդ մահ կամին, հրաման

տայր այսօրէն կոչել զնոսա , զպատճառս առաւել ուրախութեանն , յորժամ առաջի աչաց զատանջանսն տեսանէին , հարցանէր ։ ՛Սուքիաեանն պատասխանի, եթէ յայլմէ ումեքէ մեռանէաք , տրտմութեամբ մեռանէաք . այժմ յայնպիսի թագաւորէ որ ամենայն ազգաց յաղթեաց , երթալոց եմք առ հարս մեր , զպատուական մահն զոր արք առաքինիք եւ ուխտիւք եւս խնդրեն մերովք սովորութեանն երգովք եւ ուրախութեամբ տօնեմք ։ Յայնժամ վայրի թագաւորն Հարցանեմ զձեզ , ասէ , կամի՞ք կեալ առանց ինձ թշնամանալոյ որ շնորհեմ ձեզ զկեանս բարերարութեամբ ։ ՛Սուքիասան պատասխանի, թէ մեր թըշնամի թշնամւոյն չիք լեալ . եթէ ոք երախտեօք եւ ոչ ապիրատութեամբ զմեր չար կամիցի առնուլ , ճգնեսցուք զի մի յերախտեացն մատնեսցուք ի պարտութիւն ։ Իւ իբրեւ հարցան թէ զի՞նչ տացեն գրաւական հաստատուն զհաւատան պահելոյ . կեանքն , ասեն , զոր ընկալաք , լինիցին գրաւական . միաանգամ տացուք քեզ զկեանսն երբ

թայր կարգել եւ յօրինել զամենայն որ ապստամբութեամբն խռովեալ եւ խանգարեալ էր, եւ սաստկեալ զառաջնորդս մնասուն, յաւուրն չորրորդի յՈքսոս գետ հասանէին: Այս Ոքսոս քանզի կայ բերէ, միշտ պղտոր է եւ ոչ բարւոք առ ըմպել: Վասն այնորիկ ջրհորս սկսան զօրն փորել: Բայց թէպէտ եւ ի խոր եւս փորեցին, ջուր ոչ գտանէր. յայնժամ անդէն ի վրանի թագաւորին նշմարեցաւ աղբեւր մի, բայց զի անագան տեսին, կարկատեցին թէ յանկարծակի բղխեաց: Եւ ինքն իսկ թագաւորն կամեցաւ թէ այն պարգեւք դիցն համարեսցին: Ապա անցեալ ընդ Ոքոս եւ ընդ Ոքսոս գետ, ի Մարգենիա քաղաքն հասանէր: Զայնու քաղաքաւ Զ քաղաքաց շինուածոյ վայրք ընտրեցան. երկուքն ի Հարաւակողմն եւ չորք յարեւելակողմն, եւ սակաւ ինչ անջրպետութիւն կայր ի միջի, զի մի ի հեռաւորանէ խնդրիցեն միմեանց օգնականութիւն: Այս ամենայն քաղաքք ի բարձրաբերձ բլուրս կան կանգնեալ, որ յայնժամ իբրեւ զսանձ ի բերան նուաճելոց ազգացն էին, բայց այժմ

մոռացեալ թէ ուստի յառաջ եկեն, որոց իշխանն էին, նոցին կան ի ծառայութեան։

ԺԱ. Նոյն գայլ եւս կողմանն խաղաղացուցեալ էր թագաւորին. մի վէմ միայն կայր զոր Արիմազէս սողդիացի Լ հազարօք սպառազինաց զրաւեալ ունէր յառաջագոյն զհամբարսն մթերեալ, որ այնչափի բազմութեանն եւ զերկեամ մի բաւական էր։ Նոյն վէմն է ի բարձրութիւն երեսուն վտաւան եւ ՃԾ վտաւան շուրջանակի։ Նոյն կայ ի նա մուտ ընդ շաւիղ մի նեղ եւ նուրբ եւ դերբուկ յամենայն կողմանց։ Ի միջոցի բարձրութեանն կայր այր, որոյ բերան նեղ եւ խաւարչտին էր, եւ ապա տակաւ ներքին կողմանքն ընդարձակէին. եւ ի վերջնումն են խորք եւ այրք անհնարինք։ Նոյն աղբեւրք բխեն ընդ ամենայն վայրսն ընդ այն, յորոց ի մի վայր գումարեալ ջրոցն, ընդ զառիվայր լերինն գետ գնացուցանեն։ Հայեցեալ թագաւորին ընդ դժուարս վայրացն, ի մտի եդեալ էր անտի ի բաց գնալ. բայց ապա անկաւ ցանկութիւն ի միտս նորա, եւ ղընութիւն եւս վտա-

տակաբեկ առնել։ Մակայն յառաջ քան թէ ձեռն արկեալ էր ի պաշարումն, զկոփէս որ էր որդի Արտաբազայ առաքեաց առ բարբարոսն հաւանեցուցանել զնոսա, զի տացեն ի ձեռս զվէմն։ Նախմազէս ի վայրացն ամրութիւն յուսացեալ, բազում ինչ ամբարտաւանութեամբ տայր պատասխանի, եւ այլս ուրեմն եւ զայս, թէ կարիցէ՞ թռանել Աղեքսանդրոս, հարցանէր։ Որք իբրեւ պատմեցան թագաւորին, այնպէս ի ցասումն ածին զնա, զի ի մի վայր գումարեալ զայնոսիկ՝ ընդ որոց խորհուրդ սովոր էր խորհել, զամբարհաւաճութիւն խուժադուժ բարբարոսին յայտ առնէր եւ զծաղր առնել նորա զնոքօք, վասն այնորիկ զի թեւս չունիցին։ Իսկ ես, ասէ, այսպէս արարից ի գիշերիս յայսմիկ, զի համարիցի թէ թռչին եւս Մակեդոնացիք։ Երեքարիւր այր երիտասարդ ժիր եւ արագ իւրաքանչիւր ոք յիւրոց զօրաց անտի ածէք հասուցէք առ իս, յայնցանէ որ յաշխարհին իւրեանց ընդ շաւիղս եւ ընդ անկոխ առապարս խաշինս սովոր էին արածել։ Նոքա արս ընտիրս մար-

Ձոյ թեթեւութեամբ եւ ոգւոցն եռանդմամբ վաղվաղակի ածեալ ունէին առաջի. ի նոսա հայեցեալ Թագաւորն ընդ ձեզ իսկ, ասէ, ով երիտասարդք եւ ինձ հասակակիցք, ընդ պարիսպս քաղաքաց որ յառաջագոյն առանց պարտութեան էին անցի, զձիւնապատ սարս լերանց հատեալ կոխեցի, յանձուկս Կիլիկեցւոց աշխարհին մտի, զհնդկաց աշխարհին զցուրտն առանց վաստակելոյ տարայ: Ես եւս ձեզ առնուլ զչափ իմ, եւ ես զչափ առ ի զձեր: Վէմք զոր նշմարէք մի գուցէ ունի, զորով բարբարոսքն պատեալ են, իսկ զայլ եւս մարից չունէին փոյթ ի մտի. չիք նոցա պահ արթնութեան գիշերոյ, բայց միայն որ երեւին բանակիս մերում: Գտանէք դուք ճանապարհ եթէ զմտաւս որ ի գագաթն անդր տանին, խուզէք զգուշութեամբ: Չիք ինչ զոր այնպէս բարձրագոյն կարգեալ իցէ բնութեանն, յոր քաջութիւն չկարիցէ հասանել: Աւասիկ փորձելով յորմէ այլքն յուսահատ եալ էին, զԱսիա ընդ ձեռամբ մերով ունիմք: Ելէք ի գագաթնն, յոր իբրեւ հասանիցէք,

ապիտակ տառապանօքս տուք ինձ նշան. Եւ մատուցից զզօրս իմ յառաջ, եւ զթշնամին ի ձեռն յիս դարձուցից: Տացին եւս փարձք այնմ, որ զառաջինն հասեալ ունիցի զգագաթնն, քանքարք Ժ. Եւ միով ընդհատ տացէ որ զհետ նորա գայ: Եւ նոյն բաժին պահեսցի մինչեւ ցտասան այր: Բայց եւ հաստատեալ գիտեմ, թէ ոչ ընդ առատութիւն իմ հոյլք գոյք, այլ ընդ կամս իմ:

Այնպէս ունկն դնէին բանից թագաւորին, զի թուէին իմն թէ առեալ իսկ զգագաթնն իցեն: Եւ իբրեւ արձակեցան, երկաթս երիթս պատարատէին, զի ի մէջ քարանցն վարեսցեն, եւ հատաս չուանս: Իսկ թագաւորն շուրջ եկեալ զվխմաւն, ընդ կողմն ընդ որ ոչ այնպէս խիտս եւ դժուարին էր մատնել յերկրորդում պահու, հրամայէր ի ներքս դիմել զի յաջողեսցի: Նոքա առեալ կերակուր վասն երկուց աւուրց, սուսերօք միայն եւ նիզակօք վառեալ, սկսան մտանել: Եւ նախ ոտիւք ընթանային, ապա իբրեւ յապառաժան հասին, ոմանք ձեռամբք զքարանցն ցցուելոց բուռն հարեալ

ելանէին, եւ կիսոց պարանօք խեղդ-արկեալ ամբառնայրին, քանզի եր-կաթս երիթս ի մէջ քարանցն վա-րէին, եւ կոխէին մի ըստ միոջէ։ Եւ զարիւն ամենայն յահի եւ յաշ-խատութեան հանէին ի գլուխ։ Թուէ-պէտ եւ ընդ դժուարինս ճգնեալ ելեալ էին, եւս դժուարագոյնք եւ խստագոյնք կային, եւ անձել իմն բարձրութիւն վիմին թուէր։ Բայց այն իմն եղկելի եւ ողորմելի տեսիլ երեւէր, զի այնուքիկ որ ի յողդողդ կայից անտի սասանէին, գահէ ի գահ անկեալ կործանէին, Եւ կոր-ծանումն ընկերին զուշակ լինէր թէ եւ ինքն զնոյն կրելոց է։ Բայց սա-կայն ընդ այնմ ամենայնի ճգնեցան, եւ եկին ելին ի գագաթնն աշխա-տեալք եւ վաստակեալք ամենեքին, եւ կիսոցն մասամբ անդամոցն փխտեալ, եւ գիշերն եւ քունն հաս ի վերայ նոցա։ Աստ անդ տարածեալ զմար-մինս յանկոխս եւ ի դժուարինս քա-րանցն, մոռացեալ զատագնապ վտան-գին որ մօտ առ կուրծս կայր, ննջե-ցին մինչեւ ցծագել լուսոյն. եւ ապա ուրեմն իբրեւ ի խոր քնոյ զար-թուցեալ, եւ զձորան ծածուկս որ ի

ներքոյ նոցա էին, խուզէին, քանզի չգիտէին թէ յորում կողման վիմին ծածկեալ կայցէ այնչափ թշնամեացն բազմութիւն, նշմարեցին ի ներքոյ զծուխ այրին ի վեր հոլովեալ։ Ուստի ի միտ առին, թէ այն է գարան թշնամեացն։ Վասն այնորիկ եդին ի ծայրս նիզակացն զնշանն վառեալ որոյ միաբանեալ էին. յողջոյն իսկ թուոյ անտի գիտացին թէ Լ եւ երկու այր կորեաւ յելանելն։

Իսկ թագաւորն ոչ եթէ ցանկութեամբ ինչ այնչափ վայրացն տիրելոյ, քան վասն այնոցիկ զոր ի յայտնի իսկ վիշտս առաքեաց, կայր ի վարանս, եւ զօրն ողջոյն կայր հայէր ընդ գլուխ լերինն։ Ապա զցայգ իբրեւ խաւարն արգել զտեսիլ աչացն, մեկնեցաւ գնաց առ ի գարման մարտնոյ։ Ի վաղիւ անդր մինչ չեւ ամենեւին լուսացեալ, նախ ինքն զառաջապատն՝ զնշանակ առելոյ գագաթանն ետես։ Նոյն ազգի ազգի փոփոխմամբ օդոցն, զի մերթ փայլէին ճառագայթք լուսոյն եւ մերթ ծածկէին, տայր իմն յերկուանալ, թէ գուցէ ակն սխալիցէ։ Այլ իբրեւ յատակագոյն լոյս յերկինս

երեւեցաւ, բարձան վարանքն ի մի-
ջոյ. եւ կոչեցեալ զԿոփիւս յորոյ
ձեռն առեալ էր զչափ մտաց բար-
բարոսացն, յղէր առ Ներսէս, զի
խրատեսցէ զնոսա դառնալ այժմ առաջի
ինչ խորհուրդ խորհել. ապա թէ ի
ստեղիսն յուսացեալ պնդիցին, հրա-
մայէր ի Թիկանց կուռէ զայնոսիկ՝ որ
զգաստութենն ըմբռնեալ էին, ցու-
ցանել: Իսկ Կոփիւս իբրեւ եմուտ
առ Ներսէս, հաւանեցուցանել սկսաւ
զԱրիմոզէս, զի զվէմն տացէ ի ձեռս,
եւ դառնիցէ շնորհս առաջի թա-
գաւորին եթէ չկամիցին զնա
նստել պաշարել զքարանձաւ մի,
որ զայնչափ մեծամեծ իրս խորհի
վճարել: Այս գազանագոյնս եւ
հպարտագոյնս առաւել քան զա-
ռաջինն Ներսէս խօսեցաւ, եւ հրա-
մայեաց Կոփեայ ի բաց երթալ:
Նմա առ զձեռանէ կալեալ զբարբա-
րոսին տաղաչէր, զի ընդ իւր արտաքոյ
քան զայրն ելանիցէ. իբրեւ ելին,
եցոյց նա նմա ի դողդոմանն զպա-
տանեակն, եւ յիրաւի ծաղր արա-
րեալ զամբարտաւանութեամբ Ներսա,
Թեւս, ասէ, ունին զօրքն Աղեքսան-
դրի: Նոյն ի Մակեդոնացւոց բանակէ

անտի հնչիւն փողոց եւ գոչիւն եւ աղաղակ համօրէն զօրացն լսելի լինէին : Այս ամենայն որպէս եւ բազում եւ այլ ինչ զուր եւ ընդունայն իրք որ ի պատերազմունս լինիցին, ած զբարբարոսն ի հնազանդութիւն : Վասնզի ահիւն գրաւեալ, զսակաւութիւն այնոցիկ որ ի թիկանց կուսէ կային՝ ի մի չկարացին առնուլ : Ասն այնորիկ զԿոփէս վաղվաղակի այսորէն կոչէին, քանզի թողեալ էր նա զնոսա յահի անդ իւրեանց, եւ ընդ նմա Լ իշխանս յղէին, զի զվէմս տացեն ի ձեռս, եւ դաշինս կռեսցեն զի համարձակ իցէ ողջ եւ անարատ երթալ անտի ի բաց : Իսկ թագաւորն թէպէտ եւ զանդիտաէր թէ գուցէ տեսեալ զպատանեացն սակաւաւորութիւն շըրջեսցին ի մտաց, բայց յիւր բախտն յուսացեալ եւ հակառակեալ թըշնամութեամբ Արիմազեայ ամբարհաւաճութեանն ոչ մի ինչ պայման կամէր առնուլ յանձն : Արիմազէս որ յուսահատն լեալ էր ի գործոյ անտի, թէպէտ եւ ոչ ինչ ձախողանք էին տակաւին, Ջերմովք իւրովք եւ ազնուականօք ազգին իւրոյ

էջ ի բանակ անդր. զորս հրամայէր թագաւորն զամենեսին զան հարեալ անդէն առ ոտամբ վիմին ի խաչ հանել։ Ամբոխ բազմութեան այնոցիկ որ անձնատուրն եղեն, առեալ պարգեւ բնակչաց Նորոցն քաղաքաց զանձիւն հանդերձ. իսկ Արտաւազ թողու անդէն ի պահպանութիւն վիմին եւ աշխարհին որ յայն մօտ էր։

# Կ· ԿՈՒՐՏԵԱՑ ՌՈՒՓԱՑ

## ՎԱՍՆ ԳՈՐԾՈՑ

# ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԵԾԻ

---

## Ը ԴՊՐՈՒԹԻՒՆ

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. Ցեռ Մաղքեթաց եւ Դահաց եւ Սոգդիացւոց յաղթելոյ, Սկիւթացիք զդուստր Թագաւորին իւրեանց Աղեքսանդրի մատուցանեն ի կնութիւն: Աղեքսանդրոս առեալ մի յորսս սպանանէ, եւ չորս հազարս գազանաց ցրուէ. զԿղիտոս ի բազմականին, քանզի համարձակ խօսեցաւ, սպանէ:

Բ. Անօգուտ զղջումն Թագաւորին. եւ յետ այնորիկ արշաւանք ի Բակտրիացիս փախուցեալս, եւ ի Սիսիմիթրէս: Մահ Փիղիպպեայ առն քաջի եւ Երիգեայ:

Գ. Հրաման տայ Աղեքսանդրոս կնոջն Սոփիտամենեայ որ բերէր զգլուխ առն իւրոյ, ի բաց ելանել ի բանակէն. տարեցուցանէ զգաւառս գաւառս ի զրկելոյ սատրապանացն:

Դ. Ի սաստիկ ցրտոյ անտի Նեղին զօրքն ի մտանել անդ ի Գաբազա: Պնդութիւն Աղեքսանդրի եւ մարդասիրութիւն ի խառնաղանճ զօրուն, եւ ամուսնութիւն նորա ընդ Ռոքսանեայ:

Ե. Ջհնդկաց պատերազմէ սկսաւ խորհել, եւ վերացեալ հպարտացեալ յողոքչացն բանից, Արամազդայ որդի կամէր ողջունել. զոր Կալիսթենէս սաստկագոյնս եպերէր:

Զ. Ի վաս անուանէ անտի զոր ի Հերմողայոս յազնուական մանուկն հասոյց, ծնաւ դաւաճանութիւն ի գլուխ նորա: Իբրեւ դաւն յայտնեցաւ, ընդ նենգիչսն եւ Կալիսթենէս համարեցաւ:

Է. Կշտամբութիւն ընդդէմ տնազորոյն Հպարտութեան Աղեքսանդրի ի Հերմողեայ, որ ասէր թէ արդար է Կաղլիսթենէս։

Ը. Աղեքսանդրի առ Հերմողեայ կշտամբութիւնն պատասխանի. պատիժ եւ պատուհաս նենգաւորացն եւ արդարոյն Կաղլիսթենեայ։

Թ. Հնդիկ եւ Գանդէս եւ Դիւարդենէս գետոյ եւ Հնդկաց աշխարհին եւ բնակչաց նորա եւ թագաւորաց բարեկեցաց եւ իմաստնոց նկարագիր։

Ժ. Զազգի ազգի ազգս Հնդկաց աշխարհին աջողութեամբ հնազանդեաց Աղեքսանդրոս, բայց ոչ առանց արեան։

ԺԱ. Աւոռնիս վէմ եւ դղեակ անմատոյց պատերազմ կրէ յԱղեքսանդրէ, եւ թողեալ լքեալ ի պաշարելոց անտի, առեալ լինի։

ԺԲ. Ոմփիս թագաւոր հզօրագոյն՝ զանձն եւ զթագաւորութիւն իւր թողու Աղեքսանդրի։ Եւ Աղեքսանդրոս դարձուցանէ զնա անդրէն ի թագաւորութիւն իւր. ուստի եւ պատարագք միմեանց առաքին։

ԺԳ. Դիմէ Աղեքսանդրոս ի վերայ Պորեայ արքայի, եւ Ոմփեայ խրատու աստի անտի պատերազմ ի վերայ հասուցանէ, թէպէտ եւ յառաջնումն լի իցէ պատերազմն վտանգօք։

ԺԴ. Հնդկաց եւ Մակեդոնացւոց սաստիկ պատերազմ. Պորեայ ի գերութիւն անկելոյ մեծանձնութիւն, եւ Աղեքսանդրի արքունական հեզութիւն։

## Կ. ԿՈՒՐՏԵԱՑ ՌՈՒՓԱՑ

## ՎԱՍՆ ԳՈՐԾՈՑ ԵՒ ԱՐՈՒԹԵԱՆՑ

# ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԵԾԻ

## ԱՐՔԱՅԻ ՄԱԿԵԴՈՆԱՑԻՈՑ

## Ը ԴՊՐՈՒԹԻՒՆ

Ա. ԱՂԵՔՍԱՆԴՐՈՍ երբեւ ի բուռն առ զվէմն, մանաւանդ համբաւաւ եւ ոչ փառօք. քանզի վասն թափառական թշնամւոյն զգունդսն պատրաստ էր տարածանել, յերիս մասունս զզօրսն բաժանէր: Միւսումն տայր զօրավար զՀեփեստիոն, եւ միւսումն զԿինոս. եւ այլոցն ինքն կայր ի վերայ: Բայց ոչ ամենեցուն բարբարոսացն նոյն միտք էին: Ոմանք զինուք նուաճեցան. բազմագոյնք յառաջ քան զկռիւն անսացին հրամանացն, եւ ոցա զքաղաքս եւ զանդս եւ զագարակս այնոցիկ որ յապստամբութեանն պնդեալ կային, հրամայեաց տալ: Եւ վտարանդիքն ի Բակտրիացւոց Պ հեծելովք Մասգեթաց զգեղսն մօտաւորս քանդեցին: Ատտենաս ոստիկան գաւ-

աւուրն այնորիկ վասն զնոսա կարծելոյ Ց հեծելոյս հանէր զի անտեղեակ էր դարանացն որ պատրաստէին ։ Քանզի թշնամիքն ի մայրիսն որ կից ի դաշտ անդր էին, զօրս վառեալս թաքուցանէին, եւ սակաւք ոմանք վարէին անդէն խաշինս, զի յանդգաստից ի դարանսն ձգեսցեն որսոյն պատճառաւ ։ Ասան այնորիկ անկարգ եւ արձակ զնդաւ զհետ հատանէր նոցա Ատտենաս անուն յաւար. իբրեւ զանց զմայրեօքն, որ ի նմին դարանակալ նստեալ էին, յանկարծակի ի վերայ յարձակեալ ամենեքումբք հանդերձ սատակեցին ։ Արագ արագ առ Կրատերոս հասանէր լուր իրացն դիպելոյ. եւ նա ամենայն հեծելազօրօք հանդերձ ի վերայ խաղայր. եւ Մազքութք անդէն փախստեայ եղեալ էին, հազարք միայն ի Դահաց սատակեցան, որոց կոտորածին բովանդակ աշխարհին ապստամբութիւն յանգ եղ ։ Ալեքսանդրոս եւս միւսանգամ զՍոգդիացիս հնազանդեալ, դարձաւ այսրէն ի Մարականդ ։ Անդ Բերդէս, զոր առ Սկիւթացիս՝ որ ի վերայ քան զԲոսփորոս բնակեալ են, յղեաց,

ընդ աւազ եկն նմա հանդերձ հրեշտակօք ազգին Սկիւթացւոց : Փրատափեռնէս եւս որ ի վերայ Քորասմեացւոց կայր, որ մերձաւոր էին եւ սահմանորդ Մասաքեթաց եւ Դահաց զաւառօքն, յղէր խոստանալ կատարել որ ինչ հրամայիցի : Սկիւթացիք մատուցեալ խնդրէին, զի զդուստր թագաւորին իւրեանց առցէ նա ի կնութիւն . իսկ եթէ չառնուցու յանձն զխնամութիւնն, իշխանք Մակեդոնացւոց ընդ դստերաց ազգին իւրեանց յանձն առցեն ամուսնանալ . եւ խոստանային թէ եւ թագաւորն իսկ նոցա գալոց է առ նա : Լուաւ մարդասիրութեամբ երկոցունց եւս հրեշտակութեանցն, եւ սպասէր Հեփեստիոնեայ եւ Արտաւազդայ, անդէն բանակ հարեալ . իբրեւ նոքա հասին, նոքօք հանդերձ ի գաւառ մի որ Բազայիրա կոչէին, երթեալ հասանէր :

Ոչ մի ինչ առաւելագոյն նշանակ բարբարոսիկ մեծութեան կայ ի կողմանսն յայնոսիկ քան զզաւսակս եւ զձորս ազնուական անասնոց որ յանտառս եւ ի խոխոմս մեծամեծս փակեցեն : Անտառս ընդարձակս ի

դոյն ընտրեն գեղեցկացեալս յաղբե-րաց ջուրց մշտնջենաւորաց. որմա-պատ անտառքն պատեալ են, եւ ունին աշտարակս ուր որսորդքն ա-պաստան լինին: Ասէին թէ զշորս ախս մարդկան չէք որ մխեալ ձեռն ի խոխոմս անդր. յայն մտեալ Աղե-քսանդրոս ամենայն զօրօքն հան-դերձ, հրամայէր յամենայն կողմանց զգազանսն յարուցանել: Իբրեւ ի մէջ գազանացն առեւծ յաղթան-դամ ընդ առաջ դիմէր յարձակել ի վերայ թագաւորին, Լիւսիմաքոս որ յետոյ թագաւորեաց, որ եւ մօտ կայր յայնժամ առ Աղեքսանդրի, սկսաւ զգործի որսոյն ընդդէմ ար-կանել գազանին: Բայց մղեաց զնա թագաւորն եւ հրամայեաց ի բաց գնալ, եւ ի նոյն յարեալ ասէր, թէ որպէս ի Լիւսիմաքեայ, նոյն-պէս եւ յինէն միայնոյ մարթի թէ սատակիցի առեւծն, զի Լիւսիմա-քոս երբեմն յորժամ յԱսորիս որ-սայր, սպան գազան մի անհեդեդ միայն միայնակ. այլ ի ձախ ուս իւր մինչեւ ցոսկերս պատառեալ ի գազա-նաց մեծ հասեալ էր: Զայն իմն յերեսս հարեալ նմա թագաւորն,

Հզօրագոյնս քան որչափ խօսեցաւ, արար. զի ոչ միայն ինքն եւ առաջի գազանին, այլ եւ միով վիրօք եսպան: Իսկ զառասպելն թէ Լիւսիմաքոս անդէն առաջի մատուցաւ առիւծու ի թագաւորէ անտի, յայնմ դիպաց զոր վերագոյն ասացաք, կարծեմ յօդեալ: Նոյն Մակեդոնացիքն՝ թէպէտ եւ յաջողեալ իմն էր Աղեքսանդրոս, բայց սակայն վճիռ ետուն թէ ըստ բարուց ազգին իւրեանց մի այսուհետեւ հետիոտս որսացի, կամ առանց ընտիր ընտիր իշխանաց յիշխանացն կամ ի բարեկամաց: Սա Դ հազարս գազանաց տապաստ արկեալ, ի նմին վայրի ամենայն զօրօքն հանդերձ նստաւ ուտել:

Ընդ որ դարձաւ ի Մարականդ եւ լուեալ յԱրտաւազդայ զի ասէր թէ ծեր եմ, եւ չեմ իմիք ձեռնհաս, զգաւառն նորա սահմանէր Կղիտեայ: Սա այն էր, որ առ Գրանիկ գետով ասպարաւն ծածկեաց զթագաւորն, յորժամ մերկ գլխով կռուէր, եւ զձեռն Հրոսակայ որ ամբարձեալ էր ի գլուխ թագաւորին, կտրեաց սուսերաւ. Հին զինուոր էր Փիլիպպեայ

երեւելի եւ Հոյակապ ի քաղաքում իւր պատերազմի։ Հեղանիկէ քոյրնորա որ սնուցիչ լեալ էր Աղեքսանդրի, իբրեւ մայր այնպէս սիրելի էր թագաւորին։ Վասն այսց պատճառանաց զզօրաւոր կողմն տէրութեանն նմա առնէր յանձն։ Հրաման տուեալ ի վաղիւ անդր ուղղւոյ պատրաստել, ինքն կոչեցաւ ի կոչունս ուրախութեան տօնականս։ Յորում իբրեւ տապացաւ բազում անապակաւ, յանչափս զանձն բարձրացուցեալ, գովել եւ յարգել սկսաւ զոր ինչ ինքն գործեալ էր, մինչեւ եւ նոցին լսելեաց որ գիտէին թէ զճշմարիտն խօսէր, թուէր ծանրատաղտուկ։ Սակայն լուռ եւեթ կային ծերագոյնքն մինչեւ ցայն վայր, զի սկիզբն արար նուազեցուցանել զիրան Փիլիպպեայ, եւ զազնուական յաղթութիւնսն որ առ Քերոնեաւ եղեւ, իւր գործ քաջութեան քարոզէր. եւ ասէր թէ թշնամութեամբ եւ նախանձու հօր իմոյ յափշտակեցան յինէն փառք յաղթութեանն այնորիկ։ Նա եւ թէ յորժամ խռովութիւն ի մէջ Մակեդոնացւոց զօրացն եւ Յունաց վարձկանաց գրգռեցաւ, եւ Փիլիպպոս

ակարացեալ ի վիրէ անտի զոր յամ-
բոխի անդ առ, եւ այնպէս անկեալ
դնէր, եւ ոչ այլազգ զանձն յամուր
զգուշութեան էր արարեալ, բայց
զի կեղծաւորեալ էր թէ մեռեալ է,
ինքն պաշտպանեաց մարմնոյ նորա
տապարաւ իւրով, եւ զայնոսիկ որ ի
վերայ նորա դիմէին, սպան ձեռամբ
իւրով։ Նա թէ հայրն ոչ եղեւ
երբեք զայնմանէ խոստովան մտա-
դիւրութեամբ, սակայն յակամայ
կամս պարտէր զփրկութիւն իւր
որդւոյ իւրում։ Նա թէ յետ ար-
շաւանին զոր արշաւեցաւ նա ինքնին
ի վերայ Ղիւրիկեցւոցն, գրեաց
նա հօր իւրում թէ յաղթեցի եւ
ցրուեցի զթշնամիսն, ուր չէր ու-
րեք Փիղիպպոս։ Նա թէ արժանի
գովութեան ոչ այնոքիկ են, որ եր-
թեալ միջամուխ Սամոթրակացւոց
խորհրդոցն եղեն յորժամ պարտն
էր այրել քանդել զաշխարհն Ասիա-
ցւոց, այլ այնոքիկ՝ որ մեծութեամբ
արութեանց գործոց իւրեանց չհաւա-
տալիք երեւեցան։

Զայս ամենայն եւ որ սոցին նման
ինչ բանք էին, ուրախութեամբ
լսէին պատանեակքն, բայց ծերոցն

չթուէր հաճոյ, մանաւանդ վասն Փիղիպպեայ, առ որով բազում ժամանակս կեցեալ էին: Յայնժամ Կղիտոս զի չէր եւ նա լըջագոյն, առ այնորիկ որ ի խոնարհ քան զինքն նստեալ էին, դարձաւ, եւ բարբառեցաւ նոցա բանս յեւրիպիդեայ, այնպէս զի հնչիւնն մանաւանդ եւ ոչ բանքն կարէին հասանել յականջս թագաւորին, եւ բանքն նշանակէին թէ ոչ բարւոք կարգեալ է Յունացն, զի ի նշանս յաղթութեանն միայն թագաւորաց անուանք գրեսցին, զի փառքն որ օտարին արեամբ ծնանիցի, այն յափշտակի: Վասն այնորիկ թագաւորն՝ իբրեւ կասկածեցաւ թէ չարակամ միտք ինչ բանք խօսեցան, հարցանել սկսաւ ցմօտակացն, թէ զինչ ի Կղիտեայ լուան: Իբրեւ նոքա լուռ պնդեալ կային, Կղիտոս առաւ մեծաբարբառ ձայնիւ զգործս եւ զմարտս պատերազմաց Փիղիպպեայ որ ի Յունաց աշխարհին գործեցան, յիշատակէր. եւ զնոսա նախամեծար քան զմօտաւորան առնէր: Անտի ի մէջ պատանեկացն եւ ծերոցն յառնէր դժտութիւն. եւ թագաւորն իբրեւ այն թէ երկայնմտութեամբ լսէր ըզ-

քանա, որովք զզօրութիւնս նորա եւ զգրուատրս զօղանայր Կղիտոսս, ան-դէն բարկութիւն սրտմտութեան ի միտսն ծնանէր։ Այլ իբրեւ կործե-ցուցանէր թէ ժոյժ ունելոյ է մտացն սրտմտութեան, թէ զբաւ արարցէ Կղիտոս բանիւքն հակառակութեամբ խօսելոյ, քանզի չլինէր լուռ Կղի-տոս, առաւել եւս զպայրանայր եւ գրգռէր։ Իսկ Կղիտոս իշխէր եւ Պարմենիոնի թէկն ածել, եւ զյաղ-թութիւնն Փիղիպպեայ ի վերայ Աթենացւոցն քան զքանդել Թե-բացւոց քաղաքին մեծարոյ առնէր, ոչ գինւով միայն այլ եւ մտացն չարաչար հակառակութեամբ ի վե-րայ խաղացեալ։ Նա եւ ապա ի նոյնս յաւելեալ ասէր. Եթէ մեռանել է ի վերայ քո, նախ ես Կղիտոս մե-ռայց. բայց քանզի դատաւոր ես յաղթութեանն, նոքա զառաւել վարձան առնուն, որ սատակագոյնս զյիշատակ հօրն քո թշնամանեն։ ԶՍոգդիացւոց աշխարհն ինձ տաս, որ բազում անգամ ապստամբեցաւ, եւ ոչ միայն չնուաճեցաւ այլ եւ ոչ թէ մարթիցի նուաճել։ Նա զա-ղանս վայրի առաքիմ, որ սատակի

եւ դաժան միտս ունին։ Բայց որ վասն իմ ինչ է, զանցից։ Արհամարհեա դու զզօրականս Փիղիպպեայ, մոռացեալ ես զի թէ ոչ այսր ծերոյ Աթարիոյ զերիտասարդս որ ի պատերազմէ խորշէին, այսրէն դարձուցեալ էր, տակաւին մեք զԱղիկառնասեաւ դեգերէաք։ Իսկ արդ զիմօրդ եւ զԱոխա երիտասարդօքդ այդոքիւք հնազանդեցեր։ Ինձ այսպէս թուի թէ ճշմարիտ է զոր քո քեռին ասաց յիտաղացւոց աշխարհին, թէ եւ արանց պատահեցայ եւ դու կանանց։

Ոչ մի ինչ յամենայն բանից անտի որ առանց խորհրդոյ եւ խառն ի խուռն խօսեցան, այնպէս զԹագաւորն գրգռեցին, որպէս Պարմենիոնի յիշատակն, որ պատուով ի մէջ բերաւ։ Բայց զցասումն պնդեաց կարճեաց Թագաւորն, շատ այսչափ համարեալ հրամայել ի բաց ելանել ի կոչնոց անտի։ Եւ ոչ այլ ինչ յաւել ասել, բայց զայս ինչ թէ գուցէ, եթէ յաճախեսցէ եւս խօսել, նախատեսցէ նա զիս եւ վասն կենացն որ ի նմանէ առեալ ինձ. քանզի համակ զայնմանէ պարծի ամբար-

տատանութեամբ։ Նոյն երբեւ նա տեսկաւյին յամէր յանձնել, որ տանձին բաղձեալ էին, ձեռն մխեալ ջանայյին եւ խորտտէին եւ ճգնէին ի բաց տանել։ Իսկ Կղէտոս մինչ գեձգեալ երթայր, յառաջին բանութիւն անդր եւ ցասուածս յաւելաւ, եւ ասէր թէ լանջօք խմովք թիկանց նորա պաշտպանեցի, բայց այժմ, քանզի այնպիսի գործոյ անց ժամն, եւ յիշատակ եւս իւրացն ի թշնամութիւն գրգռէ։ Եւ զպատանութիւն եւս զԱտտաղեայ ի մէջ բերէր, եւ այպն ծաղր արարեալ զՀրամանապատասխանւոյ Արամազդայ զոր իւր հայր ասէր Աղեքսանդրոս, ասէր այսպէս թէ ես զճշմարտագոյնն քան զհայրն քո խօսիմ քեզ։ Նոյնչափ սրտմտեցաւ բորբոքեցաւ բարկութեամբ թագաւորն, զի թէ եւ լուրջ եւս էր լեալ, սակայն չկարէր տանել։ Վասնզի վաղ իսկ պարտեալ էր զգայնոցն յանապակ գինւոյ անտի, վաղեաց յանկարծակի ի բազմականէն։ Տարակուսեցան ապշեցան բարեկամքն, եւ զբաժակսն ոչ եթէ եդեալ այլ ընկեցեալ, միանգամայն յոտն կացին, եւ ունէին ուշ իւրացն

զոր այնպէս սաստկութեամբ կա-
մէր գործել: Աղեքսանդրի հանեալ
զգեղարդն ի ձեռաց կապարճակրին,
զԿղիտոս որ տակաւին նոյնպիսի բանս
մոլեգնեալ յաճախէր խօսել, ջանայր
հարկանել, բայց ի Պտղոմէոսէ եւ
ի Պերդիկկայ արգելեալ լինէր: Ի
մէջ առեալ սաստ անտի յամեցու-
ցանէին զնա, եւ նա համակ ոգորէր
ընդ նոսա. իսկ Ղիւսիմաքոս եւ
Ղեւոննատոս եւ զգեղարդն եւս
հանին ի նմանէ: Նա զզօրան կար-
դայր, բողոք բարձեալ գոչէր, թէ
ի մերձաւոր բարեկամաց իւրոց ըմ-
բռնեցայ, որպէս Դարեհի յառաջ
քան զսակաւիկ մի դիպեցաւ. եւ
հրամայէր փողանշանս հարկանել զի
վառեալք վաղվաղակի յարքունիսն
հասանիցեն: Յայնժամ վայրի Պտղո-
մէոս եւ Պերդիկկաս անկանէին պա-
տէին զոտիւք նորա, մի յայնպիսի
սաստիկ ցասումն յաճախել, այլ
առաւ մտաց սակաւ մի ինչ պարապ,
եւ զընաւ վաղիւ արդարութեամբ
ի գլուխ հանել: Սակայն խցեալ
էին լսելիք նորա, քանզի շշնջէր
եւ աղմկէր սրտմտութիւն բարկու-
թեանն, վասն այնորիկ առ չժու-

ժալ ուրուք, ընթացաւ յառաջ, ել ի գաւիթ արքունեացն, հան առ զնիզակն ի պահապանէ անտի որ ի պահուն կայր, արձանացաւ ի մուտս անդ դրանն ընդ որ հարկ էր այնոցիկ որ ի միասին ընթրեալ էին, ելանել: Եկին ելին ամենեքին. Կղիտոս յետոյ քան զամենեսին առանց լուսոյ ի բաց ելանէր: Եհարց ցնա թագաւորն թէ ո՞ ոք ես: Եւ ի ձայնի անդ կայր նշանակ յայտնի անօրէն գործոյն զոր նիւթէր: Եւ նա այնուհետեւ ոչ զխելոյ ցասմանէն այլ զթագաւորին սրտմտութենէ ածէր զմտաւ., տայր պատասխանի թէ Կղիտոս եմ, եւ ի կոչնոց ելանեմ: Իբրեւ նա զայն ասէր, հար զկողս նորա թափանցանց նիզակաւն. եւ ինքն թաթաւեալ արեամբ նորա. Երթ արդ, ասէ, առ Փիղիպպոս եւ առ Պարմենիոն եւ առ Ատտալոս:

Բ. ԵԶՈՎՊՈՍԻ ինչ չարիք կան ի բնէ ի միտս մարդկեղէնս. զի բազում անգամ ոչ որ լինելոց են, այլ որ անցեալ եւ զառանցեալ են, զայն քաջ կշռեմք: Քանզի թագաւորն, իբրեւ ել ցասումն ի միտս նորա եւ գինին թափեցաւ, զյաճախութիւն

անօրէն գործոյն անադան առ ի միտ: Տեսանէր թէ զայր մի, որ յայնժամ անչափ համարձակութեամբ էր վարեալ, բայց ինքն քաջ պատերազմող էր, տղան, եւ եթէ չամաչէր իսկ լինել խոստովան, զկեցուցիչ կենաց իւրոց: Ոչ գործ զարշութեան դահճի վճարեալ էր այր թագաւոր, զհամարձակութեան բանից զոր գինեւոյ մարթ էր գրել, անտարժան սպանութեամբն առեալ վրէժ առ: Հոսէր ի գաւթի անդ արիւն եւ ապաժոյժ այնր որ յառաջ քան զատկաւին մի բազմականակից էր նորա. իսկ պահապանք արքունութեանն յիմարեալք ախորացեալք իբրեւ զկործանեալս յաղթութիւն այնպէս կային ի հեռաստանէ. եւ մեծութիւնն առաւելագոյն զարտըջանսն յորդորէր: Այնուհետեւ զնիզակն հանեալ ի դիականէ անտի, յինքն կամէր մխել. եւ իբրեւ ի կուրծսն էր մերձեցուցեալ, դիմեցին պահապանքն եւ բռնի հանին ի ձեռաց նորա, եւ բարձեալ բերին ի վրանս իւր: Նա ի գետին անկեալ դնէր, եւ ի հեծութիւն եւ ի մռընչիւն ողորմ լալոյ կամենայր արքու-

նխան հնչեցուցանէր։ Ապա ցետել զերեսան սկսաւ ըղձնդամբք, եւ զմօտակայան աղաչէր, թէ մի յետ այնչափ թշնամանաց անարգութեան թողցեն տակաւին կենդանի։ Նա գիշերն ամենայն ընդ այն աղաչանս ելանէր ի գլուխ։ Նա երբեւ յուզէր եւ խնդրէր թէ արդեւք ի դիցն ցամանէ յայնպիսի ոճիրս եկն, յիշեաց թէ ոչ հատուցաւ զոհ տարեկան Սպանդարամետին ի ժամանակի իւրում։ Վասն այնորիկ սրտմտութիւն բարկութեան դիցն յայտնի է, ասէ, զի ի դիմնս եւ ի կոչանս սպանութիւնն գործեցաւ։ Այլ տրտմել ընդ այն խռովեալ էր, զի զամենեցուն բարեկամաց միտս յապշութեան տեսանէր, եւ զմտաւ ածէր թէ ոչ ոք այնուհետեւ իշխելոց է խօսել բանս ընդ նմա. եւ թէ ի մենութեան պարտ իցէ այնուհետեւ կեալ երբեւ զգազանս վայրի, որ մերթ երկեցուցանիցեն եւ մերթ երկիցեն։ Ապա ընդ այգն ընդ առաւօտն ի վերան անդր զդիակնն տակաւին արեամբ թաթախ հրամայէր բերել։ Զնա եդեալ առաջի իւր, յարտասուս հարեալ. Զայս հատու-

ցուցմամբ, ասէ, առնուլին իմում հա-
տուցի, որպէս երկու որդիքն առ Մի-
ջերանաւն ի վերայ փառաց իմոց ան-
կան վիրաւորքն, այս եղբայր Նորա
մի սփոփութիւն միայն անզգալա-
կութեան Նորա ի հացի սպանեա
յինէն: Նաեւ արդ յո՞ երթայցէ կամ յո՞
ապաստան լինիցի հէքն եւ թշուա-
ռացեալ: Նա միայն յամենեցունց
մնացի Նմա, բայց եւ ընդ իս մնացեալ
չկարէ Նայել: Նա ես զող եւ ա-
տաակ այնոցիկ, որ կեցուցիչ կենաց
իմոց էին, դարձա՞յց ի գաւառ իմ,
մինչ զի եւ ոչ զայն ձեռն իմ կարիցեմ
մատուցանել ստնտուի իմում առանց
յիշատակի վշտաց Նորա: Իսկ իբրեւ
չլինէր ղրաւ արտասուացն եւ հե-
ծութեանց, բարձաւ դիակնն ի միջոյ
հրամանաւ բարեկամացն: Անկեալ
գնէր թագաւորն փակեալ զերիս
աւուրս. իսկ կապարճակիրք եւ որք
պահապան էին անձին Նորա, իբրեւ
գիտացին թէ պնդեալ յամառեալ է
մեռանել, ամենեքին համօրէն ի խա-
բան անդր դիմեցին. կային աղաչէին
մեծ ձայնիւ, եւ հազիւ կարացին ածել
ի հաւան զի առցէ կերակուր: Նա զի
ոչ ամաչիցէ Նա ընդ սպանութիւնն,

ետուն վճիռ Մակեդոնացիքն թէ յիրաւի սպանաւ Կղիտոս, եւ զթաղելն եւս կամէին արգելուլ, թէ ոչ թագաւորին հրաման տուեալ էր թաղել:

Այնուհետեւ տասն օր առ Մարականդեաւ ի գլուխ հաներ վասն ամօթոյն, ապա մատամբ միով զօրացն զՀեփեստիոն ի Բակտրիացւոց գաւառն արձակեր, զի պատրաստեսցէ ուտիկ վասն ձմերայնւոյն: Իսկ զնահանգն զոր Կղիտեայ էր սահմանեալ, ետ Ամիւնտայ. ինքն եհաս ի Քսենիպ: Այն գաւառ սահմանորդ է Սկիւթացւոց աշխարհին բնակեալ ի բազում գեղից, քանզի պարարտութիւն երկրին ոչ միայն զայգրէնածինսն պահէ, այլ եւ եկս եւ պանդուխտս եւս հրաւիրէ: Բակտրիացւոց մերժելոց յաշխարհէն որ յԱղէքսանդրէ ապստամբեալ էին, այն եղեւ նոցա տեղի ապաստանաց: Այլ իբրեւ զգաստ եղեն թէ գայ թագաւորն, դրդեալ ի բնակչաց անտի գրեթէ Բ հազարք եւ երկերիւր արք գումարէին: Ամենեքին հեծեալք էին, եւ ի խաղաղութեան իսկ ընդ աւազակութիւն ընդելեալք. բայց յայնժամ ոչ միայն

պատերազմ այլ եւ անյուսութիւն ներելոյ թողութեանն զմիտս վայրենութեան նոցա ի գազանութիւն հանէր։ Վասն այնորիկ յանկարծակի յարձակեալ ի վերայ Ամունտայ հազարապետի Աղեքսանդրի, բազում ժամս տասի տնտի անյայտ զկատարած պատերազմին առնէին. ապա ուրեմն իբրեւ սատակեցաւ ի նոցանէ 2 այր, եւ զԵ ի նոցանէ տաթշնամին, դարձուցին զթիկունս իւրեանց ի փախուստ, բայց ոչ առանց զանձանց վրէժ խնդրելոյ. քանզի 2 այր ի Մակեդոնացւոց սպանին, եւ բաց ի նոցանէ Ե եւ Ծ վիրաւորք գտան։ Նոյց սակայն եւ յետ երկրորդ ապստամբութեանն հասին ներելոյ թողութեան։

Իբրեւ տաքս հնազանդեցան, ի գաւառ մի զոր Նաւտակ կոչեն, եկն թագաւորն ամենայն զօրօք հանդերձ։ Էր նախարար աշխարհին Սիսիմիթրէս. սա ծնաւէր զամենայն ամիկն, եւ զկիրճս գաւառին յայնմ կողմանէ որ անձկացեալ նեղի, Թ հազարօք պատեալ ամրացուցանէր։ Գետ մի հեղեղեալ առաջի անցանէր, եւ վէմ մի փակէր ի յետուստ

կուռէ. ընդ այն վէմ ճանապարհ ձեռագործ գործեալ էին բնակիչքն։ Բայց ընդ դուռն այրին մտանէ լոյս, իսկ ներքնակողմն խաւար է թէ ոչ տանիցի ոք ճրագ ի ներքս։ Ականն որ թափանցանց փորեալ է, հանէ ի դաշտս. եւ ոչ ոք գիտէ զայն ճանապարհ բայց միայն որ անդն ծնեալ են։ Բայց թէպէտ եւ զանձուկսն որ ի բնութեան գրից իւրեանց ամրացեալ եւ անառիկ էին, ստուար գընդաւ խուժքն պահէին, սակայն Աղեքսանդրոս մեքենայս մատուցեալ, զամրութիւնսն որ ձեռագործ ի միմեանս յարեալ էին, խախտէր. եւ պարսիւք եւ նետիւք զբազումս ի յառաջամարտիկն ահապատակացն տապաստ արկանէր. իբրեւ զնոսա ցրուեալ դարձոյց ի փախուստ, ելեալ ի վերայ աւերակաց ամրոցացն ի վէմ անդր մօտ զզօրսն տանէր. սակայն գետն ընդ մէջ անկանէր դուամարեալ ջուրցն ի բարձրաւանդակէ անտի ի ձորն. եւ մեծ աշխատութիւն թուէր զայնպիսի զյաղթ յորձանսն լնուլ։ Սակայն ծառատունկ հրամայէր հատանել եւ կոտել քարինս. ահ եւ երկեւղ

անհնարին զբարբարոսացն պատե-
ցաւ, յորժամ յանկարծակի տեսին
յարուցեալ զկլուրն, քանզի անտե-
ղեակ էին այնպիսի իրաց։

Վասն այնորիկ զմտաւ ած Թա-
գաւորն թէ գուցէ յահէ անտի յո-
ժարեսցին տալ զանձինս եւ զՈք-
սարտէս առաքէր յազգէ անտի նո-
ցա, որ ընդ իշխանութեամբ իւրով
էր, զի ածիցէ ի հաւան զզօրավար
նոցա տալ զվէմն ի ձեռս։ Յայնմ
վայրի վասն զահն յաճախելոյ եւ
աշտարակք մատչէին, եւ նետք եւ
սլաքք շողոյին արձակեալ ի մեքե-
նայիցն։ Վասն որոյ զայլ ամենայն
ամրութիւն թողեալ ի գագաթն
վիմին գնացին։ Նոյն Ոքսարտէս
սկսաւ յորդորել զՍիսիմիթրէս որ
դողայր իսկ եւ չէր վստահ յերո
իւր, զի զհաւատարմութեան մա-
նաւանդ զՄակեդոնացւոցն կամեսցի
զչափ առնուլ եւ ոչ զբռնութեան,
եւ մի յապաղեսցէ զճեպ զօրաց Թա-
գաւորին որ դիմեալ երթան ի Հըն-
դիկս. Որ ոք, ասէ, զանձն այնց
զօրաց ընդդէմ դնիցէ, զայլոց հա-
րուածս ի գլուխ իւր շրջէ։ Իսկ Սի-
սիմիթրէս իսկ գլխովին հաճէր լինել

անձնատուր. բայց մայր նորա որ եւ կին իսկ էր նորա, ասէր թէ լաւ իսկ համարիմ մեռանել քան ի ձեռս նորա անկանել. եւ այնպէս շրջեաց զմիտս առն իւրոյ յայն ինչ որ պատուական էր եւ ոչ զգուշաւոր. եւ ամաչէր այրն թէ առաւել լինիցին գինք ազատութեան առաւել կանանց քան արանց: Վասն այնորիկ արձակեալ զհրեշտակն խաղաղութեանն, եւ ի մօտի ժուժկալ լինել պաշարմանն: Բայց իբրեւ զզօրութիւնս զօրաց թշնամեացն եւ զիւրոց զօրացն կշռէր, դարձեալ սկսաւ զղջանալ ընդ խորհուրդ կնոջն զոր վաղվաղակամտաց քան եթէ հարկի ինչ խորհուրդ համարէր. եւ կոչեալ այսրէն վաղ զԱքարտէս ասէր, թէ եղէց ընդ ձեռամբ թագաւորին, բայց զմի ինչ աղաչէր թէ մի զկամս եւ զխրատս մօր իւրոյ ի վեր հանցէ, զի դիւրագոյն եւ նա թողութեան հասանիցէ: Այնուհետեւ առաջի արձակեալ զԱքարտէս, ինքն մայրն եւ որդւովքն եւ ամենայն գնդիւ ազդականութեանն զհետ խաղայր, ոչ ինչ մնացեալ եւ գրաւոյ հաւատարմութեան զոր Աքարտէս խոս-

տայցաւ նմա։ Թագաւորն հեծեալ առաջի արձակէր զի պատուէր տացէ նոցա դառնալ այսրէն յետս եւ ապաւոել զայլս նորա. այլա եկն առ նոսա, եւ զենեալ պատարագս Աթենայ եւ Յաղթութեանն՝ հաստատեաց զերջանկութիւնն Ախաի-միթրեայ, եւ խոստացաւ նմա մեծ եւս գաւառ տալ, եթէ հաւատարիմ կացցէ ի բարեկամութեան նորա. իսկ երկուց որդւոց նորա, զոր ետ նմա հայրն, ետ հրաման գալ զինուորել ընդ նմա։

Յետ այնորիկ թողեալ անդէն զդունդն, հեծելազօրու իւրով խաղացեալ երթայր զայնոսիկ որ ապըստամբեալ էին նուաճել, բայց յառաջնումն ի զառ ի վեր եւ յառապարուտ ճանապարհէն վշտացան։ Ոչ միայն սմբակք երիվարացն մաշեցան, այլ եւ վաստակեցան մարմինք նոցա, եւ բազումք ի նոցանէ չկարէին գալ զհետ. եւ անօրացաւ բանակն, յորժամ սաստիկ աշխատութիւն իւրացն որպէս ի դէպ է լինել, առաւել զօրացաւ քան զամօթն դառնալոյ յետս։ Սակայն թագաւորն փոփոխեալ մի բաւ

միջեւ զերիւարս իւր, անդադար պնդեալ էր զհետ փախստէիցն։ Պատուանդանկքն ազնուականք որ ուղեկիցն լինել սովոր էին, մնացին յետոյ բաց ի Փիղիպպեայ, որ եղբայր էր Ղիւսիմաքեայ, որ յայնժամ խոկ ի չափ հասեալ էր եւ անհնարին քաջ, եւ եցոյց նա այսպէս զհանդէս քաջութեանն։ Նա հեծեալ ընդ Ը. վաշտուն ուղեկից թագաւորին լինէր, թէպէտ եւ բազում անգամ զեւր խոկ երիւար մատուցանէր Ղիւսիմաքոս. եւ թէպէտ եւ զբահս զգեցեալ եւ վառեալ զինու զօրագոյ էր, սակայն չմնաց յետոյ քան զթագաւորն։ Նա յորժամ հասին ի խոխամն անդր յորում վայրի զանձինս բարբարոսքն ամրացուցեալ էին, եւ ազնուական մարտ պատերազմի, եւ թագաւորին որ ի մօտոյ ընդ թշնամւոյ կռուէր, պաշտպանէր։ Նայլ իբրեւ բարբարոսքն ի փախուստ դարձան եւ զանտառսն թողին, այն զօրութիւն որ յեռանդման անդ մարտին զմարմինն ի վեր ունէր, ակաբացաւ. եւ յանկարծակի քերան յամենայն անդամոցն հոսէր, եւ յեցաւ ի բուն ծառոյն որ անդ մօտ

էր։ Յետ այնորիկ իբրեւ եւ այն նեցուկ չկարաց ի վեր ունել զնա, առաւ նա ի ձեռս թագաւորին, եւ անդէն ի ձեռս թագաւորին փչէր զոգին։ Ի վերայ արտմութեան թագաւորին այլ եւս ոչ սակաւ ցաւք ի վերայ յաւելան։ Երիգիոս ընդ երեւելի զօրավարս էր. մինչ դեռ մօտ էր միւսանգամ հասանել ի բանակն, լուր եղեւ նմա թէ Երիգիոս մեռաւ։ Երկոցունց եւս յաղարկաւորութիւն մեծաւ կազմութեամբ եւ պատրաստութեամբ եւ մեծարանօք կատարեցաւ։

Գ. ՅԵՏ այնորիկ ի մտի եդեալ էր երթալ ի Դահս. զի ազդ իսկ լեալ էր նմա թէ Սպիտամենէս անդ է։ Բայց եւ զայն արշաւանն, որպէս զայլ եւս բազում ինչ փոխանակ նորա, մինչ դեռ սակաւուին հեռի էր, բախտն հան ի գլուխ, այն՝ որ ոչ վաստակեցաւ երբեք ի ձեռն առաջոյ նմա։ Սպիտամենեայ սաստիկ գութ անկեալ էր ընդ կնոջ իւրոյ. զնա որ ակամայ փախստեանն եւ ազգի ազգի պանդխտութեան համբերէր, առեալ տանէր ուղեկից յամենայն վիշտս իւր։ Իսկ կինն տաղտա-

կացեալ եւ ձանձրացեալ ի չարեաց անտի, երբեք երբեք զկանացի ողոքանսն յաճախէր խօսել, զի դադարեսցէ ի փախստենէն եւ հասցէ զթուլթեան Աղեքսանդրի, եւ զայն՝ յորոյ ձեռաց չկարէր ապրել հաշտ արասցէ։ Երբեք որդիք ծնեալ էին ի նմանէ հասեալք ի չափ հասակի. զորս տարաւ մօտ ի լանջս հօրն իւրեանց եւ աղաչէր թէ գոնէ սոցա ողորմեսջիր. եւ զի զօրագոյնք եւս պաղատանքն լինիցին, չէ, ասէր, հեռի Աղեքսանդրոս։ Նորա զմտաւ ածեալ թէ մատնել կամի զնա եւ ոչ խրատել. եւ ի գեղ իւր յուսացեալ, ցանկայ վաղվաղակի զի անկցի ի ձեռս Աղեքսանդրի, հան զդաշոյն իւր եւ զկինն կամէր հարկանել, եթէ ոչ եղբարքն դիմէին եւ արգելուին։ Նմա հրամայէր ի բաց գնալ յերեսաց իւրոց. յաճախէր եւ սպառնալիս մահու եթէ միւսանգամ անկցի յակն։ Բայց քանզի հարեալ էր զհետ նորա, աղաչէր ի բաց կալ յայնպիսի մտաց եւ յանձն առնուլ զինչ վիճակ տացէ նոցա բախտն. Ինձ, ասէ, մահ քան զանկանել ի ձեռս թեթեւագոյն է։

զԹշնամանսն, եւ հրամայէր առել զինչ կամիցի։ Իսկ նա խնդրեաց զի ծառայն որում պատուէր տուեալ էր կալ ի դրաւԹի անդ, մուծցի ի ներքս։ Ծառայն՝ քանզի զգլուխ Ապիսաամինեայ հանդերձիւն ծած-կեալ էր, իբրեւ կասկածեալ խուզեցին զնա, եցոյց զինչ Թաքուցեալ էր։ Տժգոյն եւ երկԹացեալ երեսքն էին, եւ չլինէր յայտ Թէ ո՛ ոք է։ Այնուհետեւ իբրեւ լուր եղեւ Թագաւորին Թէ գլուխ մարդկեղէն բերե նա, եւ ի խորանէ անտի եւ հարցանէր Թէ զինչ այն ինչ իցէ, եւ նա իբրեւ խոստովան լինէր, ապա առնոյր ի միտ զամենայն Թագաւորն։ Այնուհետեւ ազգի ազգի խորհուրդք զմիմեանս մղեալ, ի տագնապի զմիտս Թագաւորին կացուցանէին։ Ուրախութիւն մեծ անձին իւրում համարէր, զի փախստեայն եւ մատնիչն, այն՝ որ այնչափ մեծամեծ իրաց յապաղիչ լինելոց էր Թէ կայր կենդանի, այն սպանեալ էր. Նմին հակառակ գործէր ի չարաչար գործոյ անտի, զի զբարերար իւր եւ զերախտաւորն՝ կինն, եւ զհայր՝ հասարակաց որդւոցն ներնդուԹեամբ սպան։

Ընդ յաղթեաց շնորհակալութեան երախտեացն խոստութիւն անօրէն գործոյն, եւ հրամայեաց պատուիրել զի ի բաց ելցէ ի բանակէն, զի մի օրինակ բարբարոս ստահակութեանն ի բարս եւ ի մեղմական միտս Յունացն փոխեսցի։

Դահէք իբրեւ գիտացին զսատակումն Սպիտամենեայ, զԴատափեռնէս զկցորդ ապստամբութեանն նորա կալեալ կապեալ, եւ զանձինս եւս տային Աղեքսանդրի։ Նա իբրեւ ի մեծամեծ հոգոց անտի մօտաւորաց ազատացաւ, այնուհետեւ ուշ ունէր առնուլ զվրէժ զրկութեան այնոցիկ, որոց ժլատութեամբ եւ հպարտութեամբ իշխէին հազարապետք իւր։ Տայր Փրատափեռնեայ զՎերկանս եւ զՄարգացիս Տապուրացւովք հանդերձ. պատուէր տայր զի զՓրադատէս՝ զոր փոխանակէր իւր, պահապանօք առ ինքն յղեսցէ։ Փոխանակ Արշամայ որ ոստիկան Դրանգացւոցն էր, կարգեցաւ Ստասանոր. իսկ Արշակ առաքեցաւ ի Մարաստան երկիր, զի Ոքսիդատէս անտի ի բաց գնասցէ։ Աշխարհն Բաբելացւոց յետ Մազեայ մեռանելոյն

ընդ իշխանութեամբ Սասանեանց անկաւ:

Դ. ԻԲՐԵՒ զայս ամենայն կարգէր կազմէր, այլա յերրորդում ամսեանն ի ձմերոցէ անտի զզօրսն հանէր խաղալ գնալ ի գաւառն որ կոչի Գաբաղա: Առաջնոյ աւուրն ճանապարհ հանդստեամբ էր. իսկ երկրորդի աւուրն տակաւին ոչ մրրկաք, այլ մթագին քան զառաջնոյ աւուրն, եւ յեղանել ի գլուխ աւուրն սկիզբն իմն լինէր ամենայն մրրկին: Իսկ յերրորդումն փայլատակունք սկսան շողալ յամենայն կողմանց, եւ լոյսն մերթ փայլէր եւ մերթ ծածկէր, եւ ոչ զայս միայն զօրացն իշուելն՝ այլ եւ զմիտս սկսան զարհուրեցուցանել, եւ էր դրեթէ սաստիկ որոտումն, եւ երեւէին հրացան բարկութեանց անկանել: Յապուշ միտս հարեալ բանակին, եւ սքանչացեալ լսելեաց նոցա, ոչ յառաջ իշխէին խաղալ եւ ոչ զտեղի առնուլ: Յայնժամ վայրի յանկարծուստ ամպք որ կարկուտ հոսէին, իբրեւ զհեղեղատս թափէին: Նոքա յառաջնում նուագին ծածկեալ զինուք իւրեանց ընդդէմ

կոյսին, սակայն եւ ոչ զզէնան այնու-հետեւ կարէին ըմբռնել լպիրծ ձեռք նոցա, եւ ոչ ուղղել կարէին թէ յոր կողմն դառնայցեն, զի յամե-նայն ուստեք յաճախագոյն բռնու-թիւն մրրկին ի դիմի հարկանէր: Արդ խառնակ առանց կարգի ընդ-խոխոմն ամենայն մոլորական բա-նակն երթայր, եւ բազումք յառա-ջագոյն ահիւն եւ ոչ աշխատու-թեամբն վտանգեալք, ի գետին անկեալ տարածանէին: Թէպէտ եւ զերեսս երկրին տառապութիւն ցրտոյն թանձրացուցեալ պաղեցուցանէր: Ոմանք ի բունս ծառոցն մտանէին, եւ այն բազմաց եւ նեցուկ էր եւ ապաստան: Այլ նոյն լինէր նոցա տեղի մահուան խուրեանց յորժամ ջերմաջերմ շունչն պակասեալ թո-ղոյր զնոսա անշարժ եւ անխաղաց. այլ հաճոյ էր վտանգելոցն դան-դաղ ծուլութիւն մարմնոյ, եւ ոչ հրաժարէին իսկ հանգչելումն մեռա-նել: Զի ոչ միայն սաստիկ մրրիկն էր, այլ եւ հանապազորդ եւ տեւա-կան. եւ զլուսաւորութիւն՝ որ սփո-փութիւն իմն է բնութեան, ոչ միայն մրրիկն խլէր եւ զգիշեր յարդարէր, այլ

եւ սաստուերք անտառացն զօղանային : Թագաւորն միայն էր որ ժոյժ ունէր այնպիսի վշտաց, շրջէր զզօրականօքն, ժողովէր զցրուեալսն, կանգնէր կացուցանէր զանկեալսն եւ զտարածեալսն, ցուցանէր ի հեռաստանէ ծուխ հոլովեալ ի խղից. պատուիրէր երթալ ունել զամենայն տեղիս ապաստանաց որ անդ մօտ գտանիցին : Այլ ոչ մի ինչ էր որ այնպէս փրկութեան պատճառք նոցա եղեն, իբրեւ զայն զի ամաչէին թողուլ ըզթագաւորն որ այնպէս հանդերձ բազմապատիկ աշխատութեամբ ժոյժ ունէր նեղութեանցն, զորոց ինքեանք չկարացին զդէմ ունել :

Այլ հարկն որ զօրագոյն եւ սաստկագոյն քան զիմաստութիւն է ի չարչարութիւնսն, եգիտ զդարման ցրտոյն վտանգի : Զանգի ձեռն ի գործ արկեալ ուրագօք զմայրիսն տապալէին, եւ աստ անդ կոյտս կոյտս դիզեալ վառէին : Իբրեւ ի ստէպ իմն հրդեհէ այրել խոխոմքն թուէին, եւ հազիւ հազ թէ ի մէջ բոցոյն մնայր բանակացն տեղի : Այն տապ զթմբեալ անդամսն սկսաւ շարժել եւ տակաւ շունչն կոր ցըր-

տոյն արգելեալ էր, սկսաւ համար-
ձակ ընթանալ։ Եւ զոմանս ընկալան
յարկէք բարբարոսաց, զորս հարկն իսկ
յուզեալ եւ խնդրեալ էր, զի ի վեր-
ջին կողմանս խոխոմացն ծածկեալ
էին. այլք հարքն բանակ ի խոնաւ
եւ ի տամուկ տեղւոջ, այլ օդոյն
խստութիւն ցածուցեալ էր։ Եր-
կուս հազարս զօրականաց եւ ջրակրաց
եւ փայտակրաց այն ժանտ ծախեաց։
Պատմեն թէ ոմանք որ ի բունս ծա-
ռոցն մնացեալ էին, գտան ոչ միայն
իբրեւ կենդանի, այլ եւ իբրեւ զայ-
նոսիկ որ խօսակից ընդ միմեանս
լինիցին. քանզի տեւեալ ձեռայն
տակաւին կերպարանք, յորս ըմ-
բռնեաց զնոսա մահ։ Դէպ եղեւ
զի զինուոր մի մակեդոնացի ի խառ-
նաղանձ զօրականաց հազիւ ժու-
ժեալ զինուք հանդերձ եկեալ ի բա-
նակն հասանէր։ Իբրեւ զնա ետես
թագաւորն, թէպէտ եւ ինքն յայն-
ժամ հուր արկեալ ջեռնոյր, վազեաց
ի վեր յաթոռոյ իւրմէ, եւ զզինուո-
րն թմրեալ, որ հազիւ մնացն տէր
էր, հանեալ զզէնսն ի նմանէ ի բաց
յիւրում տեղւոջ հրամայէր նստու-
ցանել։ Նա մեծ ժամս չիմացաւ թէ

ուր հանդչէր, եւ ոչ թէ յումէ ըն-
կալեալ էր: Ապա ուրեմն ի կենդա-
նութեան ջերմութիւն դարձեալ,
իբրեւ զարքունական աթոռն եւ
զթագաւորն ետես, զարհուրեալ
յառն եկաց. հայեցեալ ի նա Աղե-
քսանդրի. Իմանամս, ասէ, զօրա-
կան, որչափ լաւագոյն քան զՊար-
սիկսն ընդ թագաւորաւ էք: Զի
նոցա յաթոռ թագաւորի նստել
գլխոյ պատժոց առիթ լինիցի, իսկ
ձեզ փրկութեան պատճառ: Ի
վաղիւ անդր ի մի վայր զբարեկամսն
ժողովէր եւ զզօրավարս զօրացն, եւ
հրամայէր պատմել թէ ինքն զամե-
նայն որ ինչ կորուսեալ էր, հատուս-
ցանելոց է: Եւ ըստ խոստմանն նոյն-
պէս արար: Զի Սիւսիմիթրէս
դրաստս բազումս եւ երկուս հազարս
ուղտուց եբեր, եւ խաշինս եւ ան-
դեայս. որք բաժանեցան ամենե-
ցուն, եւ ի վնասուէ եւ ի սովոյ
ապրեցուցին զզօրականսն: Թագաւ-
որն խոստովան եղեւ գոհութեամբ
զՍիւսիմիթրեայ, եւ հրամայեաց զօ-
րացն վեց աւուր կերակուր եփեալ
տանել. եւ երթայր այնպէս ի Սա-
գացիսն: Զամենայն գաւառն զայն

աւար հարեալ՝ և հազարս խաշանց յածէ անտի այլ պարգեւ Սիւնի-միթրեայ։

Ընտի հասանէր ի նահանգն որոյ նախարար Ոքսիարտէս էր, այր մի ազնուական, որ յանձն եղեւ իշխանութեան թագաւորին եւ հաւատոց նորա։ Նորա դարձուցեալ անդէն նմա զիշխանութիւնն, ոչ ինչ աւելի խնդրեաց, բայց միայն զի երկուք յերից որդւոց անտի նորա ի մարտ պատերազմի ընդ նմա երթայցեն։ Իսկ նախարարն եւ զերրորդն եւս որ առ նմա մնայր, ետ նմա։ Խորախուհս եւս ըստ բարբարոս մեծութեանն յօրինէր, զի արասցէ ընդունելութիւն թագաւորին։ Նայլ քանզի մեծաւ մարդասիրութեամբ ըզխրախութիւնն կատարէր, հրամայէր և կոյսս ազնուականս ի ներքս մածանել. յորս էր դուստր նորա Ռոքսանէ անուն գեղեցիկ տեսլեամբ մարմնոյ, որ անօսր իցէ ի մէջ բարբարոսացն։ Սա թէպէտ եւ ի մէջ ընտիր ընտրի կուսից յառաջեալ դայր, զամենեցուն աչս յինքն արկանէր մանաւանդ զթագաւորին որ չկարէր իւրոց ցանկութեանցն իշխել

եւ բախման յարբանեկութեան կայր նմին, եւ յորժէ ոչ բաւականն զդայշ լինի մարդկութիւնս։ Վասն այնորիկ նա որ ընդ կինն Դարեհի եւ ընդ երկուս զաւակօ նորա ընդ կայսր, իբրեւ հայրենի մտօք հայեր, յայնժամ ի գութ կուսի միոջ որ եթէ ընդ արքունական զարմին կշռէր անընչան էր, չկթեալ շռայլէր, մինչեւ ասել թէ անդ է հաստատութեան թագաւորութեանն, զի Պարսիկք եւ Մակեդոնացիք ամուսնութեամբ խառնեցին. եւ այսպէս միայն մարթի զամօթ պատկառանացն ի պարտելոցն բառնալ եւ զամբարտաւանութիւն ի յաղթողաց անտի։ Դու Աքիղղէս եւս յորժէ սերեալ գամ, ընդ կնոջ գերելոյ ամուսնացաւ։ Ցնծացաւ ընդ իւրան որում չունէր ակն հայրն, եւ հաւանէր բանից նորա. եւ թագաւորն հրաման տայր ըստ հայրենի սովորութեանն հաց բերել։ Հաց էր Մակեդոնացւոցն յորժամ կամէին զուգել, սուրբ քան զամենայն զրաւականս, զայն հաց բաժանեալ սուսերաւ երկոքեան նուիրէին։ Ինձ թուի թէ որք զսովորութիւնս

ազգին կարգեցին թէ զոյգն եւ դիւրին կերակրովն յայս ամուսնացելոցն կամիցին առնել, թէ որչափ ինչ իւիք պարտ իցեն շատանալ։ Այսպէս թագաւորն Ասիացւոց եւ Եւրոպացւոց ընդ այնմ, որ ի ներքս մուծեալ էր ի մէջ խաղալկաց ուրախութեան, ամուսնութեամբ զուգէր եւ յաղախնոյ անտի ծնանելոց էր զայն որ յաղթողացն իշխելոց էր։ Ամաչէին շիկնէին բարեկամքն թէ ի գինիս անդ եւ ի հացի ընտրեցաւ նմա ի գերելոց անտի աներ, այլ քանզի յետ Կղիտեայ մահուն ազատութիւնն ի միջոյ բարձեալ էր, դիմօք երեսացն սուտակապաս լինէին։

Ե. ԱՅԼ իբրեւ ի Հնդկաց աշխարհն կամէր երթալ եւ անտի յՈվկիանոս, զի մի որ ինչ ի թիկանց կայցէ կարիցէ արգել կամաց նորա լինել, յամենայն գաւառաց Լ հազարս արանց երիտասարդաց հրամայէր ժողովել, եւ վառեալս առ նա հասուցանել, զի զնոսա ունիցի պատանդս միանգամայն եւ զօրականս։ ԶԿրատերոս առաքէր զհետ Հաւստանեայ եւ Կատենեայ որ ի

նմանէ ապստամբեալ էին. յորոց Հաւատանէս ձերբակալ եղեւ եւ կատենէս անկաւ ի ճակատու: Նոյն Պողիպերկոն եւս զգաւառ որ Թուքակենէ կոչիցի, առ ի բուռն: Վասն այնորիկ զամենայն կարգեալ եւ յօրինեալ՝ ի Հնդկաց պատերազմն դառնայր խորհել: Մեծատաուն գաւառ համարեալ էր ոչ ոսկւով միայն այլ եւ ակամբք պատուականօք եւ մարգարտօք, ոչ ի շքեղութիւն ինչ այլ մանաւանդ ի զեղխութիւն: Ասէին թէ վահանք զօրականացն յոսկւոյ եւ ի ժանեաց փղաց էին. վասն այնորիկ զի մի իւիք յաղթիցի մինչ ինքն առաւելագոյն քան զայլսն իցէ, Թիթղունս արծաթիս ի վերայ վահանացն, եւ ոտնձս ոսկիս երիւարացն հրամայէր յօրինել, եւ զկէսս եւս ի փոկոյն ոսկւով եւ զկէսս արծաթով զարդարէր: Նոյն էին ձի հազարք վառեալք որ զհետ գային Թագաւորին յայն մարտ պատերազմի: Իբրեւ զամենայն կազմեաց եւ յարդարեաց. զոր ինչ չարաչարն մտօք յառաջագոյն խորհեալ էր, զմտաւ ածեալ թէ այժմ իսկ ժամ է իւրացն կատարելոյ, սկսաւ խոր-

հօւրդ խորհել յանձն իւր թէ զե-ա՛րդ կամ ո՛րդւանոյ զերկնաւոր մե-ծարանան յանձն կորզել մարթայցէ։ Ոչ միայն Արամազդայ որդի անուա-նել այլ եւ այնպէս խակ կարծել կամէր, երբեւ այն թէ որպէս լե-զուաց՝ նոյնպէս եւ մտաց ձեռնհաս էր խօսել։ Վասն այնորիկ եւ Մակե-դոնացիք ըստ Պարսից սովորութեան մեծարանօք ի գետին անկեալ այն-պէս ողջոյն տային թագաւորին։ Նա եւ ոչ սաստակիչ ողոքանք բանից սու-տակապարտաց պականէին նմա որ այնպիսեացն ցանկայր, զի հանապա-զորդ իմն ախտ ապականիչ թագաւո-րաց սուտակապարտացն ողոքանքն էին. զորոց զիշխանութիւնս բա-զում անգամ ոչ թշնամիք այլ սու-տակապարտութիւն կործանէ։ Նա եւ ոչ Մակեդոնացւոց ինչ այն մեղ էր, քանզի ոչ ոք ի նոցանէ առ յանձն թէ ի հայրենի բարուց փոխեցի ինչ, այլ Յունաց գործ էր այն, որ զճար-տարութիւն մեծարոյ արուեստիցն եղծեալ ապականեցին չարաչարն սովորութեամբք։ Ագիս արգիացի որ չարաչար վիպացն յօրինիչ եղեւ յետ Քերիղեայ, եւ Կղէոն ի Սիկի-

կիլիացուաց աշխարհէն, եւ այս Կղէոն ողոքիչ էր ոչ միայն յիւրոց բարուց այլ եւ յազգային բնութենէ, եւ այլ եւս արք ապաժամանք քաղաքացն Յունաց, որք նախանձաւոր քան զՄերձաւորսն եւ քան զզօրաւորս զօրաց բազմաց ծառայք ի Թագաւորէն լինէին, զի սոքա նմա զերկինս բանային, եւ զՎահագնէ եւ զՍպանդարամետէն եւ զԿաստորեայ Պողղուկեաւ հանդերձ պատմէին թէ տեղի տալոց են քեզ նորոյ Աստուածոյ ։

Այնուհետեւ ի տօնական աւուր հրամայէր բազում առատութեամբ խրախճանս յօրինել, զի ոչ Մակեդոնացիք միայն եւ Յոյնք իշխանք բարեկամացն, այլ եւ արք աւագք անդր եկեսցեն ։ Նա իբրեւ բազմեալ էր ընդ նոսա Թագաւորն, կերեալ սակաւիկ մի, ել ի կոչնոց անտի ի դուրս ։ Կղէոն, որպէս ինչ յառաջագոյն կազմեալ եւ պատրաստեալ էր, սկսաւ ճառ արկեալ խօսել զարմանալեացն զդրուատիս նորա ։ Այս զերախտիս նորա մի ըստ միոջէ ի համար արկեալ թուէր, եւ միով, ասէ, միայն օրինակաւ հատուցումն կարէմք երախտեացն առնել, եթէ

աստուած զնա համարեսցուք եւ խոստովան լիցուք. զի յայնժամ սակաւիկ ինչ ծախուք կնդրկի այնչափ երախտեաց առնիցեմք հատուցումն: Պարսիկք ոչ միայն դիւցապաշտութեամբ գործեն այլ եւ իմաստութեամբ, զի թագաւորաց իւրեանց ընդ դիցն պաշտօն հարկանեն. քանզի փառաւորութիւն թագաւորի պահապան փրկութեան տէրութեանն է: Քանզի եւ ոչ Վահագն եւ Սպանդարամետ դիք անուանեցան, մինչ չեւ չարականելոյ այնոցիկ որ ընդ նոսա կենդանի էին, յաղթեալ. եւ այնչափ հաւատան յետինք, որչափ յայնժամու ժամանակ եցոյց նոցա: Իսկ եթէ այլք, ասէ, սակաւուն չկամիցին, սակայն ես, յորժամ մտցէ արքայ ի կոչունս, անկայց առաջի նորա յերկիր: Իսկ այլոց եւս պարտ է այսպէս առնել, եւ մանաւանդ իմաստնոցն. զի ի նոցանէ արժան է թէ ընծայիցի օրինակ մեծարանաց թագաւորին: Ուղղորդ իսկ ի Կաղիսթենէս հայէր բանն: Յածութիւն առն եւ արագ համարձակութիւն ատելի էր թագաւորին, որպէս թէ նա միայն զՄա-

կեդրոնացիան որ կազմ յայնպիսի տի-բանեկութիւն էին, յամեցուցանէր:

Այո, իրրեւ լռութիւն եղեւ եւ այլքն ի նա հայէին, Եթէ ասա, ասէ, լուեալ էր Թագաւորն եւ լսէր զբանս քո, այսպէս ամենեքին այլին քեզ պատասխանի. քանզի ինքն իսկ Թագաւորն խնդրէր ի քէն մի յօտարոտի եւ յարտաքին սովորութիւնս սորվել զառածանել, եւ մի Թշնամութիւնս այնչափ քաջուԹեանց աջողելոց սուտակապասուԹեամբն գումարել: Բայց քանզի չէ նա աստ, ես քեզ տաց պատասխանի փոխանակ նորա, Թէ պատուղ տարաժամ չէ տեւական. եւ դու յորժամ զերկնաւոր պատիւն տաս Թագաւորին, ոչ ասա այլ հանես ի նմանէ: Վրանզի ժամանակի պէտք են առ աստուած կարծելոյ, եւ միշտ իսկ յետինք տան զայն հատուցումն առաւ որերոյ: Իսկ ես անսազան անմահութիւն ցանկամ Թագաւորին, որպէս զի եւ կեանք նորա երկայնակեաց իցեն եւ մեծաշուք փառաւորութիւն նորա յաւիտենից: Նշրբեմն զհետ մարդոյն երԹայ աստուածութիւն, բայց ընդ

ատար հարեալ՝ և հազարս խաշանց յառէ անտի տայր պարգևս Միւսի-մխիթարեայ:

Մինչ հասանէր ի նահանգն որոյ նախարար Ռոքսիարանէս էր, այր մի ազնուական, որ յանձն եղև իշխանութեան թագաւորին եւ հաւատոց նորա: Նորա դարձուցեալ անդէն նմա զիշխանութիւնն, ոչ ինչ աւելի խնդրեաց, բայց միայն զի երկուք յերից որդւոց անտի նորա ի մարտ պատերազմի ընդ նմա երթիցեն: Իսկ նախարարն եւ զերրորդն եւս որ առ նմա մնայր, ետ նմա: Խրախճանս եւս ըստ բարբառոյ մեծութեանն յօրինէր, զի արասցէ ընդունելութիւն թագաւորին: Նոյն քանզի մեծաւ մարդասիրութեամբ ըզխրախութիւնն կատարէր, հրամայէր և կոյսս ազնուականս ի ներքս մուծանել. յորս էր դուստր նորա Ռոքսանէ անուն գեղեցիկ տեսլեամբ մարմնոյ, որ անօսր իցէ ի մէջ բարբարոսացն: Սա թէպէտ եւ ի մէջ ընտիր ընտիր կուսից յառաջեալ գայր, զամենեցուն աչս յինքն արկանէր մանաւանդ զթագաւորին որ չկարէր իւրոց ցանկութեանցն իշխել

Եւ բախման յարաբանակութեան կայր նմին, եւ յորմէ ոչ բաւական զգուշլինի մարդկութիւնս։ Սատն այնուրիկ նա որ ընդ կինն Դարեհի եւ ընդ երկուս զաւակս նորա ընդ կայոս, իբրեւ հայրենի մասք հայեր, յայնժամ ի դուլթ կուսի միով որ եթէ ընդ արքունական զարմին կշռէր անմղշան էր, չկթեալ շաւղէր, մինչեւ ասել թէ անդ է հաստատութեան թագաւորութեանն, զի Պարսիկք եւ Մակեդոնացիք ամուսնութեամբ խառնեցին. եւ այսպէս միայն մարթի զամօթ պատկառանացն ի պարտելոյն բառնալ եւ զամբարտաւանութիւն ի յաղթողաց անտի։ Նոյն Աքիլլէս եւս յորմէ ռերեալ զամ, ընդ կնոջ գերելոյ ամուսնանացաւ։ Ընծայաւ ընդ իրան որում չուներ ակն հայրն, եւ հաւանէր բանից նորա. եւ թագաւորն հրամայն տալր ըստ հայրենի սովորութեանն հաց բերել։ Հաց էր Մակեդոնացւոցն յորժամ կամէին զուգել, սուրբ քան զամենայն գրաւականս, զայն հաց բաժանեալ սուսերաւ երկոքեան նուիրէին։ Ինձ թուի թէ որք զսովորութիւնս

ազգին կորզեցին թէ դոյզն եւ դիւրին կերակրոյն յայս ամուսնացելոցն կամիցին առնել, թէ որչափ ինչ իւիք պարտ իցեն շատանալ: Այսպէս Թագաւորքն Ասիացւոց եւ Եւրոպացւոց ընդ այնմ, որ ի ներքս մուծեալ էր ի մէջ խաղալկաց ուրախութեան, ամուսնութեամբ զուգէր եւ յաղախնոյ անտի ծնանելոց էր զայն որ յաղթողացն իշխելոց էր: Ամաչէին շիկնէին բարեկամքն թէ ի գինիս անդ եւ ի հացի ընտրեցաւ նմա ի գերելոց անտի աներ, այլ քանզի յետ Կղիտոսեայ մահուն ազատութիւնն ի միջոյ բարձեալ էր, դիմօք երեսացն սուտակապաս լինէին:

Ե· Այլ իբրեւ ի Հնդկաց աշխարհն կամէր երթալ եւ անտի յՈվկիանոս, զի մի որ ինչ ի թիկանց կայցէ կարիցէ արգել կամաց նորա լինել, յամենայն գաւառաց Լ հազարս արանց երիտասարդաց հրամայէր ժողովել, եւ վաղաւորս առ նա հասուցանել, զի զնոսա ունիցի պատանդս միանգամայն եւ զօրականս: Զկրատերոս առաքէր զհետ Հաւստանեայ եւ Կատենեայ որք ի

նմանէ ապստամբեալ էին. յորոց Հաւատանէս ձերբակալ եղեւ եւ կատենէս անկաւ ի ճակատու: Նոյն Պողիպերկոն եւս զգաւառ որ Բուբակենէ կոչիցի, առ ի բուռն: Վասն այնորիկ զամենայն կարգեալ եւ յօրինեալ՝ ի Հնդկաց պատերազմն դառնայր խորհել: Մեծատուն գաւառ համարեալ էր ոչ ոսկւով միայն այլ եւ ակամբք պատուականօք եւ մարգարտօք, ոչ ի չքեղութիւն ինչ այլ մանաւանդ ի զեղխութիւն: Ասէին թէ վահանք զօրականացն յոսկւոյ եւ ի ժանեաց փղաց էին. վասն այնորիկ զի մի իւիք յաղթիցի մինչ ինքն առաւելագոյն քան զայլն իցէ, թիթղունս արծաթիս ի վերայ վահանացն, եւ սանձս ոսկիս երիւարացն հրամայէր յօրինել, եւ զկէսս եւս ի փոկոցն ոսկւով եւ զկէսս արծաթով զարդարէր: Նոյն էին ճի հազարք վառելոց որ զհետ գային Թագաւորին յայն մարտ պատերազմի: Իբրեւ զամենայն կազմեաց եւ յարդարեաց. զոր ինչ չարաչարն մտօք յառաջագոյն խորհեալ էր, զմտաւ ածեալ թէ այժմ իսկ ժամ է իրացն կատարելոյ, սկսաւ խոր-

հուրդ խորհել յանձն իւր թէ զե-
տրդ կամ որդունակ զերկնաւոր մե-
ծարանսն յանձն կորզել մարթայցէ։
Ոչ միայն Արամազդայ որդի անուա-
նել այլ եւ այնպէս իսկ կարծել
կամէր, իբրեւ այն թէ որպէս լե-
զուաց՝ նոյնպէս եւ մտաց ձեռնհաս
էր իշխել։ Վասն այնորիկ եւ Մակե-
դոնացիքն ըստ Պարսից սովորութեան
մեծարանօք ի գետին անկեալ այն-
պէս ողջոյն տային թագաւորին։ Նա
եւ ոչ սատակիչ ողոքանք բանից սու-
տակապաշտաց պակասէին նմա որ
այնպիսեացն ցանկայր, զի համապա-
զորդ իմն ախտ ապականիչ թագա-
ւորաց սուտակապաշտացն ողոքանքն
են. զորոց զիշխանութիւնս բա-
զում անգամ ոչ թշնամիքն այլ սու-
տակապաշտութիւն կործանէ։ Նա
եւ ոչ Մակեդոնացւոց ինչ այն մեղ
էր, քանզի ոչ ոք ի նոցանէ առ յանձն
թէ ի հայրենի բարուց փոխեսցի ինչ,
այլ Յունաց գործ էր այն, որ զճար-
տարութիւն մեծարոյ արուեստիցն
եղծեալ ապականեցին չարաչարն
սովորութեամբք։ Ագիս արգիւացի
որ չարաչար վիպացն յօրինիչ եղեւ
յետ Քերիղեայ, եւ Կղէոն ի Սիկիլ-

զխացուաց աշխարհէն, եւ այս Կղէան ողորմիչ էր ոչ միայն յիւրոց բարուց այլ եւ յազգին բնութենէ, եւ այլ եւս որք ապաժամանք քաղաքացն Յունաց, որք նախամեծար քան զմերձաւորսն եւ քան զզօրավարս զօրաց բազմաց մեծարոյք ի թագաւորէն լինէին, զի որքա նմա զերկիրնս բանայրն, եւ զՎահագնէ եւ զՍպանդարամետէն եւ զԿաստորեայ Պողղուկեաւ հանդերձ պատմէին թէ տեղի տալոց են քեզ նորոյ Աստուածոյ:

Այնուհետեւ ի տօնական աւուր հրամայէր բազում առատութեամբ խրախճանս յօրինել, զի ոչ Մակեդոնացիքն միայն եւ Յոյնք իշխանք բարեկամացն, այլ եւ որք աւագք անդր եկեսցեն: Նա եւ իբրեւ բազմեալ էր ընդ նոսա թագաւորն, կերեալ սակաւիկ մի, ել ի կոչնոց անտի ի դուրս: Կղէան, որպէս ինչ յառաջագոյն կարգեալ եւ պատրաստեալ էր, սկսաւ ճառ արկեալ խօսել զարմանալեօք զդրուատիս նորա: Ապա զերախտիս նորա մի ըստ միոջէ ի համար արկեալ թուէր, եւ միով, ասէ, միայն օրինակաւ հատուցումն կարեմք երախտեացն առնել, եթէ

տառուած զնա համարեացուք եւ խոստովան լիցուք. զի յայնժամ սակաւիկ ինչ ծախուք կնդրկի այնչափ երախտեացն առնիցեմք հաստուցումն: Պարսիկք ոչ միայն զիւցապաշտութեամբ գործեն այլ եւ իմաստութեամբ, զի թագաւորաց իւրեանց ընդ դիցն պաշտօն հարկանեն. քանզի փառաւորութիւն թագաւորի պահապան փրկութեան տէրութեանն է: Վասնզի եւ ոչ Վահագն եւ Սպանդարամետ դիք անուանեցան, մինչ չեւ շարակնելոյ այնոցիկ որ ընդ նոսա կենդանի էին, յաղթեալ. եւ այնչափ հաւատան յետինք, որչափ յայնժամու ժամանակ եցոյց նոցա: Եւ եթէ այլք, ասէ, տակաւին չկամիցին, սակայն ես, յորժամ մտցէ արքայ ի կոչունս, անկայց առաջի նորա յերկիր: Եւ այլոց եւս պարտ է այսպէս առնել, եւ մանաւանդ իմաստնոցն. զի ի նոցանէ արժան է թէ ընծայեցի օրինակ մեծարանաց թագաւորին: Ուղղորդ իսկ ի Կաղխսթենէս հայէր բանն: Յանձնութիւն առն եւ արագ համարձակութիւն առելի էր թագաւորին, որպէս թէ նա միայն զՄա-

կեդրոնացելոցն որ կազմ յայնպիսի արբանեկութիւն էին, յանձնացուցանէր։

Սա, իբրեւ լռութիւն եղեւ եւ այլքն ի նա հայէին, Եթէ սա, ասէ, լինել էր թագաւորն եւ լսէր զբանս քո, ապաքէն ամենեքին տային քեզ պատասխանի. քանզի ինքն իսկ թագաւորն խնդրէր ի քէն մի յօտարոտի եւ յարտաքին սովորութիւնս ստիպել զառանձանել, եւ մի թշնամութիւնս այնչափ քաջութեանց աջողելոց սուսակապասութեամբն գումարել։ Բայց քանզի չէ նա սա, ես քեզ տաց պատասխանի փոխանակ նորա, թէ պատուղ տարաժամ չէ տեւական. եւ դու յորժամ զերկնաւոր պատիւսն տաս թագաւորին, ոչ տաս այլ հանես ի նմանէ։ Քանզի ժամանակի պէտք են առ ստացուած կարծելոյ, եւ միշտ իսկ յետինք տան զայն հատուցումն աւագ որերոյ։ Իսկ ես անսագան անմահութիւն ցանկամ թագաւորին, որպէս զի եւ կեանք նորա երկայնակեաց իցեն եւ մեծաշուք փառաւորութիւն նորա յաւիտենից։ Նորբեմն զհետ մարդոյն երթայ աստուածութիւն, բայց ընդ

մարդոյն ոչ երբեք։ Դու այժմ զՎահագն եւ զԱսպանդարամետս տուակ օրինակի անմահութեան ի մէջ բերեիր։ Դու կարծես թէ միոյ կոչնոց վճռով նորա յաստուածութիւն ելին, մինչ չեւ յերկինս հասեալ համբաւոյ նոցա եւ ի մարդկան աչաց հեռացեալ բնութեան նոցա։ Նա եւ դու, Կղէոն, գործեմք աստուածս. ի մէնջ զաստուածութեան իւրոյ ճոխութիւն առնլոց է թագաւորն. թող զչափ առցուք զօրութեան քո. արա դու թագաւոր զդք, եթէ աստուած կարիցես առնել. դիւրագոյն է զթագաւորութիւն տալ քան զերկինս։ Ապաշաւութեամբ առանց թշնամութեան լուիցեն դիք զբանսն զոր Կղէոն խօսեցաւ, եւ թողցեն զի բաս նմին արշաւանի ընթացին իրք, որով ցայժմ ընթացան։ Ամին նորա թէ շատ եւ բաւական համարեսցուք զասվարութիւնս մեր։ Զամաչեմ ի հայրենի գաւառէ իմմէ, եւ ոչ ցանկամ թէ որպէս կամ զիմրդ պարտ իցէ պաշտօն թագաւորի մատուցանել, ուսանել։ Որդարեւ յաղթօղս համարեցայց զնոսա եթէ առնումք ի նոցանէ օրէնս, որով կեց-

ցեմք։ Մտադիւրութեամբ ունկն դնէին կաղխաթենեայ, իբրեւ այնմ որ վրէժխնդիր հասարակաց ազատութեան լինիցի։ Ոչ միայն հաւանեալ անսացին, այլ եւ բանիւք մանաւանդ ծերքն գովեցին, որոց եւ ծանր իսկ էր արտաքին փոփոխումն հնոցն սովորութեանց։ Նա եւ ոչ միոյ իրիք ի բանից նոցա զոր ընդ միմեանս խօսեցան, անգէտ էր Թագաւորն. քանզի յետոյ վարագուրացն զոր զբազմականօքն կախեալ էր, կայր։ Նախահետեւ առ Ագիս եւ առ Կղէոն առաքէր, զի զբաւ բանիցն առնիցեն, եւ բարբարոսացն միայն ըստ իւրեանց սովորութեանն Թոյլ տացեն, յորժամ ինքն մտանիցէ, առաջի անկանել. եւ յետ սակաւ ինչ միոյ իբրեւ այն Թէ կարեւոր ինչ իրս ի գլուխ հան, այնպէս եկն միաբանգամ ի կոչունսն։ Իբրեւ Պարսիկքն մեծարէին զնա, Պողիպերկոն որ առ նմա նստեալ էր, զմի ոք ի Պարսից անտի որ կզակաւն զերկիր շօշափէր, ընդ խաղ սկսաւ խրատել զի սաստկագոյնս եւս հարկանիցէ զգետնի. եւ այնպէս առ զԱղեքսանդրոս ի ցասումն, որում

եւ վաղ իսկ չկարէր ժոյժ ունել. վասն որոյ, Իսկ դու, ասէ Թագաւորն, ո՞չ մեծարիցես զիս: Մինթէ քե՞զ միայն խաղոյ արժանի թուիմք. չեմ ես, ասէ, անարգանաց եւ արհամարհանաց արժանի: Յայնժամ վայրի հանեալ զնա Թագաւորին ի բաղմականէ անտի յերկիր կործանէր: Եւ իբրեւ նա ի վայր կործանեցաւ. Տեառնե՛ս, ասէ, զի եւ դու զնոյն գործեցեր զորմէ յառաջ քան զսակաւ մի ծիծաղէիր տեսեալ յայլոյ վերայ: Եւ հրաման տուեալ ունել զնա ի դիպահոջ, զրաւ տանէր կոչնոցն: Պողիպերկոնեայ՝ յետ երկարագոյն տանջանաց ապա ներեաց. այլ տեւէր ի ցասման անդ ընդդէմ Կաղիսթենեայ, զորմէ երբեմն կասկած ի մտի ունէր վասն յամառեալ հեստութեանն: Եւ դէպք եւս ընդառաջ պատահեցին զգործ սրտմտութեանն ի գլուխ հանելոյ:

Զ. ՈՐԴՔ էին իշխանացն Մակեդոնացւոց, որպէս յառաջագոյն ասացաւ, մանկունս ի չափ հասեալս աւանդել Թագաւորին ի սպաս հարկի պաշտաման, որ ոչ ինչ կարի օտար ի ծառայութեան պաշտամանց իցեն:

Սոյին պահպանութեամբ ի պահս գիշերոյ մի ըստ միոջէ առ դրան ապարանից, յորում ի քուն էր Թագաւորն։ Ի ձեռն նոցա մտանէին հարճք ընդ այլ դուռն, եւ ոչ ընդ այն զոր վառեալքն պահէին։ Նոքին առեալ երիւարս յախոռապետաց անտի իբրեւ հեծանել կամէր Թագաւորն, երիւարս մօտ ածէին, եւ երթային ընդ նմա, եւ ապա ածէին նմա յորս եւ ի պատերազմի ամենայն արուեստիւք ազատն ճարտարութեանց։ Մեծ իսկ պատիւ եւ մեծարանք համարէին, զի համարձակութիւն էր նոցա նստել եւ ուտել ընդ Թագաւորին։ Չէր ումեք իշխանութիւն լինելոյ զնոսա գանիւք, բայց միայն ի Թագաւորէն։ Նոյն գունդ իբրեւ դպրոց զօրավարաց եւ սպարապետաց Մակեդոնացւոցն էր․ անտի յետոյ Թագաւորք կացին, յորոց զարմից եւ ի զաւակաց հանին զիշխանութիւնսն Հռոմայեցիք յետ տիոց բազմաց։

Ընդ Հերմողայոս պատանեակ մի ազնիւ յարքունական գնդէ անտի իբրեւ հար նետիւ վարազ մի զոր Թագաւորն կամէր խոցել, արբ գան

հրամանաւ նորա: ՙԱյս դժկամակ ընդ թշնամանսն լինել, առ Սոստրատոս երթեալ սկսաւ տրտնջել: Ի նմին գնդէ էր եւ Սոստրատոս. որ սիրէր իսկ զնա: Սա իբրեւ ետես զմարմին նորա պատառեալ, թերեւս եւ վաղ իսկ վասն այլ ինչ պատճառանաց թշնամութեամբ էր ընդ Աղեքսանդրի, խթեաց դրդեաց զպատանեակն որ ինքնակամն իսկ յայն եկն յօժարեալ, միաբանել ընդ նմա սպանանել զթագաւորն. եւ այր եւ առնոյր վասն նորին հաւատս: ՙԱյս եւ ոչ ըստ մանկութեանն սովորութեան, արդեամբք՝ եկին ի գործ անդր. քանզի իմաստութեամբ խորհրդով ընտրեցին թէ զորս արդեւք ի միաբանութիւն գործոյ սպանութեանն ընդունիցին: Հաճոյ թուեցաւ նոցա զՆիկոստրատոս, զԱնտիպատրոս եւ զԱսկղեպիոդորոս եւ զՓիղոտաս առնուլ. եւ ի ձեռն նոցա յաւելան եւ Անտիկղէս եւ Եղապտոնիոս եւ Եպիմենէս: Նմա չէր դիւրին ճանապարհ իրացն գործելոյ: Պարտ եւ պատշաճ էր թէ ի նմին գիշերի ամենայն միաբանեալք միանգամայն կացցեն ի պահու, զի մի

գուցէ յանտեղեկաց խորհրդոյն խափանեսցին. այլ այսպէս դիպէր զի ամն յայսմ գիշերի կայր ի պահու եւ ամն յայնմ։ Վասն որոյ մինչեւ ցփոփոխել կարգի պահպանութեանն եւ պատրաստելոյ այլ եւս կազմութեան իւրացն աւուրք երեսուն եւ երկու մաշեցան։

Յեկեալ հասեալ կայր այն գիշեր, յորում միաբանեալքն պարտէին կալ ի պահու, ուրախ լինեալ ընդ հաւատարմութիւն միմեանց, եւ հաւատարմութեանն նշանակ այնչափ աւուրք էին ի վերայ անցեալք։ Ո՛չ ահն եւ ոչ ակնկալութիւն փոխեաց զդէք. այնչափ սրտմտութիւն բարկութեան էր ի թագաւոր անդր, կամ հաւատարմութիւն ի վերայ անձանց իւրեանց։ Արդ կայրն առաջի դրան ապարանիցն՝ յորում ուտէր թագաւորն, զի յորժամ ի սեղանոյն ելանիցէ, ածցեն զնա ի սենեակ անդր։ Այլ բախտ նորա եւ բազմականակիցք նորա յորդորեցին զամենեսին յաճախել ի գինիս, եւ խաղք եւս կոչնոց ձգեալ յերկարեցին զժամանակն. մերթ ուրախ լինէին միաբանեալքն զի ի թմբու-

թիւն կարծանելոց են, եւ մերթ հողայքն թէ դուցէ մինչեւ ցառաւօտն զկոչունսն ձգիցեն : Վասնզի այլոց պարտ էր ընդ առաւօտն զայլ պահականոխ լինել, եւ նոցա յետ աւուրց եւթանց հասանէր կարգն. եւ ոչ յուսայլ կարէին թէ մինչեւ ցայն ժամ ամենեքին կացցեն ի հաւատարմութեանն : Այլ իբրեւ այգն զառաւօտն կամէր մերկանալ եւ կոչունքն արձակէին, ընկալան զթագաւորն միաբանեալքն, ուրախ լինեալ ընդ հասանել դիպաց զգործն վճարելոյ. յայնմ վայրի կին մի՝ որոյ շամշեալ միտք էին, որպէս կարծի, եւ սովոր էր նա շրջել յարքունիս անդ, քանզի կարծէր իմն թէ ի դրդելոյ իմիքէ զլինելոցն յառաջագոյն պատմիցէ, սա ոչ միայն ընդ առաջ երթայր Աղեքսանդրի, այլ եւ զանձն առաջի արկեալ արգելոյր, եւ երեսօքն եւ աչօքն զյոյզս մտացն ցուցանէր, եւ խրատէր դառնալ այսրէն ի կոչունսն. եւ նա ընդ խաղ պատասխանի տայր եւ ասէր թէ քաջ են խրատք դիցն, եւ կոչեցեալ միւսանգամ զբարեկամսն, մինչեւ ցժամ երկրորդ տուընջեանն զժամ

կոչնոցն յերկարէր։ Ընդէն եկին հասին այլք ի գնդէ անտի փոխանակել զնոսա, կալ ի պահու առաջի դրան ածնեկին, սակայն միաբանեալքն տակաւին կային յետ ի գլուխ հանելոյ զպաշտօն իւրեանց. այսպէս խիստ եւ յամառ է ակնկալութիւն, որում միանգամ ցանկան միոջ մարդկեղէնք։ Այլ Թագաւորն առաւել մարդասիրութեամբ քան այլ երբեմն խօսեցեալ ընդ նոսա, հրամայէր երթալ ի քուն լինել. քանզի զամենայն գիշերն, ասէ, արթուն կացէք։ Տայր միում միում ի նոցանէ յիւրուն դահեկան, եւ յարգէր եւս զնոսա, զի եւ յետ այլոց զկարգն տալոյ, սակայն տակաւին կային ի պահուն։

Սոքա յայնպիսի ակնկալութենէ դատարկ ելեալ, յիւրաքանչիւր տունս մեկնէին։ Եւ այլքն սպասէին զլաժին գիշերոյն իւրեանց. Եպիմենէս կամ ի մարդասիրութենէ Թագաւորին զոր արար նա նմա ի մէջ միաբանելոցն յանկարծակի փոփոխեալ, կամ զի դիմադարձս զդիւն կարծէր գործոցն, զամենայն որ ինչ ի ծածուկ խորհուրդ էր, զայն եղբօր

թուրում Եւրիզղքայ ի վեր հանէր, քանզի չկամէր յառաջագոյն ասել ինչ նմա վասն խորհրդեանն։ Եւ քանզի տանջանք Փիղոտայ տակուքն ամենեցուն առաջի աչաց էին, վաղվաղակի ձեռն արկանէր յեղբայր իւր, երթեալ հասանէր յարքունիսն, եւ զարթուցեալ զանձնապահսն ասէր թէ ունիմ բանս վասն կենաց թագաւորին։ Եւ ժամանակն յորում եկեալ էին եւ դէմք երեւացն գուշակ խռովութեան մտաց, եւ թախծութիւն միոյ ի նոցանէ գրըգռեցին զՊտողոմէոս եւ զՂեւոնատոս որ կային ի պահու առաջի սեմոց սենեկին։ Վասն այնորիկ զդրունսն բացեալ եւ բերեալ ճրագ ի ներքս, յարուցանեն զթագաւորն որ թմբրեալ էր յանապակէ եւ ի քնոյ։ Նորա տակաւ զմիտսն յինքն ամփոփեալ, հարցանէր թէ զինչ զրոյցք են։ Աէ յամեաց Եւրիզղքաս, եւ սկսաւ ասել թէ ոչ ամենեւին եւ բովանդակ ի բաց կացեալ են դիւք ի տանէ մերմէ, զի եղբայր իմ Թէսպէտ եւ ի գործ ամպարշտութեան մտաբերեաց, սակայն սարջացեալ է, եւ անձամբ մանաւանդ

դուշակ խրատն լինի։ Սական այնր իսկ գիշերոյ որ անց, նիւթեալ էր նենգութիւնն, եւ առաջնորդք անօրէն խորհրդեանն նոքա էին, զորոց չկասկածէ Թագաւորն։ Յայնմ վայրի Եպիմենէս զամենայն կարգաւ եւ զանուանս խրադիտացն յայտ անէր։ Աղխաթենէս չանուանեցաւ ընդ կցորդս գործոյն, այլ սովոր էր մատաղեւք անսալ բանից մանկտւոյ որ անզգոնէին եւ մեղադիր Թագաւորին լինէին։ Ոմանք յաւելուն թէ յորժամ Հերմողաւոս եւ այլ նմա տրտնջեաց թէ զան արբի ի Թագաւորէն, ասաց Կաղիսթենէս թէ պարտ է ձեզ յիշել թէ արք էք․ բայց եւ այն չէր ինչ յայտ ամենեւին թէ արդեւք առ ի մխիթարութիւն համբերութեան զանիցն, եթէ առ ի գրգռելոյ զցասուս պատանեացն ասացաւ։

Իսկ Թագաւորն իբրեւ թօթափեաց զԹմրութիւն մտացն եւ մարմնոյն, եւ յածեալ շրջէր առաջի աչաց նորա պատկեր մեծաց վշտաց վտանգի, յորմէ ապրեցաւ, տայր Եւրիղոքեայ պարգեւս Ծ քանքար, եւ զարարս Տրդատայ ուրումն ըն-

չաւեռաւ, եւ զեղբայր նորա մինչ չեւ աղաչեցեալ նորա վասն կենացն, շնորհէր նմա: Իսկ զառաջնորդս գործոյն եւ ընդ նոսա եւ զԿաղիսթենէս հրամայէր կապել եւ դնել ի դիպահոջ. նոքա ածան յարքունիսն, եւ ինքն զաւուրն եւ զգիշերն ամենայն ծանրացեալ յանապակէ եւ ի տքնութեանցն ի քուն կայր:

Է. ԻՍԿ ի վաղիւ անդր բազմամբոխ խորհուրդ ժողովէր, յորում էին եւ հարք եւ մերձաւոր թայրաթուք այնոցիկ՝ զորոց բանք ի միջի էին, որք եւ ոչ զանձանց իսկ փըրկութենէ առանց կասկածանաց էին. քանզի ըստ Մակեդոնացւոց սովորութեան սպանանել պարտ էր այնոցիկ որ արեամբ մերձաւոր էին նոցա, քանզի ամենեցուն գլուխք նզովեալ էին յօրինացն: Թագաւորն հրաման ետ ածել զմիաբանեալսն բաց ի Կաղիսթենեայ, եւ նոքա զոր ինչ խորհուրդ խորհեալ էին խոստովան եղեն առանց յապաղութեան: Յետոյ իբրեւ ամենեքին պատուհասակոծ առնէին զնոսա, ինքն իսկ թագաւորն հարցանէր զնոսա թէ վասն որոյ արդեւք չարաց գործոց այնպիսի

խորհուրդ խորհեցան ի նա։ Իբրեւ այլքն կարկեալ կային, Հերմողայոս, Մեք, ասէ, որովհետեւ հարցանէք իբրեւ այն թէ չգիտիցէք, խորհուրդ խորհեցաք սպանանել զքեզ, զի ոչ իբրեւ ազնուականաց սկսար իշխել, այլ իբրեւ ի վերայ ստրկաց եւ գերդաստանկաց տիրես։ Յառաջ քան զամենեսին յառն եկաց հայր նորա Սոպողիս, եւ դոչէր թէ նա եւ մօրն սպանող է, եւ զձեռն իւր պնդեալ ի վերայ բերանոյ նորա, Զէ պատշաճ, ասէ, այլ ունկն դնել անօրէնութեամբ եւ չարեօքն մոլեգնելոյ։ Իսկ թագաւորն արգելոյր զհայրն, եւ հրամայէր Հերմողաւեայ ասել զոր ինչ ի վարդապետէն իւրմէ ի Կաղիսթենեայ ուսեալ էր։ Եւ Հերմողաւոս, Արկանեմ, ասէ, ի կիր զերախտիս քո եւ ասեմ որ ինչ չարեօք եւ նենգութեամբ մերով ուսայ։ Քաներո՞րդ մասն Մակեդոնացւոց կայ մնաց կենդանի յանագորոյն խստութենէ քումմէ. եւ ո՞րչափ արք ոչ յանարգ եւ յաննշան արենէ, Ատտաղոս եւ Փիղոտաս եւ Պարմենիոն եւ Աղեքսանդրոս Լիւնկեստէս եւ Կղիտոս, որչափ ինչ ի

թշնամիս տապաստան է, կենդանի են, ի ճակատու կան, ասպարօք իւրեանց պաշտպանեն քեզ, եւ ի վերայ փառաց քոց, ի վերայ յաղթութեան քո վէրս յանձն առնուն, որոց դու գեղեցիկ հատուցումն դարձուցեր. մին զտեղան քո թաթաւեաց արեամբ իւրով, եւ միւսն ոչ դոյզն մահուամբ վախճանեցաւ: Զօրավարս եւ զապարապետս զօրաց քոց ի տանջանս մուծեր. Պարսից՝ որոց յաղթեալ էին, եղեն տեսիլ նշաւակի: Պորմենիոն առանց դատաստանաց սպանաւ, ընդ որոյ ձեռն զԱտտաղոս սպանեալ էիր: Զքո ձեռամբքդ միմեանց խնդրեցեր պատիժս ի թշուառացելոցն, եւ զորս սակաւիկ մի յառաջագոյն սպառաորս սպանութեանն ունէիր, յանկարծակի այլոց հրամայես կատարել: Ընդէն ընդդէմ բարբառել սկսան Հերմողաւեայ, եւ հայրն մերկացեալ զսուսերն կամէր հարկանել եթէ չէր արգելեալ թագաւորին. քանզի հրամայէր խօսել Հերմողաւեայ, եւ խնդրէր զի համբերութեամբ անսայցեն բանից նորա, որ զպատճառս տանջանացն յաճախէր:

Իբրեւ հազիւ հազ արգելան, միւսանգամ Հերմողաւոս ՈՀ, որչափ առատութեամբ, ասէ, մանկրտւոյ անհմտաց թոյլ տալ խօսել. այլ կաղխաթենեայ բարբառն ի բանսարկ փոխեալ կայ, զի նա միայն կարող է խօսել: Օֆ ընդէ՞ր ոչ գայ նա ի մէջ, մինչեւ որք խոստովանն եղեն, խօսին, եւ ունկնդրութիւն լինի նոցա. վասն զի երկնչիս զձայն արդարոյն լսել, նա եւ ոչ երեւացն կարես հանդուրժել: Այլ ես վճռիմ թէ չիք նորա գործեալ ինչ: Ան են աստ որ ընդ իս զիրան գեղեցիկս խորհեցան. բայց ոչ ոք է որ ասիցէ թէ իրազեկ էր մեր կաղխմթենէս, սակայն վասն իսկ մահու սահմանեալ է նա յարդար եւ ի համբերող թագաւորէ: Արդ այս վարձք են Մակեդոնացւոցն, որոց արեամբն իբրեւ աւելորդաւ եւ աղտեղեաւ զեղծանիս: Այլ քեզ Լ հաղարք ջորւոց զդերեալ ոսկիդ բերեն, եւ զօրականքն ոչ ինչ յիւրաքանչիւր աշխարհս տանելոց են բայց ի ձրի վիրացն: Այլ ամենայնի համբերեմք, մինչ չեւ էր քո զմեզ տուեալ ի ձեռս խուժադուժ բարբարոսացն, եւ ըստ

նոր սովորութեան զյաղթօղան սր-
կեալ ընդ լծով: Արդարև լինիս դու
ընդ ձորձս և ընդ խորանն Պարսից,
և զբարսն գաւառականս ատելի
համարեցար: Ապա զՊարսից և ոչ
զՄակեդոնացւոց թագաւոր կամե-
ցաք սպանանել, և զքեզ զփա-
խստեայդ և զհաստատեալ հա-
րածեալք օրինօք պատերազմի: Քեզ
կամ եղեւ թէ Մակեդոնացիք ի
դուճս անկցին առաջի քո, և ի-
բրև զից մեծարանս զնիցեն քեզ.
դու յուրասաս ես ի հօրէ քումմէ Փի-
լիպպեայ, և եթէ Նախամեծար աք
դիք ի դիս քան զԱրամազդ էր,
դարձէիր և յԱրամազդայ: Զար-
մացեալ ինչ իցես եթէ մեք ազատ
որեար չկարեմք ժոյժ ունել ամբար-
տաւանութեան քում: Ի՞մ իմիք
ակն ունիմք ի քէն, զի կամ առանց
յանցանաց պարտ է մեռանել և
կամ որ քան զմահ դժնդակագոյն
է, ի ծառայութեան կեանս կեալ:
Դու եթէ յուղղութիւն կարես գալ,
բազում ինչ պարտիս ինձ: Զի յի-
նէն ուսար գիտել թէ իմ իմիք չկա-
րիցեն համբերել ազգ ազնուականք:
Այլ դու խնայես ի հարսն մեր. մի

Ծանրացուցանէր տանջանօք զանզատակեալ ծերութիւն նոցա. Հրամայն տալ զձեզ տանել ի տանջանս, զի զոր ի մահուանէ քումէ խնդրեցաք, ի մահուանէ մերմէ ընկալցուք: Զայս զայն ձեւ Հերմողայոս:

Ը. ԼՑԼ Թագաւորն. Որչափ տասութեամբ են, ասէ, զորս դա ուսեալ ի վարդապետէ իւրմէ խօսեցաւ, զայն յայտ համբերութիւն իմ առնէ: Զի Թէպէտ խոստովան եղեւ զանհնարին չարեաց իւրոց, սակայն ոչ միայն լռեալ, այլ եւ զի դուք ինքնին լսիցէք, Թողի. եւ ոչ զի չգիտէի Թէ յորժամ Թոյլ տայցեմ աւազակիդ խօսել, զայն մոլեգնութիւն սրամտութեան արկանելոց է ի կիր, որով դրդեալ եկն սպանանել զիս, որում մեծարանս պարտ էր դնել ի տեղւոջ հօր: Նորբեամբ յորժամ յանդգնագոյն ինչ յոյս գործեալ էր, ըստ հայրենի սովորութեանն զոր եւ հին եւ առաջին Թագաւորք Մակեդոնացւոց ի կիր արկեալ վարեցին, հրամայեցի պատժել զնա, եւ այնմ պարտ իսկ եւ պատշաճ է լինել, որպէս եւ ի

Որպ յանդուգն լեզուքն, որ զխծշնամանսն յանձախէր առնել ինձ եւ ձեզ, եւ առաւել երկարագոյնս համբերել քան նա ինձ, յորժամ զնոյնս եւ նման խօսէր։ Թագաւորաց եւ զօրավարաց հեզութիւն ոչ միայն ի բարս նոցա, այլ եւ ի բարս այնոցիկ որ հնազանդին նոցա, կայ։ Արքանեկութեամբ եւ սպասու զգօնացեալ քաղցրանման իշխանութիւնք․ իսկ յորժամ մեծաւորանք ի բաց դնան ի մտաց, եւ բարձունք ընդ խոնարհագունացն շփոթին, բռնութեան պէտք են վասն զբռնութիւն ի բաց վարելոյ։

Նայց զի՞ իսկ զայն եւ զարմանս համարիցիմ թէ սա ինձ անտագորաւնութեան բիծ դնիցէ, որ ժլատութեան իսկ մեղադրութիւն իշխեաց արկանել զինեւ։ Չկամիմ զմի մի իւրաքանչիւր ի ձէնջ յարուցանել, զի մի առնելի զառատութիւն իմ առնիցեմ, յորժամ զձեզ յամօթ առնիցեմ։ Հայեցարուք ընդ աղջոյն իսկ բանակն, որ սակաւիկ մի յառաջագոյն քան զզէնս ոչ ինչ ունէր, այժմ ի զահոյս արծաթիս ննջէ, զսեղանս լի ունեն ոսկւով, ծա–

ուայից գաստակս տանին, զառ եւ
զաւար թշնամեացն չկարեն բառնալ
տանել: Եւ զի սուտ է թէ Պարսիկք
որոց յաղթեցաք ի պատուի մեծի
են առաջի իմ, արդարեւ ցածու-
թեան եւ հեզութեան իմոյ նշանակ
է այն, զի եւ ոչ պարտելոցն ամբար-
տաւանութեամբ իշխեմ: Եկի յաշ-
խարհս Ասիացւոց ոչ զի արմատաքի
զազգսն խլեցեմ, եւ ոչ զի զկէս
մասն աշխարհի աւեր եւ մենութիւն
գործեցեմ, այլ զի այնոքիկ զոր
մարտիւ պատերազմաւ նուաճեցի,
ոչ ինչ ստրկանայցեն ընդ յաղթու-
թիւն իմ. վասն այնորիկ ընդ ձեզ
երթան ի մարտ պատերազմի, ի
վերայ տէրութեան ձերոյ հեղուն
զարիւն իւրեանց, որոց եթէ ամ-
բարտաւանութեամբ տիրէաք, յա-
պըստամբութիւն եւ ի ստահակու-
թիւն ելանէին: Չէ այն ստացուած
տեւական յոր սուսերաւ մտանեմք.
իսկ շնորհք երախտեացն մշտնջե-
նաւորք են: Եթէ ունել զԱսիա
կամիցիմք, եւ ոչ անցանել ընդ
Ասիա, պարտ եւ պատշաճ է թէ
հաղորդեսցի հեզութիւն մեր ընդ
նոսա. եւ հաւատարմութիւն նոցա

հաստատուն եւ միշտնջենաւոր զիշխանութիւն թագաւորութեանս գործիցեն: Եւ արդարեւ իսկ բազում ինչ ունիմք աւելի քան զոր առաք: Այլ անյագ ցանկութեան է տակաւին կամել լինել զայն որ շուրջն զեղեալ է: Բայց սակայն զբարս եւ զսովորութիւնս նոցա ի Մակեդոնացիս, ասէ, փոխեմ: Զայս եւ ի բազում ազգս տեսանեմ լինել, որոց չհամարեցուք ամօթ լինել նմանօղ. զի եւ ոչ այլազգ ինչ այնչափ տէրութեան մարթիցի պատշաճութեամբ վարել, եթէ ոչ մեք նոցա աւանդիցեմք ինչ, եւ ի նոցունց ուսանիցիմք ինչ:

Բայց եւ այն արդարեւ գրեթէ արժանի իսկ ծաղու էր զոր Հերմողաւս պահանջէր յինէն, զի յետս կայցեմ յԱրամազդայ, որոյ հրամանաւ պատասխանւոյ ծանօթ եւ գիտելի լինիմ: Մինթէ եւ զոր դիքն տան պատասխանի, յիմում իշխանութեա՞ն իցէ: Որդւոյ անուն ետ նա ինձ. ընդունել զանունն չէր ինչ օտար յիրաց իրաց զոր գործեցաք: Երանի թէ եւ Հնդիկք համարեցին զինէն թէ Աստուած իցեմ: Զի

պատերազմունք համբաւու կան ի հասարի, եւ բազում անգամ որ վրիպական հաւատարիմ լինեալ էր, այն ի ճշմարտութիւն փոխեցաւ։ Մինթէ համարիցիք թէ ի զեղխութիւն ինչ զառածայ, զի ոսկիապատ եւ արծաթապատ զզէնս ձեր յօրինեցի։ Կամեցայ ցուցանել թէ ոսկորեղոյն չիք քան զայն նիւթ անարգ եւ արհամարհ, եւ թէ Մակեդոնացիք որ առանց պարտութեան են եւ յայլոց ամենեցունց եւ յոսկւոյ իսկ չմնաանին ի պարտութիւն։ Նախ զաչս այնոցիկ որ համակ յաղտեղին եւ յանարգան ամենայն կային, զրաւեցից, եւ ուսուցից թէ մեք ոչ առ ցանկանալ ինչ ոսկւոյ կամ արծաթոյ եկաք, այլ վասն զախե-զերս նուաճելոյ։ Զայս փառս, զոր սպանող, կամեցայք զեղչել, եւ զՄակեդոնացիս մտանել ազգացն պարտելոց բարձեալ ի մէջոյ զթագաւորն։ Եւ այժմ խրատ տաս ինձ թէ խնայեցից ծննդելեաց ձերոց։ Զեր պարտ չէր պատաշաճ ձեզ գիտել թէ զինչ ինչ ունիմ ի մտի վասն նոցա, որպէս զի առաւել եւս տրտմութեամբ մեռանիցիք, եթէ արդարեւ

գուցէ ինչ ի ձեզ հարց եւ մարց յիշատակ կամ խնամ մնաց. այլ փաղ իսկ զայն սովորութիւն կատարելոյ ընդ չարագործաց զարդար մերձաւորսն եւ զհարս եւ զմարս քակեցի, եւ խոստանամ թէ ի նմին պատուի եւ ի մեծարանս լինելոց են ամենեքին նոքա, յորս էին: Նաեւ գիտեմ, թէ զԿաղիսթենէս՝ որում միայն զու այր թուիս, քանզի աւազակ ես, յոր սակս կամիս թէ ի մէջ գայր. զի սոցա առաջի թշնամանք զոր եւ զու արդ յիս խօսեցար, եւ ի բերանոյ նոցա յաճախեսցին: Նա եթէ մակեդոնացի էր, ընդ քեզ այսր մուծանէր արժանի քան զաշակերտ զվարդապետն. բայց Ողինթացւոյն ոչ նոյն իրաւունք են:

Յետ այսորիկ արձակէր ի բաց զժողովն, եւ զպարտաւորսն հրամայէր տալ մարդկան որ ի նմին գնդէ էին: Նոքա զի չարաչար խոստութեամբն ցուցցեն թագաւորին զհաւատարիմ միտս իւրեանց, տանջեալք եւ լլկեալք սպանին: Կաղիսթենէս եւս տանջանօք սպանաւ, որ արդար էր ի յանցանաց միաբանութեան սպանութեան թագաւորին, բայց ոչ էր

միամտեալ բարուց արքունեաց թագաւորին եւ ողղքչացն : Վասն այնորիկ ոչ ուրուք ապանութիւն այնպէս թշնամացուց զԱղեքսանդրոս Յունացն, քան զնորայն, զի զայս մի որ լի էր ընտիր բարոյիւք եւ գեղեցիկ գեղեցիկ ճարտարութեամբք արուեստից, յորմէ եւ ի կեանս դարձուցեալ էր, յորժամ յետ զԿղիտոս սպանանելոյ, պնդեալ ի մտի եղեալ էր մեռանել, ոչ միայն սպան այլ եւ տանջեաց եւս առանց լալոյ զդատասատան նորա : Բայց զղջումն անտադան փոխանակեաց զգործ անադորունութեանն :

Թ. ԱՅԼ զի մի դատարկութեանն, որ քրթմնջիւնս առլոր է ծնանել, մնուցիչ լինիցի, խաղայր զնայր յաշխարհն Հնդկաց, զի միշտ երեւելի էր ի պատերազմի քան յետ յաղթութեանն : Դրեթէ ամենայն իսկ աշխարհն Հնդկաց յարեւելս կոյս հայի, ոչ այնչափ ի լայնութիւն ընդարձակեալ, որչափ դէպ ուղիղ ի հանդիպոյ : Իսկ ընդ հարաւակողմն բարձրաբերձ բարձունք ամբառնան. այլ կողմանքն հարթ եւ դաշտաձեւ են, եւ հորդեն ճանապարհ հան-

դարտ ի դաշտսն բազում գետոց անուանեաց, որ ի Կաւկասու լեռնէ ելանեն։ Ինդոս ցրտագոյն քան զայլսն է. Ջուրք նորա ոչ ինչ կարի օտար ի գունոյ ծովուն է։ Գանգէս գետ ազնուագոյն յարեւելից ի հարաւակողմն գաւառին ընթանայ, եւ անցանէ ուղղորդ ի ներքոյ սարից լերանց մեծամեծաց. անտի վիմաց առաջի պատահեալ, միւսանգամ յարեւելակողմն շրջեցուցանեն։ Եւ երկոքին մտանեն ի ծովն կարմիր եւ կարեն միշտ զգետեզերսն, եւ բազում ծառաստանօք մեծամեծ մասամբ երկրին ուտեն. ամենայն ուրեք արգելեալ լինին ի քարանց յորս բազում անգամ բախեն. Իսկ ուր հող կակուղ գտանեն, եղանեւրս եւ կղզիս գործեն։ Ակեսինէս զԻնդոս գետ ստուարացուցանէ. եւ յորժամ Ինդոս ի ծով դիմելոց իջէ, ի մէջ առնու զնա, եւ մեծաւ դղրդելով բախին ընդ միմեանս գետքն երկոքին. քանզի սաստկագոյն բերանովն գայ պատահէ հոսանաց Ինդոս գետոյ, եւ ոչ ջուրքն յորժամ բախիցին, տան տեղի։ Իսկ Դիտարդենէս ոչ ինչ երեւելի համբաւու է, քան-

զի ընդ վերջին կողմանս Հնդկաց աշխարհին ընթանայ. այլ ոչ կո-կորդիղոսաց միայն որպէս Նեղոս, այլ եւ գետաձիոց եւ անծանօթ յայլոց ազգաց նհանգաց սնուցիչ լինի: Եթիմանաստս բազում անգամ տաս անդ խառնեալ է, եւ որք առ գետոյն բնակեն, հանեն տաւուս ի նմանէ առ ոռոգանելոյ. եւ նմին իրի իսկ սակաւիկ ինչ միայն մնա-ցորդս տաւանց անուանն ի ծովն ընկե-նու: Ասաց ի սոցանէ այլովք եւս բազմօք գետովք բաշխեալ բաժանի գաւառն ամենայն, բայց ոչ հղյա-կալք են քանզի չհոսեն ընդ բա-զում վայրս: Իսկ զկողմանսն որ մօտագոյնք ի ծով են, հարկանեն հողմք հիւսիսոյ. իսկ կողմանք որ ի լերանցն ամրացեալ են, պատեհ են սնուցանելոյ զարմտիս երկրի: Այլ այնպէս սահմանեալ փոփոխմունք ժամանակաց աշխարհի այլակերպք են ի կողմանսն յայնոսիկ, զի յոր-ժամ այլ կողմանք աշխարհի ջե-ռեալ իցեն ի տապոյ արեգական, զՀնդկաց աշխարհն ձիւն ունի. եւ դարձեալ յորժամ այլ կողմանք սառուցեալ իցեն, անդ անհնարին

տապախառն ջերմութիւն է։ Նա եւ ոչ հան ի վեր բնութիւն զպատճառս իրացն։ Նոյն եւս որ զնովաւ պատեալ է, ոչ ինչ օտար յայլոց ծովուց է գունով իւրով։ Բայց քանզի յԵրիթրոս թագաւորէ անուան կոչեցաւ ծովուն, որ անտեղեակքն են կարծեն թէ կարմիր են ջուրք ծովուն։

Երկիրն առատաբեր է կտաւոյ. բազմաց ձորձք անտի են։ Կեղեւք ծառոց կակուղք եւ փափուկք են իբրեւ զքարս եւ ընդունին զնշանագիրս գրոց։ Ան հաւք՝ հաւանք նմանօղ հնչման մարդկեղէն բարբառոյն լինելոյ։ Ան եւ անասունք որ ոչ ընդելականք են այլոց ազգաց, բայց միայն եթէ անձեալ իցեն առ նոսա։ Նոյն երկիր սնուցանէ ռնգեղջեւրս եւ ոչ ծնանի։ Իսկ փղաց առաւել եւս յաճախութիւն է առա քան յԱփրիկեցւոց աշխարհին. եւ բառ յաճախութեանն նոյնպէս եւ յաղթանդամութիւննոցա է։ Գետք որ հանդարտութեամբ ատանին զյամբառնալ ջուրս իւրեանց՝ ոսկի բերեն։ Իսկ ծովն ի ծովեզերսն ակամբ պատուականս եւ մարգարիտս ընկենու։ Այլ ոչ այլ ինչ քան զայն պատճառք

զի ընդ վերջին կողմանս Հնդկաց աշխարհին ընթանայ. այլ ոչ կոկորդիլոսաց միայն որպէս Նեղոս, այլ եւ գետձիոնաց եւ անձանօթ յայլոց ազգաց նհանգաց սնուցիչ լինի: Եթիմանտոս բազում անգամ առատ անդ խառորեալ է, եւ որք առ գետոյն բնակեն, հանեն առուս ի նմանէ առ ոռոգանելոյ. եւ նմին իրի իսկ սակաւիկ ինչ միայն մնացորդս առանց անուան ի ծովն ընկենու: Բայց ի նոցանէ այլովք եւս բազմօք գետովք բաշխեալ բաժանի գաւառն ամենայն, բայց ոչ հղակարք են քանզի չհոսեն ընդ բազում վայրս: Իսկ զկողմանսն որ մօտադոյնք ի ծով են, հարկանեն հողմք հիւսիսոյ. իսկ կողմանք որ ի լերանցն ամփոփեալ են, պատեհ են սնուցանելոյ զարմատս երկրի: Այլ այնպէս սահմանեալ փոփոխմունք ժամանակաց աշխարհի այլակերպք են ի կողմանսն յայնոսիկ, զի յորժամ այլ կողմանք աշխարհի ջեռեալ իցեն ի տապոյ արեգական, զՀնդկաց աշխարհն ձիւն ունի. եւ դարձեալ յորժամ այլ կողմանք սառուցեալ իցեն, անդ անհնարին

տատապախտան ջերմութիւն է։ Նա եւ ոչ հան ի վեր ընութիւն զպատճառս իրացն։ Նոյնն եւս որ զնովաւ պատեալ է, ոչ ինչ օտար յայլոց ծովուց է գունով իւրով։ Նայց քանզի յերկթրոս թագաւորէ անուն կոչեցաւ ծովուն, որ անտեղեակքն են կարծեն թէ կարմիր են ջուրք ծովուն։

Երկիրն տաւտապեր է կատաւոյ. բազմաց ձորձք անտի են։ Կեղեւք ծառոց կակուղք եւ փափուկք են իբրեւ զքարտ եւ ընդունին զնշանագիրս գրոց։ Ան հաւք՝ հաւանք նմանօղ հնչման մարդկեղէն բարբառոյն լինելոյ։ Ան եւ անասունք որ ոչ ընդելականք են այլոց ազգաց, բայց միայն եթէ ածեալ իցեն առ նոսա։ Այն երկիր անուցանէ ուղնդեղջերւրս եւ ոչ ծնանի։ Իսկ փղաց առաւել եւս յաճախութիւն է առա քան յԱփրիկեցւոց աշխարհին. եւ ըստ յաճախութեանն նոյնպէս եւ յաղթանդամութիւն նոցա է։ Գետք որ հանդարտութեամբ ատանին զյամրագնաց ջուրս իւրեանց՝ ոսկի բերեն։ Իսկ ծովն ի ծովեզերան ականս պատուականս եւ մարգարիտս ընկենու։ Նու ոչ այլ ինչ քան զայն պատճառք

ընչաւէտութեան նորա են, մանաւանդ յորժամ զաուրեւառիկ փոփոխումն չարեաց իւրեանց սփռեցին եւ յազգսն արտաքինս. քանզի աւելորդաց ծովուն եռացելոյ՝ այնչափ գինք են որչափ ցանկութիւնն սահմանէ նոցա: Որպէս ամենայն ուրեք նոյնպէս եւ ի նոսա գիր աւելեացն ձեւիչ մտաց եւ բարուց մարդկանն լինի: Զմարմինս իւրեանց ծածկեն մինչեւ ցոտս պճղնաւորաւ եւ ագանին օղս յոտս եւ կտաւով զգլուխս իւրեանց պատեն. կախեալ են գինդք զականջաց նոցա. զտիգս իւրեանց ոսկւով զարդարեն, եւ նաքիմքք տանի խտիր ազնուականութեան եւ ընչաւէտութեան: Սանդրեն բազում անդամ զվարս իւրեանց քան եթէ խուզեն. իսկ կզակք նոցա միշտ առանց սափրելոյ են. իսկ զմնացեալ մորթ երեսացն ամենեւին իսկ ողորկեալ վերայեն:

Նմա գեխութիւն թագաւորաց նոցա, զոր նոքա մեծաշուք փառաւորութիւն կոչեն, առաւել է քան զչարիս թագաւորաց ամենայն ազգաց: Յորժամ ի հրապարակի ու-

րեք կամեցի երեւել Թագաւորին, խնկանոցս արծաթիս առաջի տանին սպասաւորք, եւ զամենայն ճանապարհն, ընդ որ կամի անցանել, հոտովք լի առնեն։ Բազմի նա ի դեսպակս ոսկիս, զորովք մարգարիտք շուրջ կան կախեալ. կնրպակք ոսկենկարք, եւ ծիրանեով խառն են ձորձք նորա զոր ագանի. զհետ դեսպակին երթան պահապանք վառեալք յորոց միջի կան հաւք ի վերայ ոստոց. որոց ուսուցեալ են դեղդեղեալ նուագել ի զբօսանս Թագաւորին։ Իսկ ունին արքունիքն սիւնս ոսկեգործս զորովք տարածեալ է որթ ոսկեզօծ, եւ ի վերայ որթոյն պատկերք արծաթիք հաւուց որոց տեսլեամբն առաւել ուրախ լինին։ Բաց են արքունիքն եկելոցն յորժամ զվարսան սանդրիցէ կամ զարդարիցէ. յայնժամ պատասխանի հրեշտակութեանցն տայ, եւ դատաստան ժողովրդեանն առնէ։ Հանեալ զօդս նորա օծանեն անուշութեամբք զոտս նորա։ Մեծ քան զամենայն աշխատութիւն որսք են նորա, զանասունսն զփակեալս յարգելոցին հարկանել մինչդեռ հարճքն

նուագիցեն եւ ըղձանայցեն յաղթա-
գութիւն։ Նետք նոցա երկկան-
գնեանք են, զոր արձակեն մեծա-
զօրութեամբ. բայց չէ ինչ կարէ
սաստկագոյն։ Քանզի նմա՝ որոյ
ամենայն զօրութիւն ի թեթեւու-
թեան կայ, ծանրացեալ դժուարին
տանի։ Ընդ կարճ կարճ ճանապարհս
երթեւեկեալ անցանեն, իսկ յորժամ
երկարագոյն է չուն՝ փոխք ձգեն
զկառսն եւ զամենայն մարմինս յաղթ-
դադանացն ասկխապատ ծածկեն։
Ոմլ. զի մի՛ մի ինչ ի վնասակար սո-
վորութեանց պակաս լինիցի, սա-
կիսապատ դեռպակօք ընդ երկար սա-
դեալ երթայ զհետ կարգ հարճիցն.
զատեալ եւ բաժանեալ է դունդ
նոցա ի կարգէ բամբշանն, բայց
հաւասարէ նոքա զեղխութեանն։
Այնայք պատրաստեն զկերակուրս
նորա։ Եւ զինեն ի նոցունց պաշտաւ,
զոր յաճախագոյնս սովորութիւն է
ամենայն Հնդկաց առնուլ ի կեր։
Ո թագաւորն յորժամ անապա-
կան եւ քնովն թմրիցի առեալ
տանին հարճք նորա ի սենեակն կար-
դալով Հայրենի երգովն զցայգու-
թեան դիան։

Ո՞ ոք կարիցէ ստուգել թէ ի մէջ այնց չարեաց յաճախելոց իցէ փոյթ եւ խնամ վասն իմաստութեան։ Այլ մի ազգ չինական եւ տաւանց պաճուճանաց, զոր իմաստունս իսկ կոչեն։ Պարծանք են նոցա յաւաջադոյն կանխել եւ գրաւել զօր օրհասին մահու. եւ կենդանւոյն այրել զանձինս հրամայեն այնոցիկ որ կամ ծերացեալ հաստատուն իցեն կամ ցաւածք. իսկ զկալ եւ մեռալ մահու՝ անարգանս եւ թշնամանս համարին։ Նաեւ ոչ մի ինչ պատիւ կամ մեծարանք մարմնոյ՝ զոր ծերութիւնն քակիցէ, գնեն. զի համարին թէ հուր եթէ ոչ շնչով ընդունիցի զնոսա, պղծի։ Իսկ նոքա որ ի քաղաքս ըստ հասարակաց սովորութեան կեան կեանս, ասեն թէ զգնացս աստեղացն քաջ նշմարեն եւ զլինելոցն պատմեն։ Նաեւ համարեն նոքա թէ որ երթան կամակար ի մահ, յայն սակս երթան զի չհանդուրժեն հասանելոյ նոցա։ Դժոխս իսկ համարին զոր ինչ միանգամ սկիզբն առնեն պաշտելոյ, մանաւանդ զծառս, զորս թէ բռնադատէ ոք, զկնոյ պատիժ կան։

Զամիսս ի հնդետասան աւո
սահմանեն, բայց տարւոյ կատարե
ժամանակք պահին : Ի գնայ
լուսնի նշանակեն զժամանակն,
որպէս բազումք առնեն, յորժ
ընուցու աստղն զիւր բոլորն բոլոր
այլ յորժամ ծռիցի ի մահիկ եղջեւ
եւ վասն այնորիկ կարճագոյն ամ
ունին քան զամիսս այնոցիկ ոլ
բովանդակ ընլոյ լուսնի կարգեն զժ
մանակ ամսոյն : Եւ այլ ինչ է
զում պատմի զնոցանէ, բայց
այսպէս թուեցաւ թէ չէ պատշ
նոքիմբք զկարգ իւրացն յամեց
ցանել :

Ժ. ԸՊԱ իբրեւ եմուտ Աղեքս
դրոս ի սահմանս Հնդկաց աշխար
թագաւորազունք ազգաց նոցա
առաջ ելանէին, առնել զոր
հրաման տայցէ, եւ յիշէին թէ
երրորդ ծնունդ Արամազդայ եկ
էր առ նոսա . Սպանդարամե
ասեն, եւ Վահագն ի համբա
ծանօթ են մեզ, իսկ զքեզ
յանդիման եկեալ առաջի ա
նեմք : Ընդունէր զնոսա մարդ
րութեամբ թագաւորն եւ հրամ
գալ զհետ, զի նոքօք փարիցի

ռաջնորդութիւն ճանապարհացն : Իբրեւ ոչ ոք այլ ոք այնուհետեւ ընդ առաջ պատահէր, զՀեփեստիոն եւ զՊերդիկկաս միասամբ միով զօրացն յառաջագոյն արձակէր երթալ նուաճել զայնոսիկ որ խորշէին ի տէրութենէ անտի. եւ հրամայէր խաղալ գնալ յառաջ ի գետն Ինդոս եւ նաւակս գործել, որովք յայնկոյս զօրքն անցանիցեն : Նոքա, քանզի բազում գետք կային առանցանել, այնպէս զնաւսն կազմեցին, զի լուծեալ սայլիւք տանել կարիցեն եւ միւսանգամ ի միմեանս յարել: Իբրեւ հրամանն ետ Կրատերեայ գնդաւն հանդերձ գալ զհետ իւր, զհեծելազօրն եւ զվառեալսն թեթեւս առեալ հանէր արտաքս, եւ զայնոսիկ՝ որ ընդառաջ դիմեալ էին թեթեւ ինչ պատերազմաւ ի մօտաւոր քաղաքն արկանէր : Ընդէն ի վերայ հասեալ կայր Կրատերոս : Վասն այնորիկ զի իսկզբան անդ- ահ եւ երկեւղ ի վերայ ազգին արկանիցէ որոյ չէր իսկ տակաւին զչափ առեալ զՄակեդոնացւոցն, պատուէր ետ մի ումեք խնայել եւ զամուրս քաղաքին զոր պաշարեալ էր

Զամիսս ի հնդետասան աւուրս սահմանեն, բայց տարւոյ կատարեալ ժամանակք պահին։ Ի գնացից լուսնի նշանակեն զժամանակսն, ոչ որպէս բազումք առնեն, յորժամ լնուցու աստղն զիւր բոլորն բոլորակ, այլ յորժամ ծուիցի ի մահիկ եղջեւրս, եւ վասն այնորիկ կարճագոյն ամիսս ունին քան զամիսս այնոցիկ որ ի բովանդակ ընթացս լուսնի կարգեն զժամանակ ամսոցն։ Եւ այլ ինչ բազում պատմի զնոցանէ, բայց ինձ այսպէս թուեցաւ թէ չէ պատշաճ նոքիմբք զկարգ իւրացն յամեցուցանել։

Ժ. ԸՆԴ իբրեւ եմուտ Աղեքսանդրոս ի սահմանս Հնդկաց աշխարհին, թագաւորազունք ազգացն նոցա ընդառաջ եկանէին, առնել զոր ինչ հրաման տայցէ, եւ յիշէին թէ նա երրորդ ծնունդ Արամազդայ եկեալ էր առ նոսա. Սպանդարամետն, ասեն, եւ Վահագն ի համբաւուց ծանօթ են մեզ, իսկ զքեզ դէմ յանդիման եկեալ առաջի տեսանեմք։ Ընդունէր զնոսա մարդասիրութեամբ թագաւորն եւ հրամայէր գալ զհետ, զի նոքօք վարիցի յա-

առաջնորդութիւն ճանապարհացն ։ Իբրեւ ոչ ոք այլ ոք այնուհետեւ ընդ առաջ պատահէր, զՀեփթաղիոն եւ զՊերդիկկա մասամբ միով զօրացն յառաջագոյն արձակէր երթալ նուաճել զայնոսիկ որ խորշեցին ի ակերութենէ անտի. եւ Հրամայէր խաղալ գնալ յառաջ ի գետն Ինդոս եւ նաւակս գործել, որովք յայնկոյս զօրքն անցանիցեն ։ Նոքա, քանզի բազում գետք կային առ անցանել, այնպէս զնաւսն կազմեցին, զի լուծեալ տայլիւք տանել կարիցեն եւ միւսանգամ ի միմեանս յարել ։ Իբրեւ Հրաման ետ Կրատերեայ զնդաւն Հանդերձ գալ զհետ իւր, զՀեծելազօրն եւ զվառեալսն թեթեւս առեալ Հանէր արտաքս, եւ զայնոսիկ՝ որ ընդառաջ դիմեալ էին թեթեւ ինչ պատերազմաւ ի մօտաւոր քաղաքն արկանէր ։ Անդէն ի վերայ Հասեալ կայր Կրատերոս ։ Սաստն այնորիկ զի իսկզբան անդ աՀ եւ երկեւղ ի վերայ ազգին արկանիցէ որոյ չէր իսկ տակաւին զչափ առեալ զՄակեդոնացւոցն, պատուէր ետ մի ումեք խնայել եւ զամուրս քաղաքին զոր պաշարեալ էր

նեալ զպարիսպան պաշարէր, այնդքիկ ի թշնամեաց որ զանձինս ետուն ի ճգնութիւն պատերազմին, սատակեցան ի նետիցն: Ոմանք կամէին զանձինս տալ, եւ ոմանց հաճոյ թուէր զչափ առնուլ պատերազմի. իբրեւ իմացաւ Աղեքսանդրոս զվարանս նոցա պաշարել միայն հրաման տայր եւ ոչ կոտորել: Եւ ապա ուրեմն խոնջեալ եւ վաստակեալ ի դժընդակ չարեաց պաշարմանն՝ յանձն եղեն: Ասէին թէ շինիչ նոցա իցէ Սպանդարամետն. եւ ճըշմարիտ էր ոկիզընն: Այս քաղաքն նոցա ընդ լեռնոտամբ լերինն զոր Մերոն բնակիչքն կոչեն: Անտի առին եւ Յոյնք համարձակութիւն առեալ թէ յազգերէ Արամազդայ եւ Սպանդարամետն:

Իսկ թագաւորն ծանուցեալ ըզդէր լերինն ի բնակչաց անտի, զհամբաւոյն յառաջագոյն արձակեալ ի գագաթնն եղանէր ամենայն զօրքն հանդերձ: Բազում բաղեղն եւ որթ ծնանի յամենայն լերինն. եւ շատ աղբերք մշտաբուխք խաղան: Եւ հիւթք եւս մրգոցն ազգի ազգիք են եւ կեցուցիչք, զի իւրովի

գետինն անուցանէ զարմանս սերմանց սերմանց որ ըստ դիպելոյ անկեալ իցեն ։ Այս եւ անտառ, բազում վայրենիք ի քարինս անդ դափնեայ ։ Ինձ թուի թէ ոչ ի դիցն ինչ դրդելոյ այլ ի լկտի մտաց յօժարեալ են, բաղեղան եւ որթոց ատերեւս քաղել, եւ բոլորեալ պսակ, իբրեւ զմոլեգնեալս այնպէս ընդ ամենայն անտառն թափառել ։ Նոյն ի ձայնէ անտի բարբառոյ այնչափ անչափ հազարաւորացն որ երկիր պաղանէին դից շահապետի անտառին այնորիկ, հնչեցեալ գոչէին այորէն լերինքն եւ բլուրքն, եւ անդէն ի սակաւաւորաց սկիզբն լեալ ստահակութեանն, որպէս դէպ իսկ լինի, յամենեսին իսկ յանկարծակի սփռեալ տարածեցաւ ։ Քանզի իբրեւ ի խաղաղութեան ի վերայ խոտոյն եւ տերեւոցն կուտելոց անկեալ տարածանէին ։ Եւ ոչ թագաւորն ինչ ընդդէմ դարձաւ դիպուածոյ ուրախութեանն տուեալ զամենայն առատութեամբ ի խրախութիւն կոչնոց, եւ այնպէս զաւուրս տասն թող զզօրսն գործել զգործ Ապանդարամեայն ։ Ո՞րք այսուհետեւ որ ոչ

տանուցու յանձն թէ բազում ան-
գամ փառք բախտի եւ ոչ քաջու-
թեան պարգեւք են. քանզի ոչ
յորժամ ի կերակուրսն էին եւ անտա-
պակաւ թմբեալ իշխեաց յարձակել
ի վերայ Նոցա թշնամին, զահի հա-
րեալք յամբոխէ աղաղակի մոլեգնե-
լոցն եւ գոչելոց, որպէս թէ գոչիւն
պատերազմողաց լսելի լինէր։ Նոյն
աջողութիւն պաշտպանեաց Նոցա
յորժամ դարձեալք գային յՈվ-
կիանոսէ արբեալք եւ ծանրացեալք
ընդ սահմանս թշնամեացն։

Նստի խաղացեալ գային ի գաւա-
ռն որ կոչի Դիդաղա։ Լքեալ
թողեալ էր բնակչաց զկայանսն եւ
ապաստանեալ յանկոխ եւ յանտա-
ռախիտ լերինսն։ Նպա անց ընդ
Ակադիրս որ թափուր եւ ամայի էր
յետ բնակչացն ի բաց փախչելոյ։
Մաան այնորիկ փոփոխեաց Հարկ
իւրացն զհանդամանս պատերազմին։
Քանզի զզօրսն բաշխեալ բաժանէր
եւ միանդամայն ի միում ժամու
ի տեղիս տեղիս զէնս եւ սպառա-
զէնս ցուցանէր, եւ ի բուռն առեալ
զթշնամին յորում վայրի չկայր Նոցա
ակն, Նուաճեցան մեծաւ Հարուա-

ծովք։ Նաւաւոր քաղաքս առ Պոտաղամեսս, եւ Աղեքսանդրոս մեծամեծ քաղաքս. եւ միւսանգամ զզօրան՝ զոր բաժանեալ էր, ամփոփեաց ի միմեանս։ Յետոյ ընդ Քոյասայ գետ անցեալ, զԿիւռոս Թողայր ի պաշարման անդ մեծագանձ քաղաքին զոր Բէլիրա կոչեն բնակիչքն. եւ ինքն գայր առ Մազագաս։ Փոքր մի յառաջագոյն քան Ասականայ, որոյ էր իսկ Թագաւորութիւնն, մեռանելոյ, կայր ի վերայ գաւառին եւ քաղաքին մայր նորա Կղէոփիս։ Իբր հազարք հետեւակաց զքաղաքն պահէին որ ոչ միայն կայենիւն ամրացեալ էր, այլ եւ գործուածովն։ Զի ի կողմանէ որ հայի յարեւելս պատի ի գետոյ միոջէ յորդելոյ, որոյ ափունքն բարձունք աստի անտի արգելու մատնել ի քաղաքն։ Իսկ յարեւմտակողմանն եւ ի հարաւակողմանէ, իբրեւ խորհրդով եւ հնարիւք քարինս բարձրաբերձս յօրինեալ է բնութիւնն. եւ ի ներքոյ նոցա գարափորք եւ խորաձորք ի խոր ուրեմն խորեալ եւ գոգեալ երկարն հնութեամբ, եւ ընդ կողմն ուր նոքա դադարեն, փոս մի ան-

Հնարքին կայ, եւ ընդ Լծ վատաւան որմ պատէ զքաղաքն, եւ խոնարհագոյն կողմանք որմոյն քարամբք եւ վերին կողմանքն աղիւսով գործեալ են: Պահանգակապ կողմանցն քարինք են զորս ի միջի հիւսեցին, զի ի վերայ խիստ նիւթոյ, կակուղ նիւթն յենուցու, եւ միանգամայն հող լուծեալ ջրով: Բայց զի մի ամենայն որմն միանգամայն զիջեալ նստիցի, հաստ եւ հզօր գերանք ի վերայ եղեալ էին եւ տախտակամածն որ ի վերայ նորա արկեալ էր, զորմն ծածկէր եւ առնէր գնալի: Մինչ դեռ Աղեքսանդրոս հայեցեալ նշմարէր զամուրսն, եւ ոչ գիտէր թէ զինչ գործիցէ, քանզի զխորսն ոչ ինչ այլ ինչ օրինակ մարթ էր լնուլ բայց լերին արկանելով, եւ ոչ այլ ազգ ինչ գոյր հնար մեքենայս ի պարիսպն մատուցանելոյ, անդէն մի ոմն հար զնա նետիւ ի պարսպացն: Դէպք եւ պատահարք այսպէս տային ի լայնուցս սրունիցն անկանել նետին. զոր իբրեւ ի բաց խլեցին, հրամայեաց բերել երիւար. նստաւ երթեալ եւ առանց խոկ զվէրն կապելոյ, արագ

տրտոգ. զոր ինչ կամէրն վճարէր։ Նա՛ իբրեւ բազում ժամանակս կախեալ զկարթսն տանէր, եւ յետ ցամաքելոյ արեան եւ ապաժուժի ցրտացեալ վիրացն զցաւսն յաճախէր, պատմէն զնմանէ ասել այսպէս թէ Որդի Արամազդայ անուանիմ, այլ զգամ ցաւոց մարմնոյ իմոյ խօթացելոյ։ Բայց չառ յանձն մեկնել ի բանակ անդր, մինչ չեւ զամենայն մանր տեսեալ եւ հրամայեալ զբնաւ զոր կամէր։

Այնուհետեւ որպէս էր ինք առաւեալ հրաման, ոմանք քակէին ըզյարկսն արտաքոյ քան զքաղաքն եւ բազում նիւթս ժողովէին արկանել լիր. ոմանք զբուռն ծառոց մեծամեծաց եւ քարինս մեծամեծս ի խորսն արկանէին։ Հարթ եղեւ եւ հաւասարեալ երկրին բարձրութեան. վասն այնորիկ կանգնէին աշտարակս, եւ այս ամենայն յինն աւուրս վճարէր ի բազում յօժարութենէ զօրացն։ Իսկ թագաւորն մինչ չեւ եւս վիրացն կցեալ եղանէր տեսանել զգործ կազմութեանն, եւ յարգեալ գովեալ զզօրսն, հրամայէր զամենքեանսյան մօտ ատանել,

յորոց եւ անհնարին բազում նետք ի յառաջամարտիկսն արձակէին ։ Եւ առաւել շարժուն աշտարակքն երկեցուցանէին զանհմուտսն, եւ տեսեալ թէ այնչափ ծանրութիւն յոչինչ զօրութենէ՝ որ երեւէր, շարժէր, համարէին թէ ի դիցն զօրութենէ շարժին. եւ զլոյ եւս պարսպացն եւ զծանր ծանր տեգսն արձակեալս ի մեքենայիցն չհաշուէին ինչ ի դէպ արանց մահկանացուաց ։ Վասն այնորիկ յուսահատ լեալ ի պաշտպանելոյ քաղաքին մեկնեցան գնացին ի միջնաբերդն ։ Ապա քանզի ոչ մի ինչ առաւել հաճոյ պաշարելոցն թուէր քան զլինելն յանձն, իջին հրեշտակք առ Թագաւորն խնդրել թողութիւն ։ Իբրեւ ընկալան թողութիւն ել եկն բամբիշն բազում դաստակաւ կանանց ազնուաց որ նուիրէին զինքն ոսկւովք տաշտիւք ։ Սա արկեալ զմանկիկն իւր փոքրիկ առ ոտս Թագաւորին, ոչ միայն խնդրէր թողութիւն, այլ եւ զպատիւ առաջնոյ բախտին ։ Քանզի եւ անուանեցաւ իսկ արկին, եւ այսպէս կարծեցին թէ առաւել գեղոյն շնորհեցաւ քան եթէ չուա-

հրձիգ առնել: Նմա մինչ դեռ զպա-
րիսպօքն շրջէր երիվարաւն, նետաւ
հարաւ: Սակայն առ նա զքաղաքն
եւ կոտորեաց զամենայն բնակիչս
նորա, եւ ի յարկանէ եւս ոչ խնայէին:
Նոյն յետ զանմնշան ազգն նուա-
ճելոյ ի Նիւսա քաղաքն հասանէր:
Դէպ եղեւ զի մինչ դեռ առաջի
քաղաքորմին բանակ հարեալ էր
յանտառախիտ վայրի, ցուրտ ցայ-
գուլթեանն սաստկագոյն քան այլ
երբեմն սարսռեցուցանէր զանդամս·
անդէն լուցաւ կրակ առ ի դարմանն:
Այրեցին զանտառն եւ բոց բոլորա-
քեցին. իբրեւ յոլովեաց հրաւն,
եհաս կալաւ զգերեզմանս քաղաքա-
ցեացն: Եւ էին գերեզմանքն շի-
նեալ ի հնոց եղեւնափայտից եւ
այնպէս առեալ ընդ ամենայն զհուրն
տարածեցին, մինչեւ ամենայն կազ-
մութիւնն հարթ եղեւ եւ հաւասա-
րեաց գետնոյ: Եւ ի քաղաքէն
նախ ռանալ շանցն եւ յետոյ խաւ-
շիւն մարդկան լինէր լսելի: Յայնժամ
վայրի քաղաքացիքն իմացան թէ
թշնամի եկեալ է, եւ Մակեդոնա-
ցիք՝ թէ ի քաղաքն ուրեք հասեալ
են: Մինչ թագաւորն զզօրսն հա-

նեալ զպարիսպսն պաշարէր, այնուքիկ ի թշնամեաց որ զանձինս եառոն ի ճգնութիւն պատերազմին, սատակեցան ի նետիցն։ Այսպէս կամէին զանձինս տալ, եւ ոմանց հաճոյ թուէր զչափ առնուլ պատերազմի. իբրեւ իմացաւ Աղեքսանդրոս զվարանս նոցա պաշարել միայն հրաման տայր եւ ոչ կոտորել։ Նա եւ ապա ուրեմն խնձեալ եւ վաստակեալ ի դժընդակ չարեաց պաշարմանն՝ յանձն եղեն։ Ասէին թէ շէնիչ նոցա իցէ Սպանդարամետն. եւ ճըշմարիտ էր սկիզբնն։ Այս քաղաքն նոցա ընդ լեռնոտամբ լերինն զոր Մերոն բնակիչքն կոչեն։ Անուն տուին եւ Յոյնք համարձակութիւն առելոյ թէ յազգերէ Արամազդայ եւ Սպանդարամետն։

Իսկ թագաւորն ծանուցեալ ըզդէր լերինն ի բնակչաց անտի, զհամբաւն յառաջագոյն արձակեալ ի գագաթնն ելանէր ամենայն զօրզքն հանդերձ։ Բազում բաղեղն եւ որթ ծնանի յամենայն լերինն. եւ շատ աղբերք մշտաբուխք խաղան։ Նա եւ հիւթք եւս մրգոցն ազգի ազգիք են եւ կեցուցիչք, զի իւրովք

զետոյնն մնուցանէ զարմատս սերմանց սերմանց որ ըստ դիպելոյ անկեալ իցեն ։ Այլ եւ անտառ ,բազում վայրենի ի քարինս անդ դափնեայ ։ Ինձ թուի թէ ոչ ի դիցն ինչ գըրդելոյ այլ ի լկտի մտաց յօժարեալ են , բաղեղան եւ որթոց տերեւս քաղել , եւ բոլորեալ պսակ , իբրեւ զմոլեգնեալս այնպէս ընդ ամենայն անտառն թափառել ։ Արդ ի ձայնէ անտի բարբառոյ այնչափ անչափ հազարաւորացն որ երկիր պաղանէին դից շահապետի անտառին այնորիկ , հնչեցեալ գոչէին այարէն լերինքն եւ բլուրքն , եւ անդէն ի սակաւուորաց սկիզբն լեալ ստահակութեանն , որպէս դէպ իսկ լինի , յամենեսին իսկ յանկարծակի սփռեալ տարածեցաւ ։ Քանզի իբրեւ ի խաղաղութեան ի վերայ խոտոցն եւ տերեւոցն կուտելոց անկեալ տարածանէին ։ Եւ ոչ թագաւորն ինչ ընդդէմ դարձաւ դիպուածոյ ուրախութեանն տուեալ զամենայն առատութեամբ ի խրախութիւն կոչնոց , եւ այնպէս զաւուրս տասն թող զզօրսն գործել զգործ Սպանդարամետին ։ Ո՞ ոք այսուհետեւ որ ոչ

առնուցու յանձն թէ բազում անգամ փառք բախտի եւ ոչ քաջութեան պարգեւք են. քանզի ոչ յորժամ ի կերակուրս էին եւ անապակաս թմբրեալ իշխեաց յարձակել ի վերայ Նոցա թշնամին, զահի հարեալք յամբոխէ աղաղակի մոլեգնելոյն եւ գոչելոյ, որպէս թէ գոչիւն պատերազմողաց լսելի լինէր։ Նոյն աջողութիւն պաշտպանեաց Նոցա յորժամ դարձեալք գային յՈվկիանոսէ արբեալք եւ ծանրացեալք ընդ սահմանս թշնամեացն։

Անտի խաղացեալ գային ի գաւառն որ կոչի Դիդալա։ Լքեալ թողեալ էր բնակչաց վկայանան եւ ապաստանեալ յանկոխ եւ յանտառախիտ լերինսն։ Ապա անց ընդ Ակադիրս որ թափուր եւ ամայի էր յետ բնակչացն ի բաց փախչելոյ։ Վասն այնորիկ փոփոխեաց հարկ իւրեանց զհանգամանս պատերազմին։ Քանզի զզօրսն բաշխեալ բաժանէր եւ միանգամայն ի միում ժամու ի տեղիս տեղիս զէնս եւ սպառազէնս ցուցանէր, եւ ի բուռն առեալ զթշնամին յորում վայրի չկայր Նոցա ակն, Նուաճեցան մեծաւ հարուա-

*ծովք: Նաւազուամ քաղաքս առ Պատաղոմէոս, եւ Աղեքսանդրոս մեծամեծ քաղաքս. եւ միւսանգամ զզօրսն՝ զոր բաժանեալ էր, ամփոփեաց ի միմեանս: Յետոյ ընդ Քոյասպ գետ անցեալ, զԿլիւնոս թողոյր ի պաշարման անդ մեծագանձ քաղաքին զոր Բէիրա կոչէն բնակիչքն. եւ ինքն գայր առ Մազագաս: Փոքր մի յառաջագոյն յետ Ասսականայ, որոյ էր իսկ թագաւորութիւնն, մեռանելոյ, կայր ի վերայ գաւառին եւ քաղաքին մայր նորա Կղէոփիս: Ը հազարք հետեւակաց զքաղաքն պահէին որ ոչ միայն կայենիւն ամրացեալ էր, այլ եւ գործուածովք: Զի ի կողմանէ որ հայի յարեւելս պատի ի գետոյ միոջէ յորդելոյ, որոյ ափունքն բարձունք աստի անտի արգելու մտանել ի քաղաքն: Իսկ յարեւմտակողմանն եւ ի հարաւակողմանէ, իբրեւ խորհրդով եւ հնարիւք քարինս բարձրաբերձս յօրինեալ է բնութիւնն. եւ ի ներքոյ նոցա դարափորք եւ խորաձորք ի խոր ուրեմն խորեալ եւ գոգեալ երկարն հնութեամբ, եւ ընդ կողմն ուր նոքա դադարեն, փոս մի ան-*

Հնարքն կայ, եւ ընդ Լե վտաւան որմ պատէ զքաղաքն, եւ խոնարհագոյն կողմանք որմոյն քարամբք եւ վերին կողմանքն աղիւսով գործեալ են։ Պահանգակապ կողմանցն քարինք են զորս ի միջի հիւսեցին, զի ի վերայ խիստ նիւթոյ, կակուղ նիւթն յենուցու, եւ միանգամայն հող լուծեալ ջրով։ Բայց զի մի ամենայն որմն միանգամայն զիջեալ նստիցի, հաստ եւ հզօր գերանք ի վերայ եդեալ էին եւ տախտակամածն որ ի վերայ նորա արկեալ էր, զորմն ծածկէր եւ առնէր դնալի։ Մինչ դեռ Աղեքսանդրոս հայեցեալ նշմարէր զամուրսն, եւ ոչ գիտէր թէ զինչ գործիցէ, քանզի զխորոյն ոչ ինչ այլ ինչ օրինակ մարթ էր լնուլ բայց լերին արկանելով, եւ ոչ այլ ազդ ինչ գոյր հնար մեքենայս ի պարիսպն մատուցանելոյ, անդէն մի ումն հար զնա նետիւ ի պարսպացն։ Դէպք եւ պատահարք այսպէս տային ի լքմնուցս որունիցն անկանել նետին. զոր քերեւ ի բաց խլեցին, հրամայեաց բերել երիվար. նովաւ երթեալ եւ առանց իսկ զվէրն կապելոյ, արագ

առատ. զոր ինչ կամէրն վճարէր։ Այլ երբեւ բազում ժամանակս կոխեալ զկարթուն ամանէր, եւ յետ ցամաքելոյ արեան եւ ապաժուժի ցրտացեալ վիրացն զցաւսն յաճախէր, պատմէին զնմանէ ասել այսպէս թէ Որդի Արամազդայ անուանիմ, այլ զդամ ցաւոց մարմնոյ իմոյ խոթացելոյ։ Բայց չառ յանձն մեկնել ի բանակ անդր, մինչ չեւ զամենայն մանր տեսեալ եւ հրամայեալ զբնաւ զոր կամէր։

Այսուհետեւ որպէս էր իսկ աւաեալ հրաման, ոմանք քակէին ըզյարկան արտաքոյ քան զքաղաքն եւ բազում նիւթս ժողովէին արկանել լեր. ոմանք զբուսս ծառոց մեծամեծաց եւ քարինս մեծամեծս ի խորսն արկանէին։ Հարթ եղեւ եւ հաւասարեաց երկրին բարձրութեան. վասն այնորիկ կանգնէին աշտարակս, եւ այս ամենայն յինն աւուրս վճարէր ի բազում յօժարութենէ զօրացն։ Իսկ թագաւորն մինչ չեւ իսկ վիրացն կցեալ եղանէր տեսանել զգործ կազմութեանն, եւ յարդեալ գովեալ զզօրսն, հրամայէր զմենքենայսն մօտ տանել,

յորոց եւ անհնարին բազում նեղք ի յառաջամարտիկոն արձակէին ։ Նաեւ առաւել շարժուն աշտարակքն երկեցուցանէին զանհմուտսն , եւ տեսեալ թէ այնչափ ծանրութիւն յոչինչ զօրութենէ՝ որ երեւէր , շարժէր , համարէին թէ ի դիցն զօրութենէ շարժին . եւ զխոյ եւս պարսպացն եւ զծանր ծանր տէգսն արձակեալս ի մեքենայիցն չհաշուէին ինչ ի դէպ արանց մահկանացուաց ։ Վասն այնորիկ յուսահատ լեալ ի պաշտպանելոյ քաղաքին մեկնեցան գնացին ի միջնաբերդն ։ Ապա քանզի ոչ մի ինչ առաւել հաճոյ պաշարելոցն թուէր քան զլինելն յանձն , իջին հրեշտակք առ Թագաւորն խնդրել թողութիւն ։ Իբրեւ ընկալան թողութիւն ել եկն բազմբիշն բազում դաստակաւ կանանց ազնուաց որ նուիրէին զինի ոսկեղէք տաշտիւք ։ Սա տարեալ զմանկիկն իւր փոքրիկ առ ոտս Թագաւորին, ոչ միայն խնդրէր թողութիւն, այլ եւ զպատիւ առաջնոյ բախտին ։ Քանզի եւ անուանեցաւ իսկ տիկին, եւ այսպէս կարծեցին թէ առաւել գեղոյն շնորհեցաւ քան եթէ շուա-

առնայցն : Նշա մանկան եւս միում որ յետոյ ի նմանէ ծնաւ, որպէս զիարդ եւ ծնաւ, անուն կոչեցաւ Աղեքսանդրոս :

ԺԱ. ԸՆՑԻ Պողիպերկոն առաքեալ ի քաղաքն Նորա զօրօք հանդերձ, յաղթէր քաղաքացեաց քաղաքին մինչ դեռ անկարգն էին. եւ զհետ մտեալ այնոցիկ որ յամուրսն անկեալ ամրացան, ընդ ձեռամբ զքաղաքն նուաճէր : Բազում քաղաքք աննշանք որ յիւրայոցն թողան, անկան ընդ իշխանութեամբ թագաւորին : Որոց բնակիչք վառեալք զինու զարդու հասեալ կալան զվէմն Աւոռնիս անուն : Նոյնպէս համբաւ տարածեալ էր թէ այն վէմ եւ ի Վահագնէ զուր եւ տարապարտուց պաշարեցաւ եւ շարժմամբ երկրի ստիպեցաւ կալ յետս : Իբրեւ չգիտէր Աղեքսանդրոս զինչ առնիցէ, քանզի յամենայն կողմանց քարաժայռք ելեալ էին, ծեր ոմն այր հմուտ վայրացն ելեալ գայր երկուք որդւովքն, որ խոստանայր ցուցանել մուտս եթէ տայցին վարձք գործոյն : Խոստացաւ տալ Աղեքսանդրոս Ձ քանքար, եւ զմի ի պատանեկաց

անտի առեալ ի պատմագրութիւն
զնա առաջեր վճարել զոր խոստա-
ցաւ։ Մուղդինոս դպիր Թագաւորին
զօրավար տուաւ փառելոցն։ Հաճոյ
Թուեցաւ շրջելով իմն ելանել նոցա
ի գլուխ սարին զի մի յակն անկանի-
ցին Թշնամեացն։ Իսկ վէմն ոչ որ-
պէս բազումք ի վիմաց են, սակաւիկ
եւ Թեթեւ ինչ խոնարհմամբ աճէ ի
բարձրաբերձ բարձունս, այլ մանաւ-
անդ իբրեւ ի նպատակի կերպարանս
կանգնեալ կայ ուղղորդ, որոյ ներ-
քին կողմն ընդարձակագոյն է, եւ
վերին կողմանքն անձկացեալ նեղին,
եւ գլուխ նորա կատարի ի գագաԹն
սուր։ Եւ ոտամբ նորա գնայ Ինդոս
գետ բարձր եւ դժուարին յերկո-
ցունց կողմանց. եւ յայնմ կողմանէ
խորք եւ խռոչք էին։ Եւ ոչ ինչ
դիւր հնար զառեղին առնլոյ բայց յոր-
ժամ խորքն լնուցուն։ Այր անտառա-
առ ձեռն, զոր այնպէս հրամայեաց
Թագաւորն հատանել զի մերկ բուն-
քըն անդր արկցին. քանզի ոստքն
տերեւազգեստք արգել բերելեացն
լինէին։ Ինքն նախ արկ բուն մի ի
ծառոցն բնից. եւ գոչումն աղաղակի
զօրացն որ նշանակ ուրախուԹեան

մնաց էր, զհետ հասանէր, եւ ոչ ոք խորշէր ի գործոյ անտի յոր եւ թագաւորն արկեալ էր ձեռն։

Նցին յաւուրս եւթն գլխորսն. եւ հրամանն այր անդէն թագաւորն աղեղնաւորացն եւ Ազրիացւոցն երանել ընդ զաւխվերն։ Եւ ի գնդէ անտի իւրմէ Լ ժիր եւ քաջ երիտասարդս ընտրէր։ Զօրավարք տուան նոցա Քարոս եւ Աղէքսանդրոս, զոր խրատեաց իսկ թագաւորն յուշ արարեալ թէ անուն հասարակ է իւր ընդ նմա։ Նախ քանզի յայտնի իսկ վտանգն էր, ոչ հաճոյ թուեցաւ նմին իսկ թագաւորին միջամուխ ի վիշտսն լինել. այլ իբրեւ հարաւ փողանշանն, այր մի յանդուղն անձնարին դարձաւ առ անձնապահսն եւ հրամայէր գալ զհետ իւր, եւ նախ ինքն ի վէմն յարձակեցաւ։ Եւ ոչ յետոյ ոք ի Մակեդոնացւոցն կաց մնաց, այլ թողեալ զանեղիսն յորս կային իւրաքանչիւր ինքնակամ ըղհետ երթային թագաւորին։ Նոզմաց անկումն ողորմելի հասանէր, զորս առ տարաւ գետն որ ընդ այն անցանէր, եւ այն տեսիլ արտմութեան էր եւ այնոցիկ՝ որ ոչ կային

ի վտանգի․ իսկ իբրեւ այլոցն կորո-
տեամբ յուշ լինէր նոցա թէ յորմէ
պարտ իցէ զանգիտել նոցա, յահ
եւ յերկեւղ դուլթն դառնայր, եւ
այնուհետեւ ոչ թէ զմտաւեալն այլ
զանձինս աշխարէին։ Եւ յայն վայր
իսկ հասեալ կային, ուստի չկարէին
ողջանդամ դառնալ բայց եթէ յաղ-
թութեամբ, քանզի վիրգո անհնա-
րինս վերուստ ի վայր բարբարոսքն
հոսէին, որովք հարեալք եւ սաստա-
նեալք ի յողդողդ եւ ի լպիրծ տե-
ղեացն դահավէժ դարահոս ի վայր
կործանէին։ Սակայն պրծեալ ե-
լեալ էին Աղեքսանդրոս եւ Քարոս
զօրս Լ ընտրելովք արձակեալ էր
յառաջագոյն թագաւորն եւ սկսեալ
էին ի մօտոյ մարտ եղեալ ոգորել․
բայց քանզի ի վերուստ ուրեմն նետս
բարբարոսքն հոսէին, բազում ան-
դամ խոցեալ լինէին քան եթէ խո-
ցէին։ Յայնուհետեւ զմտաւ ածեալ
Աղեքսանդրի զանուն իւր եւ զխոստա-
մանսն մինչ դեռ սաստկագոյն
կռուէր եւ ոչ զգուշութեամբ, վէրս
առեալ յամենայն կողմանց՝ անկա-
նէր։ Իբրեւ ետես Քարոս թէ նա
անկաւ, սկսաւ յարձակել ի թշնամի

անդր, ոչ ինչ յիշեալ ամենեւին բայց միայն խնդրել զվրէժ նորա, զբաղդումն նիզակաւն եւ զամենայն ասու-սերաւն սաստակէր. այլ իբրեւ այնչափ անչափ ձեռք ի միոյն վերայ յարձակեցան, անկաւ թաւալեցաւ առանց շնչոյ ի վերայ դիականն բարեկամի իւրոյ: Տրտմեցաւ զծգմեցաւ թագաւորն որպէս ի դէպ էր վասն կորստեան ժիր եւ արագ երիտասարդացն եւ այլոց եւս զօրականաց, եւ տայր անդէն նշան դառնալոյ յետս: Իսկ վճարեցաւ այն առանց իրիք վնասու, զի մեղմով եւ առանց զանգիտելոյ մեկնեցան ի բաց. եւ բարբարոսքն շատ եւ բաւականն համարեալ թէ զթշնամին մերժեցին, չաստկացան ի վերայ նոցա յորժամ մեկնէին:

Այլ իբրեւ եդ ի մտի Աղեքսանդրոս ի բաց կալ ի գործոյ անտի, քանզի չկայր ամենեւին ակն տիրելոյ վիմին, սակայն կարծեցուցանէր թէ տեւէ ի պաշարմանն: Վասնզի հրաման ետ եւ զգլուխս ճանապարհացն արգելուլ եւ աշտարակս մօտ տանել, եւ այլոց մտանել փոխանակ վաստակելոցն: Իսկ Հնդկացն ի միա

առեալ պհեստել նորա զերկուս ոտսն եւ զերկուս գիշերս, ոչ միայն յուսով մեծաւ, այլ եւ յաղթութեանն պարծանօք ուտէին եւ ըմպէին, հարկանելով թմբուկս ըստ խուրեանց սովորութեանն։ Այլ յերրորդումն գիշերի թնդիւն թմբկացն չլինէր այնուհետեւ լսելի. այլ յամենայն իսկ ի վիմէ ջահք շողային զոր բարբարոսացն լուցեալ էր, զի զգուշագոյն լինիցի նոցա փախուստն յորժամ ի խաւարին գիշերի ընդ անկոխ քարինան ընթանայցեն։ Առաքեաց թագաւորն զԲաղակրոս զի գիտասցէ, եւ գիտաց թէ փախուցեալ անտի Հնդկացն մնացեալ է դատարկ վէմն։ Յայնժամ վայրի ազդ նշան թէ ամենեքին միաբան աղաղակ եդեալ գոչիցեն, եւ այնպէս արկանէր ահ եւ երկեւղ ի վերայ նոցա մինչ զեռ անկարգ երթային փախստեայ։ Նաեւ բազումք ի նոցանէ իբրեւ այն թէ եկեալ հասեալ էր թշնամին, այնպէս ընդ լպիրծ քարինս եւ ընդ անկոխ առապարս հոսեալ մեռանէին. եւ բազմագոյնք վնասեալք միով մասամբ անդամոց խուրեանց թողան լքան յողջոցն։ Իսկ

թագաւորն առաւել վայլրացն յաղթեալ եւ ոչ թշնամեացն, սակայն մեծամեծ յաղթութեան զոհս եւ պաշտամունս դիցն կատարէր: Ուղղեցան բագինք ի վիմի անդ՝ Աթենայ եւ Յաղթութեանն: Նաւաջնորդաց ճանապարհացն որոց հրամանն առեալ էր տանել ի վէր զվառեալոն, թէպէտ եւ ոչ այնչափ ինչ որչափ խոստացան՝ կատարեցին, սակայն տուան վարձք հաւատարմութեամբ: Իսկ վիմին եւ առընթերակաց աշխարհին պահպանութիւնն Սիսոկոստեայ լինէր յանձն:

ԺԲ. ՆՆՑԻ խաղայր գնայր յԵկբողիմ. իբրեւ այդ լինէր նմա թէ յԵրիկեայ ումեմնէ անձուկք ճանապարհին արգելեալ են ի հաղարգք, զծանր գունդ զօրացն Կլինեայ տայր, զի տանիցի հանդարտագոյնս: Ինքն պարսաւորգքն եւ աղեղնաւորգքն յառաջ մատուցեալ, եւ մերժեալ ի տեղւոջէն զայնոսիկ որ զխոխոմսն պաշարեալ էին, հորդէր ճանապարհ զօրաց որ զայլին զհետ նորա: Իսկ Հնդիկք կամ առ տալ զզօրավարն կամ առ հաճոյ յաղթողին լինելոյ, զԵրիկէս յարձակեալ սա-

տանէցին ի փախստեանն, եւ զգլուխ նորա եւ զգէնն եւ զզարդն բերին կալան առաջի Աղեքսանդրի: Նա առանց պատժի թող զգործն, բայց պատիւ եւ մեծարանս շնորհեաց, զի մի օրինակ չարեաց իրքն լինիցին:

Անտի ի Հնդիկ գետ հասանէր ի վեշտասաներորդումն չուին, եւ զամենայն, որպէս յառաջագոյն պատուէր տուեալ էր, գտանէր կազմեալ պատրաստեալ ի Հեփեստիոնեայ: Այլ թագաւոր ի նմին գաւառի Ոմփիս, որ եւ հօրն իւր խրատ տուեալ էր տալ զթագաւորութիւնն՝ Աղեքսանդրի: Իսկ յետ հօրն մահու արձակեալ էր հրեշտակս զի հարցանիցեն, թէ կամ իցէ արդեւք նմա թագաւորել ի ժամանակին յայնմիկ թէ առանց թագաւորութեան մնալ դալստեան նորա: Թէպէտ եւ թողութիւն եւս եղեւ նմա թագաւորելոյ, սակայն չառ նա յանձն զիրաւունսն որ տուան՝ արկանել ի կիր: Սա եւ զՀեփեստիոն ընկալեալ էր սիրով մարդասիրութեամբ, եւ արմտիս բաշխեաց ձրի զօրաց նորա, բայց չել նա ընդառաջ նորա, զի զչափ առցէ ոչ թէ

զայսպ ուրուք, այլ զԹագաւորին հաւատարմութեան։ Վասն այնորիկ իբրեւ յուղղոյ էր Թագաւորն, եւ ընդ առաջ նորա զօրօք մատեւոյք. եւ փիղք եւս խառնեալ առկային ինչ անջրպետութեամբ ընդդունդս զօրացն, որ ի հեռաստանէ զկերպարանս աւանաց երեւեցուցանէին։ Նաւ Աղեքսանդրոս նախ կարծէր թէ ոչ բարեկամ եւ նիզակակից այլ թշնամի գայ։ Նա տուեալ էր խսկ նորա հրաման զօրացն առնուլ զէնս զանձամբք եւ հեծելազօրուն պատուիրէր ի թեւս բաժանել, կազմեալ պատրաստեալ ի մարտ պատերազմի։ Նաւ իբրեւ ի միտ առնդիկն զմոլորութիւն Մակեդոնացւոցն, հրաման տայր այլոցն զտեղի առեալ կալ, ինքն արշաւեցուցանէր զերիվարն յոր հեծեալն էր. զդոյն եւ Աղեքսանդրոս առաջ, թէպէտ թշնամի գայր ընդ առաջ թէպէտ բարեկամ, կամ քաջութեամբ խւրով ի զգուշութեան կամ հաւատարմութեամբ նորա։ Նչկին հասին ի միմեանս եւ յերկոցունց երեսացն գոյր հնար առնուլ ի միտ թէ բարեկամք էին մօզք. բայց

առանց թարգմանի չէր մարթ խօսս արկանել: Վասն այնորիկ բերեալ թարգմանն ի մէջ, ասէր խուժադուժն թէ ընդ առաջ եկեալ եմ զօրօք հանդերձ, կամիմ տալ վաղվաղակի զամենայն թագաւորութիւն իմ, եւ ոչ մնացի զի ի ձեռն պատգամաւորաց լինիցին ի միջի դաշինքն: Զանձն իմ եւ զթագաւորութիւն իմ թողում քեզ զի գիտեմ թէ վասն փառաց գաս ի մարտ պատերազմի եւ յոչինչ իմեքէ առաւել զանգիտես բայց ի նենգութեանն համբաւոյ:

Զուարճացեալ լինէր յանձն իւր թագաւորն ընդ միամտութիւն բարբարոսին եւ տայր զաջ ձեռն իւր դրաւական հաւատոց իւրոց եւ հաստատէր նմա միւսանգամ զթագաւորութիւնն: Իսկ էին ԾՁ փիղք զոր ետ նա Աղեքսանդրի, եւ բազում խաշինս մեծամեծս, եւ ցուլս Գ հազարս, որ մեծագինք են յաշխարհին յայնմիկ եւ սիրելի թագաւորաց: Իբրեւ եհարց ցնա Աղեքսանդրոս, թէ մշակք արդեւք եթէ զօրականք բազմագոյնք եւ յաճախագոյնք իցեն նորա. Նա ետ պատասխանի թէ որովհետեւ ընդ եր-

կուց թագաւորաց կռուիմ առաւել զօրականաց պէտք են ինձ եւ ոչ շինականաց բազմութեան: Աբիսա-րէս եւ Պորոս էին թագաւորքն, այլ առաւել ճոխ էր Պորոս: Նա եւ եր-կոքին թագաւորքէին անդր իսկ քան զՀիդասպայ գետ, ի մէջ եղեալ տալ մարտ պատերազմի ողջ եւ ընդդէմ բանակիցի նոցա: Իսկ Ոմփիս առ եւ նշանն արքունական, զի այսպէս արար նմա թողութիւն Աղեքսանդրոս, եւ զնոյն անուն զոր հայր իւր ունէր ըստ աշխարհին սովորութեան: Տաքսի-լէս կոչէին ժողովուրդն զամենեսին յորս անցանէր թագաւորութիւնն: Այնուհետեւ իբրեւ երեքօրեայ ժա-մանակ ասպնջականութեամբ ընկա-լաւ զԱղեքսանդրոս, յաւուրն չոր-րորդի ցուցանէր թէ որչափ ցորեան ետ նա զօրացն զոր ածեալ էր Հե-փեստիոնեայ, եւ այլ պսակս ոս-կիս նմա եւ բարեկամաց նորա ամե-նեցունց, եւ բաց յայնմ ամենայնէ տայր պարգեւ Ձ քանքար արծաթոյ դրոշմելոյ: Յոյժ իսկ ուրախ եղեւ Աղեքսանդրոս ընդ մտադիւրութիւն մարդասիրութեան նորա, հատոյց զամենայն զոր նորա տուեալ էր եւ

յաւելուլ հազար քանքար յաւարէ անտի զոր բերէր եւ անօթս բազում խրախուսութեան յոսկւոյ եւ յարծաթոյ, եւ բազում ձորձ պարսիկ, եւ Լ երիւարս յերւրոց երիւարաց Նսայէն տապաղինաւն որով սովոր էին զարդարել յարժամ ինքն հեծանէր: Այն առատութիւն արկ զգութ բարբարոսին ընդ նմա, բայց արտաքեցոյց սաստաւիկ զբարեկամին: Յորոց Մեղէագրոս, արբեալ առատապէս ի վերայ ընթրեացն, ասէր թէ խնդակից եմ Աղեքսանդրի, զի գտնէ ի Հնդկաց աշխարհին եգիտ նա զըզ արժանի հազար քանքարաց: Խոադաւորն քանզի չէին լեալ նմա մոռացօնք թէ որպէս սարջազաւ զի զԿղիտոս սպան վասն լեզուին ժպրհութեան, արգել զարամտութիւն իւր եւ ասէր, թէ մարդք նախանձոտք անձանց տանջիչք եւ դահիճք են:

ԺԳ. Ի ՎԱՂՈՒ անդր հրեշտակք Աբիսարեայ եկին առ թագաւորն: Զընաւ ատնէին յանձն իշխանութեան նորա, որպէս էր խնդ առնեալ պատուէր. եւ հաստատեալ երկոցունց կողմանց զհաւատս բարեկա-

մութեանն արձակէին այսրէն առ թագաւորն ։ Օ՛մաս ած Աղեքսանդրոս թէ ղուցէ եւ զՊորոս ձեռնհաս իցէ համբաւաւ անուան իւրոյ խոնարհեցուցանել առ զանձն, արձակէր առ նա զԿղէոքարէս, զի պատուէր տացէ նմա զհարկն տալ, եւ յառաջնում մտի սահմանաց իւրոց ընդ առաջ ելցէ թագաւորին ։ Պորոս տայր պատասխանի թէ զմին ի դոցանէ առնեմ, զի յորժամ մտանիցէ ի թագաւորութիւն իմ ելից առաջի նորա, բայց զինուք եւ սպառազինօք ։ Մինչ ի մտի եդեալ էր Աղեքսանդրոս ընդ Հիւդասպ անցանել, Բարզենտէս առաջնորդ ապստամբութեան Արաքոսիացւոցն կալեալ կապեալ տայր, եւ միանգամայն փիղս կալեալս որ պատեհագոյն թիկունք օգնականութեան ընդդէմ Հնդկացն էին, քանզի առաւել ի գազանան յուսային քան ի զօրսն, եւ նոքին մանաւանդ էին ոյժ եւ զօրութիւն նոցա ։ Գամաքսոս արքայ սակաւու մասին Հնդկացն որ Բարզենտեայ ընկեր կցորդեալ էր, ածաւ կապանօք ։ Տուեալ այնուհետեւ զփախստեայն

եւ զարքունականն ի պահ զգուշու-
թեան, եւ զփիղն յանձն արարեալ
Տաքսիղեայ հասանէր ի գետն Հիւ-
դասպ, եւ Պորոս նստեալ էր յայն-
կոյս գետոյն արգել լինել անցանե-
լոյ թշնամեացն: Փիղս հուժկուս եւ
սաստիկս Ձ. եւ Ե առաջի առեալ
էր, եւ անդր իսկ քան զնոսա Յ
կառս եւ զրեթէ Լ հազարս հետեւ-
ակաց, յորս եւ աղեղնաւորքն էին
ծանր ծանր նետիւք, որպէս յառա-
ջագոյն ասացաւ, որպէս զի չկարել
իսկ աջողութեամբ ձգել: Ինքն հե-
ծեալ ի փիղ մի յաղթ եւ բարձրա-
գոյն քան զայլս ի գազանացն, եւ
զէնք եւ զարդք ոսկիապատք եւ ար-
ծաթապատք զյաղթանդամ մար-
մինն շքեղացուցանէին: Նաեւ էր նո-
րա քաջութիւն ըստ ուժոյ պնդու-
թեան մարմնոյ եւ որչափ ինչ ի մէջ
բրտագունեաց հնար էր իմաստու-
թեան գտանել:

Ահ կալաւ զՄակեդոնացիսն ոչ
միայն վասն թշնամեացն տեսլեան
այլ եւ վասն գետոյն յորդ յաղթու-
թեանն ընդ որ անցանել հասանէր:
Ի լայնութիւն տարածեալ է վտաւ-
անս չորս. խոր է յոյժ եւ չունի

ուրեք հուն, եւ բերէ զնմանու-
թիւն կերպարանաց լայնատարած
ծովու։ Այլ ոչ ըստ ընդարձակու-
թեան ջուրցն ի լայնութիւն տարա-
ծելոց կարծէր զուժգնութիւնն. այլ
իբրեւ այն թէ նեղեալ եւ անձկա-
ցեալ ափունքն իւրեն այնպէս եր-
թայր դարիւ եւ դարիւ. եւ ալիքն
որ ի տեղւոջ տեղւոջ բաղխեալ զաւա-
նայրն զուշակ լինէին թէ քարինք
կան ծածկեալ ի նոսա։ Նաւեալ
եւս ահագին եւ սոսկալի էր տեսիլ
գետեզերին զոր երիւարքն լցեալ էին
եւ մարդիկն։ Իբրեւ զխուռն այն-
պէս կանգնեալ կային բազմադէզ
մարմինք զազանացն, եւ խորհրդով
իւրք՝ զգուշեալք զազանութեամբ
հնչեցուցանէին զօդն ահագին բար-
բառովն։ Նախ գետն եւ անտի
թշնամին եւ զայն սիրտս որ լի էին
յուսով եւ բազում անգամ առաջի-
նացեալ նահատակութեամբ յան-
կարծակի ահիւ խուճապեցուցա-
նէին։ Վասնզի զանհաստատ լա-
տիցն կարծէին թէ ոչ ի գետեզերն
մարթէին ուղղել եւ ոչ կալել հաս-
տատուն։ Բազում կղզիք էին ի
միջին վայրի գետոյն, յորս եւ հըն-

դիկք եւ Մակեդոնացիքն ի լեառն եր-
թեալ ամբարձեալ զզէնսն ի վերոյ
քան զգլուխս իւրեանց անցանէին։
Ընդ թեթեւ ինչ կռիւք լինէին,
եւ երկոքին իսկ թագաւորքն
փոքր ինչ պատերազմաւ զչափ առ-
նուին զելից մեծի պատերազմին։
Այլ ի զօրու անդ Մակեդոնացւոցն
ժպրհութեամբք եւ յանդգնութեամբք
երեւելիք Սիւմաքոս եւ Նիկանոր
եղեն, երիտասարդք ազնուականք՝
վառեալք եւ գրգռեալք ի համա-
պաղորդ աջողութենէ կողմանն իւ-
րեանց արհամարհել եւ անդոսնել
զամենայն խուճապ տագնապի։ Նո-
ցա առաջնորդելով ժիրք եւ քաջք
յերիտասարդաց անտի գեղար-
դեամբք միայն անցին ի լեառն ի կըրզ-
զլխն զոր յաճախեալ ունէր թշնամին.
եւ զբազումս ի Հնդկաց անտի որ
ժպրհութեամբ ազնուազոյն քան
զինուք վառեալ էին, սատակեցին։
Մարթ իսկ էր նոցա փառօք եւ
պարծանօք երթալ ի բաց եթէ ար-
դարեւ ժպրհութիւն նոցա յետ
աջողութեանն կայր ի չափուն եւ
ի պայմանսն. այլ մինչ կային մնային
արհամարհանօք եւ ամբարտաւանու-

թեամբ այնոցիկ՝ որ դային ի վերայ նոցա, պատեալք եւ պաշարեալք ի նոցանէ որ դաղան անցեալ էին, ի հեռաստանէ ի նետիցն սատակեցան: Իսկ որ ի թշնամեացն պրծեալ ելանէին մազապուրք, կամ յուժգնութենէ գետոյն յափշտակեցան կամ ի գրդանան ըմբռնեցան:

Այն պատերազմ առաւել պատճառք քաջալերութեան եղեն Պարեայ որ զամենայն ի գետեզերէն նըկատեալ տեսանէր: Իսկ Աղեքսանդրոս տարակուսեալ թէ զինչ գործիցէ, ապա ուրեմն վասն զթշնամիսն խաբելոյ, այսպիսի ինչ նենգութիւն նիւթէր: Էր ի գետ անդ կղզի մի մեծ քան զայլ եւս կղզիսն, եւ նոյն անտառախիտ եւ պատեհ զնենգութիւնն թագուցանելոյ: Եւ փոս եւս խոր անհնարին ոչ ինչ հեռի ի գետեզերէն՝ զոր նա ունէր դրաւեալ, ոչ հետեւակս միայն բաւական էր թագուցանել այլ եւ ըզմարդիկ եւս երիւարօք հանդերձ: Որպէս զի ի պահպանութենէ անտի տեղւոյն պատեհութեան ի բաց դարձուցանիցէ զաչս թշնամեացն, հրամանս տայր Պտողոմեայ ամենայն

զնդօքն հանդերձ ձի արկեալ յայսկոյս յայնկոյս շրջանակել հեռի ի կղզւոյ անտի, եւ զհնդիկսն երբեք երբեք տաղտակաւ զարհուրեցուցանել, իբրեւ այն թէ ընդ գետն կամեցին ի լիւղ անցանել: Յաւուրս բազումս զայն յաճախէր առնել Պտողոմէոս, եւ նոյնպէս հարկ առնէր Պորեայ զգունդն իւր, ի կողմն՝ յոր ինքն Պտողոմէոս կարծեցուցանէր երթալ, դարձուցանել: Իբրեւ անդր իսկ քան զտեսիլ աչաց թշնամեացն էր կղզին, հրաման տայր Աղեքսանդրոս թէ յայլում կողման գետեզերն կանգնեսցի վրանն իւր, եւ զնդին որ սովոր էր լինել նորա ուղեկից, կալ առաջի խորանին, եւ զամենայն կազմութիւն արքունական շքեղ փառաւորութեանն ինքնակամ թշնամեացն ցուցանել: ԶԱտտալոս որ հաւասար էր նմա հասակաւ եւ ոչ օտար երեսօքն եւ մարմնովն եթէ ի հեռաստանէ ոք հայէր ընդ նա, զարդարէր ի զարդ եւ ի ձորձ արքունի, զի կարծեցուցանիցէ այսպէս թէ ինքն իսկ թագաւորն կայ ի գետեզերի անդ, եւ մի մտաբերել անցանել ընդ գետն: Յառաջնումն յա-

զետն հատանէր նաւարկել, եւ թե-
րեւս թշնամւոյն եւս պաշարեալ էր
զգետեզըն զլխովին յոր կուրու-
թեամբ եւ տանոց զգուշութեան
երթային՝ փուտս եւ պարծանս ի
վտանգէն խնդրեալ։ Ըզեքստանդրոս
զմուլթն՝ որ զայլըն ահաբեկ առնէր,
թէպ գիտող ժամ համարեցաւ, եւ
տուեալ նշան զի ամենեքին լռիկ ի
վերայ ելանիցեն, նախ զլասատն յու-
րում ինքն էր հրամայեաց քակել։
Թողեալ էր ամայի զգետեզըն ի
թշնամեաց անտի յոր եւ երթային.
քանզի Պորոս տակաւին Պատողոմեայ
միայն ուշ ունէր։ Նա բաց ի միջէ
նաւէ զոր խորտակեցին ալիք վիմին,
եւ խրեցաւ, այլ նաւքն այրծեալ
եղին. եւ հրաման տայր զօրացն զէն
առնուլ երթալ գունդ առ գունդ։

ԺԴ. Ինքն առեալ առնէր զձա-
նակն յերկուս թեւս բաժանեալ,
եւ անդէն լուր հատանէր առ Պորոս,
թէ զինուք եւ սպառազինօք զրաւ-
եալ է զգետեզըն, եւ մեծ վտանգ
թիւացն հասեալ կայ։ Նա նախ ըստ
չարաչարն ավորութեան մարդկան
որ անձնկալութեամբն զերծանին,
համարէր թէ Աբիսարէս որ նիզա-

կանխեց էր պատերազմի նորա, մօտ հասանէր, զի եւ էին միաբանեալ այնպէս։ Իբրեւ լուացաւ յայտ եղեւ թէ թշնամի է, անդէն ընդ առաջ արձակէր նոցա Ճ չորաձիս եւ Գ հազարս հեծելոց։ Էր զօրավար զօրացն՝ զոր յառաջագոյն արձակեաց, Հագէս եղբայր նորա. բայց գլխաւոր զօրութիւն նորա ի կառսն էր. իւրաքանչիւր ի կառացն տանէր վեց վեց այր, երկուս երկուս վահանաւորս, եւ երկուս աղեղնաւորս, կարգեալս յաջմէ եւ յահեկէ. եւ այլք կառավարք էին, ոչ առանց զինուց. քանզի բազում նետս ի թշնամի անդր տեղային, յորժամ ի մօտոյ հասանէր կռուել, թողեալ լքեալ զերասանակսն։ Այլ ոչինչ պէտք եղեն այն օր գնդին այնորիկ։ Զի որպէս յառաջագոյն ասացաւ անձրեւած սաստիկ առաւել քան զսովորութիւն իջեալ, զդաշտսն ամենայն լպիրծս եւ դժուարին առ գնալ հեծելոցն գործէր. եւ կառքն ծանրացեալք եւ գրեթէ անշարժք եւ անխաղացք ի հեղեղացն եւ ի յորձանաց արգելեալ զտեղի առեալ կային։ Բայց Աղեքսանդրոս արագ-

եւ թեթեւ գնդաւ ճեպեալ երթայր վաղվաղակի ։ Սկիւթացիք եւ Դահք յառաջ քան զամենեսին ի վերայ Հնդկացն անկան, ապա զՊերդիկկաս հեծելազօր զօրօքն յաջակողմն թեւի թշնամեացն արձակէր ։ Եւ գրգռեցաւ պատերազմն յամենայն կողմանց . անդէն այնուքիկ որ զկառսն վարէին, զմտաւ ածեալ թէ այնու մեծ իմն թիկունս օգնականութեան իւրայոցն հասուցանիցեն, արձակեբասսանակ ի միջոց ճգնութեան պատերազմին սկսան արշաւել ։ Բայց այն վիշտք եւ չարիք էին եւ երկոցունց կողմանց . քանզի եւ Մակեդոնացւոց հետեւակազօր զօրք յառաջնում յարձակել անդ, առաթուր հարեալ կոխէին, եւ կառքն որ ընդ լպիրծ եւ ընդ անկոխ տեղիսն արշաւեալ ընթանային, զկառավարսն ի բաց ընկենային . իսկ կիսոցն խռովեալ երիվարքն, ոչ ի խորս եւ ի ձորս միայն, այլ եւ ի գետ անդր զկառսն հոսէին ։ Բայց սակաւաւորք ելեալ մազապուր ի ձենուց թշնամեացն, հասանէին առ Պորոս, որ սաստկագոյնս մարտ եդեալ ոգորէր ։

Այս լինէր եւեւս թէ ցանկացան ցրուեցան կառքն ընդ բանակն ամենայն առանց կառավարաց, զինւորն բաժանէր աւար այնոցիկ ի բարեկամացն, որ մօտն կային նմա: Յետ նոցա կարգեալ յօրինեալ էր զհետեւակն եւ զաղեղնաւորսն որ զթըմբուկսն ասպոր էին հարկանել: Զի թմբուկք փոխանակ փողոց էին Հնդկացն, քանզի եւ ոչ հնչմամբ փողոցն շարժէին, վասն զի ընդելեալ էին լսելիք նոցա ի ծանօթական բարբառն: Պատկեր վահագնի առաջի գնդին հետեւակաց երթայր: Այս առաւել քան զամենայն դրդիչ եւ գրգռիչ պատերազմողացն էր, եւ եթէ թողուին կռելոցն զպատկերն, զինուորութեան յանցանք համարէին: Գլխոյ եւս պատիժս սահմանեալ էր նոցա՝ այնոցիկ որ ոչ դարձուցանէին այսրէն զպատկերն ի ճակատուէ, քանզի երկեւղն զոր երկուցեալ էին երբեմն նոքա ի թշնամութենէ նորա, ի մեծարանս եւ ի պաշտօն էր փոխեալ: Իսկ զՄակեդոնացիսն ոչ միայն զազանացն ահեղին, այլ եւ նորին իսկ թագաւորին կերպարանք սակաւիկ

մի ինչ արգելլին ։ Վասնզի զաղտնիքն կարգեալք մի ըստ միոջէ ի մէջ վառելոցն զնմանութիւն աշտարակաց ի հեռաստանէ բերէին ։ Ինքն իսկ Դարիոս գրեթէ անցեալ զանցեալ էր ըստ չափ հասակի մեծութեան մարդկեղէն մարմնոյ ։ Յաւելլոր եւս ի յաղթանդամութիւն անդր Դորեայ զաղանին յորոյ վերայ հեծեալ էր , զի այնչափ յաղթ քան զամենայն զաղաններն էր , որչափ Դարիոս զայլովքն անցուցանէր ։ Սմին այնորիկ հայեցեալ Աղեքսանդրի եւ ընդ թագաւորն եւ ընդ Հնդկաց թանակն . Այժմ , ասէ , համեմատ քաջութեան որում իմոյ զկերպս վաստագին ատեսանեմ ։ Ընդ զաղանաց եւ ընդ արանց քաջաց միանգամայն գործ հասեալ է ։ Եւ հայեցեալ ընդ Ակեսինոս . Յորժամ եւս , ասէ , ընդ Պտղոմեայ եւ ընդ Պերդիկկայ եւ ընդ Հեփեստիոնեայ ի ձախակողմն թեւի թշնամեացն յարձակեցիմ , եւ նշմարիցես դու զիս ի մէջ ճգնութեան սաստիկ պատերազմի , դու զայլ թեւն շարժեա եւ զդրօշն ած հասո ի վերայ նոցա մինչ տակաւին ի խռովութեան իցեն ։ Դու Անտի-

զենէս եւ զու Ղեւոննատէ եւ Տաւրոն յարձակեցարուք ի միջոց ճակատուն եւ խուճապեցուցէք զառաջակողմն։ Ներգակք մեր երկայնաձիգք եւ հարուսաք ոչ այլ ինչ առաւել պիտանացոյնք են քան ընդդէմ դազանացն եւ վարչաց նոցա. խառնեցէք շփոթեցէք զնոսա որ ի վերայ դազանացն հեծեալ են եւ հարէք զդազանսն զլխովին։ Յերկուական են թիկունք օգնականութեան դազանացն եւ թերեւս ի վերայ իւրայոցն առաւելագոյն դազանիցեն։ Յիշխանութենէ տագնապին ի վերայ թշնամեացն խաղալ, իսկ ի վերայ իւրայոց առ ահին վտանգի։ Իբրեւ զայս խօսեցաւ նախ ինքն ճեպեաց զերիւար իւր. մինչ դեռ նա ի վերայ գնդաց գնդաց թշնամեացն, որպէս կարգեալն եւ սահմանեալ էր, յարձակէր, Կիւնոս մեծաւ սաստկութեամբ ի ձախակողմն թեւոյն խաղայր։ Նոյն գունդն եւս Մակեդոնացւոցն զմիջոց ճակատուն Հնդկացն բեկանէր սաստկութեամբ։

Նոյն Պորոս հրամանն տայր զդազանսն յայն կողմն տանել յորում հեծելազօրն յարձակեցաւ. այլ

յամրագնաց եւ դրեթէ անշարժ իսկ անասունքն չժամանէին երիվարացն երագութեանն։ Նաեւ ոչ պիտանացու իմիք աղեղունք բարբարոսացն էին։ Զի որովհետեւ ծանունք եւ երկայնաձիգք են, եթէ ոչ նախ ի գետին զաղեղնն հաստատիցեն, ոչ դիպողագոյնս եւ քաջ կազմեալ լարիցին. այլ զի լպիրծ եւ կակուղ էր գետինն եւ լինէր արգել գործոյն մինչ զի յառաջ քան զձգել նետիցն կանխեալ ապրէին արագութեամբ թշնամիքն։ Նոյնուհետեւ արհամարհեալ եւ անգոսնեալ զհրաման թագաւորին, որպէս բաղում անգամ դէպ լինիցի յորժամ այնոցիկ որ ի խռովութեան իցեն առաւել ահն սկսանիցի իշխել քան զօրավարն, այնչափ զօրավարք եւ սպարապետք էին, որչափ գունդք աստ անդ կային։ Ոմն հրաման տայր յարեալ խառնել զճակատն, եւ այլ ոմն բաժանել եւ ոմանք զտեղի տանել եւ կալ եւ կէզք պաշարել զլեառն կողմն թշնամեացն. եւ ոչ մի ինչ փոյթ էր զմիջոցէ ճակատուն։ Նոյն Պորոս հանդերձ սակաւաւորօք որոց ամօթն եւ պատկառութիւնն

առաւել էր քան զայն, սկսաւ զցրուեալսն ի մի վայր գումարել եւ ընդ առաջ երթալ թշնամւոյն, եւ զփիղսն յառաջ քան զգունդ խուժաոցն հրամայէր արկանել ։ Բազում ահ եւ երկեւղ զազանքն յաճախէին, եւ աղաղակն անընդհատ ոչ զերկիւարան միայն որ ի բնէ իսկ երկչոտ անասուն է, այլ եւ զարսն եւ զգունդսն խառնակեալ եւ շփոթէր ։ Անդէն որ յառաջ քան զատկաւելի մի յաղթօղքն էին՝ փախստեայ տեղի խնդրէին, յորժամ զԱգրիփացիսն եւ զԹրակացիսն զթեթեւսն վառեալս որ ազնուագոյնս յարշաւելն կռուէին քան ի մօտոյ ուստեք, ի վերայ զազանացն արձակէր ։ Ասքա անհնարին բազում նետս եւ ի վերայ փղացն եւ ի վերայ փղապանացն ձգէին ։ Այլ գունդն եւս Մակեդոնացւոցն պնդեալ զհետ մտանել սկսաւ զարհուրելոցն ։ Իսկ ոմանք առաւելագոյն զհետ պնդեալ զազանացն՝ վիրօքն ի վերայ անձանց իւրեանց զայրացուցեալ զգրգռեցին ։ Այնուհետեւ ոմանք կոխեցան առաթուր զազանացն եւ այլոցն եղեն օրինակք զի մի կարի ինչ մօտակացին ի վերայ նոցա ։ Անհաւանող այն

իսկ ուստի՝ ահագին էր, զի զզէնսն եւ զարսն յափշտակեալ տային ի վեր փղապանացն : Նոցա անկայտ յերկոցունց կողմանց պատերազմ էր այնոցիկ որ մերթ զհետ փղացն երթային եւ մերթ ի փղացն ի փախուստ դառնային, եւ այնպէս ցմեծ մասն աւուրն պէսպէս իմն կաքաւ ձգեալ յերկարէր. մինչեւ տապարօք, քանզի այսպիսի ինչ հնարս պատրաստեալ էին, սկսան զոտս գազանացն հատանել : Կոչէին կոպիս զսուսերսն որ սակաւիկ մի կորացեալ իցեն ըստ օրինակի գեղարդանց, եւ նոքօք զձեռս գազանացն հարկանէին : Եւ ոչ առանց ջանալոյ անցանէին նոքա զիւիք զի այսպէս սաստիկ էր ոչ մահուանն միայն երկեւղն, այլ եւ նոցա տանջանացն ահն որ ի մահու անդ էր :

Այնուհետեւ փիղքն նեղեալք եւ վաստակեալք վիրօքն զհեծեալսն սաստկութեամբ ի վայր կործանէին, եւ փղապանքն ի գետին կործանեալք, կոխան ոտից փղացն լինէին : Վասն այնորիկ իբրեւ զխաշինս այնպէս ահիւ եւ ոչ եթէ ոգորելով անդր քան զճակատն ելանէին. եւ

Պորոս լքեալ թաղեալ ի բազմաց անտի, զնետսն զոր վաղ իսկ յառաջագոյնն պատրաստեալ էր, սկսաւ ի փողէ անտի իւրմէ արկանել ի վերայ այնոցիկ որ շուրջն հեղեալ զեղեալ էին զնովաւ, եւ զբազումս ի մօտոյ խոցէր, եւ զնա ինքնին, քանզի անդէն ի միջի անդ էր, յամենայն կողմանց կամէին հարկանել: Իննն վէրս էր առեալ աստի ի թիկունս եւ անտի ի լանջսն, եւ իբրեւ հոսեաց բազում արիւն եւ ապաժոյժ թալացան անկան ձեռք նորա եւ զնետսն ոչ եթէ արձակէր այլ թողոյր անկանել: Իսկ գազանն եւս քաջութեամբ ցասմամբ վառեալ եւ առանց վիրաց եւ հարուածոց ի վերայ գնդացն յարձակէր, մինչեւ ետես փղապանն զթագաւորն զի անդամքն նուաղէին եւ զզէնսն ի բաց ընկեցեալ հազիւ թէ մտացն տէր էր, վասն այնորիկ ի փախուստ զգազանն ճեպեցուցանէր: Յայնժամ վայրի պնդէր Աղեքսանդրոս զհետ նորա. այլ երիւար նորա խոց վիրաւոր եւ նուաղեալ անկեալ տապալեցաւ, բայց ի բաց իսկ եդ զթագաւորն եւ ոչ ընկէց: Նմին իրի մինչ զերիւար իւր փոփոխէր գան-

դաղագոյն պնդեցաւ զհետ նորա։ Յայնմ ժամանակի եղբայր Տաքսիղեայ Հնդկաց Թագաւորի արձակեցաւ յԱղեքսանդրէ, սկսաւ խրատ տալ Պորայ մի պնդել ի սպառ եւ զյետին իսկ վիշտան կրել այլ տալ զանձն յաղթողին։ Այլ նորա թէպէտ եւ հատեալ էր զօրութիւնն եւ պակասեալ արիւնն, այլ զարթուցեալ ի ծանօթական բարբառոյն. Ճանաչեմ, ասէ, զեղբայրն Տաքսիղեայ զայն՝ որ տէրութեանն եւ թագաւորութեան իւրոյ մատն եղեւ. եւ զնետն որ միայն էր մնացեալ ձգեաց ի նա, եւ այն անց կարան ի կարանէ թափանցանց ի թիկունսն։ Իբրեւ զայս վերջին գործ նահատակութեան վճարեաց, սկսաւ ճեպել սաստկագոյնս ի փախուստ. եւ փիղն եւս որ բազում նետս առեալ էր, նուաղէր։ Մասն այնորիկ անդէն առ զկայ, եւ զհետեւակազօրն արկ առաջի թշնամւոյն որ պնդեալ գայր զհետ։ Նչկն եհաս Աղեքսանդրոս, իբրեւ ի միտ առ զհեստեալ յամառութիւն Պորեայ հրամանն տայր դիմադարձացն մի խնայել։ Այնուհետեւ յամենայն կողմանց եւ ի հեծե-

ղոք անկեալ եւ աղաչեցեալ էր։ Վ՛անողի ոչ գարշեցաւ ընդունել զաներկեւղ մեծանձնութիւն նորա, որ եւ ոչ բախտիւն բեկեալ էր եւ վհատեալ, եւ այն՝ ոչ միայն առ գութ ողորմելոյ այլ եւ մեծամեծար մեծարանօք։ Մինչ դեռ խօթն իսկ էր դարմանեաց զնա։ Իբրեւ այն թէ յիւր վերայ էր մարտուցեալ. եւ իբրեւ արտաքոյ քան զամենեցուն յոյս եւ ակնկալութիւն հաստատեցաւ առողջութեամբ, ընկալաւ զնա ի համար բարեկամացն. ապա ետ նմա պարգեւ մեծ եւս քան զթագաւորութիւնն՝ զոր ունէր, թագաւորութիւն։ Արդարեւ ոչ մի ինչ քան զոյն հաստատագոյն եւ ազնուագոյն ունէր սիրտ նորա որպէս զայն՝ զի ընդ ճշմարիտն քաջութիւն եւ ընդ փառս զարմանալը. այլ առաւել միամտութեամբ կշռէր զհամբաւ քաջ անուան ի վերայ առն թըշնամւոյ քան ի վերայ քաղաքացւոյ։ Օֆի զմտաւ ածէր մեծութեան իւրոյ քակել եւ նուաղել յիւրոց անտի, եւ զի առաւել յաճախագոյն փառքն լինէին որչափ մեծամեծք եւ աւագք այնողքիկ էին որոց ինքն յաղթէր։

# Կ· ԿՈՒՐՑԵԱՑ ՌՈՒՓԱՑ

## ՎԱՍՆ ԳՈՐԾՈՑ

# ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԵԾԻ

---

## Թ ԴՊՐՈՒԹԻՒՆ

## ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. Աղեքսանդրոս անցանէ յաշխարհն Հնդկաց յետ Պարսից յաղթելոյ, եւ հնազանդէ ընդ իւրեւ ազգս բազումս եւ գաւառս բազումս, որոց բարուց եւ սովորութեանց կայ անդէն նկարագիրն։

Բ. Իբրեւ կամէր հարկանել ի դիմի Գանգարիդացւոցն եւ Պրասիացւոցն քաջալերէ զզօրսն բանիւք բազմօք ի ժուժկալութիւն համբերութեան, քանզի վաստակեալ էին եւ չկամէին երթալ ի մարտ պատերազմի։

Գ. Կիւնոս կացեալ խօսի փոխանակ ամենայն զօրացն առաջի Աղեքսանդրի եւ յետ սակաւ ինչ միոյ ախտիւ ջերեալ վախճանի։

Դ. Աղեքսանդրի Սիբացւոց եւ այլոց եւս ազգաց ազգաց տիրեալ մտանէր ի գաւառս Ոքսիդրաքացն եւ Մաղղացն. ի փախուստ զբարբարոսսն դարձուցանէ եւ յարդել արկեալ պաշարէ զքաղաքն նոցա, ոչ ինչ զանգիտեալ ի կանխախօսութենէ Դէմոփոն ըղձի։

Ե. Վէրս առնու յՈքսիդրաքաց քաղաքին յոր վազեալ մտեալ էր. եւ յետ անկանելոյ ոմանց ի քաջ քաջ զօրավարաց իւրոց եւ քաղաքին առնելոյ, դրեթէ մեռեալ եւ լքեալ գտին զնա։

Զ. Աղաչէին զնա բարեկամք իւր հոգալ զանձին իւրոյ եւ զհասարակաց փրկութիւն.

բայց այլք նա նոցա ազնուական պատասխանի պնդեալ ի միաս իւր տիրել ամենայն երկրի։

Է. Ցածուցանէին զապստամբութիւն Յունաց ոմանց ի գաւառս Բակտրիացւոց։ Աղեքսանդրոս առնէ կոչումն Հրեշտակացն Հնդկաց. եւ անդէն ի հացին Հոռատաս եւ Դիոքսիպպոս գժտեցան եւ հարան ի միմեանս մենամարտիկ կռուով։ Յետ ոչ բազում ժամանակի Դիոքսիպպոս առ չժուժալ զպարտութեան իւրոց թշնամեացն անձամբ յանձն ձեռնամուխ լինէր։

Ը. Աղեքսանդրի առեալ պատարագս ի Հրեշտակացն Հնդկաց, նուաճէ զՍաբրակացիս եւ զՄուսիկացիս եւ զՊրեստացիս եւ զայլ եւս ազգս։ Պտողոմէոս բուժեցաւ ի վէրէ թունելոյ խոցման զորոյ պատկերն ընդ քուն էր տեսեալ Աղեքսանդրի։

Թ. Աղեքսանդրոս սաստիկ ցանկացաւ տեսանել զՈվկիանոս, եւ հասանէ ցանկութեանն. բայց պատահէ վտանգի վասն անտեղեկութեան նաւորդացն եւ նաւապետացն։

Ժ. Դարձեալ ի կողմանց Ովկիանոսի յաշխարհն Արաբիտացւոց եւ Գեդրոսիացւոց եւ Հնդկաց, յորում վայրի նեղի զօրն ի սովոյ եւ ի ժանտէ. բայց նա անդէն զկարեւոր կարեւոր ինչ պատուիրէ։ Յետ այնորիկ ի ճեմելն ելանէր ըստ օրինակի նմանութեան Սպանդարամետին. բայց խառնեցաւ արիւնհեղութեան վասն տանջանաց մահու Ասպաստեայ առն սատրապի։

## Կ· ԿՈՒՐՏԵԱՑ ՌՈՒՓԱՑ

## ՎԱՍՆ ԳՈՐԾՈՑ ԵՒ ԱՐՈՒԹԵԱՆՑ

# ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԵԾԻ

## ԱՐՔԱՅԻ ՄԱԿԵԴՈՆԱՑԻՈՑ

## Թ· ԴՊՐՈՒԹԻՒՆ

*Ա· ԱՂԵՔՍԱՆԴՐՈՍ զուարճացեալ ընդ այն երեւելի եւ անուանի յաղթութիւնն որով կարծէր թէ բացան եւ հորդեցան առաջի նորա սահմանք արեւելից, զոհս արեգական կոտորէր եւ զզօրսն եւս զի յորդորագոյն մտօք զմնացեալ պատերազմունսն վճարիցեն, ճառ արկեալ յարգէր եւ գովէր եւ յայտ առնէր թէ որ ինչ զօրութիւն եւ ոյժ էր Հնդկաց, այն սպառեցաւ ի պատերազմին յայնմիկ. առ եւ աւար մնացեալ է, եւ ի գաւառի անդ է ընչաւետութիւնն մեծ եւ անուանի, զոր խնդրեն: Վասն որոյ անարգ եւ գձուձ են առ նոքօք կապուտքն Պարսից. ակամբք պատուականօք եւ մարգարտօք եւ ոսկւով եւ ժանեօք փղաց լի լինելոց են ոչ ձեր*

տունք միայն այլ եւ Մակեդոնիա եւ աշխարհն Յունաց։ Իսկ զօրն առ ցանկութեան ընչիցն եւ փառացն, եւ միանգամայն քանզի ոչ ուրեք խաբեցին զնոսա բանք նորա, խոստանային ջան եւ ճգնութիւն. եւ անդէն արձակէր զնոսա լի յուսով հրաման տուեալ նաւս շինել, զի յորժամ ընդ ամենայն աշխարհն Ասիացւոց երթեալ անցեալ իցեն, տեսանիցէ զսահման ամենայն աշխարհաց զծովն։ Բազում նիւթ նաւուց անդէն մօտ ի լերինան կայր. իբրեւ ձեռն ի գործ արկանէին հարկանել, գտանէին օձս անհնարինս յաղթանդամութեամբ։ Ընդեղջերուք եւս որ դուն ուրեք թէ այլուր գտանիցին, ի լերինան կային։ Իսկ թագաւորն քաղաքս երկուս յերկուս կողմանս գետոյն ընդ որ անց, կազմեալ յօրինէր, սպարապետաց եւ զօրավարաց զօրացն տայր պարգեւս պսակս եւ միում միում հազար հազար ոսկի. եւ այլոցն եւս մի ըստ միոջէ ըստ չափուն եւ ըստ աստիճանին, զոր ի բարեկամութեանն ունէին կամ ըստ ճգնութեան նահատակութեան, տուան պարգեւք։

Աբիսարէս որ յառաջ քան զպատերազմն ընդ Պորեայ հրեշտակս էր արձակեալ առ Աղեքսանդրոս, միւսանգամ այլ հրեշտակս առաքէր որ խոստանային զամենայն վճարել զոր հրամայիցէ, թէ միայն մի զեւր անձն հարկեսցի տալ ի ձեռս. քանզի չկարեմ, ասէ, կամ առանց արքունական տէրութեան կալ կենդանի կամ գերութեամբ թագաւորել: Որում հրամայեաց տանել պատգամ Աղեքսանդրոս թէ ծանր թուիցի նմա առ իս գալ, ես եկից առ նա:

Ընտի ընդ Պորոս գետ անցեալ ի ներքսակողմն Հնդկաց աշխարհին խաղացեալ երթայր: Պորեթէ անբաւ մայրիք տարածեալ էին, հովանաւորք գեղեցիկ եւ մեծաբերձն ծառովք: Նաղուամ ոստք իբրեւ բունս մեծամեծս այնպէս ի գետին կորացեալ, միւսանգամ յետ կորանալոյն ի վեր կանգնէին, մինչ զի ոչ թէ ոստք ոստք յարուցեալք եւ կանգնեալք երեւէին այլ ծառաստանք յոստոց իւրեանց: Նոյնպէս եւ օդոյն խառնուածն օգտակար եւ շահաւէտ. քանզի զպատկութիւն

տապոյ խորշակի արեգականն ստու-
երքն թեթեւագոյն գործեն, եւ
ջուրք յորդեալ յաղբերացն բխեն։
Բայց եւ աստ բազում կային օձք
որոց թեփք զփայլուն ոսկւոյ ու-
նէին։ Իսկ թոյնն քան զամենայն
թոյն վնասակար է, քանզի յետ
խածանելոյն մահ վաղվաղակի ի վե-
րայ հասանէր. մինչեւ ցուցաւ դար-
ման ի բնակչաց անտի երկրին։
Անտի ընդ անապատ եկին ի գետ
անդր Հիւարոտիս։ Առ գետոյն
անտառ կայր թանձրախիտ ծառովք
որ չգուցեն այլուր եւ յաճախեալ ի
բազմութենէ սիրամարգաց վայրի։
Անտի չու առնէր եւ պաշարեալ
առնոյր քաղաք մի որ չէր կարի
հեռի անտի, առեալ եւ պատանդս
ի նոցանէ արկանէր հարկ ի վերայ։

Յետ այնորիկ երթեալ հասանէր
ի մեծ քաղաքն որ ի գաւառի անդ
է, որ ոչ պարսպօքն միայն ամրա-
ցեալ է այլ եւ ծովալճիւ. բայց
խժոցն սայլս ի միմեանս խառնեալ,
ընդ առաջ պատահէին նոցա ի մարտ
պատերազմի. կէսոցն զէնք նիզակք
եւ տէգք էին եւ կէսոցն տապար ի
ձեռին վազվազեալ սատնոյին վաղ-

վաղակի սայլէ ի սայլ, յորժամ ի Թիկունս վաստակելոցն կամէին հասանել։ Նաեւ նախ անընդել պատերազմին զարհուրեցոյց զՄակեդոնացիսն, զի անդէն ի հեռաստանէ մերս առնոյին, բայց յետ այնորիկ անգոսնեալ զայնպիսի անկարգ գունդ սաստի անտի սկսան զսայլիւքն զեռալ, եւ զպատերազմօղսն ցանեալ ցրուել։ Նաեւ զզօղսն որով յարեալ եւ խառնեալ կառքն էին՝ հրամայեր հատանել, զի դիւրաւ մի մի ի կառացն պաշարեալ պատիցի։ Ասն այնորիկ իբրեւ Ը հազարք անկ̀ան ի նոցանէ, երթեալ ի քաղաքն ապաստանէին։ Ի վաղիւ անդր սանդուղս մատուցեալ յամենայն կողմանց պատէր քաղաքորմն եւ սակաւք միայն ապրեցան երագութեամբ գնացից իւրեանց։ Իսկ որք ի միտ առեալ զաւեր եւ զքանդումն քաղաքին անցին ի լիւղ ընդ Ծովակն, անհնարին ահ եւ երկեւղ տարեալ հասուցին ի վերայ դղրացի քաղաքացն, զի պատմեցին սոքա նոցա թէ գունդ առանց պարտութեան եւ դէց զօրականք եկեալ հասեալ են։

Իսկ Աղեքսանդրի զՊերդիկկաս արձակեալ թեթեւ զօրօք աւերել քանդել զգաւառն, զմասն մի զօրացն տայր ի ձեռս Եւմենեայ, զի եւ սա զբարբարոսն ածցէ ի հնազանդութիւն. եւ ինքն զմնացեալ զունդն առեալ տանէր ի քաղաք անդր հարուստ եւ զօրաւոր՝ յոր եւ այլոց եւս քաղաքաց բնակք անկեալ էին։ Քաղաքացւոց յղեալ առս զի պաղատիցին թագաւորին, ինքեանք ի մարտ պատերազմի պատրաստէին։ Քանզի իբրեւ յարեաւ խռովութիւն՝ յայլ եւ այլ խորհուրդս ամբոխն բաժանեցաւ. կէսոց թուէր թէ ամենայն ինչ քան զյանձն լինել լաւագոյն եւ ագնուագոյն է, եւ ոմանք այսպէս կարծէին թէ չիք ինչ ի նոսա զօրութիւն եւ ոչ մի։ Բայց քանզի ոչ ինչ առ հասարակ խորհուրդ խորհէին միաբանութեամբ որ յանձնն կամէին լինել, զդրունսն բացին եւ զթշնամին ի ներքս առին։ Աղեքսանդրոս թէպէտ եւ կարօղ եւ ձեռնհաս էր իրաւամբք ցասնուլ ի վերայ առաջնորդաց պատերազմին, սակայն ամենեցուն առնէր թողութիւն. եւ

տաճար ի նոցանէ պատանդս՝ առա ջուեալ երթայր ի մօտաւոր քաղաքն։ Պատանդքն առաջի բանակին երթային, զորս իբրեւ ի պարըսպացն ճանաչեն, արկին խօսս ընդ նոսա իբրեւ ընդ համազգիս։ Նոքա կացին պատմեցին զհեզութիւն եւ զգթութիւն թագաւորին միանգամայն եւ զզօրութիւնն, մինչեւ ածին հաւանեցուցին զնոսա ի հնազանդութիւն. եւ զայլ եւս քաղաքսն ըստ նմին օրինակի նուաճէր։

Անտի խաղային գնային ի թագաւորութիւնն Սոփիտեայ։ Այս ազգ, որպէս բարբարոսքն համարին, առաւել է իմաստութեամբ. եւ վարուք լաւութեան կատարի առաջնորդութիւնն. զմանկունս որ ծնանիցի նոցա՝ ոչ որպէս հարքն եւ մարքն կամին, սնուցանեն, այլ որպէս այնոքիկ կամին որոց յանձն իցէ տեսանել զկերպարանս մանկանց։ Եթէ տեսանիցեն զոք ի մանկանց տգեղ կամ անպիտան միով մասամբ անդամոցն հրամայեն սպանանել։ Եւ յորժամ ամուսնանան. ոչ եթէ ըստ ազգի կամ ըստ ազնուականութեան զուգին, այլ ըստ ընտրու-

թեան մարմնոցն կերպարանաց. քանզի այն իսկ մեծարոյ համարի ի վերայ մանկտւոյ: Իսկ քաղաք ազգին այնորիկ՝ յոր հաստուցեալ էր Աղեքսանդրոս զզօր իւր, դրաւեալ պահէր ի Սոփիտեայ: Դրունք փակեալ էին եւ ոչ մի ոք ի վառելոցն ումեք ի վերայ պարսպին եւ աշտարակացն զանձն ցուցանէր, եւ չգիտէին Մակեդոնացիքն թէ թողին եւ լքին արդեօք զքաղաքն բնակիչքն եթէ նենգաւ զանձինս թաքուցանեն, անդէն յանկարծակի բացան դրունքն, եւ թագաւորն հնդիկ ել ընդ առաջ երկուք որդւովք իւրովք ի չափ հասելովք. եւ էր նա կարի երեւելի գեղով իւրով ի մէջ բարբարոսացն: Պատմուճան նորա ոսկենկար ծիրանի որ զպճղունսն ծածկէր. ընդ ոսկեզօծ կօշիկսն յեռեալ էր մարգարիտ, եւ տիգք եւ բազուկք նորա զարդարեալ մարգարտովք. կախեալ կային զականջաց նորա ականք պատուականք երեւելիք սրբութեամբ եւ մեծութեամբ: Զգաւազանն ոսկի բիւրեղք պատեն, զայն գաւազան տայր ձեռն ի ձեռն թագաւորին,

եւ աղաչէր զի ընկալցի մտադիւրութեամբ։ Եւ յանձն առնէր նմա զորդիս իւր եւ զազգատոհմն։

Կան ի գաւառին յայնմիկ շունք ազնիւք յորս երէոց. ասեն թէ չհաջեն՝ յորժամ գազան տեսանեն, եւ առաւել թշնամի են առիւծուց։ Զի զզօրութիւն սոցա ցուցանիցէ Աղէքսանդրի, հրամայէր առեւծ յաղթանդամ եւ վիթխարի առաջի հանել եւ Դ շուն մօտ տանել, եւ անդէն շունքն վաղվաղակի ըմբռնեցին զգազանն։ Ապա շուն մի ի նոցանէ որ ընդ այնպիսի գործս սովորեալ էին, մինչ դեռ այլք ի շանց անտի կամէին զբարձ առիւծուն ի բաց խլել, եւ չկարէին քանզի պնդեալ էր գազանն, սկսաւ սուսերաւ ի բաց կտրել. իբրեւ եւ ոչ այնպէս յաղթեցաւ կամակոր յամառութիւնն, միւսանգամ բուռն հարկանէր, զայլ մասն կտրել եւ յետ այնորիկ յորդորագոյնս կտրէր սուսերաւ զպնդեալն եւ զհաստատեալ։ Նա մինչ դեռ յոգին ապաստան էր, ի վէր եւս գազանին արկ զատամունս իւր. այսչափ պատմեն ցանկութեան տնկել ի բնութենէ ի

դաղանս անդ: Բայց արդարեւ բազում ինչ առեալ գրեմ քան եթէ հաւաստարիմ համարիմ. զի ոչ հաստատել հանդուրժեմ զորոց յերկմիտն եմ եւ ոչ հանել եւ բառնալ ի միջոյ զոր միանգամ ընկալայ: Այնուհետեւ զՍոփիտ յիւրում Թագաւորութեանն Թողեալ խաղաց յառաջ ի գետն Հիփասիս յետ հասանելոյ Հեփեստիոնեայ որ զայլ կողմն դաւառացն էր հնազանդեալ: Փեգէոս ոմն էր Թագաւոր մօտաւոր ազգին. սա խուռն ժողովրդոց հրաման տուեալ գործել զերկիրն որպէս սովոր էին, եւ ընդ առաջ Աղեքսանդրի պատարագօք հանդերձ, յօժարութեամբ ընդունել զոր ինչ պատուէր տայցէ:

Բ. ՄՆԱՑ առ նմա Թագաւորն աւուրս երկուս. եւ յաւուրն երրորդի ի մտի եդեալ էր անցանել ընդ գետն, ընդ որ դժուարին էր անցանել ոչ միայն վասն ջուրցն յորդութեան այլ զի եւ վիմօք եւ քարամբք խափանեալ էր: Ապա հարցանէր զՓեգէոս զոր ինչ արժան էր գիտել, եւ իմացաւ Թէ կայ ԺԱ աւուրց գնաց ճանապարհի յայնկոյս գետոյն ընդ

անապատ եւ անշէն երկիր. եւ թէ տպա զայ Գանդէս մեծ քան զամենայն գետս Հնդկաց աշխարհին, եւ թէ յայն կողմն գետոյն բնակեալ էն Գանդարիդացն եւ Պրասիացւոցն ազգք, եւ Ագգրամէս էր թագաւոր նոցա որ ի հազարաւորս տանեձիոց եւ երկերիւր հետեւակօք զճանապարհսն պաշարեալ էր։ Հանդերձ ոռքիմբք, ասէ, երկուս հազարս չորից ձիոց ձգեալ տանի եւ զազանացն ահ սաստկագոյն է, որոց թիւ է երեք հազար։ Ամենայն չհատալի թագաւորին երեւէր։ Ապա ցՊորոս հարցանէր, քանզի ընդ նմա իսկ էր, թէ արդարեւ ճշմարի՞տ իցեն որ ինչ պատմիցինն։ Նա տայր պատասխանի եւ ասէր թէ չեն սուտ որ ինչ վասն զօրութեան ազգին եւ թագաւորութեանն պատմեցան. այլ որ թագաւորն է, ասէ, անդ, ոչ միայն չազնուական է, այլ եւ անարգ եւ ապաժամանն, քանզի հայր նորա վարսավիրայ էր, որ հազիւ աւուրն շահու հարկանէր զքաղց իւր, եւ վասն վայելուչ գեղոյ երեսացն սիրելի եւ ցանկալի եղեւ բամբշանն։ Ի ձեռն բամբշանն ի մօտաւոր

աշախհման բարեկամութեան թագաւորին որ թագաւորէր ի ժամանակին, մատուցաւ, եւ տայ զթագաւորն սպանեալ նենգաւ, եւ յեայնորիկ պատճառանօք ի վերայ որդւոցն ոստիկանութեան յիւր վարարեաց զթագաւորութիւնն, եւ սատակեալ եւս զմանկունսն զոր որ այժմս թագաւորէ, ծնաւ, որ ատելի եւ գարշելի է ժողովրդեանն որ առաւել զհայրենի բախտն յիշէ քան զիւրն: Զորմէ վկայեացն Պորոս թէ ճշմարիտ է, այն՝ հոգպագմապատիկ ի միտսն արկանէր: Զթշնամին եւ զգազանսն անդրանէր, բայց ի վայրացն կայենից եւ ի բռնութենէ գետոցն զանգիտէր. խիստ եւ դժուարին թուէր զհետացելոց եւ զմերժելոց զհետ պընդել եւ հասանել դրեթէ մինչեւ ցեզր եւ ցկատարած մարդկեղէն երաց: Միւսանգամ կծծութիւն փառաց եւ անյագն ցանկութիւն համբաւոյ չտայր իմիք անկոխ եւ անճանապարհ եւ հեռաւոր երեւել: Նա երբեմն յերկուացեալ երկմտէր թէ արդեւք արդարեւ առնուն յանձն Մակեդոնացիքն յետ ընդ այնչափ

անչափ վայրս աշխարհաց հատեալ անցանելոյ ի ճակատու եւ ի քանակի ի ծերութիւն հասեալք, ընդ հոսանս գետոց որ առաջի ելանիցեն եւ ընդ այնչափ դժուարինս բնութեան որ արգելիչք լինիցին անցանել. զի զմտաւ ածէր թէ քանզի լցեալք եւ ծանրացեալք են աւարաւ, առաւել յոր ունինն կամին վայելել, քան վաստակել ի ստացուածս: Ոչ նոյն միտք են, ասէր, իմ եւ զօրականաց իմոց. ես, ասէ, զամենայն աշխարհաց տէրութիւն ունիմ ի մտի առնուլ եւ տակաւին անդէն իսկ յառաջին սկզբան իրացն եմ. իսկ զօրականն խոնջութեամբ վաստակեալ, որ ինչ վայելչութիւն առ ոտս ելանէ, զայնմանէ կրկաթէ յետ վշտացն յանդ ելանելոյ:

Այս յաղթեաց խորհրդոցն ցանկութիւնն, ի ժողով զզօրան կոչէր եւ ճառ արկեալ խօսէր այսպէս զոյն ձեւ: Չեմ ինչ, ասէ, անտեղեակ, ով զօրականք, թէ բազում ինչ որ բաւական են զարհուրեցուցանել զձեզ, խելօք եւ հնարիւք պատմեցաւ ձեզ յաւուրսս յայսոսիկ ի բնակչաց Հնդկաց աշխարհին.

բայց չէ ինչ ձեզ անծանօթ ընդա- նայնութիւն սոցին։ Նոյնպէս զան- ձունս Կիզիկեցւոց աշխարհին, նոյն- պէս եւ զդաշտս Միջագետաց եւ զԴկղաթ եւ զԱրածանի յորոց ընդ- մին ընդ հուն անցաք եւ ընդ միւսն կամրջաւ, ահագինս Պարսիկքն կար- ծեցուցին։ Ոչ երբեք անարատ հա- սանէ լուրն եւ համբաւն. ամենայն ինչ որ ի համբաւոյ աւանդի մեծ է քան զճշմարտութիւն։ Եւ մեր եւս փառաւորութիւնս թէպէտ եւ հաս- տատուն իցէ՝ սակայն առաւել ու- նիցի անուն քան զգործ արդեանցն։ Ո՞ղք երբեմն գազանացն որ զբար- ձրաբերձ պարսպաց նմանութիւն բերիցեն, ո՞ղք Հիւդասպ գետոյ, ո՞ղք այլոցն եւս որ մեծամեծք ի լսել իցեն քան ճշմարիտք, կարծէր բաւական լինել հանդուրժելոյ։ Այլ խակ երթեալ էաք փախստեայ յԱսիացւոց աշխարհէս եթէ առաս- պելք պատրեալ էին զմեզ։ Կար- ծիցէ՞ք թէ քան զհօտս անդւոց յա- ճախագոյն իցեն փղացն դասակքն. զի անօսր է այն գազան եւ ոչ ան- կանի դիւրաւ ի բուռն եւ եւս դժուարագոյն է զզօնացուցանել։

Նոյնպէս զուր եւ ընդունայն է կալ եւ ի թիւ արկեալ համարել զգունդս հետեւակաց եւ հեծելոց թշնամեացն: Վասնզի որչափ լայնացեալ ստուարանայ գետն նոյնչափ մեղմագոյնս հոսէ. քանզի յորժամ արգելուցուն ջուրք յանձկագոյն եզերաց, եւ մտանիցեն ի նեղ եւ ի նուրբ տեղիս, հոսանս եւ յորձանս գործիցեն. նմին հակառակ՝ յորժամ ընդարձակագոյն տեղին իցէ՝ զանդաղագոյն գնացքն իցեն: Նաեւ դարձեալ ամենայն վիշտք ի գետեզերին են, ուր սպասեալ մնայ թշնամին նաւացն որ անդր մօտիցին: Նոյնպէս թէպէտ լայնագոյն թէպէտ անձկագոյն գետն իցէ, նոյն վիշտք առաջի կան այնոցիկ որ ի ցամաք անդր ելանիցեն:

Բայց դիցուք գրեսցուք թէ այն ամենայն ճշմարիտ է: Միթէ յաղթութիւն ինչ զազանացն զձեզ կամ բազմութիւն եւ կազմութիւն թշնամեացն ահաբեկ առնիցէ: Որ վասն փղացն ինչ է՝ ունիմք օրինակ մօտաւոր առաջի. ի վերայ տերանց իւրեանց սաստկագոյնս յարձակեցան քան եթէ ի մեր վերայ. այն

յաղթ մարմինք անդամոց նոցա տապարօք եւ մանգաղօք յապաւեցան։ Արդ զի՞նչ փոյթ իցէ թէ արդեւք այնչափ իցեն որչափ Պորոս ունէր, եթէ երեք հազարք իցեն, ուր տեսանիցեմք թէ յորժամ մի կամ երկու ի նոցանէ վէրս ի մարմինս առնուցուն եւ այլքն եւս ի փախուստ դառնայցեն։ Պարձեալ սակաւաւորաց եւս ի նոցանէ դժուարաւ առաջնորդեն. իսկ եթէ այնչափ հազարաւորք ի մի վայր գումարիցին, զմիմեանս ճմլիցեն, յորժամ ոչ կալ կարիցեն եւ ոչ փախչել անհնարին եւ անհեդեդ ծանրութիւնք մարմնոց նոցա։ Արդարեւ այնպէս արհամարհեալ անգոսնեցի զգազանսն զայնոսիկ, զի թէ ունէի եւ չհանէի ընդդէմ, ի միտ առեալ՝ թէ առաւել մեզ քան թշնամեաց վնասակարք լինէին։ Ա՛յլ թերեւս բազմամբոխ բազմութիւն հետեւակաց եւ հեծելոց զարհուրեցուցանէ զձեզ։ Քանզի ընդ սակաւաւորաց ընդդելեալ էք կռուել, եւ նախ այժմ ընդ անկարգ գնդի տալք մարտ պատերազմի։ Ակոյ անմկանդ զօրութեան Մակեդոնացւոց ընդդէմ

բազմամբոխ ժողովոց Գրանիկ գետ է, եւ Կիզիկիա որ ողողեցաւ արեամբ եւ ապաժուժաւ Պարսից, եւ Արբեղք, յորոց ի դաշտավայրսն անկեալ տարածեալ են ոսկրոտի այնոցիկ որ ի մէնջ ի պարտութիւն մատնեցան։ Նպա անապան ուրեմն արարէք ակիզըն զգունդս Թշնամեացն ի Թիւ եւ ի համար արկանելոյ, յորժամ անապատ գործեցէք յաղթութեամբ յԱսիացւոց աշխարհին։ Յորժամ ընդ Եղեսպոնտոս նաւարկէաք ի դէպ էր զսակաւաւորութենէ մերմէ ածել զմտաւ. այժմ Սկիւթացիք զհետ մեր եկեալ կան եւ Թիկունք օգնականութեան Բակտրիացւոցն եկեալ հասեալ։ Դահք եւ Սոգդիացիք ընդ մեզ կան ի մարտ պատերազմի։

Սակայն ոչ յայն ամբոխ բազմութեան յուսացեալ եմ, ի ձեր իսկ ձեռս հայիմ, զձեր արութիւն քաջութեան իրացս՝ զոր գործելոց եմ, ունիմ երաշխաւոր։ Յորքան ընդ ձեզ լինիցիմ ի ճակատու, ոչ զիմ եւ ոչ զԹշնամեաց զօրս հաշուիմ. Թէ միայն դուք մտօս զուարթացեալս եւ լցեալս համարձակութեամբ ինձ

ընծայեցուցանիցէք: Ո՛չ թէ ի սեաւմն գործոց եւ վաստակոց մերոց, այլ ի կատարածի անդ կամք. եկայք հասաք յելս արեւու եւ յՈվկիանոսն, եթէ չլինիցի արգել վատութիւնն. անտի յաղթութեամբ նուաճեալ զամենայն սահմանս աշխարհաց՝ դառնայցեմք ի գաւառ մեր: Ա՛ր զայն առնիցէք զոր յոյլ մշակքն առնիցեն, որ զհասեալ բերսն առ անգործ դատարկութեան ի ձեռաց կորուսանիցեն: Քան զվտանգսըն մեծամեծ են հատուցմունքն. մեծատուն եւ ոկար է այն գաւառ: Նմին իրի իսկ ոչ եթէ առ փառս ինչ այնչափ զձեզ, որչափ յառ եւ յաւար տանիմ: Նոք էք իսկ դուք արժանաւորք զի զայն մեծութիւն, զոր ծովն յեզերսն արկանէ տանիցիք յաշխարհն ձեր. արժանի էք թէ ոչինչ առանց փորձոյ, ոչինչ առ ահի լքեալ թողուցուք: Վասն ձեր եւ վասն ձերոց պարծանաց՝ որով ըստ մարդկօրէն բարձրութիւն անցէք զանցէք, եւ վասն իմոց ի ձեզ եւ ձերոց յիս երախտեացն, որովք առանց պարտութեան ընդմիմեանս կռուիմք, աղաչեմ եւ փա-

րելի լինիմ զի մի զայն որ ի ծագս մարդկեղէն իրաց եհաս, զձեր ամոխախ եւ զինուորակից, չասեմ թէ զթագաւոր, լքեալ թողուցուք: Զայն ամենայն հրամայեցի ձեզ բայց զմի զայս կամիմ աղաչել զձեզ: Եւ ես այն եմ որ աղաչեմ, որ ոչինչ պատուիրեցի ձեզ՝ եւ ես չարկի նախ զանձն ի տագնապ վտանգին, որ բազում անգամ ծածկեցի զճակատն ասպարաւ իմով: Մի բեկանէք զարմաւենիդ որ ի ձեռին իմում է, որով Վահագնի եւ Սպանդարամետին զոյգ եւ հաւասար լինիցիմ եթէ չգուցէ ոք չարակն ի միջի: Տուք ինձ, շնորհեցէք զայս աղաչանաց իմոց, զոնէ արդ զպնդեալ եւ յամառեալ լռութիւնդ քակեցէք: Ո՞ւր է այն գոչիւն եւ աղաղակ ցուցիչ փութոյ եւ յօժարութեան ձերոյ, ո՞ւր այն դէմք երեսաց իմոցն Մակեդոնացւոցն: Չկարեմ գիտել, չմարթեմ ճանաչել զձեզ, ով զօրականք, եւ անծանօթ լինիմ ձեզ: Զխլացեալ լսելիս այժմիկ մատուցեալ բախեմ. զմիտսն օտարացեալս եւ վհատեալս ջանամ զարթուցանել:

Նու իբրեւ նոքա գլուխ ի վայր արկեալ լռեալ կային. Ոչ գիտեմ, ասէ, զինչ յանցեալ ի ձեզ յանդէտս, զի ընդ իս եւ հայել իսկ ոչ կամիք։ Թուի ինձ թէ ի մենութեան իցեմ։ Ոչ ոք տայ պատասխանի եւ ոչ գոնէ ասէ ոք, թէ ոչ։ Ընդ որո՞ց արդեւք խօսիցիմ, կամ զի՞նչ պահանջիցեմ։ Ձեր իսկ փառս եւ զմեծութիւն խնդրեմ։ Ո՞ւր իցեն այնոքիկ զորոց սակաւիկ մի յառաջագոյն զգըժտութիւնն տեսի, զի վիճէին թէ ո՞վք առնուցուն զմարմին Թագաւորի վէրս յանձն առելոյ, լքայ թողայ անկեալ ի ձեռս թշնամեաց։ Սակայն եւ միայն եւս կամիմ երթալ յառաջ։ Ուրէք ընկեցէք զիս առաջի գետոց եւ գազանաց եւ ազգացն այնոցիկ յորոց յանուանցն երկուցեալ էք։ Գտանեմ ի նոցանէ որք զայնս որ ի ձէնջ թողաւ, զհետ գայցեն. Սկիւթացիք եւ Բակտրիացիք լիցին ընդ իս, որ յառաջ քան զսակաւ մի մեր թշնամիք էին, եւ այժմ զօրականք։ Լաւ է մեռանել քան պաղատանօք ունել զիշխանութիւնդ։ Երթայք

դարձարուք յաշխարհն ձեր, երթայք պերճացեալ եւ պանծացեալ թէ թողէք լքէք զթագաւոր ձեր։ Այս աստ գտանեմ տեղի յաղթութեան որ առանց յուսոյ է առաջի ձեր, եւ կամ մեծարոյ մահուան տեղի։

Գ. ԲԱՅՑ եւ ոչ այնպէս բարբառ ինչ հնչէր ի զօրաց անտի. կայրին Մեծայրին զի զօրաւարք եւ զօրագլուխք երթեալ առ թագաւոր անդր պատմեցեն, թէ խոնջեալ եւ վաստակեալ զօրացն ի վիրաց եւ ի ստէպ աշխատութենէ ի պատերազմի, ոչ եթէ չախորժեն ինչ ընդ սպաս իւրեանց պաշտամանն, այլ չկարեն տոկալ։ Այլ անդէն զօրքն զահի հարեալ արկեալ զերեսս ի վայր զերկիր նշմարէին։ Այս ինքնին նախ յարեաւ դղրդիւն, եւ յետ այնորիկ հեծութիւն լսելի լինէր. եւ սակաւ ցաւքն յաճախէին, եւ անդէն արտասուք յորդեալ վիժէին, մինչ զի եւ թագաւորն ի գութ դարձաւ յանհնարին ցասմանէն, եւ չկարէր՝ թէպէտ եւ կամէր եւս, ժուժկալ արտասուացն լինել։

Այս իբրեւ ամենայն ամբոխ բազմութեանն կական բարձեալ լային,

Կիւնոս համարձակեալ ի մէջ ան-
ցեալ. մինչ դեռ այլքն դանդաղէին,
մօտագոյն մերձեցաւ ի բեմ անդր,
եւ նշանակէր թէ կամիցի խօսել։
Իբրեւ զնա ետեսին զօրականքն զի
ի բաց առնոյր ի գլխոյն զսաղաւ-
արտն, քանզի այնպէս իսկ բարք
էին նոցա ընդ թագաւորին խօսե-
լոյ, սկսան աղաչել զի վասն զօրացն
խօսեսցի։ Յայնժամ վայրի Կիւնոս խօ-
սել սկսաւ եւ ասէ. Ի բաց արարցեն
ի մէնջ դիք զխորհուրդս ամպարշ-
տութեան, եւ արդարեւ առնեն իսկ
ի մէնջ ի բաց. նոյն միտք են զօրա-
կանացս քոց, որ ինչ հանապազն էր.
երթալ յոր դու հրամանն տաս, տալ
մարտ պատերազմի, ի վտանգ տագ-
նապի մտանել եւ արեամբ մերով
եւ աշխատութեամբ աւանդել զանուն
քո յետնոց։ Վասն այնորիկ եթէ
տակաւին ի նոյն միտս կաս, մերկան-
դամք եւս եւ առանց զինուց եւ
արեանց, որպէս քեզ կամ իցէ,
դամք զհետ քո կամ կանխեմք եւս
քան զքեզ։ Այլ եթէ կամիս լսել
առանց կեղծաւորութեան բարբառ
զօրաց քոց, որ ի յետին հարկէ աստ-
ւի տանջեալ բարբառեցի, աղէ դու

մտօք զլսելիս քո քաղցրութեամբ այնացիկ, որ հրամանի քում եւ կամաց քոց հնազանդ զհետ գնացին եւ գնալոց են զկնի քո յոր վայր եւ երթայցես: Յաղթեցեր յաղթեցեր, արքայ, մեծութեամբ իրաց եւ արուութեանց ոչ եթէ թշնամեաց քոց միայն, այլ եւ զօրուն քում: Լցաք կատարեցաք որում միանգամ ձեռնհաս էր մահկանացութիւնս: Ընդ ծովս հատեալ անցեալ, եւ ընդ աշխարհս բազումս. առաւել մեզ ծանօթ է ամենայն քան բնակչացն: Գրեթէ ի վերջին իսկ սահմանակողմն աշխարհի հասեալ կամք: Դու յայլ աշխարհ կազմիս երթալ, եւ զՀնդկաց աշխարհն խնդրես, որ եւ Հնդկաց եւս անծանօթ է: Կամիս զայնոսիկ որ ի մէջ գազանացն եւ օձից զկեանսն վարեն, ձգել հանել ի դարանացն եւ ի խշտեացն. զի յաղթութեամբքն բազում զաւառս զոր արեգակն չտեսանէ, տեսցես: Ամենեւին իսկ արժանի է խորհուրդն մտաց քոց. այլ բարձրագոյն քան զմեր միտս: Քանզի քաջութիւն քո համակ աճեցեալ զարգանայցէ. իսկ մեր զօրու-

թիւնն հաս ի վախճան եւ ի կատա-
րած: Գիտեսջիր ուսեսջիր զմարմինս տուանց արեան, խոց վիրաւոր, խաբեալ եւ երիթացեալ: Ըլացան ոսկերք մեր, պակասեաց զէն եւ զարդ, հանդերձ պարուիկ արկեալ եմք զանձամբ մերով. քանզի զընտանի հանդերձսն այսր չմարթի բերել: Յարտաքին զարդս հատաք: Որշափիմք են ի մէնջ, որոց զրահք դուցեն. միր երիւար կայ. Հրաման տուր քննել խնդրել թէ քանիք իցեն՝ որոց ծառայք զհետ նոցա դայցեն. կամ թէ զինչ ինչ իւրաքանչիւր մնացեալ իցէ յաւէ եւ յաւարէ: Որ ամենեցուն յաղթեցաք, քան զամենեսին անանկք եւ անինչք եմք: Ոչ եթէ ի զեխութիւն ինչ հարեալ հատաք, այլ պատերազմաւ զպատերազմի դործիս մաշեցաք: Գուն զայս զեղեցիկ զօրս մերկանդամ առաջի դադանա՞ցն արկանիցես. զորս թէպէտ եւ զբազմութիւնն սատուարացուցանիցեն խելօք բարբարոսքն, սակայն թէ բազում է թիւ նոցա զայն եւ ի տուութենէ անտի իսկ առնումք ի միտ: Ապա թէ տակաւին հատա-

տեսալ իցէ մտանել ի ներքս յաշխարհն Հնդկաց, ոչ այնպէս անապատ է գաւառն ի հարաւոյ. եւ եթէ այն գաւառ նուաճիցի, համարձակ լիցի այնուհետեւ հասանել յայն ծով զոր սահման մարդկեղէն իրաց եդ բնութիւնն։ Զի՞մ շրջանակելով խնդրես զփառաւորութիւնն որ անդէն առ ոտս կայ. անդ եւս հասեալ կայ Ովկիանոս։ Եթէ չկամիս մանաւանդ մոլորել, եկայք հասաք՝ յոր վայր առաջնորդեն քեզ փառք քո։ Զայս լաւ համարեցայ ընդ քեզ, քան առանց քո ընդ սոսա խօսել, ոչ զի հաճոյ ինչ զօրացս որ շուրջս կան՝ լինիցիմ, այլ զի մանաւանդ զբարբառ խօսելոյ նոցա լսիցես, եւ ոչ զհեծութիւն տրանջելոյ։

Իբրեւ կատարեաց Կիւռոս զբանս իւր, դոչիւն եւ աղաղակ յամենայն կողմանց յառնէր լալով հանդերձ. զի խառնաձայն հայր եւ տէր զթագաւորն կոչէին. եւ այլ եւս զօրաւորք եւ առաւել երիցագոյնք որոց վասն տիոց հասակին եւ պատուականագոյն էր չմեղադրութիւնն եւ առաւելագոյն ճոխութիւնն, զնոյն

պաղատանս յաճախէին։ Իսկ նա ոչ սաստկակոծ զհեստեալն ձեռնհաս էր առնել, եւ ոչ զզայրացեալն ի հեզութիւն դարձուցանել։ Իբրեւ ոչ գիտէր թէ զինչ գործիցէ, վազեաց ի բաց յատենէն, եւ զարքունիսն հրամայէր փակել, արգելեալ ամենեցուն զմտանելն, բայց միայն ընդելականացն։ Զաւուրս երկուս այնպէս կայր մրմռեալ ցասմամբ. իսկ յաւուրն երրորդի ել արտաքս, եւ հրամայէր ԺԲ բազինս ի չորեքկուսի վիմաց ի յիշատակ արշաւանին կանգնել, եւ զամրութիւնս եւս բանակին ի բաց տարածանել, եւ խշտիս մեծամեծս քան զչափ մարմնոյն թողուլ, զի մեծամեծ կարծիս ամենեքին ունիցին, պատրաստեալ սքանչելիս սաստկութեան այնոցիկ, որ յետոյն գալոց իցեն։ Անտի դարձեալ այսրէն ընդ որ հասեալ անցեալ էր, առ Ակեսինէս գետով բանակ հարկանէր։ Ընդ յանկարծ Կիւնոս ախտիւ ջերեալ վախճանեցաւ։ Արտասուեաց ընդ մահ նորա թագաւորն. այլ յաւել թէ վասն աւուրց սակաւուց երկայն երկայն բանս խօսեցաւ, իբրեւ այն թէ նա միայն

զՄակեդոնիա իջէ տեսանելոց ։ Ի ջուր անդ էր տորմիղ նաւացն վասն որոյ հրաման տուեալ էր շինել ։ Յայնմ ժամանակի Մեմնոն ի Թրակացւոց աշխարհէն ածեալ էր ի լրումն՝ Զ հազար առնեւձիոյ, համդերձ եւթն հազարօք հետեւակաց որ յԱրգաղեայ առաքէին, եւ ԻԵ հազարս զինուց ոսկիապատաց եւ արծաթապատաց ։ Զսոսա բաշխէր, եւ զառաջինսն հրամայէր այրել ։ Իբրեւ կամէր հազար նաւու խառնել յՈվկիանոսն, զՊոռոս եւ զՏաքսիղէս, զԹագաւորս Հնդկաց աշխարհին՝ որ զառաջին ոխութիւնն ի ձեռն առնոյին անկանել միւսանգամ ընդ միմեանս, խնամութեամբ միաբանէր, եւ թողոյր անդէն զնոսա յիւրաքանչիւր սահմանս թագաւորութեանն ։ Եւ վարեցաւ եւս օգնականութեամբ նոցա ի շինուած նաւատորմիղ նաւաց ։ Շինեաց եւ քաղաքս եւս երկուս յորոց զմին կոչեաց Նիկէա, եւ զմեւսն Բուկեփաղա. նուիրեալ զքաղաքն անուան եւ յիշատակի երիւարին զոր կորոյս ։ Յետ այնորիկ հրաման տուեալ զի փիղքն եւ ամենայն կահն եւ կազ-

մածն ընդ ցամաք գայցէ, ինքն իջանէր ի խոնարհ ընդ գետն դրե-թէ քառասուն վտաւան, զոր հանա-պազ վարեալ երթայր յառաջ զի ի պատեհ տեղւոջ զօրքն ելեալ կայցեն։

Դ. ԳՆԱՑԻՆ հասանէին ի գաւառ մի յորում Հիւդասպ գետ յԱկեսի-նէս գետ թափի, անտի անցանէր ի սահմանակողմն Սիբացւոցն։ Ասքա-պատմեն թէ ի գնդէ զօրաց Վահա-գնի իցեն հարք նոցա. զի խօթքն, ասեն, ի նոցանէ մնացեալ են, եւ բնակեալ են ի տեղւոջս զոր մեք այժմիկ գրեալ եմք։ Սորթք գազանաց փոխանակ հանդերձի էին նոցա եւ բիրք զէն եւ զարդ նոցա եւ բազում ինչ նշմարանք զարմին երեւէին, թէպէտ եւ յունականն բարք եղծեալ եւ ջնջեալ էին ի նո-ցանէ։ Անտի վարեալ երթայր յա-ռաջ Մ եւ Ծ վտաւան, աւերէր քանդէր զգաւառն եւ զքաղաքն գլխաւոր ի բուռն առնոյր։ Խ հա-զարս հետեւակաց ի գետեզերին ճա-կատեցուցեալ էր ընդդէմ՝ ազգն. անցեալ ընդ գետն ի փախուստ դարձոյց զնոսա եւ յորժամ ի պա-րիսպն մտեալ ամրացան, հասեալ

վանեալ վտանգէր ։ Ամենայն այր ի չափ հասեալ կոտորեցան եւ որ մնացինն վաճառակուր եղեն ։ Ապա ձեռն արկանէր զմեւս եւս քաղաքս հարկանել, եւ ի բազում յաճախութենէ պատերազմողացն բախեալ, զբազումս կորոյս ի Մակեդոնացւոցն ։ Բայց իբրեւ պնդեալ յամառեալ էր ի պաշարմանն, անյոյս լեալ ի փրկութենէ քաղաքացւոցն, հրձիգ առնէին զապարանսն եւ զանձինս եւս եւ զորդիս եւ զկանայս այրէին ի հուրն ։ Իբրեւ նոքա զհրդեհն ստուարացուցանէին, թշնամիքն ջանային շիջուցանել, եւ էր այն օրինակ նոր կռուոյ ։ Քանդէին զքաղաքն բնակիչքն, եւ թշնամիքն պաշտպան լինէին. այսպէս եւ զբնութեան իրաւունսն ի հակառակ եւ յետս ընդդէմ՝ պատերազմն փոփոխէ ։ Իսկ միջնաբերդ քաղաքին անեղծ եւ անարատ էր մնացեալ. անդ կացոյց նա պահականս. եւ ինքն նաւաւ շուրջ եկն զմիջնաբերդաւն ։

Քանզի Գ գետք մեծամեծք յամենայն աշխարհին Հնդկաց բաց ի Գանգէս գետոյ առ պարապօք մի-

Ջնաբերդին ընթանան: Ի Հիւսիսոյ Ինդոս գետ հոսէ, եւ ի Հարաւոյ Ակեսինէս ի Հիւդասպ խառնի: Իսկ խառնուրդք գետոցն ծփանս ալեաց իբրեւ զծովու գրգռեալ յուզեն. եւ բազում եւ պղտոր կաւոյն որ ի Ջուրցն խուռն հոսելոյ երբեք երբեք ի վեր յուզիցի՝ նեղ եւ նուրբ զճանապարհն գործէ ընդ որ հարկ իցէ նաւացն անցանել: Վասն այնորիկ իբրեւ բազում ծփանք ալեաց ի վերայ անկանէին, եւ ստէպ զառաջս նաւացն անտի զկողմն հարկանէին, զառագաստսն ամփոփել սկսան նաւավարքն: Նմա օրդել եւ խափանիչ գործոց նոցա՝ ստէպ ահն լինէր եւ անտի արագախաղաց հոսանք գետոցն: Երկու նաւք մեծամեծք ընկղմեալ իջին ի խորսն ամենեցուն իսկ առաջի. իսկ թեթեւագոյն նաւք թէպէտ եւ նոքին եւս չկարէին վարել ուղիղ, սակայն եկին մերձեցան ի գետեզրն առանց վնասելոյ. եւ ինքն թագաւորն եկն դիպեցաւ անհնարին յորձանաց. առ սակաւ սակաւ յայն երթեալ անկանէր նաւն խոտորելով եւ չունէր ժոյժ ուղղիչ թեւակացն: Ընդէն հանեալ էր

թագաւորն զձործան ի բաց՝ արկանել զանձն ի գետն, եւ բարեկամքն ոչ ի հեռուստ երթային ի լեւղ՝ զի ունել զթագաւորն մարթայցեն. եւ թուէր յերկոցունց կողմանց վտանգատագնապի թէպէտ ի լեւղ կամէր ոք երթալ թէպէտ նաւարկել: Այնուհետեւ մեծաւ ճգնութեամբ զղեակն փութացուցանէին, եւ որչափ ոյժ եւ զօրութիւն մարդոյ բաւական էր, բախէին ստէպ զալիսն յարուցեալս: Գոգցես թէ ալիքն հերձանէին, եւ յետս յետս յորձանքն խաղային: Ապա յետ այնր ամենայնի ապրեցաւ նաւն ի յորձանացն. սակայն ոչ եթէ ի գետեզրն մերձենայր, այլ երթեալ բախէր ի հունն որ անդ մօտ էր: Գոգցես թէ ընդ գետոյն էր մարտ պատերազմի: Յետ այնորիկ ըստ գետոյն թուոյ բագինս կանգնէր, եւ զոհս մատուցեալ խաղացեալ երթայր յառաջ Լ վտաւան:

Անտի երթեալ հասանէին ի գաւառն Ոքսիդրակացւոց եւ Մաղղացւոց, որ յառաջն սովոր էին ընդ միմեանս տալ մարտ պատերազմի: Բայց յայնժամ հաղորդութիւն

վշտացն եւ վտանգին ի մի միաբանութիւն խառնեաց զնոսա: Իննսուն հազար մանկտի հետեւակ վառեալ պատրաստեալ էին, եւ բաց ի նոցանէ Ժ հազար հեծելազօր զօրաց եւ չորքձիք իննհարեւր: Այլ Մակեդոնացիքն որ համարէին թէ ընդ ամենայն տագնապ եւ վիշտս անցեալ ապրեցան, իբրեւ գիտացին թէ տակաւին կայ կատարեալ պատերազմ ընդ ազգաց վայրենեաց Հնդկաց աշխարհին, յանկարծակի զահի հարան եւ միաբանգամ խռովութեան բարբառով սկսան պատուհասակոծ զԹագաւորն առնել. Թէ ընդ Գանգէս գետ ստիպիմք անցանել եւ ի դաշտս որ յայնկոյս կան, վասն այնորիկ ոչ եթէ ի գլուխ ինչ զպատերազմն հանեալ այլ փոփոխեցաք զկուիւն: Արկաք զանձինս առաջի ազգաց չնուաճելոց զի բացցուք զՈվկիանոս առաջի քո արեւամբ եւ ապաժուժաւ մերով: Ձգեալ երթամք արտաքոյ քան զսահմանս աստեղաց եւ արեգական եւ հարկիմք հասանել ի վայրսն՝ զորս ծածկեաց բնութիւն յաչաց մարդկանէ: Փոխանակաւ նորոգ թշնամիք ընդ ա-

ռաջ պատահեն նորովք զինուք։ Նաեւ եթէ զամենեսին զնոսա վարատեալ ցրուիցեմք, զինչ վարձք առաջի կայցեն. մէգ եւ մառախուղ եւ խաւար եւ գիշեր մշտնջենաւոր տարածեալ ի վերայ խորոց ծովուն, ծով լի երամովք անհնարին գազանաց եւ ալիք անշարժք եւ անխաղաղք յորս նուաղեալ պակասէ բնութիւն։

Իսկ Թագաւորն ոչ ընդ իւր ինչ այլ ընդ զօրացն հոգս վարանեալ, կոչէր զնոսա անդէն ի մի վայր եւ ցուցանէր թէ տկար եւ անզօր են յորոց նոքա զանգիտեն։ Դարձեալ ոչ ինչ, ասէ, բաց յազգաց աստի յայսցանէ հակառակ մեր կայ, առ ի խափանելոյ զմեզ, զի մի որ զամենայն վայրս համօրէն աշխարհաց հատաք անցաք հասանիցեմք ի կատարած աշխարհիս միանգամայն եւ աշխատութեանցն։ Յորժամ երկերուք դուք ի Գանգէս գետոյ եւ ի բազմամբոխ բազմութենէ ազգացն որ յայնկոյս գետոյն էին, անսացի ձեզ, խոտորեցայ ի ճանապարհէ յայն կողմն՝ ուր զոյգ եւ հաւասար փառքն էին եւ փոքր վիշտ վտանգի։

Աստէն իսկ զՈվկիանոս տեսանեմ եւ սիւք ծովուն շնչէ առ մեզ. մի կայցէք հակառակ պարծանաց եւ գովութեան որում ցանկացեալ եմ։ Ընդ սահմանս Վահագնի եւ Սպանդարամետին անցանելոց էք, տալոց էք թագաւորին ձեռում սակաւիկ ինչ ծախու զհամբաւոյն անմահութիւն։ Հաւանեցարուք առէք յանձն դառնալ ինձ ի Հնդկաց աշխարհէն եւ ոչ եթէ երթալ փախըստեայ։

Ամենայն ամբոխ եւ մանաւանդ ամբոխ զօրաց, ըստ յօժարեցուցանելոյ խօսելեացն վաղվաղակի փոփոխի։ Այնպէս առ զխռովութիւն նոցա ցածուցանելոյ ոչ մեծ ինչ դարմանք պիտոյ են քան զգրգռիչսն որ սկիզբն խռովութեանն լինիցին։ Ոչ ուրեք այլ ուրեք այնպէս գոչիւն եւ աղաղակ ուրախութեան ի զօրաց հնչէր, զի յանձն առնուին թէ տարցի զնոսա, մինչ դեռ յաջողութիւն է ի դիցն, եւ հաւասար լիցի փառօք եւ պատուով այնոցիկ՝ որոց նախանձաւոր լեալ է։ Զուարճանայր ընդ բանս նոցա թագաւորն եւ իսկ եւ իսկ չու արարեալ ի թշնամիսն հա-

սանէր ։ Նու էին հարուստք եւ զօրաւորք Հնդկաց, եւ փութով յօժարութեամբ զճակատն պատրաստէին. եւ զօրավար առաջինի յաղթէ Ոքսիդրակացւոցն ընտրէին, որ առլեռնատամբքն բանակ հարկանէր, եւ աստ անդ խորոյկս երեւեցուցանէր, զի յաճախեցուսցէ զտեսիլ ամբոխի բազմութեանն. եւ աղաղակաւ եւս գոչմամբ ըստ իւրեանց սովորութեան երբեք երբեք ջանային զուր զՄակեդոնացիսն յորժամ ի քուն էին, զարհուրեցուցանել ։ Իբրեւ առաւօտ կամէր լինել, համարձակութեամբ եւ յուսով Թագաւորն հրամայէր զօրացն զուարճացելոց զէն զանձամբք առնուլ եւ ի ճակատ ելանել ։ Այլ ոչ ինչ յիշէ թէ արգեւք առ ահի՞ եթէ առ խռովութեան յառնելոյ ի մէջ նոցա, յանկարծակի ի փախուստ դարձան բարբարոսքն. եւ երթեալ ունէին զանկոխ եւ զանմատոյց լերինսն. զուր պնդեցաւ Թագաւորն զհետ նոցա, բայց զկահ եւ զկազմած նոցա առ ի բուռն ։

Ապա եկին հասին ի քաղաքն Ոքսիդրակացւոց յոր բազումք ան-

կեալ էին, ոչ եթէ առաւել վստահ ի պարիսպն քան ի զէնս իւրեանց։ Մինչ դեռ մօտ մատչէր թագաւորն մատուցեալ խրատ տալ սկսաւ նմա իղձն զի մի խառնեսցի ի պատերազմ, կամ զի յամեցուսցէ զպաշարումն. զի վտանգ, ասէ, կենաց քոց երեւի։ Հայեցաւ ի Դեմոփոնտէս թագաւորն, քանզի Դեմոփոնտէս էր իղձն. Եթէ ոք, ասէ, մինչ դեռ դու քում արուեստին միտ դնիցես, եւ նշմարիցես զընդերսն, այսպէս ընդ մէջ հատանիցէ, ոչինչ յերկուացեալ եմ թէ ծանր եւ տաղտուկ քեզ չթուիցի։ Իբրեւ նա ետ պատասխանի թէ արդարեւ այնպէս իսկ լինէր, Համարիցի՞ս, ասէ, թէ այնմ որոյ ոչ տղէք անասնոցն, այլ այնչափ իրք մեծամեծք առաջի աչաց կայցեն, գուցէ մեծ ինչ խափան եւ արգելիչ քան զայր մի իղձ որ աւելորդ երկիւղիւ խուճապեալ իցէ։ Նա ոչ յամեաց իսկ աւելի քան զպատասխանին. Հրամայէր անդէն զսանդուղսն մօտ մատուցանել, մինչ դեռ այլքն յամէին իմն եւ վեհերէին, ինքն ի քաղաքորմն ելանէր։ Նա էր նեղ եւ անձուկ պսակ պարապացն. եւ ոչ

ստեղունք որպէս այլուր ի ծայրս պարսպացն կարգեալ կային, այլ առաջիք շուրջանակի ի դուրս արձակեալ՝ արգել անցից լինէին։ Սան այնորիկ առաւել կռուեալ կայր թագաւորն առ եղերբն, եւ ոչ ուղղորդ կանգնեալ, եւ այնպէս վահանաւն զնետսն որ յամենայն կողմանց ի վերայ անկանէին մերժէր. քանզի ամենայն ուստեք ի հեռաստանէ յաշտարակացն նետք ի նա յարձակէին. եւ ոչ մտանել ինքեանց զօրքն կարէին քանզի անտուստ ի վերուստ ի բազմութենէ նետիցն ձգելոց նեղեալ տագնապէին։ Այս ուրեմն ամօթն մեծութեան վշտացն յաղթեաց. քանզի նշմարեցին թէ ի յապաղելոյ անտի նոցա անկանի ի բուռն թշնամեացն թագաւորն։ Այլ անճապարելովն զօգնականութիւնն յամեցուցին. քանզի մինչ դեռ իւրաքանչիւր ոք ոգորէր ի վեր ելանել՝ զանդուղսն ծանրացուցին, եւ իբրեւ չեղեն բաւական հանդուրժել սանդուղքն, ի վայր կործանեցան, եւ ընդունայնացաւ յոյս ակընկալութեան թագաւորին։ Քանզի կայր առաջի այնչափ զօրական-

նացն բանակի, իբրեւ թողեալ լքեալ ի մենութեան:

Ն. ՄԻՆՉ դեռ ձախ թեւն որով զառապարն յայսկոյս յայնկոյս առաջի նետիցն շրջէր, լքաւ վատտակեցաւ, եւ բարեկամքն աղաղակ եդեալ գոչէին, զի վազեսցէ առ նոսա, եւ կայծին ընդունել զնա յիւրեանս, նա իշխեաց առնել իրս ինչ որ ոչ հաւտայ են եւ ոչ լուեալ յականջալուրս, եւ առաւել երեւելի վասն զժպրհութիւնն առաւել համբաւելոյ քան զփառսն եւ զմեծարանս: Քանզի ոստուցեալ յանկարծակի արկ զանձն ի քաղաքն որ լի էր թշնամեօք, ուր եւ այնմ իսկ ամենեւին չկարէր ունել ակն թէ կռուեսցի ընդ նոսա եւ յառաջ քան զմահն խնդրիցէ զվրէժ մահուն իւրոյ. քանզի մինչ չեւ նորա յառն կացեալ կարէր կենդանւոյն անկանել ի բուռն: Այլ նա այնպէս ընկէց զանձն զի կաց կանգուն անդէն յոտից վերայ, եւ այնպէս արձանացեալ տայր պատերազմ. եւ զի մի շուրջանակի պաշարիցի, զայն՝ բախտին էր յառաջագոյն հոգացեալ: Ոչ առ մի հինօրեայ ոչ ինչ հեռի ի

պարապացն զտերեւալից ոստոյն իւրեւ խորհրդով իմն տարածեալ զԹագաւորաւն՝ պաշտպանէր. Երթեալ յեցեալ կայր ի յաղթ բունն զի մի հնար լիցի պաշարելոյ, եւ վախճանաւն զնետոյն որ ի հանդիպոյ ձգէին արգելոյր: Ոչ ի թէպէտ եւ մի ոք էր զոր ի հեռաստանէ այնչափ անչափ ձեռք խնդրէին, սակայն ոչ ոք իշխէր մօտ երթալ. եւ բազումք ի նետից յոստոյն քան ի վախճանն անկանէին: Նախ պատերազմակից էր Թագաւորին անուն մեծ եւ համբաւ նորա, եւ ապա յուսահատութիւն եւ յօժարութիւն մեծ պատուոյն մեռանելոյ: Նոյն յորժամ մի ըստ միոջէ յորդեալ խռնէր Թըշնամին, անդէն զանհնարին բազմութիւն նետիցն վախճանաւն ի բաց դարձուցանէր եւ զսաղաւարտն քարինքն խորտակեալ էին եւ ի սատէպ աշխատութենէ ծանրացեալ ծընկացն ի վայր հակէին: Վասն այնորիկ արհամարհանօք իմն՝ եւ առանց զգուշութեան որ մօտակացն էին դիմեցին ի նա. յորոց զերկուս հար ուսերաւ իւրով եւ այնպէս անշունչ Թաւալեալ կային առաջի նորա: Իւ

ոչ ըզ այնու հետեւ համարձակեալ երթալ մօտ առ նա, այլ ի հեռաստանէ լինէին նետաձիգ։

Նա առաջի ամենայն հարուածոցն դժուարաւ կայր կանգուն ի վերայ ծնգաց իւրոց. մինչեւ ոմն ի Հնդկաց անտի նետ մի երկկանգնեան, զի այնչափ մեծամեծ էին նետք Հնդկաց, որպէս յառաջագոյն ասացի, այնպէս ձգեաց զի ընդ զրահն սակաւ մի ի վերայ աջոյ կողին նորա ի ներքս մխեցաւ։ Տագնապեալ ի վիրաց անտի եւ իբրեւ ել արիւն բազում թող զզէնսն իբրեւ յագիս իսկ ապաստան, եւ տկար այնչափ էր զի եւ զնետն աջով իւրով չկարէր խլել։ Սատ այնորիկ որ եհարն ուրախութեամբ ընթացաւ մերկացուցանել զմարմին նորա։ Նա իբրեւ զգաց թէ արկ ձեռն ի մարմին իւր, գոգ զայրացեալ ընդ վերջին թշնամանսն միւսանգամ ոգիքն զօրացան եւ անդէն սրոյն զմերկ կողս թշնամւոյն հարկանէր։ Տապաստ անկեալ կային երեք դիակունք զթագաւորաւն, եւ ամենեքին յապշութիւն կործանեալ էին ի հեռաստանէ. նա զի կամէր թէ մինչ չեւ ոգիքն ի նմանէ սպա–

ռեալ իցեն կուսիցի եւ այս մեռանիցի, վաՀանաւն կանգնել զանձն ջանայր, եւ իբրեւ ոչինչ զօրութիւն էր նորա առ ի յենլոյ ի վաՀան իւր, բուռն Հարկանէր աջով իւրով զսատոցն կախելոց եւ ջանայր յառնել: Բայց եւ ոչ այնպէս կարէր զմարմինն ունել յակաստանի, միւսանգամ ի ծունգան իջանէր եւ ձեռամբն զթշնամւոյն կոչէր յառաջ՝ թէ իշխիցէ ոք կռուել:

Այս ուրեմն պեւկեստէս ընդ այլ կողմն քաղաքին ի բաց ցրուեալ զյառաջամարտիկսն, եկեալ ընդ ճանապարՀ պարսպացն Հասանէր ի թիկունս թագաւորին: Իբրեւ զնա ետես Աղեքսանդրոս, Համարեցաւ թէ ոչ կենաց այլ մաՀու մխիթարութիւն եՀաս նմա, ի վեր առ վաՀանաւ զվաստակեալ մարմինն իւր: Այս գայր Տիմէոս եւ յետ սակաւ ինչ միոյ Ղեւոնատոս եւ յետ նորա Արիստոնոս: Եւ Հնդիկք եւս իբրեւ գիտացին թէ ի մէջ պարսպացն է թագաւորն, զայլսն թողեալ միանգամայն խուռնընթաց անդր դիմեցին, եւ շառաց տագնապի ի վերայ պաշտպանչացն Հասուցանէին: Յո-

րոց Տիմէոս բազում վէրս ի լանջսն առեալ եւ տուեալ ազնուազգւոյն մարտ պատերազմի անդէն անկանէր. Պեւկեստէս եւս խոցեալ երիւք նետիւք ոչ զանձն այլ զԹագաւորն ասպարաւն ծածկէր. Լեւոննատոս մինչ դեռ զբարբարոսսն զյարձակեալսն սաստկութեամբ՝ ի բաց մղէր, հարեալ կարեւէր ի պարանոց իւր՝ կիսամեռ տապալէր առաջի ոտից Թագաւորին: Իբրեւ Պեւկեստէս եւս վաստակեալ ի վիրաց անտի թող զվահան իւր, յոյս եւ ակնկալութիւն վերջին ի վերայ Արիստոնեայ էր: Նա եւս սաստիկ վէրս առեալ չկարէր զդէմ ունել զայնչափ թըշնամեացն զօրութեան: Յայնժամ ժամանակի հասանէր լուրն առ Մակեդոնացիսն թէ անկաւ Թագաւորն: Զարհուրեցուցանէր զայլս լուրն, բայց զնոսա դրդեաց գրգռեաց զայրացոյց: Քանզի զամենայն վտանգ տագնապին մոռացեալ մենքենայիւք զորմն խորտակեցին, եւ ընդ կողմն ուր մուտն գործեալ էին ի քաղաքն յարձակեցան, եւ զբազմագոյնս ի Հնդկաց անտի որ առաւել փախստի ուշ առնէին եւ ոչ ընդդէմ մաքա-

ռելոյ, կոտորեցին։ Ոչ ծերոց եւ ոչ կանանց եւ ոչ տղայոց խնայէին. ո՛ ոք եւ ընդ առաջ պատահէր, համարէին թէ ի նմանէ վիրաւորեցաւ թագաւորն։ Նաեւ ապա ուրեմն սատակմամբ թշնամեացն լինէր քաւութիւն արդար ցասմանն։ Աղիստարքոս եւ Տիմագենէս պատմեն թէ Պտղոմէոս որ յետոյ թագաւորեաց, էր ի նմին կռուի։ Ոչ ինքն որ արդարեւ ոչ հակառակ ինչ իւրոց փառաց խօսէր, գրէ զանձնէ թէ չէր անդ. այլ էր նա առաքեալ յարշաւանս ասպատակի։ Որոց զհին յիշատակս իրաց կարգեցին ի մատենի, այնչափ էր անհոգութիւն կամ դիւրահաւան միտք որ զոյգ եւ հաւասար չարիք են։

Իբրեւ ածաւ ի վրանն թագաւորն, այնպէս ի բաց հանին բժիշկք զփայտ նետին որ ի մարմինն հարեալ էր, զի զսլաքն ոչ խախտեցին։ Նաեւ ապա իբրեւ զմարմինն մերկացուցին ի միտ առին թէ կարթք գոն ի նետի անդ, եւ չէ մարթ թէ առանց վնասու մարմնոյ ի բաց ոք հանիցէ, բայց միայն յորժամ կտրելով զվէրն մեծացուսցեն. այլ կասկածէին թէ գուցէ յորժամ արիւնն

յորդիցէ արգել կարելեացն լինիցի, քանզի անհնարին նետն ի խոր մխեալ էր եւ կարծիք լինէին թէ անդր իսկ յաղիւն հասեալ է։ Արիստոբուղոս որ ճարտարապետ էր բժշկացն, զահի հարեալ երկնչէր յայնպիսում իրաց տագնապի. զանգիտէր ձեռն ի գործ արկանել, զի մի յորժամ դարմանքն չաջողիցին ի նա իւրքն կրթիցին։ Տեսեալ էր զնա թագաւորին զի արտասուէր, եւ երկնչէր եւ էր ի մեծ տարակուսի։ Իսկ ի՞մ իմիք, ասէ, կամ ցո՞ր վայր կայցես մնայցես. եւ զիս վաղվաղակի չապրեցուցանիցես. որ եթէ այլով իւիք ոչ, սակայն ի ցաւոց աստի մեռանելոց եմ։ Մի՛ թէ զանգիտե՞ս թէ դուցէ պարտաւոր դատանիցիս, ուր զի առանց բժշկութեան վէրս առի։ Նոյն ապա ուրեմն Արիստոբուղոս ի բաց թօթափեալ զահն եւ զերկեւղն կամ թէ թագուցեալ, սկսաւ խրատ տալ նմա, զի թողցէ ունել զնա կալ եւ կապ, մինչ դեռ զսլաքն ի բաց խլելոց իցէ. զի եւ թեթեւ իսկ շարժումն մարմնոյ, ասէ, վնասակար է։ Իսկ թագաւորն ոչինչ, ասէ, պէտք այնոցիկ են որ զիս կա-

պեալ ունիցին. եւ որպէս պատուիրեալ էր, այնպէս առանց շարժելոյ մատոյց զմարմին իւր: Այնուհետեւ յետ վիրին ընդարձակագոյն բանալոյ եւ ոսկերն խլելոյ, յորդեալ արիւն գունդագունդ ելանէր, եւ թալացաւ անկաւ թագաւորն, եւ մէգ եւ խաւար մածեաւ զաչօք նորա, եւ այնպէս տարածեալ անկեալ դնէր իբրեւ ի մեռանել հասեալ: Եւ իբրեւ զյորդել արեանն չկարէին դեղովքն արգելուլ, գոչիւն եւ աղաղակ եւ լալիւն բարեկամացն անտուստ յաճախէր, զի կարծէին թէ յոգւոցն ցամաքեցաւ: Ապա ուրեմն դադարեաց արիւնն, եւ տակաւ ոգին յինքն դարձաւ, եւ զօրս շուրջն կային սկսաւ ճանաչել: Զօտին ամենայն եւ զայն գիշեր գունդն վառեալ պաշարէր զվանս թագաւորին. խոստովան լինէին թէ ամենեքին միոյն շնչով կամք կենդանի: Եւ մինչ չեւ իմացեալ թէ սակաւիկ մի ի քուն եղեալ հանգչի թագաւորն, չգնացին ի բաց: Յետ այնորիկ զճշմարտագոյն յոյս կենաց նորա երթեալ պատմէին ի բանակին:

Զ. ԻԲՐԵՒ յեւթն աւուրս վէրն բուժեցաւ, մինչ չեւ սպւոյն ծածկեալ՝ Թագաւորն քանզի լուաւ թէ զօրացեալ է ի բարբարոսս համբաւ մահուան նորա, հրամայէր երկուս նաւս ի միմեանս կցել, եւ կանգնել ի միջի անդ վրան երեւելի յամենայն կողմանց, զի անտի ցուցանիցէ նա զանձն այնոցիկ որ զնա մեռեալ համարէին: Նա եւ իբրեւ երեւեցաւ բնակչացն, խափանեաց զյոյս թշնամեացն որ ի սուտ համբաւուց անտի էր: Յետ այնորիկ իջանէր ի խոնարհ ընդ գետն, հրաման տուեալ թէ սակաւ ինչ անջրպետութիւն ընդ նա եւ ընդ այլ նաւատորմիղն ի միջի կայցէ, զի մի հանգիստն եւ քունն որ տակաւին կարեւոր էր մարմնոյ խոթացելոյ, ի բախելոյ թիակացն արգելցի:

Յետ չորից աւուրց սկիզբն լինելոյ նաւարկութեան եկն ի գաւառ մի, որ էր թափուր ի բնակչաց այլ լի ցորենով եւ խաշնաւէտ: Հաճոյ թուեցաւ տեղին եւ վասն իւր եւ վասն զօրացն հանգստեան: Սովորութիւն էր իշխանաց բարեկամացն եւ անձնապահաց կալ ի պահու առաջի

վրանին, քանզի անդամ թէ հիւանդ դիպէր թագաւորն: Յայնժամ եւս զնոյն սովորութիւն պահեալ ամենեքին միանգամայն եկին մտին ի ոեննեակ նորա: Իսկ նա վարանեալ եւ տարակուսեալ թէ մի գուցէ նոր ինչ լուր հասուցանիցեն, քանզի միանգամայն ի միասին եկեալ էին, հարցանէր թէ արդեւք նորոգ գալուստ թշնամեացն պատմիցի:

Եւ Կրատերոս, որում յանձն լեալ էր զի զպաղատանս բարեկամացն առ թագաւորն հասուցանիցէ. Կարծիցես, ասէ, թէ առաւել ընդ գալուստ թշնամեացն թէպէտ եւ ի պատանիշի հասեալ կայցեն, հոգացեմք, քան ընդ քո առողջութիւնդ որ քեզ անարգ է եւ արհամարհ այժմ: Որչափ եւ բազմութիւն ազգաց ազգաց միաբանեսցի միահամուռ ի վերայ մեր, լցցէ զինու եւ արամբք պատերազմողօք զամենայն իսկ զհամօրէն աշխարհս, եւ զծովս ահաբեկ առնիցէ նաւամարտիկ նաւուք, եւ անընտելական գազանս ի վերայ գումարիցէ, դու զմեզ առնիցես առանց պարտութեան: Եւ ո՞ ոք ի դից անտի մարթիցի խոստանալ թէ

ընդ երկար կացցէ մնասցէ ափենդ եւ համատատութիւն եւ աստղ Մակեդոնացւոց աշխարհի, մինչ դու այնպէս յանդգնադոյն ի վիշտս եւ ի վտանգս զանձն ի ներքս խառնիցես, զայն մոռացեալ թէ զայնչափ անչափ քաղաքացեաց ոգիս ձգեալ տանիս ի կործանումն: Վասնզի ո՛ ոք յետ քո կենդանի կայցէ կամ յօժարիցէ կալ կամ թէ կարիցէ: Ընդէր եկաք հասաք զհետ իշխանութեան եւ հրամանաց քոց ընթացեալ, ուստի չիք ումեք ճանապարհ ի հայրենի երկիր իւր եթէ ոչ դու լինիցիս առաջնորդ դառնալոյ: Եթէ տակաւին զՊարսից թագաւորութեանէ կռիւ էր քո ընդ Դարեհի, թէպէտ եւ ոչ ոք էր որ կամէր, սակայն զարմանալ իսկ կարօղ էր ընդ յանդգնել քո ժպրհութեամբ յամենայն վիշտս եւ ի նեղութիւն. քանզի յորժամ վտանգն եւ հատուցումն զոյգ եւ հաւասար իցեն, ի յաջողութեանն առաւելագոյն է օգուտն եւ վայելչութիւն, եւ ի չաջողութեանն աւելագոյն սփոփութիւն. այլ ո՛ ոք հանդուրժիցէ գլխով քով անարգ եւ աննշան գեղ

մի գնել, չասեմ թէ ի զօրականաց
քոց այլ ընաւ մի ոք ի քաղաքա-
ցեաց բարբարոս ազգի, որ գիտակից
է մեծութեան քո: Դողայ սիրտ
իմ ի խորհել իմում զիրսն՝ զոր յա-
ռաջ քան զսակաւիկ մի տեսաք:
Խօսել զանգիտեմ, զի զառանց
պարտաւորութեան մարմնոյն զկապուտն
ձեռաք վատթարք կողոպտէին, եթէ
ոչ պահեալ էր զքեզ բախտին որ ո-
ղորմեցաւ իսկ մեզ: Մենեքին դահիճ
եւ մատնիչ եմք քո որ չկարացաք
զալ զհետ քո: Թէպէտ եւ զամե-
նայն իսկ զօրսն անուն վատու-
թեան արկանիցես, ոչ ոք իցէ որ
չառնուցու յանձն տուժել զտոյժս
յանցանացն յորմէ չկարաց զանձն
թափել: Բայց աղէ դու յանձն առ-
զի այլ իմն ազգ անարգ քեզ լինի-
ցիմք: Յոր վայր եւ հրաման տայցես
երթիցուք, զանյայտ վտանգս եւ
զանարգ պատերազմունս մեզ խըն-
դրեմք, դու զքեզ այնց պատերազ-
մաց պահեա որ ըստ չափոյ մեծու-
թեան քո են: Վաղվաղակի խաւ-
արին փառք ի մէջ թշնամեաց աղ-
տեղեաց, եւ չիք ինչ քան զայն
անարժանութեան զի անգ ծախսա-

ցին փառք ուր չմարթիցին երեւելի լինել ։ Գրեթէ զնոյն բանս խօսեցաւ Պտղոմէոս, եւ այլք եւս զնոցին հանգոյնս ։ Սկսան խառնաձայն լալ եւ աղաչել զթագաւորն, զի ապա ուրեմն չափ գովութեան պարծանացն որով լցեալ յղփացեալ էր՝ դնիցէ, եւ խնայեսցէ կենաց եւ փրկութեան իւրում այս ինքն հասարակացն փրկութեան ։

Հաճոյ եւ ցանկալի էր թագաւորին բարեկամացն գութն ։ Վ՝ան այնորիկ միում միում ի նոցանէ ընտանեբար տայր ողջոյն եւ հրամայէր նստել ։ Եւ սկիզբն արարեալ անտուստ ի վերուստ բանիցն. Զեզ, ասէ, ով հաւատարիմք եւ սիրելիք քան զամենայն քաղաքացիս եւ զբարեկամս, շնորհակալ լինիմ, ոչ վասն այնորիկ միայն զի այսօր զփրկութիւն իմ նախամեծար քան զձերն առնէք, այլ զի իսկզբանէ անտի պատերազմացն ոչ մի ինչ դրաւական եւ նշանակ սիրոյ եւ խնամոց որ առ իս էր անփոյթ արարէք, մինչեւ պարտ եւ պատշաճ է ինձ խոստովան լինել թէ ոչ երբեք այնպէս սիրելի եղեւ ինձ կենդանութիւն իմ որպէս այժմ զի յերկարա-

զոյնս վայելել ձեւք մարթայցեմ։
Սակայն ոչ նոյն խորհուրդ է ինձ
եւ այնոցիկ որ ի վերայ իմ կամին
մահ յանձն առնուլ. ես այսպէս
կարծեմ թէ զայս գութ ձեր ստացայ
քաջութեամբ իմով։ Քանզի դուք
բազմաժամանակեայ վայելչութիւն
թերեւս եւ մշտնջենաւոր իսկ յինէն
ցանկացեալ էք առնուլ. ես չափեմ
զանձն իմ ոչ եթէ հասակաւ եւ
տիովք այլ փառացն չափով։ Իշխա-
նութիւն էր իմ՝ բաւական զհայրենի
իշխանութիւնն համարեալ, ի մէջ
սահմանաց Մակեդոնացւոցն դա-
տարկութեամբ մարմնոյ ակն ունել
անհարթ եւ վատանշան ծերութեան,
թէպէտ եւ ոչ ծոյլքն եւ յոյլքն
ըստ իւրեանց կամաց զբաշխս եւ
զբախտս իւրեանց յօրինեն, այլ
մինչ դեռ մի միայն բարութիւն զեր-
կայնակեաց կեանսն համարին, բա-
զում անգամ մահ դժնդակ ի վերայ
հասանէ. այլ ես որ ոչ զամս տա-
րեաց այլ զյաղթութիւնս ի համար
արկեալ թուեմ, եթէ զպարգեւս
բախտին քաջ հաշուիմ, երկայնա-
կեաց կեանս կեցի։ Սկիզբն արարեալ
ի Մակեդոնիայ ունիմ զտէրութիւն

Յունաց աշխարհին, զԹրակիա եւ զՂիւրիկեցիս հնազանդեցի. Տրիբաղացւոց եւ Մեդացւոց հրաման տամ. զԱսիա ընդ կողմն Եղեսպոնտոս եւ Կարմիր ծովուն ես ունիմ։ Ոչ կարի հեռի եմ ի սահմանէ կատարածի աշխարհիս եւ ընդ այն սահմանս ելեալ՝ ի մտի եդի այլ բնութիւն եւ այլ աշխարհ ինձ առաջի հորդել։ ՅԱսիացւոց աշխարհէ ի կողմանս Եւրոպացւոց ի միում ժամու անցի։ Եւ յաղթեալ երկոցունց աշխարհացն յետ իններորդ ամի արքայութեան իմոյ եւ քսաներորդ ութերորդ ամի հասակի իմոյ, թուիցի՞մ ինչ ձեզ թէ մարթիցիմ դադարել ի խնդրելոյ ինձ փառս զորոյ միայն զհետ պնդեալ եմ։ Այլ ես ոչ դադարեցայց, տաց պատերազմ յորում վայրի եւ իցեմ, համարեալ այսպէս թէ ի թատր ամենայն աշխարհաց իջեալ կամ։ Տաց ազնուականութիւն չազնուական տեղեաց. բացից ամենայն ազգաց զգաւառս զոր բնութեանն ի բաց հեռացուցեալ էր։ Եւ եթէ այսպիսի ինչ վիճակ գուցէ մեռանել ինձ ի գործսն յայնոսիկ, գեղեցիկ է. յայնպիսի զարմէ ծնեալ

եմ զի առաւել ընդ բազում կեանս ցանկացայց քան ընդ երկայն աւուրս։ Աղաչեմ ես զձեզ ածէք զմտաւ ձերով թէ յայնպիսի աշխարհս հատաք յորս երեւելի անուն էր կնոջ մարդոյ վասն քաջութեան իւրոյ։ Զո՞ր քաղաքս շինեաց Շամիրամ, զո՞ր ազգս ընդ ձեռամբ նուաճեաց, ո՞րչափ իրս յօրինեալ կազմեաց։ Տակաւին կնոջ մարդոյ չհաւատարեցաք փառօք, եւ արդ յագեցա՞լ եմք պարծանօք մերովք եւ գովութեամբք. եւս մեծամեծք առաջի կան եթէ օգնական դիքն լինիցին։ Այլ յայնժամ լինիցին մեր որոց չիցեմք տակաւին հասեալ, յորժամ ոչինչ փոքր զայն համարիցիմք որ մեծամեծ փառաց առիթ մարթիցի լինել։ Միայն թէ դուք ի ներքին նենգութենէ եւ յընտանեացն դարանակալութենէ զիս յապահովս առնիցէք. ես աներկեւղ առանց զանգիտելոյ մխիմ ի մարտ պատերազմի։ Փիղիպպոս առաւել յամրի եւ ի զգուշութեան էր ի ճակատու քան ի թատերն. ի ձեռաց թշնամեացն բազում անգամ ապրեցաւ բայց յիւրայոցն չկարաց զերծանել։ Եւ

զայլոց եւս զթագաւորաց զկատարած եթէ համարիցիք, գտանիցէք թէ բազումք յիւրայոցն քան ի թշնամեացն սպանան: Այլ քանզի այժմ դէպ ժամանակ գիպեցաւ զինչ կայր իմ ի մտի ի վաղուց խօսելոյ, ինձ պատուզ մեծ ամենայն վաստակոց եւ գործոց մերոց լինիցի եթէ մայր իմ Ողոմպիա խառնեսցի ընդ անմահ դիսն երբ եւ ի կենաց վճարեսցի: Եթէ հնար իցէ ես ինքնին զդոյն հանից ի գլուխ: Իսկ եթէ յառաջագոյն քան զնա մեռանիցիմ, յիշիցէք թէ պատուիրեցի ես ձեզ: Ապա արձակէր զբարեկամսն, այլ զբազում աւուրս բանակէր ի նմին վայրի:

Է. ՄԻՆՉ դեռ այս ամենայն ի Հնդկաց աշխարհին վճարէր յայն զօրականք, որ վաղ ուրեմն զաղթականութեամբ զԲակտրեօք կացուցեալ էին ի թագաւորէն, ի յառնել ի միջի նոցա խռովութեանն ապըստամբեցին, ոչ եթէ ընդ հակառակս ինչ Աղեքսանդրի կամեցեալ ելանել, այլ զի ի տանջանացն երկեան: Վասնզի սպանեալ զոմանս յամբոխէ անտի, որ հզօրագոյնքն էին աճա-..

պարեցին զէն առնուլ, եւ ի բուռն առեալ զմիջնաբերդ Բակուրիացւոցն որում չունէին պահ զգուշութեան, զբարբարոսսն եւս արկին յիւրեանս: Աթենոդորոս էր գլուխ նոցա, որ առ յանձն եւ զանուն թագաւորի ոչ եթէ առ անձուկ տէրութեանն՝ այլ առ դառնալոյ ի հայրենի գաւառ իւրեանց նոքօք հանդերձ, որոց զհետ երթեալ էր ծոխութեանն նորա: Սա Բիկոն ոմն անուն որ ի նմին ազգէ էր, եւ վասն նախանձաւորութեանն հակառակութեամբ էր, նենգութիւն նիւթէր, եւ հրաւիրեալ անգէն ի հաց՝ սատակէր ի ձեռն Բոքսեայ ուրումն մակերիացւոյ: Ի վաղիւ անդր ի մի վայր կոչէր Բիկոն եւ հաւանեցուցանէր բազմաց թէ Աթենոդորոս գարան գործեալ էր նմա. սակայն ոմանք կասկածանօք էին ընդ նենգն Բիկոնեայ եւ տակաւ ի բազումս իրքն տարածեցան: Այնուհետեւ զէն զանձամբ առնուին յոյն զօրականք զի զԲիկոն սպանցեն եթէ դէպն տայցէ նոցա. բայց իշխանք նոցա ցածուցին զսրտմտութիւն բարկութեան ամբոխին: Բիկոնեայ ապրեալ ի տագնապէ անտի

ուստի չունէր ակն ապրելոյ, յետ սակաւ ինչ միոյ գործէր նենգ այնոցիկ որ նմա փրկութեան պատճառք եղեն. իբրեւ եկն ի վեր նենգութիւնն, եւ զնա գլխովին առնէին ձերբակալ եւ զԲոզքսոս: Նմա զԲոզքսոս հաճոյ թուեցաւ վաղվաղակի սպանանել, եւ զԲիկոն եւս տանջեալ սատակել: Եւ անդէն տանջանք ի մարմին նորա մերձեցան, եւ զօրքն իբրեւ զմոլեգնեալս ի զէն ընթանային, բայց թէ վասն որոց իրաց, այն չէ յայտ: Իբրեւ զդղրդիւն նոցա լուան որոց հրամանն առեալ էր զԲիկոն տանջել, թողին զնա զանգիտեալ թէ գուցէ յաղագակէ ամբոխին արգելցին առնել զոր առնէին: Իսկ նա այնպէս որպէս էր մերկանդամ՝ առ Ցոյնս հասանէր, եւ եղկելի եւ ողորմելի տեսիլ նորա որ տանջանաց պատրաստեալ էր, յանկարծակի շրջեաց զմիտս զօրացն, եւ հրամայեցին արձակել զնա: Նոյնպէս երկիցս անգամ ի պատժոցն ապրեալ հանդերձ այլովք որ թողին լքին զգաղթականսն որ տուեալ էր նոցա ի թագաւորէ անտի, դարձաւ ի գաւառ իւր: Զքակարեզքն եւ զահ-

մանօք Սկիւթացւոցն այս ինչ գործեցաւ։

Յայնմ ժամանակի հարեւր հրեշտակք երկոցունց ազգացն, զորոց յառաջագոյն ասացաւ, եկին առ Թագաւորն։ Ամենեքին կառօք գային, անդամայաղթք եւ դեղեցիկք եւ ձորձք կտաւեղէնք խառնեալք ոսկւով եւ ծիրանով։ Անտուցեալ պատմէին թէ տամք քեզ զանձինս եւ զքաղաքս եւ զանդս եւ զագարակս, եւ զազատութիւն իսկ զմեր որ ոչ բռնադատեցաւ զայնչափ ամս ժամանակաց, տամք նախ հաւատոց քոց եւ իշխանութեան քում. դիցն, ասեն, դրդեցին զի լինիցիմք յանձն եւ ոչ ահն կամ երկեւղն. քանզի անջան եւ անվտանգ առաք ի բուռն զսար լերինն։ Թագաւորն ի խորհուրդ կոչէր, եւ առնոյր յանձն զբանս հրեշտակութեանն, եւ հարկ ի վերայ զայն արկանէր զոր Արաքսսիացւոց տային ազգքն երկոքին։ Հրամայէր տալ եւ Բ հազար եւ Շ հեծեալս. եւ ամենայն ինչ հնազանդութեամբ ի բարբարոսացն վճարէր։ Ապա ի հաց զհրեշտակս ազգացն եւ զԹագաւորազունսն կոչէր

եւ հրամայէր զարդարել զերախաութիւնն։ Հարեւր ոսկիապատ բազմականք առ միմեանս յօրինեալ էին ոսկաուրիկ ինչ անջրպետութեամբ. եւ բազմականս շուրջ զծիրանի եւ զոսկիապատ կտաւովքն արկանէր. զոր ինչ կամ ի Պարսից յառաջին զեխութենէ, կամ ի Մակեդոնացւոց անտի նորոգն փոփոխութեամբ եղծեալ եւ ապականեալ էր՝ խառնեալ ընդ միմեանս զչարաչարն սովորութիւնս ազգացն երկոցունց՝ ի խրախութեան անդ ի հանդիսի ցուցանէր։

Իսկ ի հացի անդ Դիոքսիպպոս աթենացի ըմբիշ առաքինի եւ վասն առաւել քաջութեան զօրութեանն ծանօթ եւ հաճոյ թագաւորին։ Իսկ նախանձոտքն եւ չարակամք մերթ ճշմարտութեամբ եւ մերթ ընդ խաղ կշտամբէին զնա, թէ անօգուտ եւ անպիտան է անասնոյ տնքացելոյ գալ զհետ մեր. մինչ դեռ մեք ի պատերազմ խառնիցիմք նա կայ եւ օծանի եւ պատրաստէ կերակրոց զփորս իւր։ Նոյնուհետեւ զնոյն բանս եւ Հորատաս մակեդոնացի ի խրախութեան, քանզի էր

իսկ դինեզէն, սկսաւ խօսել ի նա եւ ասէ. Եթէ այր իցես, ի վաղիւ կռուեսս ընդ իս սրով. եւ թագաւորն դատ արասցէ կամ զիմոյ ժպըրհութենէ կամ զվատութենէ քումմէ: Դիոքսիպպոս առ յանձն՝ արհամարհեալ զմոլեգնութիւն առնն զինուորի: Եւ ի վաղիւ անդր թագաւորն, քանզի պնդագոյնս զկռիւն պահանջէին, եւ նա չկարէր շրջել զնոսա ի խորհրդոցն, յանձն առառնել զոր ինչ խորհեցան: Յայնմ վայրի բազում ամբոխ զօրաց յորս էին եւ Յոյնք՝ որ ի Դիոքսիպպոս յօժարեալ էին եկեալ ժողովեցան: Նա զէն եւ զարդ զանձամբ Մակեդոնացին, զվահանն պղնձի եւ զնիզակն ձախոյն ունէր, եւ աջոյն զգեղարդն, սուսեր ընդ մէջ իւր, որպէս թէ ընդ բազմաց միանգամայն կռուելոց իցէ: Դիոքսիպպոս փաղփէր իւղովն եւ պսակ ի գլուխ, ձախոյն բարձեալ ունէր զպատմուճանն կարմիր եւ աջոյն զհաստ եւ զխեղաթեւր բունն: Ի վարանս եւ ի տարակուսանս զմիտս ամենեցուն իւրքն արկանէին. քանզի մերկոյ ընդ վառելոյ անմտութիւն թուէր կռուել

եւ ոչ ժպրհութիւն: Այնուհետեւ Մակեդոնացին զմտաւ ածեալ թէ ի հեռուստ բաւական է սատակել՝ ձգեաց զգեղարդն իւր, եւ իբրեւ սակաւիկ ինչ խոտորելով այրեցաւ Դիոսքորիդոս, մինչ չեւ նորա զնիզակն յաջ ձեռն փոխեալ՝ անդէն ի վերայ յարձակեցաւ, եւ բնաւին զնիզակն ընդ մէջ կոտորէր: Զերկոտին եւս զէնսն կորոյս Մակեդոնացին, զսուսերն սկսաւ հանել. բայց նա դրաւէր զնա փարեալ զնովաւ եւ բուռն հարեալ յանկարծակի զոտից նորա անդէն յերկիր թաւալէր, եւ զսուսերն հանեալ ի ձեռաց նորա եդ զոտն իւր ի վերայ պարանոցին մինչ դեռ անկեալ դնէր, եւ ցուցեալ զբազուկն՝ ջախջախել կամէր զնա եթէ չէր արգելեալ թագաւորին: Նոյն եղեւ կատարած տեսլեանն պատճառք տրամութեան ոչ միայն Մակեդոնացւոցն այլ եւ Աղեքսանդրի, մանաւանդ զի եւ բարբարոսք անդ էին. զի երկընչէր թէ հոյակապ արութիւն քաջութեան Մակեդոնացւոցն ի ծանականս շրջեսցի: Այս բացան լսելիք թագաւորին առ ամբաստանութիւնս նախանձո-

տացն։ Եւ յետ աւուրց ինչ սակաւուց գողանան ի հացի նենգութեամբ բաժակ մի ոսկի, եւ սպասաւորքն իբրեւ այն թէ կորուսեալ իցեն զոր գողացեալն էին, չոգան առ Թագաւորն։ Բազում անգամ յարդարութեանն առաւել ամօթխածութիւն երեւի քան ի յանցաւորութեանն։ Օնայեցածս աչացն որովք իբրեւ ընդ գող հայէին, չկարաց տանել Դիոքսիպպոս. եւ իբրեւ ել ի խրախութենէ անտի գրեալ գիր առ Թագաւորն, ինքն սրով անձին առնէր։ Գժդմեցաւ զայրացաւ ընդ մահ նորա Թագաւորն, զի նշանակ զայրանալոյն համարէր եւ ոչ սորջանացն, եւ յետ այնորիկ առաւել խնդութիւն նախանձոտացն յայտ արարեալ եցոյց թէ ստութեամբ եւ կեղծաւորութեամբ էր այն։

Ը. ԻՍԿ Հնդկաց հրեշտակք իբրեւ արձակեցան յիւրաքանչիւր աշխարհս, յետ սակաւ ինչ աւուրց դարձան այսրէն պատարագօք հանդերձ։ Եւ էին երեքհարեւր հեծեալք, եւ կառք հազար եւ երեսուն զոյգ չորք չորք ձիք ձգէին,

ձորձք կտաւէք քանի մի, հազար վահանք հնդկայինք, եւ հարեւր քանքար սպիտակ երկաթոյ, եւ առեւծք յաղթանդամք եւ վագերք՝ ամենեքին նուաճեալք ի զգօնութիւն եւ ի հանդարտութիւն, եւ մորթք մողիզաց անարեաց եւ թիկունք կրայից։ Ապա հրաման տայր Կրատերեայ թագաւորն, մօտ ի գետ անդր ընդ որ ինքն նաւարկելոց էր զզօրսն տանել, եւ զայնոսիկ որ ընդ նմայն սովոր էին երթալ՝ եդ ի նաւս եւ ի սահմանակողմն Մաղաց տանէր ի խոնարհ ընդ գետն։

Անտի ի Սաբարկացիս հասանէր, եւ էր հարուստ այն ազգ Հնդկացն, ոչ թագաւոր առաջնորդէր նոցա, այլ հրամանն ժողովրդեանն։ Վաթսուն հազար հետեւակաց ունէին, եւ վեց հազար հեծելոց. զայսոց զօրաց հինգհարեւր կառք գային զհետ։ Երիս զօրավարս քաջս եւ առաքինիս ի պատերազմի՝ ընտրեալ էր նոցա։ Այլ որք յանդս եւ յագարակս էին մօտ ի գետ անդր, եւ ունէին իսկ բազում գեղս մանաւանդ ի գետեզերին, իբրեւ տեսին զգետն ամենայն՝ որչափ բաւական էին նըշ-

մարել՝ ծածկեալ նաւօք եւ զէ ի զէնուց զօրացն Նշոյլք փայլատակէին, զարհուրեալ ի նոր տեսլենէն համարեցան թէ գունդ դիցն եւ այլ ոք Սպանդարամետ եկեալ է, զի երեւելի եւ հոյակապ է ի մէջ նոցա անուն նորա։ Սաստի աղաղակ զօրացն անտի բախել թիակացն եւ ազգի ազգի բարբառք նաւավարացն յորդորելոյ՝ լի առնէին զլսելիս զարհուրելոցն։ Այնուհետեւ ամենեքին առ այնոսիկ որ ի զէնսն էին՝ ընթացան, եւ ճիչ բարձեալ գոչէին թէ մոլիք, ընդ դից տալոց էք մարտ պատերազմի, զթիւ իսկ եւ զհամար նաւացն չկարէ ոք առնուլ յորս կան արք որ ոչ մատնին ի պարտութիւն։ Նա այնչափ շտապ տագնապի ի վերայ իւրեանց զօրաց հասուցանէին, զի հրեշտակութիւն յղեցին տալ զազգն ի ձեռս։

Իբրեւ զնոսա հնազանդէր առ այլ եւս ազգս երթեալ հասանէր յաւուրն չորրորդի։ Ոչ աւելի ինչ առաքինիք սոքա քան զայլսն գտան։ Վասն այնորիկ անդէն քաղաք յօրինէր եւ հրամայէր անուն կոչել քաղաքին Աղեքսանդրիա, ապա ի սահմանս այնոցիկ որ Մուսիկացիքն

կոչին մտանէր։ Աստ քննէր զիրս Տերտուղեայ առն նախարարի զօր ի վերայ Պարապամիսադացւոյն կացուցեալ էր, զորմէ Պարապամիսադացիքն ինքնին ամբաստան լինէին. իբրեւ ետես թէ բազում ինչ ժլատութեամբ եւ ամբարտաւանութեամբ գործեալ էր, հրամայեաց սատակել։ Աղեքսանդրոս հազարապետ Բակտրիացւոցն ոչ միայն արձակեցաւ, այլ եւ ըստ սիրոյն իրաւանց տուաւելադոյն եւս սահմանս տէրութեան առ պարգեւ։ Նա յետ այնորիկ ըզՄուսիկացիս հնազանդեալ եդ պահակ ի քաղաքի նոցա։

Անտի երթեալ հասանէր ի Պրեագացիս որ են ազգ յազգաց Հնդկաց աշխարհին։ Պորտիկանոս թագաւոր էր նոցա որ ամրացեալ կայր յամուր քաղաքի բազում ամբոխիւ զօրացն։ Զայն քաղաք Աղեքսանդրոս յերրորդում աւուր պաշարմանն վանեալ վկանդէր։ Նա Պորտիկանոս յորժամ ի միջնաբերդ անդր անկանէր, հրեշտակս հնազանդութեան առ թագաւորն արձակէր. այլ մինչ չեւ իսկ հրեշտակացն առ նա հասեալ, երկու աշտարակք դղրդեալ

կործանեցան, եւ Մակեդոնացիք ընդ աւերական մօտին ի միջնաբերդանդր, եւ իբրեւ ի բուռն առաւ միջնաբերդն, Պորտիկանոս սակաւաւորօքն կռուեալ սպանաւ:

Այնուհետեւ զբերդն ի բաց քանդեալ եւ վաճառական արարեալ զամենայն զերին՝ մտանէր ի սահմանս Սամբեայ արքայի. եւ զբազում քաղաքս հնազանդեցեալ՝ զամուր եւ զանառիկ քաղաք ազգին ասկան հատեալ առնոյր: Իբրեւ նշան իմն իւրքն բարբարոսացն թուէին, քանզի անտեղեակ էին զինուորական գործոց, զի տեսին թէ ի միջի անդ քաղաքին վառեալք յերկրէ ելանէին, ոչինչ նշմարանս յառաջադոյն ցուցեալ պեղելոյ գետնափոր դարանացն: Կղիտարքոս պատմէ թէ ութսուն հազար հնդկաց կոտորեցան ի գաւառին, եւ բազումք վաճառական եղեն: Միւսանգամ կապարճս գործուցին Մուսիկացիքն, եւ Պիթոն առաքեցաւ ցածուցանել զնոսա. նորա ձերբակալ արարեալ զիշխան ազգին որ էր եւ առաջնորդ ապստամբութեան՝ ած կացոյց առաջի թագաւորին: Զնա ի խաչ

հանեալ Աղեքսանդրի, միւսանգամ դառնայր ի գետն յորում հրաման տուեալ էր մնալ նմա նաւատորմիղ նաւացն ։

Յետ այնորիկ յաւուրն չորրորդի երթեալ ի խոնարհ ընդ գետն ի քաղաք, մի որ էր քաղաք արքայութեան Սամբեայ, հասանէր ։ Սաղ իսկ տուեալ էր Սամբեայ զանձն, այլ դժկամակ լինէին ընդ իշխանութիւնն հրամանատարութեան քաղաքացիքն եւ զդրունսն առեցին ։ Արհամարհեալ անգոսնէր թագաւորն զանկաւաւորութիւն նոցա, անդէն հրաման տայր հինգհարիւրոց Ագրիացւոցն մտանել ընդ պարսպօքն եւ մեղմով յետս յետս երթալ, եւ այնպէս տակաւ արտաքոյ քան զպարիսպն զթշնամին հանել, զի դան, ասէ, զհետ ձեր եթէ կարծիցեն թէ ի փախուստ դառնայք ։ Ագրիացիքն որպէս էր իսկ տուեալ պատուէր, գրգռեալ զթշնամին յանկարծակի թիկունս դարձուցեալ երթային, զորոց խառն ի խուռն զհետ անկեալ բարբարոսացն, այլում գնդի՝ յորում ինքն թագաւորն էր, պատահեցին ։ Այ-

նուհետեւ իբրեւ միւսանգամ պատերազմն նորոգեցաւ, յերից հազարաւորաց բարբարոսաց, վեցհարեւր կոտորեցան։ Եւ հազարք անկան ի գերութիւն, եւ այլքն ամրացան ի պարիսպս քաղաքին։

Բայց ոչ որպէս ըստ առաջին տեսլեանն նոյնպէս եւ կատարած յաղթութեանն ուրախութեամբ եղեւ. քանզի ի թոյն ներկեալ էին զսուսերսն բարբարոսքն։ Վասն այնորիկ վիրաւորքն վաղվաղակի զոգիսն թափէին. եւ ոչ զպատճառս այնպիսոյ արագ մահուն մարթէին առնուլ բժիշկքն ի միտ, քանզի եւ թէպէտ եւ իսկ վէրք առանց բժշկութեան լինէին։ Իսկ բարբարոսքն ակն ունէին թէ վասն զի յանդուգն եւ ժպիրհ է թագաւորն, կարիցէ անկանել ի բուռն։ Եւ դէպք եւ պատահարք տային, զի ի մէջ քաջացն մտեալ ի մարտ պատերազմի, ողջանդամ ապրեցաւ։ Մանաւանդ իբրեւ Պտղոմէոս վէրս առ սակաւիկ մի ի վերայ ձախոյ ուսոյ իւրոյ, եւ քանզի առաւել սաստկագոյն վտանգըն էր քան զցաւս վիրացն, հոգայր եւ նեղէր վասն նորա թա-

դաւուրն ։ Վռանգի էր իսկ ազգական նորա, եւ համարէին ոմանք թէ ի Փիլիպպեայ իսկ ծնեալ իցէ. բայց էր իսկ ծնեալ առանց երկմտութեան ի հարճէ անտի նորա ։ Էր նա եւ անձնապահ անձին նորա, եւ զօր պատերազմօղ, եւ առաւել մեծ եւ երեւելի յամենայն արուեստս խաղաղութեան եւ պատերազմի, առանց պաճուճանաց, առատ, հեզ եւ ընտանի, եւ ոչինչ ունէր յարքունական պերճութենէ ազգին ։ Վասն այսր ամենայնի մարթ էր յերկուանալ թէ արդեւք առաւել թագաւորին եթէ զօրացն սիրելի էր. յայնժամ զառաջինն զփորձ առ զիւրայոցն, մինչ զի այնպիսի ինչ կարծէր թէ զնշանակ բախտին յոր յետոյ համբարձաւ, յայնմ վտանգի յայտ արարեալ ցուցանէին նմին Մակեդոնացիքն ։ Վռանգի ոչ սակաւագոյն ինչ ընդ Պտղոմէոս քան ընդ թագաւորն հոգայրին. եւ թագաւորն ինքնին վաստակեալ ի պատերազմէն եւ ի հոգոցն, յորժամ նստէր առ Պտղոմեայ, հրամայէր բերել գահոյս զի եւ ինքն հանգիցէ ։ Իբրեւ եւ ի գահոյսն, վաղվաղակի խոր քուն անկաւ ի վե-

բայ նորա։ Իբրեւ զարթեաւ ի քնոյ իւրմէ, պատմէր թէ ընդ քուն ետես տեսիլ կերպարանաց մխշտալի որոյ կայր խաս ի բերանի իւրում, եւ ցուցանէր թէ սա է զարմանն թու-նայն. զգոյն եւս խոտոյն յայտ առ-նէր եւ ասէր թէ ճանաչեմ՝ եթէ զտանէ ոք։ Այլ իբրեւ գտաւ, քանզի ի բազմաց միանգամայն խնդրեցաւ, գտնէր ի վերայ վիլին. վաղվաղակի զբաւ ցաւոցն լինէր եւ ողին եւս ի սակաւ ժամանակի կցե-ցաւ։ Իսկ խուժքն քանզի առաջին ակնկալութիւնն խաբեաց զնոսա, զանձինս եւ զքաղաքն ետուն ի ձեռս։

Ընաւի ի Պատաղիա եկին ի դղեակի ազգն։ Ներէս թագաւոր էր նոցա, որոյ թողեալ զքաղաքն՝ ի լերինսն անկեալ էր։ Աշաւն այնորիկ տիրէր քաղաքին Աղեքսանդրոս, եւ զանգս եւ զագարակս աւար հարկանէր։ Ընաւի բազում առ եւ աւար կուտե-ցաւ խաշանց եւ անդեոց, եւ բազ-մութիւն յոյժ ցորենոյ։ Այլ ա-ռեալ առաջնորդս Հմուսս զետոյն, եհաս ի կղզի մի որ դրեթէ ի մէջ անդ ջրոյն էր։

Թ. Անդ ի հորկէ կայր Ձմայր բազում ժամանակս, քանզի պըրծեալ էին առաջնորդքն վասն ոչ զգուշութեամբ պահելոյ ի գիպահւոջ, առաքէր խնդրել գտանել այլ առաջնորդս, եւ իբրեւ ոչ գտան, անկաւ ցանկութիւն սաստիկ ի միտս նորա տեսանել զՈվկէանոս եւ հասանել յեզերս սահմանաց աշխարհի, առանց տեղեկաց գաւառին, զգլուխ իւր եւ զայնչափ արանց առաքինեաց եւ քաջաց զկեանս տալ ի ձեռս անծանօթ գետոյն։ Այնուհետեւ նաւարկեալ երթային առանց տեղեկութեան վայրացն ընդ որ գնային։ Ոչ է որչափ հեռի անտի ծովն իցէ, կամ որ ազգք առ նմին կայցեն, կամ հանդարտ իցէ բերան գետոյն, կամ թէ բաւական իցէ երկայն նաւաց, զայնմ ամենայնէ իբրեւ զկոյրս կարծեօք էին։ Այն միայն էր յանգգնութեանն մխիթարութիւն, համակ մշտնջենաւորն աջողութիւն։ Անցին գնացին Ն վտաւան, ապա նաւապետքն զրոյց ետուն թագաւորին թէ ծանեաք զոխք շնչելոյ ծովուն եւ չթուիմք հեռի յՈվկէանոսէ։ Զուարճացաւ թագաւորն, զնաւ-

ավարան սկսաւ յորդորել վարել զնաւսն փութանակի. Եկն, ասէ, վախճան եւ կատարած վաստակոց զոր ամենայն ուխտիւք խնդրեցաք. չիք ինչ որ պակաս իցէ ի փառաց, չիք ինչ որ ընդդէմ կայցէ քաջութեան, առանց մարտի պատերազմի, առանց արեան ամենայն համօրէն աշխարհս առաւ ի մէնջ եւ ոչ բնութիւն իսկ կարիցէ յառաջեալ երթալ անդր քան զսահմանս. ընդհուպ զայն տեսանելոց եմք որ ամենեցունց անծանօթ է, բայց միայն անմահիցն: Սակայն արս սակաւս հան ի գետեզրն զի ունիցին զշինականն թափառականս, յորոց ակն ունէր տեղեկագոյն ինչ իմանալ: “Նոքա խիլ արկեալ զգետնափոր գարանան որանեցին, յետոյ ուրեմն գտին զմարդիկն զօղեալս: Իբրեւ հարցան թէ որչափ հեռի ի ծովէ իցեն, ետուն պատասխանի թէ մեր եւ ոչ համբաւաւ լուեալ է զծովէ. բայց յետ երից աւուրց, ասեն, մարթի հասանել ի ջուր մի աղի որ ապականէ զջուրս անուշութեան: Իմացան թէ զծովէ յայտ առնեն առ անտեղեկութեան բնութեան

ծովու։ Սակայն այնորիկ առաւել ուրախութեամբ վարէին զնաւուն նաւավարքն, եւ յաւուրն երկրորդի որչափ ակնկալութիւն մօտէր, դոյն-չափ յաճախէր փոյթն եւ յօժարու-թիւն։ Իսկ յաւուրն երրորդի մնացեալ խառնէր ընդ ծովու գետոյն, եւ առա-կաւքն մեղմ եռանդն զխառնեալ ալիսն ծփեալ յուզէր։ Ապա եր-թեալ հասանէին ի մեւս եւս կղզի ի միջի անդ գետոյն, եւ քանզի յետս յետս հարկանէր նաւն յե-ռանդմանէն, ելեալ զնաւուն կա-պէին. եւ սկսան այսր անդր ըն-թանալ, գտանել կերակուր. քան-զի անհոգ էին ի դիպացն որ յետոյ եհաս ի վերայ նոցա վասն անտեղե-կութեանն։

Իսկ զերրորդ ժամու ըստ սահ-մանելոյ փոփոխմանն եռացեալ խա-ղայր Ովկիանոս, եւ զգետն յետս յետս ընկրկէր։ Նա՛ւ նախ կասեաց գետն, եւ յետ այնորիկ քակեալ սաստկագոյնս առաւել եւս սաստ-կութեամբ ի դիմի հարկանէր, որ-չափ եւ ոչ յորձանք արշաւին առա-նապաս ի ձորս։ Անծանօթ էր զօ-րացն ծովուն բնութիւն, եւ համա-

րէին նշանս եւ յայտարարս արամբ-տութեան դիցն տեսանել։ Երբեք երբեք մրմռեալ ուռուցեալ ծովն, ափնեալ տարածանէր ընդ դաշտավայրս որ յառաջ քան զաւակաւին մի չորացեալ եւ ցամաքեալ էին։ Ընդէն իբրեւ նաւքն ամբարձան եւ ցրուեցան ամենայն նաւատորմիղ նաւացն, միւսանգամ որ ելեալ կային ի նաւէն, զարհուրեալք եւ յիմարեալք ի յանկարծակի չարեացն պատահելոյ, յամենայն կողմանց ի նաւսն ընթանային։ Այլ յաղմկի եւ ի խռովութեան՝ եւ ճեպն եւս դանդաղ եւ անաղան է։ Կէսք երկաթագամ ձողովք զնաւսն յափուռնան վարէին, եւ կէսք միախուռն ելեալ կուտեալ զշարժել թիակացն արգելուին։ Ոմանք դարձեալ մինչ դեռ ճեպէին ի բաց նաւել ասկայն չմնային այնոցիկ որոց պարտ էր ի միասին իսկ լինել, զկաղ եւ զանկար նաւսն դանդաղադոյնս շարժէին. եւ կէսք ի նաւացն չընդունէին զայնոսիկ որ առ ճեպոյն տագնապի խառն ի խուռն գային ելանել։ Եւ բազմութիւնն եւ սակաւաւորութիւն յամենցուցանէր զնոսա յորժամ ճե-

պէինն: Անտի աղաղակ այնոցիկ որ մնաալ հրաման տային, եւ անտի այնոցիկ որ պատուիրէին երթալ, եւ այլ եւ այլ ձայն բարբառոյ այնոցիկ, որ ոչ զնոյն եւ զմի ինչ երբեք կամէին, ոչ միայն աչացն տեսանելոյ, այլ եւ ականջացն որդել լսելոյ լինէր: Նա եւ ոչ ի նաւապետացն գոյր ինչ ակն օգնականութեան, որոց եւ ոչ ձայնն մարթ էր լսելի լինել յաղմկելոցն, եւ ոչ զհրամանն ի գլուխ հանել. քանզի զարհուրեալ էին եւ առանց կարգի: Այնու հետեւ ընդ միմեանս նաւքն բաբախէին, եւ ղեակքն ընդ իրեարս շփէին եւ զմիմեանց նաւս ակսան մղել: Այսպիսի ինչ ոք համարէր թէ ոչ միոյ գնդի նաւատորմիղ նաւք խաղան, այլ եկուց զընդաց նաւամարտիկ պատերազմ լինի: Առաջակողմն նաւացն ընդ խելն բախէր, որոց վնասեալ էր առաջնոցն նդքին ի յետնոցն վնասէին. եւ յայնմ վայրի ի գժտելն ցասումն հասանէր, զի ձեռնամուխ եւս ի միմեանս լինէին:

Իբր եռանդն ծովուն զամենայն իսկ զդաշտան որ զգետոմն էին ողողեալ, եւ բլուրք միայն ի բարձու

երեւէին իբրեւ մանր մանր կղզիք յոր բազումք զարհուրեալ եւ զնաւսըն ի բաց թողեալ ի լիւղ ճեպէին ելանել։ Նաւատորմիղ նաւաց ցանեալ ցրուեալ կէս ի վերայ ջուրց խորութեան, յորում վայրի զնստագոյն հովիտքն էին, եւ կէս ի հունն խըրեալ, որպիսի ինչ բարձրութիւն երկրի զրուեալ ունէին ջուրքն։ Անդէն յանկարծուստ մեւս նոր ահ եւ երկեւղ առաւել քան զառաջինն ի վերայ հասանէր։ Միւսանգամ սկսաւ յետս յետս ծովն մեկնել եւ ջուր բազում յորդեալ ընթացաւ ի ծոց նորա, եւ միւսանգամ ցուցանէր զերկիրն զոր յառաջ քան զաւկաւիկ մի ծածկեալ եւ ընկղմեալ էր ի խորս ծովուն ծփանաց։ Այնուհետեւ ապրեալ նաւացն ի ջուրց անտի կէսք ի վերայ խելացն կործանէին, եւ կէսք տապալէին ի կողմն մի։ Անկեալ տարածեալ կային ի վերայ երեսաց դաշտաց կահ եւ զէն եւ զարդ, եւ բեկորք ղեկաց եւ տախտակաց ի բաց քակելոց։ Իսկ զօրն ոչ ի ցամաք իշխէր ելանել եւ ոչ կալ մնալ ի նաւսին, այլ կայր ակն ունէր թէ ծանր ինչ քան զմե-

տաւորան իցէ, որ ինչ յետ այնորիկ դիպելոց իցէ։ Հազիւ հազ թէ յանձն առնուին հաւատալ թէ տեսանիցեն զայն ինչ զոր կրէին, ի ցամաքի նաւաբեկութիւն, եւ ի մէջ գետոյ՝ ծով։ Բայց չէր այն զրաւ չարեացն։ Վասնզի չգիտէին թէ եռանդնն միւսանգամ բերիցէ անդէն զծովն եւ ամբարձցեն ի վեր նաւքն, համարէին թէ ի սովոյն եւ ի յետին տառապանացն կորնչիցին։ Նոյն զազանք եւս ահագինք ի ցամաքել ջուրցն առա անդ թափառէին։

Գիշերն մերձենայր եւ թագաւորին եւս տրտմեալ տխրէր անյոյս ի փրկութենէ։ Սակայն զառանց պարտութեան ոգին չկարէին հոգքն ի կոր կործանել. այլ զգիշերն ամենայն հայեցեալ դէտ ակն ունէր եւ արձակէր հեծեալս ի բերան գետոյն, զի յորժամ զգայցեն թէ եռայ ծովն վաղ յառաջեալ հասանիցեն։ Նոյն ընդ նաւսն եւս զպատառեալսն հրամայէր նորոգել եւ զտապալեալսն յալեացն՝ կանգնել, եւ կազմ եւ ուշակալ լինել յորժամ միւսանգամ ծովն զերկիրն ողողանիցէ։ Նոյն զամենայն

գիշերն զայն ընդ ողջունութիւնս եւ ընդ թելադրութիւնս հանէր, եւ վաղվաղակի հեծեալք անհնարինս արշաւեալք հասանէին, եւ եռանդն յետ այնորիկ հասանէր։ Նախ ելեալ Ջուրցն մեղմագոյնս՝ համբարձան ի վեր նաւքն, ապա լցեալ զամենայն դաշտսն մղէր եւ զտորմիղ նաւացն։ Ծափ զծափի հարկանէին զօրքն եւ նաւորդքն, զի առաւելապէս ուրախ լեալ ընդ անյուսական փրկութիւնն ցնծային. եւ անդէն կրկնեալ հնչեցին զեռեզերքն։ Զարմացեալք հարցանէին թէ ուստի այնչափ Ջուր դարձաւ միւսանգամ, եւ երէկ յո փախեաւ, կամ զի՞նչ բնութիւն տարերն իցէ, զի մերթ առանց միաբանութեան է եւ մերթ ընդ հրամանաւ ժամանակաց։ Իսկ թագաւորն յայնմանէ իսկ որ ի գլուխ ել՝ ի միտ առ թէ յետ արեգական ծագելոյ ժամ է իրացն, զի կանխեացէ քան զեռանդն ծովու ինքն զհատարակ գիշերաւ ստիպաւոր նաւօք ելեալ երթայր ի խոնարհակողմն ընդ գետն։ Անցեալ ընդ բերան գետոյն չորեքհարեւր վտաւան մխեալ երթայր ի ծովանդր,

եւ այնպէս ուրեմն հասանէր որում ցանկացեալ էր. զոհս դիցն շահապետաց ծովուն եւ վայրացն մատուցանէր, ապա դառնայր ի տորմիղ նաւաց իւրոց:

Ժ. ԱՆՏԻ նաւարկեալ երթայր տորմիղ նաւացն ի վեր ընդ գետն, եւ յաւուրն երկրորդի եկաց ոչինչ հեռի ի ծովակէ միոջէ աղւոյ. բայց քանզի չգիտէին զբնութիւն ծովակին՝ բազումք խառն ի խուռն մտեալ ի ջուրսն մեռանէին: Քանզի անկաւ բոր ի մարմինս եւ տարածեցան եւ յայլս ցաւքն, եւ ձէթ եղեւ դարման բժշկութեան ախտին: Յետ այնորիկ զԼեւոննատոս առաջի արձակեալ զի պեղեսցէ ջրհորս ընդ որ կամէր տանել զզօրսն ցամաքաւ, քանզի անջուր եւ ցամաք էր երկիրն, ինքն կայր անդէն զօրօք, եւ մնայր աւուրց գարնայնոյն: Քաղաքս եւս բազումս ի ժամանակին յօրինեալ կազմէր: Հրաման տայր Նէարքեայ եւ Ոնեսիկրիտեայ, որ հմուտ էին նաւարկութեան, զի զհաստատարեաս նաւս ի նաւացն տարցեն յՈվկէանոս, եւ երթեալ յառաջ որչափ կարիցեն երթալ զգուշութեամբ, ծանի-

ցեն զծովուն բնութիւն. եւ կարէք, ասէ, յորժամ կամիցիք դառնալ այսրէն գալ կամ ընդ այս գետ կամ ընդ Արածանի:

Իբրեւ ձմեռն մեղմացաւ, զնաւուն որ անպիտանքն Թուէին այրեր, եւ ընդ ցամաք զզօրսն տանէր: Յետ ինուանց բանակաց հասանէր յԱբորիտոն դաւառ, անտի ի գլուխ աւուրց ինուանց ի Կեդրոսիացւոց նահանգն: Այս Կեդրոսիացիք որ ազդ ազատ էին, խորհուրդ արարեալ յանձն եղեն, եւ ոչ աւելի ինչ քան զպաշարսն հրամայեցաւ նոցա: Յետ աւուրց հնգից եկն ի գետ անդր զոր Արաբոն բնակիչք գետեզերն կոչեն. յետոյ հասանէին ի դաւառ մի անապատ եւ անջրդի, ընդ որ անցեալ գայր ի Հորիտացիսն: Ընդ զմեծ մասն զօրացն տայր ի ձեռն Եփեստիոնեայ, եւ զվառեալսն Թեթեւս ընդ Պտողոմեայ եւ Ղեւոնատեայ բաժանէր: Միանգամայն գունդքն երեքին աւար հարկանէին զհնդիկսն, եւ կուտեցաւ առ եւ աւար անհնարին. զծովեզերեայսն Պտողոմէոս, եւ զայլոն Թագաւորն ինքն ի գլխովին, եւ յայլմէ կուսէ

Ղեւոնտասաս աւերեալ քանդէին ։ Շինէր եւ յայնմ Նաւհանգի քաղաք, եւ յԱրաքոսիացւոց ածան անդր ։

Ընտի ի ծովեզերեայ Հնդիկան հասանէր ։ Այրքս զանապատ եւ զընդարձակ երկիրն տարածեալ ունին, եւ ոչ ընդ սահմանորդաց իւրեանց առնեն հաղորդութիւն ինչ ։ Եւ մենութիւնն իսկ ի բնէ եւս ի վայրենութիւն դարձոյց զմիտս մարդկանն. երկայնեալ են ըղնգունք նոցա զորս ոչ երբեք կտրեն, վարսք թաւք եւ առանց խուզելոյ ։ Խուղս ի խեցեմորթաց եւ յայլ եւս նիւթոց ծովուն գործեն ։ Զգենուն մորթս գազանաց, եւ ուտեն ձկունս չորացուցեալս ի տապ արեգականն եւ զմիս մեծամեծ եւս գազանաց զոր ալիքն ընկենուցուն ։ Իբրեւ ծախեցան կերակուրքն, նախ չքաւորեցան Մակեդոնացիքն ապա սկսան սով կրել, եւ խնդրէին որոնէին ընդ հանուր զարմատս արմաւենեացն, քանզի այն ծառ միայն անդէն ծնանի ։ Այլ իբրեւ եւ զայն եւս կերակուրս սպառեցին, ձեռն արկանէին այնուհետեւ զգրաստան կոտորել, նա եւ ոչ երիվարացն խնայէին. եւ իբրեւ չգոյր

զրաստ որ զբեռինսն կրիցէ, զաւար թշնամեացն՝ վասն որոյ զվերջին կողմանս արեւելից հատեալ անցեալ էին, խարոյկ գործեալ այրէին։ Յետ սովոյն ապա գայր ախտ ժանտութեան. քանզի նոր հիւթանիւթք վնասակար կերակրոցն եւ աշխատութիւն ճանապարհացն եւ օդւոցն արտմութիւն տարածեալ զախտն սփռէին, ոչ միայն անդէն առանց հարուածոց կարէին, եւ ոչ երթալ յառաջ, զի եթէ միայն ոտն նեղէր զնոսա, եւ եթէ երթային ախտ ժանտութեանն սաստկանայր։ Պաշարք ծածկեալ էին բազմօք որ կիսամեռ անկեալ էին, քան եթէ դիակամբք։ Այլ եւ ոչ մեղմագոյնս կարէին խօթքն գալ զհետ նոցա, քանզի փութանակի երթայր գունդն, եւ ամենեքին այսպէս համարէին թէ որչափ յառաջեալ երթիցեն տագնապաւ, դոյնչափ յուսով փրկութեան վայելիցեն։ Այնուհետեւ որ նուաղեալքն էին զծանօթս եւ զանծանօթս աղաչէին զի բարձցին. այլ եւ ոչ զրաստ գոյր զի ի վերայ դնիցին, եւ հազիւ թէ զզէնսն կրէր զօրականն, եւ նոցին

եւս առաջին աչաց կայր տեսիլ եկեալ հասեալ չարեացն։ Վասն այնորիկ բազում անգամ կոչէին անուանք նոցա, եւ նոքա չհանդարտէին նայել ի նոսա զի յահ եւ յերկեւղ գութն փոխեցաւ։ Նոքա թողեալ լքեալ զդիսն եւ զհասարակաց սըրբութիւնս ի վկայութիւն կոչէին, եւ խնդրէին զօգնականութիւն թագաւորին, եւ իբրեւ զուր եւ տարապարտուց զխլացեալ լսելիսն վաստակեցուցանէին, ի մոլեգին կատաղութիւն դարձան առ անյուսութեանն, եւ խնդրէին անդրէն զնոյն սատակումն եւ այլ ինչ եւս նոյնպիսի՝ բարեկամաց եւ զինուորակցաց իւրեանց։

Թագաւորն լի լինէր ցաւովք եւ ամօթով, քանզի պատճառք այնչափ հարուածոցն ինքն էր, եւ առ Փրատափեռնէս շահապ Պարթենացւոց առաքէր այր զի պատուէր տացէ կերակուր եփեալ՝ ուղտուք բերել. եւ այլոց եւս ոստիկանաց սահմանորդ գաւառացն տայր տեղեկութիւն զիւրոց պիտոյիցն։ Եւ նոքա վաղվաղակի զհրամանսն ի գլուխ հանէին։ Եւ այնպէս միայն ի սովոյն զերծեալ զօրն

ի սահմանս Կեդրոսիացւոցն երթեալ հասանէր ։ Այն նահանգ միայն առատաբեր է ամենայնի, յայնմ նահանգի բանակ հարեալ նստէր զի զնեղեալ եւ զլքեալ զօրականսն հանգստեամբն կազդուրեցուսցէ ։ Աստ առնոյր նա գիր ի Պեւկեստեայ թէ պատերազմեալ է նա ընդ ութ հազարաց հետեւակաց եւ երեք-արեւր հեծելոց Հորխտացւոցն եւ յաջողեալ է ։ Ինքն եւ ի Կրատերեայ պատգամաւոր թէ Ոզինէս եւ Զա-րիասպէս արք պարսիկք ազնուա-կանք որ ապստամբութիւն խորհէին ըմբռնեցան ի նմանէ եւ ի կապանս են ։ Այնուհետեւ զՍիբիրտիոս կա-ցուցանէր ի վերայ նահանգին, քան-զի Մենոն սատրապն աշխարհին յախտէ վախճանեալ էր, եւ ինքն խաղացեալ երթայր ի Կրմանիս ։ Ա-պաստես էր նախարար ազգին, եւ կարծիք էին զնմանէ թէ խակս ինչ խցէ խորհեցեալ գործել, մինչ դեռ ի Հնդկաց աշխարհին էր թագաւորն ։ Սա իբրեւ ընդ առաջ եղեւ թա-գաւորին, խօսեցաւ ընդ նմա մար-դասիրութեամբ թագաւորն թա-քուցեալ զարտմտութիւն իւր. եւ

մինչեւ քններ զամբաստանութիւնն, ի նմին պատուի ունէր զնա։

Իբրեւ անտի աստիկանքն, որպէս պատուէր տուեալ էր, բազում ժողովս երիւարաց եւ ջորւոց առ ի լուծ, յամենայն նահանգէ որ ընդ իշխանութեամբ նորա էր, առաքեցին, միւսանգամ տայր կազմել եւ կազմած այնոցիկ որոց ոչ գոյր։ Եւ զէն եւ զարդ եւս ըստ առաջնում հանդերձանաց գործեցան. քանզի ոչ ինչ հեռի ի Պարսից աշխարհէն էին, որ ոչ միայն ի խաղաղութեան էր, այլ եւ ընչաւէտ եւ մեծատուն։ Այնուհետեւ, որպէս կանխագոյն ասացաւ, քանզի նախանձաւոր էր ոչ միայն փառացն Սպանդարամետին, զոր յազգաց անտի ընկալաւ, այլ եւ աստուածութեանն համբաւոյ. վասն այնորիկ եւ զօրինակ ծողմանն զոր նա յօրինեաց, արար եւ սա, բայց եւ այն ծողումն կամ արդարեւ ի Սպանդարամետէ կարգեալ էր կամ խաղ եւ խնճոյ ի գինւոյ մոլեգնելոց էր, զի ի վեր քան զմարդկեղէն բնութիւն հպարտացեալ էր սիրտ նորա։ Հրաման տայր ի գեղս գեղս ընդ որ անցանելոց էր, ծաղիկս եւ

պատկառ ափոսել եւ ի սեամն ապարա-
նիցն ատաշաւ գինւով լնուլ եւ դնել,
եւ այլ եւս անօթս մեծամեծս յօ-
րինեալ կարգել: Ապա հրամայէր
զդեսպանական լայնել, զի բազմազգոյն
զօրականն ի ներքս ընդունիցի, եւ
զարդարել ըստ նմանութեան վրա-
նաց, զկէսս սպիտակ քողովք եւ
զայլս մեծագին հանդերձիւ: Բա-
րեկամք եւ դունդն արքունի եր-
թային յառաջոյ պատկեալ ազգի
ազգի ծաղկօք: Աստ երգք փողա-
րաց եւ անդ հնչիւն քնարի լսելի
լինէր. դարձեալ յիւրաքանչիւր
այլն ըստ առատութեանն յղփու-
թեան կերակրոցն ուտէին եւ ըմպէին
զօրքն. եւ զգեղեցիկս ի զինուց իւ-
րեանց կամ որ առաւելն պարծա-
նաց էին նոցա զայն անդէն, շուրջ
զայլիւքն կախէին: Իսկ ի կառս եւ
ինքն թագաւորն եւ խորախճանա-
կերցք նորա, եւ կային ի կառս անդ
ատաշորք եւ բաժակք մեծամեծք ա-
կեղէնք: Այսպէս զաւուրս եւթն
երթայր դունդն մալեզնեալ, առար
պատրաստական առաջի պարտելոցն,
եթէ արդարեւ կամեցեալ էր նոցա
ընդդէմ դառնալ զեղխելոցն: Ար-

դարեւ հազար այր եւ ոչ աւելի թէ միայն զզուարք էին, բաւական էին ի բուռն առնուլ զծանրացեալս եւթն-օրեայ արբեցութեամբն, անդէն իսկ ի ձագմանն: Այլ բախտն որ սահմանէ զհամբաւ եւ զգինս իրացն, եւ զայս եւս թշնամանս պատերազմի ի փառս դարձոյց: Եւ մարդիկն որ յայնժամ եւ որ յետոյ եղեն, սքանչացեալ ընդ իրսն զարմացան. զի ընդ ազգս որոց չեւ էր քաջ նուաճեալ, արբեցութեամբ անցին, եւ բարբարոսք զայն ինչ որ յանդգնութիւն էր համարձակութիւն կարծեցին: Զայսց հանդերձանաց զհետ դայր դահիճ. քանզի հրաման տուեալ էր զի Ասպաստէս նախարար, զորմէ կանխագոյն ճառեալ է, սպանցի: Այսպէս ոչ զեղխութեանն ինչ արգել է անագորունութիւն, եւ ոչ անագորունութեանն զեղխութիւն:

# Կ. ԿՈՒՐՑԵԱՑ ՌՈՒՓԱՑ

## ՎԱՍՆ ԳՈՐԾՈՑ

# ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԵԾԻ

---

## Ժ ԴՊՐՈՒԹԻՒՆ

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. Կղէանդրոս եւ այլ եւս զօրավարք գտանեն թողութիւն, թէպէտ եւ եւս սակաւամեղք քան զնոսա մատնեն ի պատիժս պատուհասից։ Խորհի Աղեքսանդրոս երթալ տեսանել զկողմն արեւմտից Եւրոպացւոց աշխարհին։ Առատութիւնն առ որդին Աբիսարեայ, եւ անագորոյնութիւնն ի վերայ Որսինեայ որ էր նախարար անուանի եւ երեւելի։

Բ. Մինչ դեռ խաղաղութիւն կամէր առնել Յունաց խռովութեանն եւ զերծոյց զզօրականն ի պարտեաց իւրեանց, զոմանս ի նոցանէ կամեցաւ արձակել ի գաւառ իւրեանց եւ զոմանս առ իւր պահել. յառնէ խռովութիւն ինչ ի բանակին զոր ցածոյց իսկ խիստ բանիւք եւ ճոխութեամբ արքունի։

Գ. Ցրուէ զնիւթեալ խորհուրդ զօրուն զխռովիչսն պատժելով, եւ տայ զպահպանութիւն անձին իւրոյ Պարսից։

Դ. Հրապարակախօսն լինել միոյ ուրուք կալելոյ ի Մակեդոնացւոց զօրաց։ Միաբանութիւն հակառակ Աղեքսանդրի որ ապա թունով մեռաւ։

Ե. Որ ինչ յառաջ քան զմահն խօսեցաւ կամ արար։ Տրտմել եւ տխրել իւրայոցն եւ մանաւանդ մօրն Դարեհի, որ առ սաստիկ տրտմելոյ յետ սակաւ ինչ միոյ վախճանեցաւ։ Դրուատիք Աղեքսանդրի։

Զ. Խորհուրդ մեծամեծացն եւ ազգի ազգի կարծիք նոցա վասն պայազատութեան Աղեքսանդրի։

Է. ԶԱրիդէոս որդի Փիլիպպեայ կացուցանեն ամենեքին թագաւոր։ Արիդէոս քանզի ընդ խաղաղութիւն կամէր, ջանայ զխռովութիւնն ցածուցանել։

Ը. Պերդիկկաս սպանանէ զՄելէագրոս նենգութեամբ եւ ընդ նմա երբեւ զերեքարեւր այր։

Թ. Տէրութիւնն Աղեքսանդրի ի բազում մասունս բաժանի։ Զմեծ քան զամենայն մասունսն Արիդէոյ տան, եւ զգաւառսն մեծամեծացն։ Դին Աղեքսանդրի յԵգիպտոս փոխի ի քաղաքն Աղեքսանդրացւոց։

## Կ. ԿՈՒՐՏԵԱՑ ՌՈՒՓԱՑ

## ՎԱՍՆ ԳՈՐԾՈՑ ԵՒ ԱՐՈՒԹԵԱՆՑ

# ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԵԾԻ

## ԱՐՔԱՅԻ ՄԱԿԵԴՈՆԱՑԻՈՅ

## Ժ ԴՊՐՈՒԹԻՒՆ

Ա. Ընդ նոյն աւուրս Կղէանդրոս եւ Սիտաղկէս եւ Հերակոն Ագաթոնեաւ հանդերձ ի վերայ հասանէին, որոց զՊարմենիոն սպանեալ էր հրամանաւ թագաւորին, եւ հինգ հազար հետեւակաց հազար հեծելովք: Այլ եւ դատախազք ի գաւառէ անտի, յորոյ վերայ ոստիկանութեամբ կային, գային զհետ նոցա. եւ ոչ զայնչափ անչափ ոճիրս եւ եղեռն զոր գործեցին կարող էին քաւել այնու զի սպասաւոր եղեն սպանութեանն որ հաճոյ յոյժ էր թագաւորին: Քանզի իբրեւ զամենայն ինչ զարտաքին զերծին առին, եւ ոչ մեհենական իրաց խնայէին, կուսանք եւ գլխաւորք կանանց զթշնամանս իւրեանց աշխարէին: Զանուն Մակեդոնացւոցն

տեսելն եւ գարշելն տարար բարբարո-
սացն ժլատութիւն եւ ցանկութիւն
նոցա. բայց քան զամենեցուն ա-
ռաւելլոյր Կղեանդրի մոլեգնութիւնն,
որ զկոյս մի ազնուական յետ թըշ-
նամանացն տայր հարճ ծառայիցն
իւրում։ Բազումք ի բարեկամացն
Աղեքսանդրի ոչ ընդ անարգութիւն
յանցանացն որ յայտնապէս
պատմէին զնոցանէ, հայէին, այլ
ընդ յիշատակս Պարմենիոնեայ որ
ի ձեռն նոցա սպանաւ, եւ ուրախ
լինէին թէ ի սպասաւորս անդր բար-
կութեանն թափեցաւ ցասումն,
եւ թէ ոչ մի ինչ իշխանութիւն՝ զոր
չարեաց գործովք ոք ստացեալ իցէ,
ընդ երկար տեւիցէ։ Թագաւորն
իբրեւ իմացաւ զերս ամբաստանու-
թեանն, վճիռ ետ եւ ասէ, թէ
Յայնցանէ որ ամբաստան կան զնո-
ցանէ, մի յանցանք մեծ մոռացեալ
են, այն իսկ զի յուսահատս ի կենաց
իմոց լեալ են, զի ոչ երբեք այնպիսի
ինչ իրս իշխէին առնել, եթէ ցան-
կացեալ էր նոցա կամ հաւատացեալ
թէ ողջանդամ դարձայց ի Հնդկաց
աշխարհէն։ Այնուհետեւ զսոսա
կալեալ պրկէր, եւ Ո եւս այր ի զօ-

բաց անտի որ ապստամբ անօրէն գործոց էին, հրամայէր կոտորել։ Ի նմին աւուր պատժեցան եւ զօրս Կրատերոս բերեալ էր, առաջնորդք Պարսից ապստամբութեանն։

Յետ ոչ բազում ժամանակի Նէարքոս եւ Ոնեսիկրիտոս որոց հրաման տուեալ էր երթալ յառաջ կոյս ի ծովն Ովկիանոս, եկեալ հասանէին։ Նա պատմէին ինչ ինչ ի լրոյ եւ այլ եւս ինչ զոր ինքեանք տեսեալ էին. Կղզին, ասեն, որ ի ներքոյ քան զբերան գետոյն է, լի է ոսկւով, չունի երիվարս եւ եթէ երիվարս ոք առ նոսա ի ցամաքէ համարձակիցի հասուցանել, միոյ միոյ քանքարի գնեն։ Լի է ծովն գազանօք. եւ ի լինել նուանդան ծովու շրջին ի վերայ ալեացն իբրեւ զմարմինս մեծամեծ նաւացն, եւ ահաբեկ եղեալ խիստ եւ դժկամակ բարբառով, զան զյետ նաւատորմիղ նաւաց, եւ իբրեւ զնաւս որ սուզեալ ընկղմիցին, մեծաւ դղրդմամբ համատարած ծովու ընդ ջուրքն մտանեն։ Նա վասն այլոց եւս ինչ իրաց բնակչաց կողմանցս հաւատացեալ էին, յորս եւ այս

ինչ թէ ծովն կարմիր ոչ յաւելացն երանգոց, որպէս բազումք կարծեցին, այլ յԵրիթրեայ արքայէ անուն առ. եւ թէ է ոչ հեռի ի ցամաքէ կղզի յորում կայ ծառաստանեկ բազում արմաւենեաց, եւ ի մէջն անդ անտառուին ուրեմն կանգնեալ կայ յիշատակարան Երիթրեայ արքայի յորոյ վերայ կայ գիր նշանագրովք ազգին։ Յաւելուին ի նոյնս նաւք որ զվաճառականսն բերիցեն որոց նաւապետք զհետ երթեալ համբաւոյ ոսկւոյն անցին ի կղզին, ոչ ըք անտի յետ այնորիկ երեւեցան։ Թագաւորն բորբոքեցաւ ցանկութեամբ զբազումն տեսանելոյ, միաբանեալ հրամայեր նոցա անցանել զերկրաւն մինչեւ հասուցանիցեն զատորմիղ նաւացն ի գլուխն Եփրատ գետոյ, եւ անտի ընդդէմ գետոյն դէմ եդեալ երթայցեն ի Բաբելոն։

Ինքն զանշափ եւ զանբաւ խրոց բուռն հարեալ, ի մտի եդեալ էր յետ զամենայն ծովակողմն Արեւելից հնազանդելոյ, յԱսորւոց աշխարհէն անցանել ի կողմանս Ափրիկացւոցն, թշնամութեամբ զրգռեալ ի վերայ Կարքեդոնացւոցն. անտի անցեալ

գնացեալ ընդ անապատս Նումիդիացւոցն դէմ եդեալ հասանել ի Գադիս: Վասնզի պատմէր իմն ի համբաւուց թէ անդ լեալ իցեն Վահագնի արձանքն. ապա հասանել ի Սպանիա զոր Յոյնք Իբերիա կոչիցեն յԻբերիոս գետոյ. եւ անցանել զԱղպեօք եւ զկողմամբք Իտաղացւոցն, ուստի ի կարճոյ հասանիցէ ողջ յԵպիրոս: Այնուհետեւ պատուէր տայր ոստիկանաց Միջագետացն, աստաղձս ի Լիբանոս լեռնէ կտրել եւ ածել ի Թափսակոս քաղաք Ասորւոց եւ կազմել եւթնհարեւր նաւ եւ լինել ամենեցուն եւթնդեկեանս եւ տանել ի Բաբելոն: Հրամայեցաւ եւ թագաւորացն Կիւպրացւոց զի տացեն պղինձ եւ խծուծ եւ առագաստս:

Մինչ դեռ նա զայնու էր հասին առ նա հրովարտակք Պորեայ եւ Տաքսիղեայ թագաւորացն թէ Աբիսարէս ախտիւ վախճանեցաւ եւ Փիղիպպոս ոստիկան նորա ի վիրաց, եւ թէ ըմբռնեցան որ խոցեցինն զնա: Այնուհետեւ փոխանակ Փիղիպպեայ զԵւդեմոն կացուցանէր, որ էր զօրավար Թրակացւոց: Իսկ

զԹագաւորութիւնն Աբխազեաց Նաւրին որդւոյ տայր։

Անտի խաղացեալ եկին ի Պերսաստան։ Պարոնիկ է ազգն, որոյ շահապ Որսինէս էր որ առաւել էր ազնուականութեամբ եւ մեծութեամբ քան զամենայն բարբարոսն։ Սարգէր գայր յազգէ անտի Կիւրոսի որ երբեմն Թագաւոր լեալ էր Պարսից. եւ ի նախնեաց ունէր ինչս եւ ինքն մԹերեալ էր իւր յերկայնաժամանակեան ստացուածոյ տէրութեանն։ Սա ընդ առաջ ելանէր Թագաւորին ազգի ազգի պատարագօք տալ ոչ միայն Թագաւորին, այլ եւ բարեկամացն։ Երամակք երիւարաց զհետ խաղային, եւ կառք արծաթապատք եւ ոսկիապատք եւ կահք մեծագինք եւ ականք պատուականք եւ անօթք ոսկեղէնք ծանունք եւ հանդերձք ծիրանիք եւ Գ հազար քանքար արծաթոյ դրոշմելոյ։ Այլ այնչափ առատութիւն մարդասիրութեանն պատճառք եղեն մահու առնն բարբարոսի։ Վասնզի իբրեւ պատարագօք մեծարեաց զամենայն բարեկամս Թագաւորին առաւել քան զակն-

կալութիւն նոցա, ոչ մի ինչ մեծարանս եդ Բագովայ ներքինւոյ որ սիրելի լեալ էր Աղեքսանդրի։ Եւ իբրեւ ասացին ոմանք ցնա թէ որչափ սիրելի իցէ Աղեքսանդրի, նա եւս նոցա պատասխանի թէ զբարեկամս թագաւորին եւ ոչ զներքինիս պատուեմ, եւ չեն բարք Պարսից զարուս ածել իբրեւ ի կնութիւն։ Զայս ամենայն լուեալ ներքինւոյն, զիշխանութիւնն զոր անօրէն եւ թըշնամանացն գործոյն ունէր, ի գործ արկեալ վարէր ի գլուխ առն արդարոյ եւ ազնուականի։ Քանզի զթեթեւամբս եւ զծանծաղամբս ի նմին ազգէ պատրաստէր թելադրութեամբ խօսել ամբաստանութիւն սուտ, եւ խրատէր զնոսա յայնժամ զերան տալ յորժամ նա նոցա տայցէ հրաման։ Եւ ինքն ի նմին ժամանակի քանիցս անգամ թէ միայն էր ընդ թագաւորին, ձայր զդիւրահաւան լսելիս թագաւորին թագուցեալ զցասմանն պատճառս, զի առաւել եւս ճոխութիւն ունիցի, մինչ ամբաստանութիւնն մատուցանիցէ։ Տակաւին ոչ ինչ կասկած դնէր ի վերայ Որսինեայ. սակայն

անարգեալ էր եւ արհամարհ: Ոչ
ի ծածուկ պարտաւոր գտանէր մինչ
գեռ ինքն անտեղեակ էր Թագու-
ցելոյ վտանգին, եւ դառնաբարոյ
ներքինին եւ ոչ ի ծանականան մո-
ւացօնանենգութեանն առնէր. մերթ
ագահութեան եւ մերթ ապստամ-
բութեան բամբասանս ի վերայ Ոսկի-
նեայ արկանէր: Եւ բանք ստութեան
հնարեալ եւ պատրաստեալ էին ի սա-
տակումն արդարոյն, եւ բաշխք բախ-
տից որոց է տաանց խուսափելոյ վե-
ճակն, եկեալ հասանէին: Քանզի
դէպք եւ պատահարք տային հրա-
մայել Աղեքսանդրի բանալ դշխրին
Կիւրոսի, յորում ծածկեալ էր գինա-
բա, զի կամէր զոհ սանդարամետաց
մատուցանել. համարէր թէ լի իցէ
ոսկւով եւ արծաթով, քանզի այս-
պէս իսկ պատմեալ էին ի համբաւուց
Պարսիկք. այլ քան զփտեալ վահան
նորա եւ զերկուս աղեղունս սկիւ-
թացիս եւ քան զդաշոյնն այլ ինչ
ոչ գտաւ: Այլ ինքն Թագաւորն
դնէր պսակ ոսկի եւ պատմուճա-
նաւն զոր ինքն սովոր էր ագանել,
պատէր զտապանն յորում կայր
գիակնն. եւ զարմացեալ էր թէ

այնպիսի անուանի եւ ընչաւէտ Թա-
գաւոր ոչ չքեղագոյնս Թաղեալ
իցէ, այլ իբրեւ զմի ոք ի ռամկաց։
Այսր առ Նմին Ներքինին, հայե-
ցաւ ընդ Թագաւորն եւ ասէ. Իսկ
արդ զի՞նչ այն զարմանք իցեն Թէ
դատարկ իցեն գերեզմանք Թագա-
ւորաց, յորժամ ունինք Նախարարա-
ցըն չկարիցեն բաւական լինել առ-
Նուլ զոսկին որ անտի հանեալ իցէ։
Իմ յաւուր քան զայս չէր տեսեալ
զգերեզմանըդ. բայց ի Դարեհէ այս-
պէս լուայ Թէ երեքհազար քան-
քար Թաղեալ իցէ ընդ Ախուրոսի։
Ս ատն այդորիկ է այն մարդասիրու-
Թիւն ի քեզ, զի զոր առանց պատ-
ժոց չկարէր պահել Որսինէս, տա-
լովն պարգեւ գտանիցէ շնորհս։
Իբրեւ գրգռեաց ած ի ցասումն,
անդէն որոց զնոյն գործ պատուի-
րեալ էր, ի վերայ գային։ Նատի Բա-
գովաս, անտի որ ի Նմանէ գրգռեալքն
էին, զրաւեցին զլսելիս Նորա ամ-
բաստանութեամբք ստութեանց։
Յաւուր քան Թէ իմացեալ էր Որ-
սինեայ Թէ ամբաստանութիւն կայ
զնմանէ, արկաւ ի կապանս։ Զհա-
մարեալ շատ եւ բաւական զպատիժս

մահու արդարոյն ներքինին, ինքնին անձամբ անձին զլուխ ձեռն մխէր ի նա: Հայեցեալ ընդ նա Ռուբինեայ, Լուեալ իսկ իմ էր, ասէ, թէ կանանց երբեմն թագաւորեալ իցէ յԱսիացւոց աշխարհին, բայց այս նոր է, ներքինւոյ թագաւոր լինել: Նայս կատարած էր առնն ազնուականի քան զամենայն Պարոնիկս, որ ոչ արդար միայն էր, այլ եւ անհնարին մարդասիրութեամբ ի թագաւոր կողմն: Ի նմին ժամանակի եւ Փրոդատէս սպանաւ. քանզի կասկած լեալ էր զնմանէ թէ թագաւորութեան ցանկացեալ է: Քանզի սկիզբն արար Աղէքսանդրոս լինել վաղվաղ ի պատիժս եւ հաւատալ չարաց իրաց: Զի աջողութիւնք բաւական են փոփոխել զբնութիւն, եւ դուն ուրեք որք զգուշացեալ ամբառնայ յերեսաց բարեաց խուոց: Քանզի նոյն այր էր որ յառաջ քան զսակաւիկ մի զԱղէքսանդրոս Ղինկեստացի զորմէ ամբաստան կային գուշակք երկու չար յանձն դատապարտս առնել, եւ զխոտորհագոյն յանցաւորան հակառակ իւրոց կամաց, այնու զի այլոց արդարք թուէին, յանձն առ

արձակել, եւ Թշնամեաց պարտելոց զԹագաւորութիւնսն իւրաքանչիւր շնորհէր. այլա յետոյ այնչափ շրջեցաւ յազնուականութենէն զի որ երբեմն առանց պարտութեան էր յազգացն ցանկութենէ այնուհետեւ կամօք եւ հրամանաւ առ ներքինայ ոմանց Թագաւորութիւն շնորհէր եւ զոմանց կարճէր զկեանսն։

Ընդ նոյն աւուրս առ նա Թուղթ ի Կիւմնեայ վասն իրացն որ յԵւրոպացւոց եւ յԱսիացւոց աշխարհին գործեցան մինչ դեռ ինքն զՀնդկաց կողմանսն նուաճէր։ Զոպիրիոն որ ոստիկան էր Թրակացւոց աշխարհին յորժամ ապստամբ եղեալ արշաւէր ի վերայ Գետաց յանկարծակի, իբրեւ յարեաւ մրրիկ սաստիկ, ամենայն զնդաւն հանդերձ սատակէր։ Իբրեւ դիտաց զերան Սեւթէս զՈդրիսացիս զժողովուրդս իւր գրգռեաց հան յապստամբութիւն։ Նա իբրեւ կորուսեալ իմն էր աշխարհն Թրակացւոց եւ ոչ աշխարհն Յունաց կայր առանց աղմկի եւ խռովութեան։ Քանզի Աղեքսանդրոս ածեալ պատիժս ի վերայ ստահակութեան ոմանց ի նախարարացն զի մինչ

դեռ մինչ ի վերջին կողմանս Հնդկաց աշխարհին զգլխաւք էր, անհնարին եղերս եւ ոճիրս ի վերայ դաւաճանականացն գործերին, եւ զայլս եւս ահաբեկ արարեալ էր. վասն այնորիկ եւ սոքա քանզի զնոյն յանցանս էին յանցուցեալ նոցին պատժոց անկն ունէին, նմին իրի եւ ի վարձկան զօրսն ապաստանեալ յուսային, որպէս թէ յորժամ ի տանջանս մտանիցեն ի նոցունց ձեռաց հասանիցեն փրկութեան. եւ կամ ժողովեալ կարասի որչափ ինչ կարօղ էին ժողովել ելեալ երթային փախստեայ։ Իբրեւ ազդ եղեն իւրն առաքեցան հրովարտակք առ ամենայն հազարապետս Ասիացւոցն, յորս կայր գրեալ թէ յորժամ զհրովարտակն տեսանիցեն եա ընդ եա վաղվաղակի զամենայն զօր մարզիկ որ իցեն վարձկանք ընդ իշխանութեամբ նոցա ի բաց արձակեսցեն։ Ուր ի մէջ նոցա Հարպաղոս զոր Աղեքսանդրոս ընդ հաւատարիմ բարեկամին ունէր, քանզի վաղ իսկ երբեմն վասն բարեկամութեանն զոր ընդ նմա ունէր ի բաց ընկեցեալ ի Փիղիպպեայ երթեալ էր ի տար աշխարհ, եւ յետ

Մազեայ մահուն ետ Նմա պարգեւ զնախարարութիւնն Բաբիղացւոց, եւ կացոյց զնա ի գլուխ տան գանձին: Սա իբրեւ վասն յաճախութեան չարաց գործոց իւրոց եղեւ յուսահատ ի մտերմութենէ անտի զոր վասն միտադոյն ի Նա թագաւորին լինելոյ ունէր, հինգարեւր հազար քանքար յափշտակէր ի տանէ գանձուն արքունի եւ ածեալ ի վարձու գունդ մի վեցհազար վարձկանաց, եւ չոգաւ յաշխարհն Եւրոպացւոց: Ապա վասն ի զեխութիւն եւ ի ցանկութիւնս կործանելոյ եւ յուսահատ լեալ հասանելոյ Ներելոյ թողութեան ի թագաւորէն, սկըսաւ խնդրել թիկունս օգնականութեան յիշխանութեանց օտարաց յերեւաց սրտմտութեան թագաւորին. եւ առաւել առ Աթենացիսն յաճախէր զորոց դիտէր թէ հզօրք են եւ ունին ճոխութիւն առաջի այլոց եւս Յունաց, տեղեակ էր եւ ծանուկն ատելութեան Նոցա ի Մակեդոնացիսն: Վասն այնորիկ այսպէս իւրոցն տայր յուսալ թէ յորժամ Աթենացւոց ազդ լինիցի թէ ես գամ եւ զզօրս եւ զկարասին

*զոր բերեմ առաջի ուսուանիցեն, վաղ-
վաղակի զինուք իւրեանց եւ խոր-
հրդովք ընկեր մեզ կցորդեցին։
Վրանզի այսպէս ածէր զմտաւ թէ
ի մէջ անտեղեակ եւ յողդողդ ժո-
ղովրդեան, ի ձեռն ուբանց անպի-
տանեաց եւ ժլատից զամենայն կա-
շառօք ի գլուխ հանիցէ։*

Բ. ԸՑՆՈՒՀԵՑԵՒ *երեսուն նաւ-
ուք անցանէին ի Սունիոն։ Իսկ Սու-
նիոն է բլուր կարկառեալ ի ծով-
կողմն յԱտտիկեցւոց աշխարհին,
ուստի խորհեցան երթալ ի նաւա-
հանգիստ քաղաքին։ Իբրեւ ազդ
եղեւ այս ամենայն թագաւորին որ
թշնամի եւ հակառակորդ էր Հար-
պաղեայ եւ Աթենացւոցն, հրա-
մայէր պատրաստել տորմիղ նաւաց
զի կամէր վաղվաղակի երթալ յԱ-
թէնս։ Մինչ դեռ նա յայնմ միտս
խորհրդի էր, հասանէր նմա թուղթ
թէ Հարպաղոս յԱթէնս եմուտ եւ
կարասւով շքեղեաց յինքն զմիտս իշ-
խանացն. եւ ապա ժողով լեալ ամ-
բոխին հրաման տուաւ նմա ի քա-
ղաքէն ի բաց գնալ, եւ նորա եր-
թեալ հասանէր առ զօրն Յունաց,
որոյ անցեալ ի Կրետէ, յետ այնո-*

րիկ Թիմբրոն ամ̃ն նենդ գործեալ զնա յարեւէ արկանէր։ Ուրախ լեալ ընդ այն ամենայն ի բաց թողոյր ըզ-խորհուրդ անցանելոյ յԵւրոպն, այլ հրամայէր ամենեցուն վտարանդելոց բաց յայնցանէ որ արեամբ քաղաքացեացն թաթաւեալ էին դառնալ յիւրաքանչիւր քաղաքս Յունաց, յորոց մերժեալն էին։ Իսկ Յոյնք չիշխեցին ընդդէմ դառնալ հրամանացն, թէպէտ եւ իմացան թէ այն սկիզբն քակելոյ օրինաց էր, զինչս եւս եւ զարարս որ մնացեալ էին դարձուցին առ դատապարտսն։ Միայն Աթենացիք ոչ միայն զիւրեանց այլ եւ զհասարակաց ազատութեան վրէժ խնդրեալ, քանզի դժկամակ ընդ խառնակ շփոթութիւն կարգաց մարդկան լինէին եւ ընդելեալ էին ոչ ընդ հրաման արքունի այլ ընդ օրէնս եւ ընդ բարս հայրենիս, արգելին զնոսա ի սահմանաց իւրեանց, լաւ համարէին զամենայն կրել քան զայնոսիկ՝ որ երբեմն կղկղանք էին նոցա եւ յայնժամ եւս ի գաւառս վտարանդութեանն, ընդունել։

Աղեքսանդրոս առաքեալ զերիցագոյնս ի զօրացն ի Հայրենի գաւառն, հրաման տայր ընտրել երեքտասան հազար հետեւակաց եւ երկու հազար հեծելոց. զի առ իւր ունիցի զնոսա յաշխարհին Ասիացւոց. այսպէս զմտաւ ածեալ թէ սակաւ ինչ զօրու բաւական էր ունել զԱսիա յականատանի, քանզի ի բազում տեղիս կարգեալ էր պահակս. եւ զմտաւ ածէր թէ քաղաքք որ այն ինչ շինեցան, զորս եւ ինքն գաղթականօք ելից, ընդդէմ ելանիցեն այնոցիկ որ խակս ինչ յօժարիցեն գործել. այլ մինչ չեւ էր զատուցեալ թէ զորս առ իւր ունիցի, պատուէր ետ, զի ամենայն զօրն բերցեն զհամար այնորիկ զոր պարտիցին ունել։ Գիտէր թէ բազմաց բազում եւ ծանր պարտք ի վերայ կան, թէպէտ եւ ի զեղխութենէ անտի նոցա ժողովեալ էին, սակայն ինքն կամեցաւ հատուցանել։ Նոցա այսպէս թուեցաւ թէ փորձութիւն եւ հանդէս լինի նոցա, զի դիւրաւ զայնոսիկ որ ժուժկալք եւ առաքինիք իցեն ի վատնողացն կարիցէ ընտրել. վասն այնորիկ եւ առ ժամանակ մի յեր-

կարենալ յառաջանալէն: Իսկ թագաւորն, քանզի ի միտ առ թէ ոչ առ հեղգութեան կամ յամառութեան, այլ առ ամօթոյ չկամին խոստովան լինել, հրամայեր ի բանակի անդ կարգել սեղանս եւ տանել դնել տասն հազար քանքար: Ապա իբրեւ հաւատարիմ եղեն իրքն, խոստովան եղեն, եւ յայնչափ կարասւոյ անտի ոչ ինչ աւելի քան զհարեւր եւ երեսուն քանքար մնաց: Այսպէս զօրն որ այնչափ անչափ մեծատուն եւ ընչաւէտ ազգաց յաղթեաց, առաւել յաղթութիւն առեալ տարաւ յԱսիացւոց աշխարհէ, քան առ եւ աւար: Նոյն իբրեւ ազդ եղեւ թէ ոմանք յիւրաքանչիւր աշխարհս արձակեցին, եւ ոմանք անդէն կայցեն, համարեցան թէ միշտ իսկ եւ հանապազ յԱսիա բնակելոց է թագաւորն, յիմարեալք եւ զզինուորութեան խրատն մոռացեալ, խռովութեան բարբառով զբանակն լի առնէին. եւ դաղանագոյնս քան զամօրութիւնն յարձակեալ ի վերայ թագաւորին ամենեքին միաբանամայն սկսան խնդրել առաքումն: Զերեսս իւրեանց որ ի վերայ տգե-

զարցեալ էին, եւ զգլխոյն ալիս մա-
ռուցեալ ցուցանէին : Ոչ ի յանդի-
մանելոյ տառապականացն զահի հարկա-
նէին կամ ի պատկառելոյ ի թա-
գաւորէն. աղմկաւ եւ աղաղակաւ եւ
զինուորական բանութեամբն արգե-
լուին զթագաւորն մինչ դեռ խօսել
կամէր, համարձակ յայտնապէս խոս-
տովան լինէին թէ ոչ ուրեք աստի
փոխեմք զոտս մեր, բայց միայն յիւ-
րաքանչիւր գաւառս մեր : Ապա ու-
րեմն իբրեւ լաւութիւն լինէր վասն
այսորիկ մանաւանդ, զի կարծէին թէ
ի գութ դարձաւ եւ զիջաւ թագաւո-
րն եւ ոչ թէ վասն զի ինքեանք
ինչ կարէին խոնարհել, սպասէին
թէ զինչ առնելոց իցէ թագաւորն :
Նա խօսել սկսաւ եւ ասէ. Զինչ
յայս յանկարծակի խռովութեանդ
կամ սաստիկ եւ համարձակ ժպր-
հութեանդ առնիցէ : Զանգիտեմ
խօսել : Յայտնապէս իսկ հատէք
զտէրութիւն իմ, եւ պաղատանօք
կամ թագաւոր. ոչ թողէք դուք ինձ
իշխանութիւն խօսելոյ կամ դիտելոյ
կամ խրատելոյ կամ թէ հայելոյ ընդ
ձեզ : Քանզի յորժամ իմ ի մտի
այն կայր, զոմանս յիւրաքանչիւր

գաւառս արձակել եւ զայլս յետ
տակաւ ինչ միոյ ընդ իս տանել,
տեսանեմ թէ ոչ միայն նոքա աղա-
ղակեղեալ գոչեն ընդ որոց յետոյ
զհետ գալոց իցեմ, այլ որք արդ-
իսկ ի բաց իցեն գնալոց: Նոյն արդ-
զինչ իրք իցեն. մի գոչիւն եւ բար-
բառ է վասն երկոցունց եւս հրա-
մանացն: Կամէի կամէի գիտել, թէ
արդեւք որ ի բացն երթան եթէ որ
աստէն մնան տրտնջիցեն զինէն:
Գուգցես թէ ամենեւին ի միոջէ բե-
րանոյ այնպէս միանգամայն յամե-
նայն ժողովոյ անտի տուաւ պատաս-
խանի թէ ամենեքին տրտնջեմք:
Յայնժամ նա, Զկարեմ, ասէ,
հաւանել թէ ամենեցուն միանգա-
մայն նոյն պատճառք իցեն տրտըն-
ջելոյ զոր դուք ցուցանէք: Զի
մեծ մասն զօրուդ առանց այնր պատ-
ճառի է. քանզի բազմադոյնս ար-
ձակելոց եմ քան զայնոսիկ զոր առ
իս եմ պահելոց: Այլ կան անդուստ
ի վերուստ չարիք որ ի բաց դարձու-
ցանեն զամենեսին յինէն: Զի երբ
գունդ մի ողջոյն եթող զթագաւոր
իւր: Նա եւ ոչ ծառայք երամովին
ի տերանց փախչեն. այլ կայ ինչ

պատկառութիւն ի նոսա եւ ամաչեն թողուլ եւ լքանել զտեարս լքեալս յայլոց ծառայից: Այլ եւս մոռացօնս մոլեգին խռովութեանն արարեալ, ջանամ զարմանս անբժշկականացն մատուցանել: Օ՛ ամենայն իսկ զլոյս զոր ի ձեռին ունէի, ընդունայն համարիմ, եւ ոչ իբրեւ ընդ զօրականաց իմոց, քանզի եւ չէք իսկ այսուհետեւ, այլ իբրեւ ընդ ապաշնորհաց ի մէջ եղիցնալ: Յաջողութեամբքն որ զձեւք մածեալ են, ի մոլեգին կատաղութիւն ելէք, մոռացօնս արարեալ առաջնոյ փոքրկութեանն թէ ուստի աճեցուցէք զանձինս երախտեաք իմովք. արդարեւ իրաւ եւ արժան է թէ ի նմին փոքրկութեան միանգամայն ծերանայիք, որովհետեւ դիւրագոյն է ձեզ չաջողութեամբ քան աջողութեամբ վարել: Ահաւադիկ այնոցիկ որ յառաջ քան զսակաւ ինչ ժամանակ հարկատուք Իլիւրիկեցւոց եւ Պարսից էին, զարշելի եւ խոտան թուի աշխարհս Ասիացւոց եւ կապուտ կողոպուտ այնչափ ազգաց: Այնոցիկ որ առ Փիլիպպեաւ կէս մերկ էին, ամղանք ծիրանիք անարգք թուին,

եւ զոսկի եւ զարծաթ յակն չկամին արկանել. քանզի զանօթսն փայտեղէնս եւ զապարսն դուզնաքեայս եւ զժանգ սուսերացն կամին: Նապիտի հանդերձանօք ընկալայ զձեզ, եւ բովանդակութիւն ամենայն ընչից իմոց էր հինգարեւր քանքար փոխով, եւ ամենայն կահն չէր աւելի քան զվաթսուն քանքար, սակայն նոքօք զաւէրութիւն մեծի կողման երկրի ըմբռնեցի: Տաղտկացարուք ձանձրացարուք յԱսիացւոց աշխարհէս, որ զձեզ փառօք եւ պատուով արութեանց եւ քաջութեանց համգոյնս գիցն կացոյց: Յեւրոպն ճեպէք երթալ, թողեալ զթագաւորդ ձեր, ուր բազմաց ի ձէնջ չդոյր եւ պաշար ճանապարհի եթէ իմ զպարտսն չէր հատուցեալ. եւ զայս յԱսիացւոց աւարէն հատուցի: Չամաչէք չպատկառէք, զի որ զկապուտ ազգաց ազգաց պարտերոց առեալ տանէիք, այժմ կամիք ինձ առ որդիս եւ կանայս դառնալ, ուր սակաւք իսկ են ի ձէնջ որ զպարգեւս յաղթութեանն կարիցեն ցուցանել: Քանզի այլոցն ամենեցուն եւ զէնք իսկ գրաւով են, քանզի յուսով եկեալ էիք: Ոհ ոհ, ի քաջ

զօրականէ զրկելոց եմ, յարանց հռոմանեաց, որոց այն միայն կայ յայնչափ մեծութեանց, որ ինչ առժամն ծախիցի։ Վասն այնորիկ որ յինէն կամիցին փախչել, համարձակ լիցի փախչել. երթայք վաղվաղակի ի բաց. ես Պարսկօք զթիկունս այնոցիկ որ յինէն ի բաց գնայցեն ամրացուցանեմ։ Ահ զդք դրաւեալ պահեմ առ իս. այսուհետեւ յակն ինձ մի անկանիք քաղաքակիցք ապախտաւորք քան զամենայն ապախտաւորս։ Ընկալցին զձեզ ուրախութեամբ հարք եւ մարք եւ որդիք ձեր, յորժամ դարձջիք առ նոսա առանց թագաւորին ձերոյ. ընդառաջ ելանիցեն փախստէից։ Զաղեցից ի վերայ ձերոյ փախըստեանն, եւ ուր եւ իցեմ, առից ըղվրէժսն, զսոսա՝ ընդ որոց թողուք զիս, պատուելով եւ նախամեծար քան զձեզ առնելով. եւ առնուցուք ի միտ թէ իմ իմիք բաւական իցէ զօր առանց թագաւորի, եւ որչափ զօրութիւն կայցէ ի վերայ իմ միայնոյ։

Գ. ԸԳԱ ել զայրագին յատենէն եւ եմուտ ի մէջ գնդի վառելոցն. եւ ցուցեալ զայնոսիկ որ վայրենա-

դոյնսմն խօսեցան հակառակ նորա, տայր կապել զձեռս նոցա, եւ հրամայեր պահել անձնապահացն երեքտասան այր: Ո՛ք կարեր հաւատալ թէ այն մոլեգին ժողով բազմութեանն յանկարծակի ցածնուցու յահէ անտի, եւ յորժամ զայլսն եւս տեսանիցէ ձգձգեալ ի պատիժս տանջանաց, չիշխիցէ դիմադարձ լինել, եւ այն համարձակ ստահակութիւն եւ բռնութիւն խռովութեան զօրացն այնպէս ի հանդարտութիւն դառնայցէ, զի ոչ միայն դիմադարձ ոք յամենեցունց չլինիցի թագաւորին որ խաղայր ի վերայ նոցա, այլ եւ բոլորեքին յահէ եւ յերկիւղէ զարհուրանացն աղաչեալք եւ յիմարեալք, կայցեն մնայցեն թէ զինչ զնոցանէ կամիցի հրամայել թագաւորն: Վասն այնորիկ կամ անուն մեծարոյ թագաւորութեանն նորա, զի ազգ որ ընդ թագաւորաց իշխանութեամբ են իբրեւ դիս զթագաւորսն պատուեն, կամ պատիւ մեծարանաց անձին նորա կամ համարձակութիւն նորա յորժամ այնպէս զօրութեամբ եւ ճոխութեամբ տայր հրաման, ահաբեկ արար զմիտս նոցա. արդարեւ մեծի համբերու-

թեան օրինակ ընծայեցուցին. Եւ նմին իրի իսկ չբողբոջեցան ասանձանայք դիմնուորականաց իւրեանց, յորժամ իմացան թէ ապանեան նորա ի գիշերին. Եւ ոչ ինչ էր զոր ոչ գործեցին առ ի դհնապանդութիւն հպատակութեանն եւ զանըրն երեւեցուցանելոյ: Զի ի վաղիւ անդր իբրեւ եկին առ թագաւորն եւ որգեղաւ նոցա մատնել առ նա, զի Ասխացւոց զօրք միայն մատնէին, մինչ բարձեալ գոչէին յամենայն բանակի անդ թէ լաւ իցէ մեզ մեռանել, եթէ կեալոց մնալոց իցէ թագաւորն ի ցասման իւրում:

Այլ թագաւորն քանզի յամառեալ պնդէր յայն ինչ զոր խորհեալ էր ի միտս իւրում, հրամայեր ժողովել մարզիկ զօրաց եւ գալ, արգելեալ ի բանակի զՄակեդոնացիսն. Եւ իբրեւ յածախեալ եկին ժողովեցան, թարգմանն ի մէջի կացուցեալ խօսէր ընդ նոսա զայն զոյն բանից այսպէս. Յորժամ յԵւրոպացւոց աշխարհէ անցի յԱսիա, յուսայի թէ բազում ազնուական ազգս եւ բազմութիւն յոյժ մարդկան յաւելուցում ի ներութիւն իմ: Եւ ոչ

պատրեցայ ինչ յայնմիկ զոր զա-ցունց կարծէի ի համբաւուց լուեալ: Բայց յայնր ամենայնի վերայ եւ այս ինչ յաւելուր, զի տեսանեմ եւ նշմարեմ թէ արք քաջք եւ առաքինիք են, եւ առ թագաւորս իւրեանց գութ եւ սէր ունին: Նա կարծէի թէ ամենայն ինչ զեղխութեամբ է եւ առ յոյժ երանելի կենացն ի ցանկութիւնսն ընկղմեալ են: Իսկ արդարեւ մեծաւ ուժով եւ զօրութեամբ ոգւոց եւ մարմնոց քաջութեամբ ժոյժ ունիք գործոյ պատերազմի եւ իբրեւ արք քաջք էք, ոչ զքաջութիւն եւ զզօրութիւն առաւել քան զհաւատարմութիւն մեծարեալ պատուէք: Զայս եւ այժմ նախ բարբառիմ առաջի ձեր առակայն վաղ իսկ գիտէի: Վասն այնորիկ եւ զօրաժողովս երիտասարդաց ի ձէնջ արարի եւ ի գունդս զօրականաց իմոց խառնեցի զձեզ: Նոյն հանդերձ եւ նոյն զէն եւ զարդ է ձեր, իսկ հնազանդութիւն եւ համբերութիւն անսալոյ հրամանաց յոյժ իսկ առաւել քան զայլոցն: Նա ինքնին զդուստր Աքսիարանեայ առն պարսկի ինձ կին

ածի եւ չհամարեցայ ինչ անարժան ի կնոջէ գերելոյ որդիս բարձրացուցանել ։ Նա եւ յետ այնորիկ իբրեւ կամեցայ ափուել զզարմ եւ զզաւակ իմ, առարի կին եւ զդուստր Դարեհի, եւ զմերձաւորս ի բարեկամաց իմոց եւ հաւանեցուցի ծնանել որդիս ի կանանց գերելոց. զի այնպէս նուիրական զաշտամբքն զամենայն կրծիմ կամ խտիր որ ընդ յաղթեալ եւ ընդ յաղթող ի միջի կայ զայն բարձից ի միջոյ ։ Վասն այնորիկ այսպէս համարեցարուք թէ ի ծնէ իմ զօրական էք եւ ոչ պատուաստիւ ։ Ասիացւոց եւ Եւրոպացւոց մի եւ նոյն թագաւորութիւն է ։ Տամ ձեզ զզէնս Մակեդոնացւոցն, հնացայ ի պանդուխտնութենէ անտի, եւ քաղաքակից էք իմ եւ զինուորք ։ Ամենեքին զնոյն գոյն կրեն, ոչ Պարսից Մակեդոնացւոց սովորութեան նմանել ամօթ ինչ է, եւ ոչ Մակեդոնացւոց Պարսից ։ Նոյն օրէնք եւ իրաւունք են նոցա որ ընդ նովին թագաւորաւ կացցեն ։ Իբրեւ զայս խօսեցաւ, առնէր յանձն Պարսից զպահպանութիւն անձին իւրոյ, ի Պարսից կացոյց անձնապահս, ի

Պարսից դաշնաւորս։ Իբրև ի ձեռն նոցա Մակեդոնացիք որք պատճառք խռովութեանն լեալ էին կապանօք ի տանջանս ձգեալ երթային, մի ոմն ի նոցանէ որ երևելի էր ճոխութեամբ և հասակաւ՝ խօսէր, ասեն, այսպէս առ թագաւորն։

Դ. ՏԷ՞ՐՔ, ասէ, տանջանօք կատարես զկամս մտաց քոց և այն օտարոտի սովորութեամբ։ Զօրք քո և քաղաքականք առանց զինուան ճանաչելոյ ձգձգեալ երթան ի պատիժս ի ձեռաց գերելոց իւրեանց։ Եթէ արժանիս մահու համարիցիս զնոսա, գոնէ զպատասաւորս տանջանացն փոխեա։ Բարեկամութեան մտօք խրատ ընծայանայր նմա, եթէ կարօղ էր յայնժամ անսալ ճշմարտութեանն, այլ ի մոլեգին կատաղութիւն ելեալ էր ցասուամբն։ Վասն այնորիկ միւսանգամ, քանզի որոց հրամանն տուեալ էր սակաւիկ մի տարակուսեալ դանդաղեցին, հրամայէր այնպէս կապեալ ամալ ի գետն։ Բայց և ոչ այն տանջանք արկին խռովութիւն ապստամբութեան ի զօրականն։ Քանզի երթեալ առ զօրավարսն և առ քա-

րեկամս Թագաւորին խնդրէին զի եթէ գիտիցէ նա տակաւին զոմանս որոց զնոյն յանցանս յանցուցեալ իցէ, հրամայեսցէ կոտորել. մատուցանեմք, ասեն, զմարմինս մեր սրտմտութեան նորա, թող սպառապատառ կոտորեսցէ: Այս ուրեմն առ ցաւոցն յիմարեալք ամենեքին խուռներնթաց ի վանս Թագաւորին դիմէին եւ ընկեցեալ իւրաքանչիւր զէնս առաջի դրանց ապարանիցն բաճկոնօքն իւրեանց աղաչէին լալով ընդունել զմարմինս զմերկացեալս եւ զպատրաստեալս պատժոց պատուհասից: Ոչ վասն այնորիկ ինչ աղաչեմք, ասեն, թէ մի սանձանօքն քաւիցեմք զոր հեստութեամբն յանցեաք. ցասումն բարկութեան Թագաւորին քան զմահ եւս չար է մեզ: Իբրեւ զցայգ եւ զցերեկ առաջի վանիցն ցանգորդեալ կային յայտ արարեալ զմտացն առաջանս ճչելով եւ գոչելով եւ հանդերձիցն կերպարանօք. սակայն զաւուրս երկուս տեւեալ բաւէր սրտմտութիւն Թագաւորին առաջի պաղատանաց խոնարհելոցն: Իսկ յերրորդումն աւուր ի պարտութիւն մատնեալ ի

պատրաստանացն հաստատութենէ եւ եկաց առաջի նոցա, յանդիմանէր մեղմով զանպատեհ գործ զօրացն եւ բազում արտասուօք յերկոցունց կողմանց լինէին, եւ խոստանայր թէ հաշտեցայ այնուհետեւ ընդ նոսա. ամենայն յիրաւի եւ յարժանի թուեցաւ զի լինիցի քաւութիւն իւրացն մեծամեծ պատարագօք: Վասն այնորիկ յետ զպատարագս զոհիցն մատուցանելոյ զՄակեդոնացւոց եւ զՊարսից մեծամեծս միաբանգամայն ի հաց հրաւիրէր: Ինքն հազար, ասեն, այր կայր ի խրախութեանն եւ ամենեքին ի նմին բաժակէ արբին հրաւիրեալք ի Թագաւորէն. անդ իղձք յունացն եւ անյունացն բազում ինչ աջողութեան պատմէին եւ առաւել զայս ինչ թէ միաբանութիւնն երկոցունց իշխանութեանց ի մի մարմին խառնեալ, հանապազորդ եւ մշտնջենական լինիցի: Յետ այնորիկ վաղվաղակի արձակէր զոմանս եւ առաւել զհիւանդս, եւ ոմանց եւս ի ծերոց բարեկամացն թոյլ տայր երթալ: Յորոց ոմն Կղիտոս էր որոյ անուն յորջորջանաց Աղբոս, եւ Գորգիաս եւ Պողիդամաս եւ Անտիգե-

նէս։ Նոյն երթելոցն ոչ միայն զռոճիկ առաջնոյ ժամանակին հատայց հաւատարմութեամբ, այլ եւ միում միում ի զօրացն տայր մէն մի քանքար իբրեւ թոշակ ճանապարհին։ Իսկ զորդիսն զոր ի կանանց սորացւոց ծնեալ էին, զորոց ասեն թէ էին իբրեւ բեւր մի, հրամայէր անդէն թողուլ զի մի անցեալ յաշխարհն Մակեդոնացւոց հանդերձ հարբքն իւրեանց յառաջին կանոյս եւ յորդիսն խառնեսցին, եւ զդերդաստանս իւրաքանչիւր զժառութեամբ եւ չմիաբանութեամբ լի առնիցեն. Ես, ասէ, հոգացայց ընդոցանէ զի կրթեալք եւ վարժեալք ըստ հայրենի սովորութեանն տեղեակ լինիցին արուեստի պատերազմի։ Նոյպէս առաւել քան զեւր զօրաց հինօրէից արձակեցաւ. յաւելու յայնդումն եւ Կրատերոս, յառաջին բարեկամաց թագաւորին զի տարցի զնոսա։ Հրաման ետս տուաւ զի եթէ դիպեսցի ինչ Կրատերեայ ի մարդկօրէն իրաց, Պողիպերքոնեայ հնազանդ լինիցին։ Գիրս եւս առ Անտիպատրոս գրէր եւ պատուիրէր մեծապատիւ արժանաւորացն դնել զի

քանիցս անգամ խաղք կամ մրցութիւնք լինէին յառաջին կարգան կացեալ Հայիցին պատկառուորք · եւ որդիք տղայք մեռելոցն փոխանակեսցեն զՀայրենի առծիկսն : Հաճոյ թուեցաւ եւ Կրատերեայ իշխանութեամբ կալ ի վերայ Մակեդոնացւոց աշխարհին եւ մօտաւոր գաւառացն, եւ Անտիպատրեայ Մակեդոնացւոյ զօրաժողով արարեալ ի պատանեկաց գալ առ Թագաւորն : Պիանգէ զանգիտէր թէ մի գուցէ վասն զժտութեան ոստիկանի աշխարհին ընդ Ողոմպիադայ ծանր ինչ վիշտք եւ հարուածք լինիցին : Պիանգէ բազում գիրս առ Աղեքսանդրոս մայրն եւ Անտիպատրոս յղէին, եւ զմիմեանց ամբաստանութեամբ սաստկագոյնս ամբաստան լինէին թէ բազում ինչ, որ թշնամանք եւ վնաս արքունական իշխանութեանն է՝ գործի : Օյ իբրեւ համբաւ սպանանելոյ թագաւորին տարածեալ հասանէր յաշխարհն Մակեդոնացւոց մայր նորա եւ Կղէոպատրա քոյր նորա խռովեցան, Կղէոպատրայ փախուցեալ չոգաւ ի Հայրենի թագաւորութիւնն, եւ Ողոմպիաս յԵպիրոս :

Յորժամ դեռ լինէր այնպիսի թըղ-
թոց համանել, Եփեսոսին քանզի
ասոր էր լինել հաւգորդ ամենայն
դաղանեաց թագաւորին, ի միասին
հայէր ի թուղթսն որ կնքեալ էին
յԱղեքսանդրէ։ Բայց չարգել զնա
թագաւորն, այլ հանեալ զմատանին
ի մատանէ իւրմէ մերձեցոյց ի բերան
նորա յորժամ ընթեռնոյր, նշանա-
կեալ թէ ոչ մի ինչ յայնցանէ որ
մի բան միոջէ գրեալ էին պարտ
իցէ այլոց հանել ի վեր։ Զերկասին
եւս ասեն թէ մեզադրութեան ար-
ժանի համարէր, եւ զայրացեալ վասն
մօրն աստահակութեան դաչեաց ասեն
թէ վասն սորա ամսոց բնակութեան
զոր եւս նա նմա յարգանդի իւրում,
ծանր վարձս պահանջէ. եւ զԱնտի-
պատրեայ ասէր թէ կասկածանօք
եմ իբրեւ թէ յես յաղթութեանն
զոր յաղթեաց Սպարտացւոց հպար-
տացաւ, եւ բազմամեայ իշխանու-
թեամբն առաւել քան զչափ եւ
զօրայման ստորիկանութեան ամբար-
հաւաճեալ մեծամտէր։ Սակայն այ-
նորիկ իբրեւ ցածութիւն եւ զգաս-
տութիւն նորա գովէր յամանց ոմանց,
ինքն զնովիմբ ածեալ յաւելոյր թէ

արտաքուստ արտաքս սպիտակ երեւի, այլ եթէ ի ներքս ոք պշուցեալ հայիցի ամենեւին խակ ծիրանի է։ Սակայն Թադոյց զկասկած մնաց խւրոց եւ ոչ ինչ գուշակեալ յայտ առնէր զօտարանեալ իւր ի նմանէ։ Սակայն բաղումք այսպէս կարծեցին թէ կարծեալ Անտիպատրեայ թէ վասն պատժոց անդր կոչի, անօրէն մնջքէնաւորութեամբ նիւթեաց ըզ-մահ Թագաւորին որ յետ սակաւ ինչ միոյ եղ ի գլուխ։

Յայնմ ժամանակի զմտաւ ածեալ Թագաւորին զիգնաւազութիւն զօրացն լնուցու, զընտիր ընտրիս ի Պարսից ի գունդս Մակեդոնացւոցն խառնէր, եւ հազարս եւս ազնուագոյնս զատոյց ի պահպանութիւն անձին իւրոյ. եւ հրամայէր մեւս եւս գնդի տիգաւորաց որ ոչ պակաս քան զառաջն հազարաւորս էին կալ ի պահու զվրանաւն արքունի։ Իբրեւ նա զայս յօրինէր եկեալ հասանէր Պեւկեստէս քան հազարօք աղեղնաւորաց եւ պարսաւորաց զոր էր ժողովեալ ի նահանգէ անտի իւրմէ։ Զսոսա բաժանեալ ի մէջ զօրաց իւրոց ելեալ երթայր ի Շաւշ, եւ

անցեալ ընդ Պասիտիգրիս գետ առ Կարխացւոցն բանակ արկանէր. անտի գաւառաւն չորս տարեալ ընդ Միտաա-կենէ զզօրս իւր ի Սամբան Հասանէր, անդէն զեւԹն օր դադարէր զօրն։ Յետ այնորիկ երԹեալ երից աւուրց ճանապարհ ի Կեղոնս Հասանէին։ Ի քաղաքի անդ բնակեալ են եկք ի Բիովտացւոց. զորս խախտեալ ի բնակուԹենէ իւրեանց Քսերքսեայ տարաւ յԱրեւելս. եւ զնշանակ ազգին ուստի էին, պահէին առանձինն իմն խօսիւքն, յորում բազում անգամ յոյն բանք խառնէին. այլ վասն վաճառուացն հարկի վարէին լեզուաւ բարբարոսացն սահմանորդաց։ Ընտի մնանէր ի Բաղիստանէ որ էր գաւառ մեծագանձ եւ լի բերովք առատուԹեան ծառոց եւ այլովք եւս իրօք, որ ոչ պիտանի միայն կենաց մարդկան իցեն այլ եւ գեղեցիկ եւ ուրախարար։ Յայնմ ժամանակի Թշնամութիւն անհնարին ի մէջ անկանէր Եւմենեայ եւ Հեփեստիոնեայ։ Վասնզի զծառայսն Եւմենեայ յիջավանէն զոր գրաւեալ էին նոքա վասն տեառն իւրեանց, ի բաց վարեաց Հեփեստիոն զի մացէ անդր Եւիոս

փողար։ Եւ ոչ յետ բազում ինչ ժամանակի յորժամ թմբրեալ իմն ոխութիւնն թուէր, մեւս եւս գրժտութիւն ի վերայ առաջնոյ գժտութեանն յառնէր, եւ այնչափ սաստկագոյն ոխութիւնքն նորոգէին, զի եւ ի կազ եւս սաստիկ ի բանս կսկծելիս թշնամանաց միմեանց դարձան։ Այլ Աղեքսանդրի համոզակեր ի մէջ անկեալ գոնէ կերպարանօք թշնամութիւնն ջնջեցաւ. քանզի եւ Հեփեստիոնեայ սաստեաց թագաւորն, քանզի ի բարեկամութիւն թագաւորին ապաստանեալ հեստեալ չկամէր հաշտել թէպէտ եւ ցանկայր եւս Եւմենէս։

Յետ այնորիկ երթեալ հասանէին ի դաշտավայրս Մարաստան աշխարհին, ուր բազում դասակք երիվարաց բուծանէին։ Նժոյգս կոչեն զնոսա, զի երեւելի են յաղթանդամութեամբ եւ գեղով։ Առաւել քան զյիսուն հազար անդ գտան, յորժամ անցանէր ընդ այն Աղեքսանդրոս, զոր եւ ընկերք ուղեկիցք նորա նշմարեցին։ Ասեն թէ յառաջագոյն երեքպատիկ եւս բազմագոյն էին, այլ ի լինել խռովու-

թեան պատերազմի զմեծ մասն նոյա
ռաւել ի բաց տարան առապարա-
կաւորք : Այնպէս բանակ հարեալ
նստէր թագաւորն զաւուրս երեսուն.
ածէր անդր Ատրոպատես շահապ
նախարարապետ Մարաց աշխարհին
հարեւր կանայս խուժս, որ հմուտ
էին հեծանելոյ յերիվարս փառաւորս
փոհանօք եւ տապարօք. ուստի
ոմանք կարծեցին թէ Ամազոնուհիք են
նոքա յազգէ Ամազոնաց: Այպա յետ
եւթն բանակաց յեկբատանս հասա-
նէր որ էր գլուխ քաղաքաց Մարաս-
տանի: Անդ առնէր զօհս երեւելիս
պատարագաց դիցն, եւ հանդէս
խաղալկաց երեւեցուցանէր, եւ ընդ-
արձակեաց անձին իւրում ի խրա-
խուսութիւնս եւ ի տօնս, զի յետ այ-
նորիկ ի հոգս նորոց եւս գործոց եւ
ի պատրաստութիւնս հզօրագոյն ըն-
նիցի : Այլ մինչ դեռ նա զայն
խորհէր ձգեաց իմն բախտ զձեռն իւր
եւ յայլ կողմն տարաւ զնա, հան
զկեանս զսիրելոյ քան զամենայն
բարեկամն նորա եւ ոչ յետ բազում
աւուրց զարեւ եւս թագաւորին :
"Նստեալ հայէր ընդ մանկտին յոր-
ժամ մրցէին յասպարիզին, անդէն

գուժկանս հասանէր թէ Նուաղէ Հեփեստիոն, որոյ եւթն աւուրք էին յորմէ հետէ յախտ անկեալ դնէր յոր յարբեցութենէ էր անկեալ։ Զահի հարաւ ընդ վիշտս վտանգի բարեկամին. վաղվաղակի յոտն կայր եւ երթեալ հասանէր փութանակի ի վանս նորա. այլ մինչ չեւ նորա անդր հասեալ, մեռաւ։ Պարտ է այսպէս ածել ճշմարտիւ զմտաւ, թէ քան զամենայն իսկ զյետսընդդէմն այս դառն եւ դժընդակ պատահեաց թագաւորին ի կեանս նորա, եւ թէ առ ցաւոցն սաստկութեան զարտասուս հարեալ աշխարէր մինչեւ յայտնի իսկ երեւել թէ ամենեւին իսկ խռովեալ է միտքն։ Բայց զայս բազումք բազում իմն օրինակ պատմեն. բայց այն ինչ յայտնի եւ դուշակաւոր է զի վասն մեծապայծառ զյուղարկաւորութիւնն առնելոյ, չառ յանձն թէ յԵկբատանս թաղիցի, այլ հրաման ետ Պերդիկկայ զի տարցի ի Բաբիլոն յոր ինքն էր երթալոց. եւ անդ առնէր յուղարկաւորութիւն որոյ ծախք երկոտասան հազար քանքար էին, որպիսի ինչ չէր լուեալ յառաջ քան զայն։

Հրաման հանէր ընդ ամենայն տէ-
րութիւնն սուգ առնուլ վասն նորա.
Եւ զի մի մոռասցի յիշատակ նորա
ի զօրուն, ի վերայ հեծելազօրացն
որոց նա էր զօրավար ոչ զոք կացու-
ցանէր, այլ հրամայէր Հեփեստիո-
նեայ թեւ կոչել, եւ զդրօշն զոր
նորա կարգեալ էր, չփոխել: Օմր-
տաւ ածեալ եւ յուղարկաւորու-
թեան մրցութիւնս եւ խաղալիկս
որպիսի ոչ երբէք լեալ էին, երիս
հազարս արուեստագիտաց գումա-
րէր. որք ոչ յետ բազում ժամա-
նակի ի նորա իսկ յուղարկաւորու-
թեանն մրցեցան: Նա եւ բարե-
կամք նորա զգութ սիրոյ նորա
առեալ պատճառս հաճոյ նմին լի-
նելոյ, զմիմեամբք ելեւել առնէին
զտանել զամենայն, որով լուսաւո-
րագոյն եւ պատուականագոյն յիշա-
տակ վախճանելոյն լինիցի: Նոյնուհե-
տեւ Եւմենէս քանզի ի միտ առնոյր
թէ զայրանայ իմն ընդ նա թագա-
ւորն վասն թշնամութեանն զոր ընդ
Հեփեստիոնեայ ունէր, զբազում
յօժարեցուցանէր եւ ինքն եւս զիւր
զէն եւ զարդ նուիրէր Հեփեստիո-
նեայ, եւ տայր ինչս առատութեամբ

ի զարդ յուղարկաւորութեանն։ Նախանձաւոր եղեն եւ այլք օրինակի նորա, եւ վաղվաղակի յայն վայր եհաս սուտակասպասութեանն անամօթութիւն, զի մինչ թագաւորն տրտմեալ տխրեալ մոլեգնէր առ անձուկ վախճանելոյն, հաւանեցուցին զնա թէ աստուած է Հեփեստիոն։ Յայնմ ժամանակի մի ոմն ի զօրավարաց զօրացն Ագաթոկղէս Սամեացի ի վերջին իսկ վտանգ հատանէր, զի իբրեւ անցանէր նա առ գերեզմանաւն տեսին զի արտասուէր։ Եւ եթէ ոչ տայր Պերդիկկաս եւ չասէր թէ յորսս երեւեցաւ ինձ Հեփեստիոն, եւ չլինէր երդմնի ի դիսն եւ ի Հեփեստիոն իսկ ի գլխովին, թէ պատմեալ իցէ նմա Հեփեստիոնի թէ Ագաթոկղէս ոչ եթէ իբրեւ մեռեալ կամ զուր աստուածութեան անուամբ պատուեալ՝ ելաց զնա, այլ վասն յիշատակի առաջնոյ ընկերութեանն չկարաց ժոյժ ունել արտասուացն, ապաքէն առանց յանցանաց դառն պատիժս տայր զսիրոյ բարեկամութեան իւրոյ այրն քաջ եւ երախտաւոր թագաւորին։

Նաև զի առ սակաւ մի ինչ փա-
րատեսցէ զաուգն ի մտաց ասպատակ
գնէր ի վերայ ազգին Կոռէացւոց:
Զօրաւոր մօտաւորս Մարաց աշխար-
հին Կոռէացիքն ունին, խիստ եւ
ստուտիկ է ազգն եւ սովոր են յաւա-
ղակութենէ կեալ: Իսկ Թագաւորք
Պարսից սովոր էին գնել ի նոցանէ
խաղաղութիւն ամ ըստ ամէ տուրովք,
զի մի աստ անդ ասպատակ դնիցեն
եւ աւազակուստ զերկիրն տանիցեն:
Վասնզի իբրեւ բռնութեամբ ջանա-
ցին ի վերայ նոցա Պարսիկք, դիւ-
րաւ մերժեցին զնոսա այսրէն յետս.
զի յափափայս մտեալ ամրանային
քանիցս անգամ թէ զինուք ի պար-
տութիւն մատնէին: Սղքին եւ պա-
տարագս եւս տարուջէ ի տարի ընդ-
ունէին, զի յորժամ Թագաւորն յԵկ-
բատանացւոց քաղաքէն ուր զժա-
մանակ ամարայնոյն սովոր էր ան-
ցուցանել ի Բաբիլոն դառնայցէ,
յապահովս ընդ տեղիսն անցանիցէ:
Ընդ երկուս գզօրսն բաժանեալ յար-
ձակէր ի վերայ նոցա Աղեքսանդրոս
եւ ի գլուխ աւուրց քառասնից հալա-
ծէր զնոսա ամենեւին: Վասնզի իբրեւ
ի Թագաւորէն եւ ի Պտղոմեայ որ

զմասն մի զօրացն տանէր, բազում անգամ կոտորեցան, եւ առուն զանձինս յաղթողացն զի առցեն այսրէն զդերին։ Հրամայէր անդէն թագաւորն քաղաքս հզօրս ի պատեհ տեղիս շինել, զի մի յորժամ զօրն ի բաց երթայցէ անստատիցէ ազգն վայրենին։ Նոտի խաղայր գնայր, եւ զի արծարծեսցէ զզօրն վաստակեալ ի Նոր արշաւանէն, հանդարտագոյնս երթայր ի Բաբելոն։ Չէր ինչ հեռի ի քաղաքէն քան զերեսուն վտաւան, ընդ առաջ դիմէր Նեարքոս զոր արձակեալ էր յառաջագոյն յՈվկէանոսէ ընդ Արածանի հասանել ի Բաբելոն. եւ աղաչէր մի մտանել ի քաղաք անդր զի վնասակար է քեզ վասն հրամանաց բախտի եւ բաշխի. զայս, ասէ, ի Քաղդեացւոց գիտացի, որոց կանխախօսութիւնք որ բազում անգամ ի գլուխ ելին, հաւատարիմ ցուցանեն զարուեստն նոցա։ Լուեալ զանուն մարդկանն թագաւորն եւ գյաճախել բանից խօսելեացն, հաւանեցաւ, եւ զբազում ի բարեկամացն ի քաղաքէն արձակէր, ինքն ընդ այլ ճանապարհ անցանէր առ Բաբելոնաւ

եւ երկերիւր վտաւան բացագոյն բանակ հարկանէր ։ Բայց իբրեւ խրատեցաւ յԱնդքոարքեայ յառնէ փիղիսոփայէ, անգոսնեալ զբանս Քաղդեացւոցն զորոց խրատն դատարկ եւ անօգուտ համարէր, եմուտ ի քաղաքն ։ Հրեշտակութիւնք եկեալ ժողովեալ էին յամենայն իսկ աշխարհաց ։ Փութով զգուշութեամբ լսէր նոցա զաւուրս բազումս եւ յետ այնորիկ յիրս մեծարանաց Հեփեստիոնեայ շրջեցաւ ։ Եւ այնչափ ամենեցուն փութով եւ յօժարութեամբ տօնն կատարեցաւ, զի ոչ պատիւ թագաւորի ուրուք մեռելոյ մինչեւ ցայն ժամանակ առաւել լեալ էր ծախուք եւ հանդերձանօք քան զայն պատիւ ։ Յետ այնորիկ ցանկացաւ թագաւորն ընդ Պաղղակոպա գետ ի սահմանակողմն Արաբացւոց նաւարկել. իբրեւ եհաս նա անդր գտեալ տեղի ինչ դիպող քաղաք շինելոյ, անդէն զետեղէր զայնոսիկ ի Յունաց անտի որ տիօք կամ վիրօք տկարք եւ անզօրք էին եւ կամ որ ինքնակամն յօժարեցին մնալ ։ Զայս ամենայն, որպէս կամէր ի գլուխ հանեալ, յապահովա-

ցեալ այնուհետեւ յայնմանէ որ ինչ յետոյ լինելոց էր, ծիծաղէր զՔաղդեացւովքն, զի ոչ միայն ողջանդամ եմուտ, այլ եւ ել ի Բաբիղոնէ. բայց մինչ դեռ նա դառնայր այսրէն ընդ ծովալիճան զորս գործէ Արածանի, յորժամ ի Պաղղակոպա գետ թափիցի, նշանակ ինչ գուշակ չարեաց դիպեցաւ: «Քանզի ասաքն որ ի վերուստն կախեալ էին, հանին զԹագն արքունի ի գլխոյ նորա եւ ընկեցին ի Ջուրսն: Յետ այնորիկ իբրեւ մի ըստ միոջէ գուժկանք այնպիսի սպառնալեաց յաճախէին, ատէպ լինէին զոհք եւ պատարագք ըստ Յունացն եւ ըստ բարբարոսաց սովորութեան, առ ի զչարիսն կանխաւ խափանելոյ: Սակայն չկարացին քաւել, բայց միայն մահուամբ Թագաւորին: Իբրեւ արար նա խրախութիւն Նէարքեայ, եւ կամէր յետ այնորիկ երթալ ի քուն լինել, մատուցեալ Մեդիոս Ղարիսացի, աղաչէր զի առ նա եկեսցէ հաց ուտել: Նա յանձն Թագաւորն, եւ իբրեւ զգիշերն ամենայն ընդ ըմպելն հանէր, ներղել սկսաւ: Յետ այնորիկ ծանրացաւ ախտն, մինչեւ զօրն

եւ ոգիքն ի մէջ վեց աւուր տառապե-ցան, զի եւ ոչ բարբառել իսկ կարէր: Յայնժամ ժամանակի վարանեալ եւ տարակուսեալ զօրացն, ցանկային տեսանել զնա, թէպէտ եւ ընդդէմ դառնային զօրաւորքն, զի մի բեռն լինիցին հիւանդութեան թագաւո-րին, ապա ուրեմն առին թողու-թիւն մտանել առաջի նորա:

Ե. ԻԲՐԵՒ տեսին զնա սկսան զարտասուս հարկանել, իբրեւ այն թէ այնուհետեւ ոչ զթագաւորն, այլ զյուղարկաւորութիւնն տեսա-նէին: Բայց սակայն տրտմութիւն եւ տխրութիւն այնոցիկ որ կային շուրջ զգահոյիւք թագաւորին, յայտնի եղեալ ճանաչէր յերեսացն տեսլե-նէ: Հայեցաւ ընդ նոսա թագաւո-րն. Գտանիցէ՞ք, ասէ, յորժամ ես ի կենաց վճարեցիմ, թագաւոր մի արժանի արանցս այսոցիկ: Զաւա-տալի թուի լսելեաց թէ տեսեալ բաւէր նոա ի նմին յարդարման ըմ-բռնութեան մարմնոյ յոր յօրինեաց նա զանձն իւր, յորժամ հրամանն ետ մտանել զօրացն առաջի իւր, մինչեւ յամենայն զօրացն ողջոյն առ. իբրեւ արձակեաց զամբոխն որ-

պէս այն թէ յամենայն պարտեաց կենաց ապրեցաւ, տարածեաց զվաստակեալ անդամս իւր։ Յետ այնորիկ հրամայէր բարեկամացն առ ինքն մատչել, քանզի եւ ձայնն սկսանուազել եւ զմատանին հանեալ ի ձեռացն, տայր ձեռն ի ձեռն Պերդիկկայ, պատուիրէր զի առ Ամոն տարցի դիակն իւր։ Ապա իբրեւ հարցին թէ ում թողուցու զթագաւորութիւնն եւ պատասխանի թէ Այնմ որ լաւ քան զամենեսին է, այլ յառաջագոյն իսկ նշմարեմ թէ վասն սորին իսկ հակառակութեան բազում եւ մեծամեծ խաղք յուղարկաւորութեան լինիցին ինձ։ Իբրեւ միւսանգամ եհարց զնա Պերդիկկա, թէ երբ կամիցիս, զի զերկնաւոր պատիւս քեզ դնիցեմք, Յայնժամ, ասէ, յորժամ դուք երանելիք իցէք։ Այս վերջին բան էր Թագաւորին, եւ յետ սակաւ ինչ միոյ մեռանէր։

Եւ նախ լալով եւ աշխարանօք եւ սգօովք հնչէր տունն արքունի. յետ այնորիկ իբրեւ ի մենութեան, լռութիւն տխուր ընդ ամենայն շահեալ տիրէր. քանզի յետ ցաւոցն գաւա-

նոյին իմն խորհել թէ զինչ յետ այնորիկ լինելոց իցէ ։ Մանկունք ազնուացն որ սովոր էին կալ ի պահու անձին նորա, չկարէին ժուժ ունել ցաւոցն սաստկութեան եւ ոչ ի դալթի անդ արքունի ապարանիցն կարացին մնալ ։ Ապա անդ իբրեւ զմոլեգինս այնպէս զքաղաքն ամենայն ճչիւ եւ աղաղակաւ լի առնէին, եւ ոչ ինչ էր բան տրտմութեան, զոր-ոչ խօսէին որ զինչ միանգամ յայնպիսի իրս թելադիր կսկիծ ցաւոցն լինիցի ։ Այնուհետեւ որ արտաքոյ ապարանիցն կային Մակեդոնացիքն միանգամայն եւ բարբարոսքն միաբան խուռներնթաց առ հասարակ ի տեղին դիմէին եւ զյաղթեալսն ի յաղթողացն չմարթէր զատանել ըզ ի մէջ հասարակաց վշտացն ։ Պարսիկք արդար եւ հեզ տէր, եւ Մակեդոնացիք ազնիւ եւ քաջ թագաւոր զթագաւորն կարդային. եւ այնպէս մրցութիւն իմն լինէր անուրն տրտմութեան ։ Եւ ոչ արտմելոց միայն բարբառ լսելի լինէր, այլ եւ զայրացելոց եւ զկծելոց, զի այնպիսի երիտասարդ դալարացեալ եւ ի ծաղկի փթթեալ

տխոցն եւ բախտին գիցն Թշնամութեամբ բարձաւ ի միջոյ մարդկանէ։ Նոյնն առաջի աչաց Նկարէին զօրութիւնն եւ գէմք երեսացն, յորժամ ի մարս պատերազմի զզօրսն հանէր եւ զքաղաքս յարգել արկեալ պաշարէր, յարձակեալ անկանէր ի վերայ պարսպաց եւ զայր այր առաքինի առաջի բազմամբոխ ժողովոց մեծապարգեւ մեծարէր։ Յայնմ ժամանակի սարջանայն Մակեդոնացիքն զի չետուն նմա զպատիւն աստուածեղէնս, եւ խոստովան լինէին թէ ամպարշտեցաք եւ ապաշնորհք եղեաք, զի յարժանաւորն կոչմանէ զրկեցաք զլսելիս նորա։

Իբրեւ այնպէս մեծ ժամս մերթ զմեծարանօք Թագաւորին էին եւ մերթ առ անձուկ նորա խանդաղատեալ գորովէին, անդէն դառնային իւրեանց անձանց ողորմել։ Խաղացեալ եկեալ ի Մակեդոնացւոց աշխարհէ յայնկոյս Եփրատ գետոյ ի մէջ Թշնամեաց, որ զնորոգ տէրութիւնն արհամարհէին զանձինս լըքեալս եւ Թողեալս տեսանէին. եւ զի չգոյր ի միջի յայտնի ժառանգ

Թագաւորին իւրաքանչիւր որ զանէրութիւնն յինքն էր կորզելոց: Նաեւ յետ այնորիկ քաղաքային պատերազմունք որ յետոյ ի գլուխ ելին, յառաջագոյն նկարէին ի միտս նոցա. եւ դարձեալ թէ ոչ զթագաւորութենէ Ասիացւոցն այլ վասն Թագաւորի միւսանգամ հեղլոց են զարիւն իւրեանց, եւ նոր նոր վէրք առաջին վէրքն խախտելոց են. Ծերքն եւ տկարք որ արդ իսկ խնդրեցին իշխանութիւն ի բուռն թագաւորէն երթալ ի գաւառ իւրեանց, այժմ վասն իշխանութեան Թերեւս ապառաւորի ուրուք աննշանի յարեւէ աննկանիցին: Նոքա յայն խորհուրդս էին եւ գիշեր եհաս ի վերայ եւ զահն յաճախեաց: Զօրականն վառեալ տքնէր, իսկ ի Բաբիլացւոց ոմն յորմոցն, ոմն ի աւանեաց իւրաքանչիւր ապարանիցն հայեցեալ նշմարէին որպէս թէ ստուգագոյնս ինչ տեսանիցեն: Ոչ որ իշխէր լուցանել ճրագ: Նաեւ քանզի ոչ ինչ կարէին այնուհետեւ նշմարել, զոտնաձայնն եւ զքարբառան ջանային լսելեաց առնուլ. եւ բազում անգամ ատարապարտուց զահի հարեալ ընդ ճա-

նապարհս խաւարինս միմեանց պատահեալ, իրերաց կարծեաք եւ կասկածանօք էին։ Իսկ Պարսիկք կարեալ զհերս իւրեանց ըստ իւրեանց սովորութեան բարոյից, հանդերձիւ օգոյ կանամբք եւ մանկաւով ոչ իբրեւ զյաղթօղ կամ երբեմն թշնամի այլ իբրեւ զազգակից արդարակորով թագաւոր այնպէս աշխար եղեալ ողբային։ Նա քանզի ընդ թագաւորաւ ընդելեալ էին կեալ, խոստովան լինէին թէ ոչ այլ ոք արժանի է քան զնա իշխելոյ ի վերայ մեր։

Նա եւ ոչ ի մէջ պարապաց քաղաքին սուգ աշխարանացն փակեցաւ այլ ընդ մօտաւոր նահանգն եւ անտի յետ այնորիկ ընդ մեծ մասն Ասիացւոց աշխարհին յայսկոյս Արածանւոյ գոյժ չարեացն հասեալ տարածեցաւ։ Նա առ մայրն եւս Դարեհի եհաս վաղվաղակի բանն։ Այնուհետեւ զհանդերձսն պատառէր զոր արկեալ էր զանձամբ իւրով եւ առնոյր հանդերձ օգոյ եւ զվարսան խզեալ ի գետին թաւալէր։ Այլ առ նմա եւ այլ ոմն ի դստերացն Դարեհի որ զՀեփեստիոն ընդ որում

ամուսնացեալ էր աշխարհէր, եւ զիւր առանձինն պատճառս ցաւոցն ի Հասարակաց արտմութեանն միւսանգամ յուշ արկեալ մղձկէր: Նախ Սիսիգամբիս զվիշտս ամենեցուն իւրայոցն միանգամայն լայր. աշխարհէր նա զիւրն աշխարհէր նա զիւրոց թոռանցն: Նաեւ որ նորա ցաւքն էին զանցեալս եւ՝ զառաւանցեալս դարձեալ միւսանգամ յուշ արկանէին: Պատցեա թէ այժմ խնչ զԴարեհ կորոյս եւ արդեօք եւ միանգամայն իսկ զմահ երկուց որդւոցն աշխարհէր կինն թշուառացեալ: Նա Հասարակ ի վերայ մեռելոցն եւ կենդանեացն արտասուս արկանէր: Ո՛ ոք Հոգասցէ այնուհետեւ վասն աղջկանցն, ո՛ այլ ոք լինելոց իցէ Աղեքսանդրոս, դարձեալ ի գերութիւն անկայք դարձեալ յաղախնութիւն, միւսանգամ ի թագաւորութենէ ի բաց անկայք: Յետ Դարեհի մեռանելոյ գտայք զոք որ պաշտպանէր մեզ, յետ Աղեքսանդրի թէ ո ոք զմենջ Հոգալոց իցէ ոչ գիտեմք: Յուշ լինէր նմա ի ժամուն թէ ութսուն եղբարք նորա ի միում աւուր յՈխքայ որ դժնդակ քան զամենայն թագաւորս էր կոտորեցան,

Եւ ի վերայ կոտորածի այնչափ որդւոցն ապանաւ եւ հայրն. եւ թէ յետ Թն որդւոց անտի զոր ինքն ծնաւ մի միայն էր մնացեալ. եւ ինքն իսկ Դարեհ առ սակաւ մի ժամանակ ծաղկեալ պայծառանայր, զի անտագորունագոյնս յետոյ յարեւէ անկանիցի։ Ապա յետոյ անկաւ կործանեցաւ ի ցաւոցն եւ ծածկեալ զգլուխ իւր ի բաց դարձուցանէր զերեսս իւր ի թոռանց իւրոց, ոչ կերակուր առնոյր եւ ոչ ի լոյս հայէր։ Եւ յաւուրն հինգերորդի յորմէ հետէ ի մտի եդեալ էր մեռանել, վախճանեցաւ։ Մեծ իմն նշանակ էր մահն նորա արգահատելոյ ի նա Աղեքսանդրի, եւ արդարութեան՝ առ ամենայն գերին. զի առ նա յանձն կեալ յետ Դարեհի, այլ յետ Աղեքսանդրի ամաչեաց կալ տակաւին կենդանի։

Եւ արդարեւ որոց արդարութեամբ առնիցեն իրաւունս վասն թագաւորին, յայտ է թէ լաւութիւնքն բնութեան նորա էին, իսկ չարիքն կամ բախտին կամ տիոցն։ Զհաւատալի զօրութիւն ազւոյ. համբերութիւն վաստակոց. առաւել

յայժ, եւ արութիւն ոչ միայն առաւել քան զամենայն թագաւորաց, այլ եւ քան զայնոցիկ՝ որոց այս առաքինութիւն միայն էր. առատութիւն տալոյ առաւել քան զայն զոր ի դիցն սովորութիւն իցէ խնդրել. հեզութիւն ի վերայ պարտելոցն, այնչափ անչափ թագաւորութիւնք՝ զոր կամ միւսանգամ դարձոյց յորոց հանեալ էր պատերազմաւ եւ կամ տայր պարգեւ. միշտ արհամարհել զմահ որոյ ահն զայլոց ի մարդկանէ զոգիսն քաղէ. իսկ փառաց եւ գովութեան ցանկութիւն թէպէտ եւ առաւել էր քան զիրաւն եւ զարժան, սակայն մարթէր ներել առն երիտասարդի որ զայնպիսի իրս արուութեան վճարէր. գութ եւ սէր առ ծնանելիս իւր յորոց զՈղոմպիադ կամէր յանմահութիւն հանել, եւ զՓիղիպպեայ խնդրեաց զվրէժն. մարդասիրութիւն առ ամենայն բարեկամս. գութ եւ սէր առ զօրականն. խորհուրդ ըստ ոգւոյն մեծութեան. հանճար եւ դատաստան արդարակարով առաւել քան զտիոցն պայման. չափ անչափ ցանկութեանց, այս ամենայն արդարեւ բարք լաւու-

թեան էին։ Բայց այլք եւս բախտի չարիք. են որպէս դից զանձնհաւատար կացուցանել եւ խնդրել պատիւս երկնաւորս, եւ հրամանաց պատասխանելոյ որ զայսպիսիան խօսէին՝ հաւատալ, եւ այնոցիկ որ ոչ կամէին մեծարել զնա առաւել քան զարժանն ցասնուլ. զհանդերձս մարմնոյ ի ձեւ օտարոտի փոփոխել, նմանօղ նախանձաւոր լինել բարուց ազգացն պարտելոց զորս յառաջ քան զյաղթութիւնն անգոսնէր։ Զի զցասումն եւ զտենչանս գինւոյ որպէս երիտասարդութեանն գրգռեալ էր, ըստ նմին օրինակի մարթ էր եւ ծերութեանն ցածուցանել։ Սակայն պարտ եւ պատշաճ է խոստովան լինել թէ որպէս բազում ինչ առաքինութեանն պարտ էր, բազմագոյն պարտ էր նա եւ բախտի՝ զոր նա միայն յամենայն մարդկանէ ունէր յիշխանութեան իւրում։ Քանի՞ցս անգամ յարոյց զնա ի մահուանէ, քանի՞ցս անգամ զայն որ խառն ի խուռն դիմագրաւ ի վիշտսն դիմէր միշտ ի յաջողութիւն տանէր։ Փառք նորա ի վախճանել կենացն ի միասին վախճանեցան։ Այցին մնացին նմա

հրամանք եւ ճակատագիր մինչեւ նա զարթուցեալ նուաճէր, եւ երթեալ յՈվկիէանոսս որում իմիք բաւական էր մահկանացութիւնն զամենայն ի գլուխ հանել։ Նոյն թագաւորի եւ զօրավարի պայազատ խնդրէին. այլ մեծ էր բեռնն, չկարէր մի ոք բաւական լինել բառնալ ի վերայ ուսոց իւրոց։ Վասն այնորիկ անուն իսկ նորա եւ լուր նորա ընդ ամենայն աշխարհ թագաւորս եւ թագաւորութիւնս կացուցանէր, եւ փառաւորք եւ մեծամեծք կարծեցան եւ որք փոքր ինչ մասն ի մասանց այնչափ մեծութեանն ըմբռնեցին։

Զ. ՆԱՅՅ ի Բաբելոն քաղաքի, քանզի անտի ուրեմն խռովեցաւ ճառս, զգլխաւորս ի բարեկամացն եւ զզօրավարս զօրացն կոչեցին յարքունիսն անձնապահքն։ Նոյն զհետ նոցա ամբոխ զօրացն, զի ցանկային գիտել թէ յո՛ անցանելոց իցէ թագաւորութիւնն Աղեքսանդրի։ Բազումք ի զօրավարացն վասն զօրացն բազմութեան արտաքս մնացին եւ չկարէին յարքունիսն մտանել, թէպէտ եւ քարոզն գոչէր մի ումեք մտանել բայց միայն յայնցանէ որ

յականէ յանուանէ կոչիցին։ Այլ
արհամարհէին իմն զօտարոտի իշ-
խանութիւնն։ Եւ նախ միւսանգամ
լինէր անհնարին աշխար ողբոց. յետ
այնորիկ դադարեցին յարտասուացն
եւ սպասէին լուիկ թէ զինչ լինելոց
իցէ։ Յայնժամ վայրի Պերդիկկա զա-
թոռ թագաւորութեանն դնէր ա-
ռաջի ամբոխին, յորում էին թագ
եւ պատմուճան Աղեքսանդրի զինու-
ղարդու հանդերձ, եւ զմատանին
եւս որ յառաջ քան զայն օր տուաւ
նմա ի թագաւորէն դնէր ի վերայ
աթոռոյն. իբրեւ զայն տեսին ամե-
նեցուն արտասուք եկին եւ սուգն
նորոգեցաւ։ Իսկ Պերդիկկա. Ես,
ասէ, զմատանին որով նա զհրա-
մանս թագաւորութեան եւ տէրու-
թեան իւրոյ սովոր էր կնքել, եւ
տուաւ ինձ, դարձուցանեմ ձեզ։
Այլ թէպէտ եւ ոչ մի ինչ վիշտս
զոյգ այսոց վշտաց, որ ի վերայ մեր
հասին, մարթիցեն հնարել իմանալ
դիքն յորժամ ցասուցեալ իցեն, այլ
եթէ ընդ մեծամեծ իրս նորա միտ
եդեալ հայիցիմք մարթի այսպիսի
ինչ ածել զմտաւ թէ դիքն յօրի-
նեալ պատաշաճեցուցին զայր մի զայն-

պիսի իրաց մարդկութեանս, զի յետ կատարելոյ զիրս մարդկութեանն, փաղփաղակի առցէն զնա միւսանգամ յազգ իւր: Վասն այնորիկ քանզի ոչ ինչ մնաց մեզ ի նմանէ բայց այն որ ոչ անմահ է, փութասցուք զմարմնոյն յուղարկաւորութիւնն կատարել, ոչ մոռացեալ թէ յորում քաղաքի իցեմք եւ յորոց միջի եւ յորպիսի պաշտպանէ եւ ի թագաւորէ զրկեալ: Պարտ եւ պատշաճ է, ով զինուորակիցք, խորհել եւ զմտաածել թէ զիարդ եւ որդաւնակ ըղյաղթութիւնն ի միջի այնոցիկ՝ որոց յաղթեցաք, պահել մարթայցեմք: Գլխաւոր ոք պիտոյ է: Ոչ է մի գլուխ արդեւք եթէ բազում, զայն դուք ընտրեցէք: Բայց այնմ իմն պարտ է ձեզ տեղեակ լինել թէ ամբոխ զինուորաց առանց զօրավարի մարմին առանց շնչոյ է: Վեցերորդ ամիս է յորմէ հետէ Ռոքսանէ յղի է. ցանկամք եթէ արու ծնանէր եւ նորա լինէր թագաւորութիւնն յորժամ ի չափ հասանէր, եթէ դից այն կամք իցեն: Բայց այժմ սահմանեցէք թէ յորոց արդեւք կամիցիք եթէ վարիցի թագաւորու-

թիւնն։ Զայս եւ զայն ձեւ բանից Պերդիկկա։

Ասպա Նէարքոս. Ոչ ոք է, ասէ, որ ոչ գիտիցէ թէ միայն արիւն եւ զաւակն Աղեքսանդրի անգ է թագաւորութեան. այլ ասպասել թագաւորի որ ոչ ծնեալ իցէ տակաւին եւ թողուլ զայն որ ծնեալ է, ոչ միայն Մակեդոնացւոցն ի դէպ է եւ ոչ իրաց ժամանակին։ Այլ որդի մի թագաւորին ի Բարսինեայ, նմա պարտ է թագ դնել։ Ոչ ումեք հաճոյ բանն թուէր։ Ըստ այնորիկ նիզակօք զասպարսն բախէին ըստ իւրեանց սովորութեանն եւ քրթմնջէին ստէպ։ Նա եւ գրեթէ խռովութիւն լինէր, մինչ դեռ Նէարքոսն յամառեալ պնդեալ կամէր հաստատուն զբանսն ցուցանել։ Յայնժամ վայրի Պտողոմէոս. Ո՛հ, ասէ, արդարեւ զաւակ արժանաւոր է իշխելոյ ազգին Մակեդոնացւոց Ռոքսանեայ կամ Բարսինեայ որդին, զորոց եւ զանունն իսկ դանդաղիցի անուանել Եւրոպն, զի մեծաւ մասամբ գերի եւ ստրուկ է։ Ըստ այնորիկ իսկ Պարսից յաղթեցաք զի ծառայ լինիցիմք զարմի եւ զաւակի նոցա. զոր Դարեհ

Եւ Քսերքսէս որ առաջարեւ թագաւորք էին, այնչափ անչափ բանակօք եւ նաւատորմիղ նաւօք զուր ջանացան վճարել։ Իմ միտք այս են թէ կայցէ աթոռ Աղեքսանդրի յարքունիսն, եւ որք մտանէին ի խորհուրդն նորա, ի մի վայր եկեալ գումարեսցին քանիցս անգամ այսոյ լինիցի առ հասարակ միաբանումայն խորհել. եւ կացցուք Մակեդոցուք յայնմիկ զորմէ մեծ մասն նոցա վճիռ տայցէ։ Ոմանք ի Պտղոմէոս յանկէին եւ սակաւագոյնք ի Պերդիկկա։ Յայնմ վայրի սկսաւ ասել Արիստոնոս, թէ իբրեւ հարցաւ զԱղեքսանդրոս եթէ ում զթագաւորութիւնն թողուցու, կամեցաւ զի որ լաւ քան զամենեսին իցէ նա ընտրեսցի։ Եւ ընտրեցաւ իսկ ի նմանէ ազնուագոյն քան զամենեսին Պերդիկկաս որում զմատանին ետ։ Զի ոչ եթէ նա միայն կայր առ նմա յորժամ մեռանէր, այլ հայեցաւ շուրջ զիւրեւ եւ զնա ընտրեաց ի դնդէ բարեկամացն որում տացէ զմատանին։ Ինձ հաճոյ այսպէս թուի տալ Պերդիկկայ զթագաւորութիւնն։ Ամենեքին յանձն առին

թէ ճշմարիտ է բանն ։ Վասն այ-
նորիկ հրաման տայրն թէ Պերդիկ-
կա ի մէջ եկեսցէ եւ առցէ զմատանի
թագաւորին ։ Ի մէջ ցանկութեան
եւ ամօթոյ կայր վարանեալ, եւ զի
համեստագոյնս զոր ցանկացեալն
էր առնուցու, կարծէր թէ յամա-
ռեալ պնդեալ նմա մատուցանիցէն ։
Վասն այնորիկ իբրեւ յամէր իմն
եւ յապաղէր եւ ոչ գիտէր թէ զինչ
գործիցէ, սակայն յետուստ ուրեմն
մեկնեցաւ եւ կաց յետոյ այնոցիկ
որ առ նմայն նստեալ էին ։

Նմ Մեղէագրոս մի ոմն ի զօրա-
վարացն առեալ քաջալերութիւն ի
յամելոյ անտի Պերդիկկայ. Մի տա-
ցեն, ասէ, աստուածք թէ բախտն
Աղեքսանդրի եւ բարձրութիւն այն-
պիսի թագաւորութեան անկանիցի
ի վերայ ուսոցդ այդոցիկ. արդարեւ
մարդիկ այնմ չկարիցեն հանդուր-
ժել ։ Չասեմ զազնուագունաց քան
զսա, այլ զարանց միայն որոց առանց
կամաց չէ հարկ թէ գործիցի ինչ ։
Չիք ինչ խտիր ի միջի եթէ որդի
Ռոքսանեայ որ երբեմն ծնանելոց
իցէ, թէ Պերդիկկա լիցի ձեր թա-
գաւոր, որովհետեւ սա դայեկու-

թեանն պատճառանօք յանձն իւր վարելոց է զթագաւորութիւնն։ Նմին իրի իսկ ոչ թուի նմա հաճոյ այլ թագաւոր, բայց այն որ ոչ ծնեալ տակաւին իցէ, եւ ի ճեպել ամենեցուն որ ոչ իրաւամբք եւեթ է այլ եւ ի հարկէ, նա միայն ընդ-կատարել ամսոցն հայի, եւ իմանայ իմն թէ արու յղացեալ է. կամ թէ ո՞չ իսկ կարծիցէք թէ կազմ է նա խաբէութեամբ ցուցանել արու մի։ Եթէ արդարեւ Աղեքսանդրոս զաս էր մեզ փոխանակ իւր թողեալ թագաւոր, ինձ այսպէս թուէր եթէ զայս ինչ միայն յայնմ ամենայնէ՝ զոր նորա հրամայեալ է, չէր պարտ ի գլուխ հանել։ Զի՞մ այսուհետեւ չընթանայք աւար առնուլ զտուն գանձին, քանզի ընչիցն այնոցիկ արքունի ժառանգ ժողովուրդն է։ Իբրեւ զայս խօսեցաւ եւ անց ընդ մէջ վառելոցն, եւ որոց ճանապարհ տուեալ էր նմա յորժամ ի բաց երթայր, նոքին զհետ երթային նորա առնուլ յաւարի զգանձսն։

Է. ԸՆԴԷՆ խռնեցաւ զՄեղէագրեաւ ամբոխ վառելոցն, զի ի խռովութիւն եւ ի գժտութիւն ժողովն

դարձաւ. անտուստ մի ոմն որ անծանօթ բազմաց ի Մակեդոնացւոց էր ի խառնաղանձ ռամկէ անտի. Զի՞նչ պէտք ձեզ, ասէ, զինուց եւ քաղաքային պատերազմի իցէ, յորժամ ունիցիք իսկ թագաւոր զոր խնդրէք: Այս Արիդէոս որդի Փիլիպպեայ, Աղեքսանդրի՝ որ յառաջ քան զսակաւիկ մի թագաւոր էր, եղբայր, երբեմն նուիրական պաշտամանց հաղորդ եւ այժմ մի միայն ժառանգ, սա միայն մնացեալ է ի ձէնջ: Ընդէ՞ր, զի՞նչ չարիս գործեալ իցէ նորա, հե՞մ զրկի ի հասարակաց ազգացն իրաւանց: Եթէ նման զդք Աղեքսանդրի խնդրիցէք, ոչ գտանիցէք, եթէ մերձաւոր, սա միայն կայ: Իբրեւ զայս լուաւ ժողովն նախ լուռ եւեթ եղեւ իբրեւ ի հրամանէ իմեքէ, յետ այնորիկ միաբան աղաղակ եղեալ գոչէին թէ զԱռիդէոս պարտ է այսր կոչել, եւ մահու արժանի են որ առանց նորա ի մի վայր գումարին: Յայնմ վայրի Պիթոն սկսաւ ասել լի արտասուօք, թէ այժմ առաւելագոյն եղկելի եւ ողորմելի է Աղեքսանդրոս, զի յայնչափ լաւ քաղաքակցաց եւ զօրաց

վայելչութեանց եւ ի մտաւորութեանց զեկեցաւ : Ջանողի ընդ անուն եւ ընդ յիշատակ միոյն Թագաւորին Հայոց, եւ առ այլոց ամենայն իբրեւ միգով խաւարեալ են : Այս ամենայն Թշնամանք բանից Թէպէտ եւ յայտնի իսկ վասն մանկանն էին, որում պատրաստեալ լինէր Թագաւորութիւն առաւել առնելի զՊիթոն ցուցին, քան արհամարհ զԱռիդէոս, զի իբրեւ ողորմելին ի նա, ապա սկսան եւ յօժարել իսկ ի կողմն նորա : Այնու հետեւ պնդեալ յամառեալ պաշտին բարձեալ աղաղակէին, Թէ ոչ զոք այլ զոք կամիմք Թագաւոր բայց զայն որ ի Թագաւորութիւն իսկ ծնեալ իցէ, եւ զԱռիդէոս հրամայէին կոչել : Մեղէագրոս որ Թշնամի եւ հակառակորդ էր Պերդիկկայ, վաղվաղակի զԱռիդէոս հասուցանէր յարքունիսն, եւ զօրքն ողջոյն տուեալ կոչէին Փիլիպպոս Թագաւոր : Այլ այս բարբառ խառնաղանճ ամբոխին էր, իսկ իշխանացն այլ իմն կարծիք, յորոց Պիթոն զՊերդիկկայ խրատն յառաջ սկսաւ մատուցանել, եւ դայեակս որդւոյն որ ի Ռոքսանեայ լինելոց էր, սահմա-

նէր, զՊերդիկկա եւ զՂեւոնատոս
որ էին յարքունի զաւակէ։ Նաեւ ի
նոյնս ածեալ յաւելոյր թէ յԵւրո-
պացւոց աշխարհին Կրատերոս եւ
Անտիպատրոս լինիցին վարիչք տէ-
րութեանն։ Յայնմ վայրի երդմնի
լինէին ամենեքին թէ կացցեն յիշխա-
նութեան արքայորդւոյ Աղեքսան-
դրի։ Իսկ Մեղէագրոս քանզի յիրաւի
զահի հարեալ էր ի պատժոցն, եւ
գնաց ի բաց իւրայովքն։ Միաբան-
դամ զՓիղիպպոս ընդ իւր առեալ
թռնաբար մտանէր յարքունիսն, աղա-
ղակ եգեալ գոչէր թէ ես հաւանեալ
եմ ժողովրդեանն որ ընտրեաց զայս
թագաւոր յառաջ քան զաակաւիկ
մն։ Հայեցարուք ընդ ոյժ եւ ընդ
զօրութիւն տիոց նորա. զարմ է եւ
զաւակ Փիղիպպեայ, որդի եւ եղ-
բայր երկոցունց թագաւորաց, ա-
ռաւել ձերոց անձանց հաւատացէք։
Չիք ծով այնպէս խոր, չիք համա-
տարած յաղթ եւ մրրկեալ որ այն-
չափ ալիս յարուցանիցէ, որչափ ամ-
բոխ՝ յոյզ եւ խռովութիւն. մա-
նաւանդ յորժամ նոր եւ կարճժա-
մանակեայ ազատութեամբ վայե-
լիցէ։ Սակաւք Պերդիկկայ որ այն

ինչ ընտրեալ էր, տային զտէրութիւնն, իսկ բազմագոյնք Փիլիպպեայ զօրով արհամարհեալ էին։ Ոչ կամել ինչ եւ ոչ չկամել ընդերկար կարէին. մերթ ընդ խորհուրդն զոր խորհեցան, ստրջանային, եւ մերթ ընդ ստրջանսն իսկ։ Բայց յետուստ ուրեմն յօժարեալ մօտեցան ի զարմն արքունի։ Ի բաց երթեալ էր ի ժողովոյն Առիդէոս, զահի հարեալ յիշխանացն ճոխութենէ, եւ յերթալ նորա ի բաց, լուեալ մանաւանդ էր զօրացն յօժարութիւն եւ ոչ նուազեալ։ Նմին իրի այսօրէն կոչեցին, եկն եւ զպատմուճան եղբօր իւրոյ, զայն որ ի վերայ աթոռոյն կայր, առ եւ ագաւ։ Եւ Մելէագրոս զլրահ ընդ անձն արկեալ, առնոյր զէնս ի ձեռն լինել անձնապահ նորոյ թագաւորին։ Օհեա երթայր նոցա գունդն, եւ նիզակօք զվահանսն բախեալ հընչեցուցանէին, ի մտի եդեալ լնուլ զանձինս արեամբ այնոցիկ որ ցանկային զթագաւորութիւնն, որ ոչ անկ ինչ ի նոսա էր, յիւրեանս վտարել։ Խրախ լինէին թէ ի նմին տան եւ ի նմին ազգատոհմի կալցի

մնալոց է իշխանութիւն տէրութեանն. եւ զժառանգութիւն տէրութեանն առնլոց է զարմն արքունի. ընդելեալ եմք, ասեն, մեծարել զանուանն զայն, եւ ոչ իշխէ ոք զայն անուն առնուլ բայց որ ի թագաւորութիւն ծնեալ իցէ: Իսկ Պերդիկկայ յահի մեծի լեալ, ի սրահ անդր յորում կայր դին Աղեքսանդրի, մտեալ՝ հրամայէր զդրունսն առականել. էին ընդ նմա վեց հարեւր այր հզօր զօրութեամբ. եւ Պտողոմէոս եւս ի նա էր յարեալ եւ գունդ մի արքունի մանկտւոյ: Այլ յայնչափ հազարաւորաց վառելոցն դիւրաւ նիգքն խորտակեցան: Եւ թագաւորն եւս ինքնին ի ներքս մտանէր, պատեալ ի գնդէ անձնապահացն որոց իշխան էր Մեղէագրոս: Ի ցասման լեալ Պերդիկկայ զայնոսիկ որ պահել կամէին զդին Աղեքսանդրի, ի բաց կոչէր. բայց որ ի ներքս բռնութեամբ մտեալ էին, նետս ի հեռաստանէ ի նա յարձակէին: Իբրեւ բազումք վիրաւորեցան, ապա որ ծերագոյնքն էին, հանին զսաղաւարտս իւրեանց, զի դիւրագոյն ծանիցեն եւ սկսան որ

ընդ Պերդիկկայն էին, աղաչել զի ի բաց կացցեն ի կռուոյն եւ յանձն առցեն անսալ թագաւորին եւ բազմագունեացն: ՙԱտխ Պերդիկկա զզէնսըն ի բաց դնէր, զնոյն եւ այլք առնէին: Ապա խրատ տայր Մեղէագրոս չերթալ ի բաց ի դիոյն Աղեքսանդրի, իսկ նոքա զմտաւ ածեալ թէ զուցէ դարան ինչ գործիցի, ընդ այլ կողմն աղքունեացն ելեալ երթային փախստեայ ի կողմն Արածանւոյ: Բայց բազմութիւն հեծելազօրացն որ էին յազնուականաց մանկըտւոյ զՊերդիկկայ եւ զԼեւոնատեայ զհետ երթային, եւ հաճոյ թուէր ելանել արտաքս ի քաղաքէն եւ սփռեալ տարածանել ի դաշտս: Այլ Պերդիկկայ ակն ունէր թէ եւ հետեւակք եւս եկեսցեն զհետ նորա, եւ նմին իրի իսկ կայր անդէն ի քաղաքին, զի մի յորժամ զայրուձին ի բաց տանիցի կարծիցի իմն թէ յայլմէ ամենայնէ զօրաց անջատեալ բաժանեցաւ:

Ը. Այլ Մեղէագրոս չդադարէր դրդել զթագաւորն թէ մահուամբ Պերդիկկայ պարտ է հաստատուն զիրաւունն տէրութեանն առնել.

եթէ ոչ անկանիցի ի բուռն այն ոգի անհանգիստ, թերեւս իրս ինչ խակութեան խորհիցի. քանզի յուշ լիցի նմա թէ զինչ գործեաց ընդ թագաւորդ. եւ ոչ ոք իցէ որ հաւատարիմ այնմ իցէ, յորմէ երկուցեալ ղանդիտիցէ: Իսկ թագաւորն թողացուցանէր մանաւանդ քան յանձն առնոյր: Վասն այնորիկ Մեղէտագրոս զլռութիւնն հրաման համարէր. եւ առաքէր յանուն թագաւորին առս կոչել զՊերդիկկա: Տուաւ պատուէր նոցա, զի եթէ չկամիցի գալ, սպանցեն: Իբրեւ լու եղեւ Պերդիկկայ գալուստ անձնապահացն, ելեալ գայր առաջի ապարանիցն համօրէն վեշտասան մանկտւով զնդին արքունի, պատուհասակոծ առնէր զնոսա եւ բազում անգամ սորուկս Մեղէագրեայ կոչէր զնոսա, եւ այնպէս աներկեւղ ոգւովն եւ երեսօքն ահարեկ արար, զի աճապարեալ ի փախուստ դառնային, եւ հազիւ իսկ եթէ մտացն տեարք էին: Պերդիկկա հրամայէր մանկտւոյ յերիւարս հեծանել եւ սակաւաւորօք բարեկամացն առ Ղեւոնատոս հասանէր, ի մտի եդեալ ի

ընդ Պերդիկկայն էին, աղաչել զի
ի բաց կացցեն ի կռուոյն եւ յանձն
առցեն անսալ թագաւորին եւ բազ-
մագունացն։ Նախ Պերդիկկաս զզէն-
սըն ի բաց դնէր, զնոյն եւ այլք
առնէին։ Ապա խրատ տայր Մեղէա-
գրոս չերթալ ի բաց ի դիոյն Աղէ-
քսանդրի, իսկ նոքա զմտաւ ածեալ
թէ գուցէ դարան ինչ գործիցի, ընդ
այլ կողմն արքունեացն ելեալ եր-
թային փախստեայ ի կողմն Արա-
ծանւոյ։ Բայց բազմութիւն հեծե-
լազօրուն որ էին յազնուականաց ման-
կըտաւոյ զՊերդիկկայ եւ զԼեւոննա-
տեայ զհետ երթային, եւ հաճոյ
թուէր ելանել արտաքս ի քաղա-
քէն եւ սփռեալ տարածանել ի
դաշտս։ Այլ Պերդիկկայ ակն ունէր
թէ եւ հետեւակք եւս եկեսցեն զհետ
նորա, եւ նմին իրի իսկ կայր անդէն
ի քաղաքին, զի մի յորժամ զայր-
ուձին ի բաց տանիցի կարծիցի իմն
թէ յայլմէ ամենայնէ զօրաց ան-
ջատեալ բաժանեցաւ։

Ը. Այլ Մեղէագրոս չդադարէր
դրդել զթագաւորն թէ մահուամբն
Պերդիկկայ պարտ է հաստատուն
զիւրաւունս տէրութեանն առնել.

եթէ ոչ անկանիցի ի բուռն այն ոգի անհանդիստ, թերեւս իրս ինչ խակութեան խորհիցի. քանզի յուշ լիցի նմա թէ զինչ գործեաց ընդ թագաւորդ. եւ ոչ ոք իցէ որ հաւատարիմ այնմ իցէ, յորմէ երկուցեալ զանդիտուիցէ: Իսկ թագաւորն թողացուցանէր մանաւանդ քան յանձն առնոյր: Վասն այնորիկ Մեղէագրոս զլռութիւնն հրաման համարէր. եւ առաքէր յանուն թագաւորին առս կոչել զՊերդիկկա: Տուաւ պատուէր նոցա, զի եթէ չկամիցի գալ, սպանցեն: Իբրեւ լու եղեւ Պերդիկկայ գալուստ անձնապահացն, ելեալ գայր առաջի ապարանիցն համօրէն վեշտասան մանկտւով գնդին արքունի, պատուհասակոծ առնէր զնոսա եւ բազում անգամ ստրուկս Մեղէագրեայ կոչէր զնոսա, եւ այնպէս աներկեւղ ոգւովն եւ երեսօքն ահարեկ արար, զի աճապարեալ ի փախուստ դառնային, եւ հազիւ իսկ եթէ մնացին տեարք էին: Պերդիկկա հրամայէր մանկրտւոյ յերիւարս հեծանել եւ սակաւաւորօք բարեկամացն առ Ղեւոնատոս հասանէր, ի մտի եդեալ ի

դիմի հարկանել ամբագոյն զօրու-
թեամբքն եթէ ընդդէմ ոք բախիցէ։
Իսկ ի վաղիւ անդր անարժան իսկ
իրքն Մակեդոնացւոցն թուէին զի
Պերդիկկա ի վտանգ մահու էր հա-
սեալ, եւ խորհուրդ ի մտի գնէին
զինուք առնուլ զվրէժ Մեղէագրեայ
ժպրհութեանն։ Այլ նորա իմա-
ցեալ յառաջագոյն զիրս խռովու-
թեանն, յորժամ մտին առ թա-
գաւորն, հարցանէին թէ դու հրա-
մայեցեր զՊերդիկկա ձերբակալ առ-
նել։ Նա տայր պատասխանի թէ ի
գրգռելոյ Մեղէագրի զայդ հրամայեցի,
սակայն չէ պատշաճ ձեզ, ասէ,
խռովել զի Պերդիկկա կենդանի է։
Այնուհետեւ արձակէր Մեղէա-
գրոս զժողովն, առաւել զահի հա-
րեալ ի հեծելազօրացն ապստամ-
բութենէ. եւ չգիտէր թէ զինչ գոր-
ծիցէ, քանզի ի նոյն վիշտ վտանգի
էր անկեալ, զոր յառաջ քան զա-
կաւ մինիւթեաց թշնամւոյ իւրում,
եւ գրեթէ աւուրս երիս ի գլուխ
հանէր համակ ի պէսպէս խորհուրդս։
Իւ կայր իմն առաջին տեսիլ եւ
կերպարանք թագաւորութեանն.
քանզի եւ հրեշտակք ազգաց եր-

թայլին առ թագաւորն, եւ մատանելին զօրավարք զօրացն եւ անձնապահք եւ վառեալք զգաւիթն լցեալ էին։ Նոյն տխուրն տրտմութիւն նշանակ վերջնոյ անյուսութեան էր, եւ քանզի կասկածանօք էին ընդ միմեանս, ոչ երթալ մօտ իշխէին եւ ոչ լինել խօսակից, եւ յածեալք ծածուկ խորհրդովք, ի համեմատութենէ նորոյ թագաւորին լինէր անձուկ կորուսելոյ թագաւորին։ Հարցանէին խնդրէին թէ ուր իցէ նա զորոյ տէրութեանն, զորոյ իշխանութեանն զհետ երթեալ էին։ Եողղաք անկաք ի մէջ թշնամի եւ անհաւան ազգաց որ խնդրեցեն զվրէժս զայնչափ անչափ հարուածոցն իւրեանց յորժամ դիպօղ ժամանակ ընդ առաջ պատահիցէ։ Նոյնպիսի խորհրդովք մաշէին միտք նոցա, եւ անդէն գուժկան հասանէր թէ այրուձին որ ընդ Պերդիկկայ էր գրաւեալ կալաւ զդաշտան որ զԲաբելոնաւ են, եւ զցորեանն որ ի քաղաքն մտանէր, արգել։ Վասն այնորիկ նախ չքաւորութիւն լինէր եւ ապա սով. եւ որք ի քաղաքի անդ էին համարէին թէ կամ

պարս է հաշտել ընդ Պերդիկկայ կամ կռուել զինու։ Այնպէս դէպք եւ պատահարք տային զի որք յադարական էին՝ զանգիտեալ յաւար հարկանելոյ դեղից եւ շինից անկեալ էին ի քաղաք անդր, իսկ քաղաքացիքն իբրեւ զկերակուրան սպառեցին ի բաց ելին ի քաղաքէն, եւ երկոցունց կողմանց եւս ամբարդոյն եւ զդուշաւոր թուէր տեղի բնակութեան օտարին քան զիւրեանցն։

Երկուցեալ ի խռովութենէ նոցա Մակեդոնացւոցն գային ժողովէին միաբանամայն յարքունիսն, եւ թէ զինչ միտք իւրեանց իցեն, յայտ առնէին։ Հաճոյ թուէր հրեշտակս առ այրուձին առաքել վասն զրաւ դժտութեանն առնելոյ եւ զզէնսն ի բաց դնելոյ։ Այնուհետեւ երթայ պատգամաւորութեամբ ի Թագաւորէն Պասաս Թեսաղացի եւ Ամիսոս Մեգաղոպոլիտացի եւ Պերիղայոս. որք իբրեւ խօսեցան զպատուէր թագաւորին, առին պատասխանի ի հեծելոյ անտի թէ զզէնս ոչ թողումք եթէ չտայ թագաւորն զառաջնորդս խռովութեանն ի ձեռս։ Իբրեւ զայս լուան զօրքն ինքնակամ

զէն զանձամբք առին։ Լու եղեւ Փիղիպպեայ աղմուկն, եւ ի դուրս յարքունեացն. Զէ ինչ, ասէ, պէտք խռովութեան կամ պատերազմի։ Ով ի զվարձս այնոցիկ որ ընդ միմեանս ոգորեալ կռուիցին, որ հանդարտենն, նոքա ըմբռնեն։ Միանգամայն յուշ լիցի ձեզ թէ ընդ քաղաքացեաց ձերոց գործ հասեալ է ձեզ, զորոց վաղվաղակի զայս հաշտութեանն ի բաց մերժել այնոցիկ է որ ի քաղաքային կռիւ ճեպիցեն։ Այլով եւս հեշտակութեամբ զչափ առացուք թէ կարիցեն ցածնուլ. եւ ինձ թուի, թէ որովհետեւ չեւ եւս է թաղեալ դիակն թագաւորին, ամենեքին եկեալ ժողովեսցին ի յուղարկաւորութիւնն։ Իսկ ես լաւ համարիմ զայս տէրութիւն այսրէն ի բաց տալ քան արեամբ քաղաքացեաց իմոց վարել զթագաւորութիւնս. եւ եթէ ոչ մի ինչ յայս միաբանութեան իցէ, աղաչեմ եւ փարելի լինիմ, ընտրեցէք զոք ազնուագոյն քան զիս։ Ապա զարտասուս հարեալ հան զթագն ի գլխոյ իւրմէ, եւ զաջ ձեռն որով զթագն ըմբռնեալ էր, կարկառէր զի որ ոք ազնուա-

ադայն զանձն քան զնա համարեցի ածէ : Այն բանք իմաստութեան թագաւորին եցոյց զբարս առաքինութեան թագաւորին, որ յառաջ քան զայն օր զեղջեալ եւ ծածկեալ էր յեղբօրն պայծառութենէ : Սան այնորիկ ամենեքին աղաչէլ սկսան զի զոր ինչ խորհեցաւ արասցէ եւ կատարեսցէ : Միւսանգամ զնոյն հրեշտակս արձակէր խնդրել զի ըզՄեղէագրոս ընկալցին երրորդ զօրավար : Զայն յանձին կալան դիւրաւ : Քանզի զՄեղէագրոս ի բաց կամէր անջատել Պերդիկկա ի թագաւորէն. եւ համարէր թէ մին միայն յերկոցունցն չլինիցի ամենայնի բաւական : Այնուհետեւ ընդ առաջ ելանէր Պերդիկկա Մեղէագրեայ որ եկեալ գայր զնդաւն : Միմեանց ողջոյն տային զունդքն երկոքին եւ ընդ իրեարս խառնէին, իբրեւ այն թէ միաբանութիւն եւ խաղաղութիւն հաստատեցաւ ի ժամանակս մշտընջենաւորս, որպէս կարծէին :

Թ. Այլ ժամանեալ էին ըստ հրամանաց քաղաքային պատերազմունք ի վերայ ազգին Մակեդոնացւոց : Զի առանց ընկերի եւ զուգի է

թագաւորութիւն եւ բազմագոյնք ցանկային թագաւոր կալ։ Նախ ժողովեցին զզօրութիւն իւրեանց եւ յետ այնորիկ քակեալ ցրուեցին. իբրեւ բազմագունօք քան զկար զօրութեան ծանրաբեռնի զմարմինն արարին, քակտել եւ քայքայել սկսան անդամքն. եւ տէրութիւն որ ընդ միով կալ կարէր ի հաստի, յորժամ ի բազմաց պատապարիցի, անկեալ կործանիցի։ Վասն այնորիկ յիրաւի եւ յարժանի ժողովուրդն Հռոմայեցւոց խոստովան լինիցի թէ պարտի զփրկութիւն իւր իշխանին իւրում, որ աստ նոր ծագեաց ի գիշերին որ գրեթէ վերջին իսկ է։ Արդարեւ ծագումն սորա եւ ոչ արեգական, լուսաւոր արար զաշխարհ որ միգով եւ խաւարամածեալ էր, յորժամ անդամքն առանց գլխոյ պառակտեալք շարժլէին։ Ո՞րչափ ջահս շիջոյց նա յայնժամ, քանի՞ սուսերս թագոյց, ո՞րչափ մրրիկս յանկարծակի պարզեաց։ Ապա ոչ միայն զօրանայ միւսանգամ, այլ եւ ծաղկեալ փթթի տէրութիւնն։ Ոչ է միայն ի բաց լինիցի զերծ չարակնութիւն,

յետ ժամանակաց ամսոցս այսոցիկ լինիցի բազմամեայ զաւակ տանն այնորիկ, երանի թէ եւ մշտնջենաւոր իսկ ։ Այլ ի կարգ անդր դարձայց, ուստի խորհուրդ հասարակաց բարութեանցս ի բաց տարաւ զմեզ ։ Պերդիկկաս չյուսայր տիրել բայց միահաւամբն Մեղէագրեայ․ խորհուրդ ի մտի արկանէր զհպարտն եւ զամբարտաւանն եւ ոչ հաւատարիմ եւ զայն որ վաղ ի գործ խակութեան յօժարէր եւ որ մանաւանդ հակառակութեամբ էր ի կողմն նորա, ի բուռն առնուլ ։ Այլ կեղծաւորեալ զխորհուրդն թագուցանէր զի ըմբռնեսցէ զնա ի զեղծի ։ Ապա գաղտ զոմանս ի զօրաց անտի որոց ինքն զօրավար էր կեղծաւորեալ ցուցանէր թէ իբրեւ ոգէտ ինքն իցէ, յայտնապէս տրտունջ լինիցին թէ Մեղէագրոս հաւասար եղեւ Պերդիկկայ ։ Իբրեւ բանն նոցա առ Մեղէագրոս հասանէր, զայրացեալ սրտմտութեամբ երթեալ պատմէր Պերդիկկայ զոր ինչ լուեալ էր ։ Նա իբրեւ թէ զահի հարեալ ի նորոգ իրացն, սկսաւ զարմանալ եւ հարցանել, եւ ցաւոց կերպարանս ցու-

ցանել. ապա ուրեմն միաբանեաց յանձն առ զի ձերբակալ լինիցին առաջնորդք խռովայոյզ բանիցն։ Շնորհակալ լինէր Մեղէագրոս, եւ գիրկս արկեալ զՊերդիկկաւ յարգեալ գովէր զհաւատարմութիւն նորա ի նա եւ զգուշութն։ Ապա հասարակաց խորհրդով խորհին զհնարս զվնասակարսն ըմբռնելոյ։ Հաճոյ թուեցաւ սրբել զգունդն ըստ գաւառական սովորութեան։ Եւ այնր պատճառք հաւանութեան թուէր առաջին չմիաբանութիւնն։ Մակեդոնացւոց թագաւորքն այսպէս ըզզօրսն սովոր էին սրբել։ Ածէին կացուցանէին զզօրսն ի դաշտ մի, եւ բաժանեալ զաղխս շան միոջ ընկենուին յերկուս կողմանս դաշտին, եւ ի միջի անդ կային վառեալքն, աստի այրուձին եւ անտի գունդն։

Վասն այնորիկ ի նմին իսկ աւուր, զոր սահմանեալ էին վասն զոհին, թագաւորն հեծելազօրօք եւ փղօք հանդերձ կայր դէմ յանդիման հետեւակացն որոց զօրավար Մեղէագրոս էր։ Անդէն գունդ հեծելոցն խաղալ սկսաւ, իսկ հետեւակքն յանկարծակի զահի հարեալ վասն նորա-

եւս զժտութեանն, կասկածէին թէ գուցէ թշնամութիւն ինչ լինիցի, եւ տարակուսեալ վարանէին առ ստակաւ մի, թէ դարձուցանիցեն առդեւք զզօրսն անդէն ի քաղաքն, քանզի հարթ եւ ողորկ տեղին դիպող հեծելոցն էր։ Այլ երկուցեալ թէ գուցէ խառն ի խուռն բիծ ինչ հաւատարմութեան զինուորակցացն գնիցեն, զտեղի առեալ կային կազմեալք պատրաստեալք սրտիւք ի մարտ պատերազմի եթէ անկանէր ոք ի վերայ նոցա։ Անդէն երկոքին գունդքն առ միմեանս հասանէին եւ սակաւ ինչ էր տեղին որ զերկոսին ճակատսն բաժանէր։ Վասն որոյ իբրեւ Թագաւորն միով՝ թեւովն ձիարկեալ սկսաւ գալ զհետեւակօքն, եւ պահանջէր զառաջնորդս խռովութեանն զի պատժեսցէ. քանզի դրդեալ էր զնա Պերդիկկաս, որում պարտ էր պաշտպան լինել նոցա, եւ սպառնայր զջոկսն ամենայն փղօքն հանդերձ անկել ի վերայ նոցա, եթէ չառան, յանկարծակի զահի հարան ի չարեացն հասելոց հետեւակքն, նոյնպէս եւ Մեղէագրոս տարակուսեալ չգիտէր թէ զինչ գործիցէ.

բայց առաւել այն զգուշութեան թուէր, կալ մնալ բախտին քան եթէ գրգռել: Յայնմ վայրի Պերդիկկաս իբրեւ ետես զնոսա ապշեալս եւ ընդարմացեալս իբրեւ Ց այր յարանցն որ զհետ անկան Մեղէագրեայ յորժամ ել նա արտաքս բռնութեամբ ի ժողովոյն, որ զառաջինն եղեւ յետ Աղեքսանդրի մեռանելոյ, ի գնդէ բաժանէր, եւ յանդիման ամենայն զօրացն առաջի փղացն արկանէր, եւ ամենեքին կոխան ոտից գազանացն եղեն, բայց Փիղիպպոս ոչ արգել զայս եւ ոչ հրաման ետ. եւ երեւէր իմն թէ զայն ինչ իւր հրաման համարիցի զոր ելք իրացն ցուցանիցեն: Այս նշանակ եւ սկիզբն քաղաքային պատերազմաց Մակեդոնացւոցն էր: Մեղէագրեայ անագան ի միտ առեալ զխաբկանս Պերդիկկայ, մինչ դեռ չլինէր տակաւին բռնութիւն անձին նորա, կայր հանդարտեալ ի բանակին. այլ ապա իբրեւ անյոյս ի կենաց իւրոց էր, եւ ետես թէ նովաւ զոր ինքն իսկ կացոյց թագաւոր վարեցան ի սատակումն նորա թշնամիք նորա, երթեալ ապաստանէր ի մեհեան մի.

այլ եւ ոչ ի տեղւոյն որբութենէ զանեալ պաշտպանութիւն սպանանէր։

Ժ. ՊԵՐԴԻԿԿԱՑ ածեալ զզօրսն ի քաղաք անդր, ժողովէր ժողով տրանց իշխանաց. հաճոյ թուեցաւ ի խորհրդի անդ թէ այնպէս աերութիւնն բաժանիցի զի թագաւորն զգլխաւոր իշխանութիւնն ունիցի. եւ Պտղոմէոս կայցէ շահապ ազգացն Եգիպտացւոց եւ Ափրիկացւոց որ ընդ իշխանութեամբ իցեն։ Լաոմեդոնեայ տուան Ասորիք, փիւնիկաստան զաւառօք հանդերձ։ Փիղոտայ սահմանեցաւ Կիլիկիա. եւ Անտիգոնոս հրաման առ տիրել Լիւկիայ եւ Պամփիւլիայ եւ մեծի աշխարհին փռիւգացւոց. Կասանդրոս ի Կարիա առաքեցաւ եւ Մենանդրոս ի Լիւդաստան. իսկ զփոքու աշխարհէն փռիւգացւոց որ առ Եղեսպոնտեաւ կայ, հրամայեցին նահանգ լինել Լեւոնատեայ։ Եւ Գամիրք Պափլագոնացւոց կողմամբք հանդերձ անկաւ Եւմենեայ։ Պատուէր տուաւ նմա զի զգաւառն մինչեւ ցՏրապեզոն պահիցէ, եւ տացէ մարտ պատերազմի ընդ Արիարաթայ. զի սա միայն չմտանէր ի

Հնազանդութիւն։ Պիւթոն հրաման առ իշխել Մարատոնի, Պիւսիմաքոս Թրակիայ եւ ազգացն Պոնտացւոց որ առ Թրակացւոց աշխարհին են։ Իսկ վասն Հնդկաց եւ Բակտրիացւոց եւ Սոգդիացւոց եւ այլոց եւս որ առ Ովկիանու կամ առ կարմիր ծովուն բնակիցեն, վճիռ տուաւ թէ իւրաքանչիւր ոք յաստիկանաց զոր սահման եւ ունիցի, կալցի անդէն իրաւունս տէրութեան, եւ Պերդիկկայ այսպէս սահմանեցաւ զի ընդ թագաւորին լինիցի, եւ զօրացն որ ղհետ երթիցեն թագաւորին, լինիցի սպարապետ զօրավար։ Ոմանք այսպէս կարծեցին թէ կտակաւ Աղեքսանդրի նահանգք բաժանեցան, այլ գտաք զի զուր է համբաւ իւրացն այնոցիկ, թէպէտ եւ յայտնի են յորոց աւանդեալ է պատմութիւնն։ Եւ այնպէս իւրաքանչիւր ոք ըստ մասանց տէրութեան պաշտպանէր իւրում իշխանութեան որում ինքեանք հիմն արկեալ էին, թէպէտ չէք ընդդէմ այնչափ ցանկութեանց եւ իսկ եզր եւ սահման. քանզի յառաջ քան զսակաւ մի պատճառանօք զայլոյ տէրութիւն հոգալոյ, իւրա-

քանզի իւր մեծամեծ թագաւորու-
թիւնս վաճառեալ էին, եւ իբրեւ պատ-
ճառք եւս պատերազմացն ի միջոյ
բարձան, թէպէտ եւ ազգակիցք եւ
տոհմայինք էին, այլ զատատան որոշե-
ցան ի միմեանց անցնիւր գաւառա-
տէրութեան իւրոյ: Բայց դժուարին
էր շատ եւ բաւական համարել նոցա,
զոր ինչ դիպացն տուեալ էր. քանզի
անարգ իմն առաջինքն թուին, յոր-
ժամ եւս իմն մեծամեծաց ակն կայցէ:
Վասն այնորիկ դիւրագոյն եւս ա-
մենեցուն քան զառնուլն մեծացու-
ցանել զթագաւորութիւնն թուէր:
Եւ էր իսկ օր եւթներորդ յորմէ
հետէ դիակն թագաւորին կայր ի
գահոյս, եւ ամենեցուն հոգք մտաց
հեռացեալ էին յայնպիսի գեղեցիկ
պաշտամանէն վասն զհասարակաց
խաղաղութիւնն անկելոյ: Ոչ ուրեք
այնպէս ջերմագոյն էր տապ խորշակի
արեգական որպէս ի գաւառս մի-
ջագետաց. մինչ զի բազում եւս
անասունս զոր ի մերկ գետնի գտա-
նիցէ, խարշատէ. այնչափ է զօլ
արեգականն եւ օդոցն, զի իբրեւ
հրով այնպէս ամենայն տոչորիցի:
Եւ աղբերք ջուրց անօսր են, եւ

բնակք խաբէութեամբ թագուցանեն. ինքեանք համարձակ վարին, իսկ պանդխտացն անծանօթ է։ Իբրեւ դէպ եղեւ երթալ հանդերձել բարեկամացն զմարմինն անշնչացեալ, տեսին որ մտինն զի ոչ մի ինչ բիծ կամ արատ ապականութեան նշանակ երեւէր։ Նոյն գոյն եւս երեսացն ողջ կայր։ Վասն այնորիկ Եգիպտացիքն եւ Քաղդեացիքն որ հրամանն առին դարմանել զմարմին նորա ըստ իւրեանց սովորութեանն նախ ձեռս չիշխեցին մխել, իբրեւ թէ տակաւին ոգին ի նմա էր. յետ այնորիկ աղաչեցեալ զի իշխանութիւն լինիցի մարդկան շօշափել զնա, սրբեցին զդին. զոսկիապատ գահոյսն լցին հոտովք անուշութեան, եւ եդին ի գլուխ նորա զնշանս թագաւորութեան։ Բազմաց կարծիք եղեն թէ թունով սպանաւ, զոր եւս ի սպասաւորաց անտի որդի Անտիպատրեայ, Յողայ ումեմն, հօրն հրամանաւ։ Արդարեւ բազում անգամ լուան ասել Աղեքսանդրի թէ Անտիպատրոս թագաւորութեան ցանկացեալ է, եւ առաւել զօրացեալ է քան զչափ առն տոհմականի, հպար-

տացեալ եւ ամբարհաւաճեալ խոճ-
վառն սպարտական յաղթութեանն, եւ զամենայնէ, աւէ, առեալ նմա յինքենէ։ Եւ վասն եւս կարծեցին թէ Կրասոսոս գնդաւ միով հնոց զօրաց առաքեցաւ սպանանել զնա։ Իսկ զօրութիւն թուոյն որ ի Մակեդոնացւոց աշխարհին ծնանիցի, այնպիսի իսկ է, զի եւ զերկաթ այրիցէ, եւ ամբակ զրաստու միայն կարէ ժոյժ ունել հիւթոյն։ Սուրւքս զաղբեւրն կոչեն, ուստի ժանդագործ թոյնն բղխէ։ Զամանէ ասեն թէ ի ձեռն Կասանդրի բերեալ տուաւ Յոզայ, եւ նա խառնեաց ի վերջին ըմպելի թագաւորին։ Բայց զայս ամենայն տրպիսի ինչ եւ կարծիքն էին, նոցունց՝ զորոց այն բանք այսր անդր համբաւէին, իշխանութիւնն վաղվաղակի լռեցուցանէր։ Քանզի զթագաւորութիւն Մակեդոնացւոց աշխարհին եւ զՅունաց Անտիպատրոս առ. եւ ապա մի ըստ միոջէ նորին որդի որ եւ կոտորեաց իսկ զամենայն ճեռ մնացեալ Աղեքսանդրի եւ զհեռաւորան եւս ազգականութեամբ։ Նոյն զմարմին նարաս Պտողոմէոս որում անկաւ աշ-

*խառըն Եգիպտացւոց ի Մեմփիս փոխեաց, եւ անտի յետ սակաւ ինչ ամաց յԱղեքսանդրիա, եւ առնեն պատիւ մեծարանաց անուան եւ յիշատակի Նորա։*

ԻԶ

64. Կեբաղինոս. Պղուտարքոս, Բաղինոս. Դիոդորոս, Կեբաղինոս։

64. Գերքն առքեալ զնաֆտաարան. Ամենայն ինչ աստ ճեպով վճարի, պաշտպանութիւնն, մերժելն Փիղոտայ յանձնէ զյանցանսն եւ արկանելն զիրկս զնովաւ եւ պատասխանի տալ Աղեքսանդրի. վասն այնորիկ յիրաւի երկուս ընդհատ ինչ տեղիս յայսմ վայրի համարի Փրէյնսեմիոս, մի յառաջ քան զբանսն Ցորժամ Դիմնոս, եւ երկրորդ յառաջ քան Եւ գերքն առքեալ։

65. Ցայժ եր սերելի. Մինչ զի իբրեւ զհեփեստիոն սիրեր զնա. վասն այնորիկ Հեփեստիոն Աղեքսանդրասէր անուանէր եւ Կրատերոս Թագաւորասէր. Պղուտ. Դիոդորոս. ԺԷ։

74. Ծածկեալ զգլուխն. Ոչ եթէ սովորութեամբ իւիք, այլ զի մի յորժամ յայլոց ծանիցի, յայտ գայցէ թէ վասն որոց ձերբակալ լեալ իցէ, եւ այնպէս խռովութիւն ինչ ի զօրուն լինիցի։

82. Ի շփոթ բանիցն կալ. Այսպիսի ինչ եւ ի Թուկիդիդէս, Գ. Թ. Պղատէացիք խօսեցան. թէ "Մարդկան որ յայտ աղէտս տառապանաց հասեալ իցեն, որպէս հարկ իսկ է, նոյնպէս դժուարին է առնել զբաւ խօսելոյ, քանզի վտանգ ի վերայ կայ ընդ կատարածի բանիցն եւ կենացն կատարելոյ"։

ԷՁ

132. Կորանոս. Դիոդոր, Սփասանորս կոչէ, եւ Ցուստինոս, Սփոփանորս։

„ Թողեալ նոցա Վերակացու. Մանաւանդ թէ եթող ազատ ըստ Աղիանեայ, Գ. Ե։

„ Դոլէր Դուրեհն. Իշխանութեան իմն պատիւ համարէին Պարսիկք զգործ այնպիսի դպրացն. որպէս եւ զխնամ-նեայ եւս զդպրէ Աղեքսանդրի խօ-սեալ Կոռնեղեայ Նեպոտայ առէ ըղ-դպրութեանն գործոյ թէ Առ Ցոյնս յոյժ իսկ պատուականագոյն է քան թէ առ Հռոմայեցիս։ Զի առ մեզ, որ-դեգամբք իսկ որպէս եւ ենն, վարձկանք դրիչքն համարին. իսկ առ նոսա նո-րին հակառակ չլինի որ յայն գործ միջամուխ, թէ ոչ ցածուն որ իցէ եւ ծանօթ հաւատարմութեամբ եւ քա-ջութեամբ, զի հարկ է նմա թէ ամե-նայն խորհրդոցն խորհրդակից լինիցի։ Եւմեն. Ա։

133. Երկերեւր. Այլք վեցհարեւր։

135. Բազմաց մանաւանդ աչացն փառաւոր լինէր. Քսենոփոն ի Դ գիրս արշաւ. Բազումք անդէն թողան ի մէնջ, որք ի սաէպ ի ձիւնն հայելոյ զաչսն կորուսին. եւ բազում եւս այն էին որոց մատունք ոտիցն բրտացեալ ի ցրտոյ էին։ Եւ այս ինչ միայն զգու-շութիւն աչացն լինէր թէ սեաւ ինչ առաջի աչացն կախէին, եւ զոտիցն եւս թէ զնայրին սաէպ։

ԷՉ

149. Օծանելիքն. Վասն ցրտոյն զարմանայ. քանզի առ սակաւ մի արգելու զներքին ջերմութիւնն։ Այսպէս արար եւ Աննիբաղ առ Տրեբեաւ յառաջ քան զպատերազմն յորում եւ յաղթեաց իսկ Հռոմայեցւոցն. Փղոբ. Բ. Ղ։

150. Ջուր. Ջուրն բան աւելորդ իմն թուի. զի ոչ եթէ ջուր այլ գինի եւ եւղ ըմպէին յայնժամ։

151. Զօրանոսն, ասէ, յանձն ետ փոյն ըմպեցել. Զայս արար եւ յառաջ իսկ քան զնա Դաւիթ Բ. Թագ. Գլ. Ի. յետ նորա Կատոն, զի ի մէջ Ասամոնացւոց աւազացն ծարաւեալ իբրեւ մատուցաւ նմա ջուր, ասէ Ղուկանոս թէ «Թօթափեաց զառաջաւորսն եւ եղեւ բաւական ամենեցուն ջուրն», զի ոչ ոք յետ այնորիկ ծարաւեաց տեսեալ զի մերժեաց զօրավարն զջուրն։ Պղուտարքոս ի կեանս Ղիկուրգեայ Գլ. Գ. եւ ի խօսսն Ղակոն. պատմէ զՍիւբիրդայ ումեմնէ այսպէս. թէ «Յօրժամ Սիւբիրդաւոն ի խիստ եւ յանջրդի վայրի էր եւ պատեալ պաշարեալ ի Կղիտորիացւոց, ասէ թէ ի դաշն ընդ թշնամեաց մտանէր թէ տամ ձեզ զերկիրն զոր պատերազմաւ առի, եթէ զօրք իմ ընդ իս ի մօտաւոր աղբերէդ ըմպիցեն. քանզի թշնամիք պաշարեալ էին զաղբեւրն։ Իբրեւ դաշինքն կնքեցան ժողովեալ առ ինք զզօրսն ամենայն խոստանայր թէ նմա տամ զարքայութիւն երկրին որ ոչ ըմ-

ԷՁ

ցնա Աղեքսանդրոս թէ որպէս յան-
դըրդնեալ դարանակալ ի ծովու լինի-
ցի. այնպէս, ասէ, որպէս եւ դու ընդ
ամենայն աշխարհ. Կիկերոն վասն
ընկեհաշ. Գ. եւ Ս. Աւգոստինոս ի
քաղաքին Աստուծոյ, Դ. դ:

185. Ցուրտակն. Կայ այս առ Արիստոփա-
նեայ. σκυθῶν ἐρημία.

187. Ցունաց. Ասէ իմն թէ առաւել Սկիւ-
թացւոցն պարտ է աւատալ առանց
երդման քան Յունաց երդմամբ հան-
դերձ: Ասէ իսկ եւ Եւրիպիդէս πιστὸν
Ἑλλὰς οἶδεν οὐδέν. "Ոչ ինչ հաւա-
տարիմ եւեթ աշխարհն Եղղադա-
ցւոց": Վկայէ Պողիւբիոս յոյն աղ-
դաւ Զ. ծգ. թէ "Եւ յետ տասն եւս
մուրհակաց տալոյ չպահէին հաւատք
յառնէ յունէ": Եթէ արժան իցէ
յաւելուլ եւ զբանսն զոր զառաշնովքն
ածէ Փրէինսեմիոս "Ով Յունաց աշ-
խարհ, յո՞ր երկիր ոչ արձակեցեր
զգաղթականս քո":

195. Ցոյողերի Բոսփորի. Այսպիսի ինչ
եւ Վիրգ. Ենէ. Ժ, 829.

Սակայն սովին մխիթարեսցես հեքդ
զմահուն թշուառութիւն
Զի յաջոյ անուն Ենեայ մեծի ան-
կանիս....:

222. Տուն մրոյ ոսկոտ ինչ պարտող. Յովէ-
նաղիս, Հենգ. Զ "Ոչ ինչ յաղպաղու-
թիւն երբեք երկարաձիգ է յորժամ
զմահուանէ մարդոյ բանք լինիցին":

ԷԶ

870. Օծանելին զորս նորա. Այս սովորութիւն զոտան օծանելոյ ոչ ի մէջ Հնդկաց միայն էր այլ եւ ի մէջ Եբրայեցւոց եւ Յունաց եւ Հռոմայեցւոց. զի Մագդաղենացին, որպէս ի սրբոյ Ղուկայ (Է 38) աւետարանին կայ, օծ զոտան Յիսուսի: Իսկ վասն Յունաց եւ Հռոմայեցւոց յայտ յԱթենէայ ԺԵ. ժբ. եւ ի Պլինեայ ԺԳ. գ. եւ ի Ղայերտեայ է:

339. Գանգարիդք. Զսոսա Պերիգետէս՝ Գարգարիդս կոչէ, Ստրաբոն դպր. ԺԵ. Դիոդ. ԺԷ. 93 Պղուտ. Կանդարիդս անուանեն. բայց ընդ Կուրտեայ Գանգարիդս կոչեն զնոսա Վիրգ. Մշակ. Գ. 27. Պտողոմէոս, Պլին. Զ. ժԹ. Սոլին. ԳԼ. ԾԳ. Յուստին. ԺԲ. Ը:

,, Պրասիացիք. Զսոսա Պրեսիացիս կոչէ Պղուտարքոս, իսկ Յուստինոս ԺԲ. Ը. Դիոդորոս, Տաբրասիացիս:

356. Սէբացաց. այլ օրի. Սոբիացաց. բայց Ստրաբոն Դպր. ԺԵ. եւ Առիանոս՝ Սէբացաց:

,, Գանգէս. Մասն ինչ կայ յայսմ վայրի:

,, Սաբրակք. Առիանոս Զ. գ. Աբաստացիս կոչէ, իսկ Դիոդ. ԺԷ. 102. Սամբաստա:

,, Թունով ըսպառեալն Ներքեւոյ իւրն. Զայսն եւ Ովկիդ. Տրամ. Գ. Ժ. զԳետաց կամ զՍարմատաց յիշատակէ

էջ

պիցէ։ Այլ իբրեւ ոչ ոք գտաւ որ ժոյժ կարաց ունել այլ ամենեքին արբին․ ինքն յետ ամենեցուն էջ յաղբեւր անդր․ եւ ցանեալ ջուր զանձամբ եւ գնաց ի բաց յանդիման թշնամեացն․ եւ առ զերկիրն զի նա միայն ոչ արբ»։ Միով խորամանգութեամբ զզօրսն ապրեցոյց ի ծարաւոյն վտանգէ, զթշնամին պատրեաց եւ ժուժկալութեամբն իւր զթագաւորութիւնն գրաւեաց։

152․ Որ յանկարծին արբէին, արգելեալ ընդոյն՝ առաքինեան․ Ասէ Առիանոս Զ․ դ․ թէ «Ոչ երբեք այնուհետեւ մօտ ի գետս բանակ հարկանէր, այլ հեռի առաւել քան քոան վտաւան»։

153․ Ցէկօ․ Եթէ խնդրիցէ ոք թէ ուստի առնուին, Առիանոս Գ․ գ․ ասէ, թէ ի մորթոցն եւ ի մաշկէն որովք ի վրանս զօրքն վարէին։

„ Սոգդիացւոց․ Այլք Սոդոփիացւոց։

159․ Նեոպէտ հարցեն․ Պղուտարքոս պատմէ ծառս երկուս ի միմեանս ծռեալ եւ կապեալ ի նոյնս զԲեսոս Աղեքսանդրի հրամանաւ, զի յորժամ ծառքն թողեալ միւսանգամ յառաջին ուղիղ հասակն դառնայցեն զօրութեամբ, եւ նա ընդ երկուս հերձանիցի։

165․ Այլ քաղաք․ Առիանոս, Դ․ ա․ եւթն քաղաք, ասէ, կարգաւ առ ի Սոգդիացւոց աշխարհին։

ԷԼ

170. Ցետոյ գերդ ստղէղ. Առա չփաթ խմել եւ խառնակ բանքն են, առէ Փրեէին-ակմփաս։

173. Աշտարակ ճարտարապետեան մարդ. Զայս ածեալ զմտաւ Ղեկուրգոյ եդ օրէնս թէ մի բազում անգամ ընդ նոյն թշնամիս պատերազմ լինիցի, զի մի յորժամ ընդելեալ կրթիցին ի դիմի հարկանել պատերազմաւ, դուցէ եւ նոքին պատերազմօղք ուսանիցին. Պղուտ. ի Ղիկուրգ. Գլ. ԻԴ։

176. Հրաման տալով համարձակել վտանգաւորութեամբ է յաղթութեան եար. Զայս եւ կեսար նախանձաւոր Աղեքսանդրի ցնաւաապետն որ յերկիւղի էր ասէր յորժամ նաւակաւ միով միայն երթեալ լոտեսնէր ընդ Բրունդուսիոն անցանէր. զի ասէր ցնա այսպէս. Զի՞ երկնչիս. զկայսր տանիս. Փղոր. Գ. բ։ Ղուկանոս Ե։

183. Պարզեւաց տալով ին Ժող. Կուրտիոս տատ ակնարկէ զպատմութիւնն մանաւանդ թէ զառասպելն Հերոդոտոսի, որպէս թէ Ցարգիտայեայ երեք որդիք լեալ լիցեն Լիպոքսայիս, Արպոքսայիս եւ Կողաքսայիս. առ սոցա թագաւորութեամբ անկան յերկնից ի ոսկիթական գաւառն արօր, լուծ, տապար, տաշտ յաւկուպ։

184. Գող եա եա տաղաւ. Զայն եւ Ղուկանոս ասաց “Աւազակ ազգ ամենայն աշխարհաց,,։ Այսպիսի ինչ խօսեցաւ եւ ոմն ի ծովու հենից յորժամ եհարց

Կէաք ի մարդկեղէն նեռից հարեալ
խոցին,
Քանզի ի թուչուն երկաթի անդ
կայ ներկեալ թոյն:

407. Հօրէփօլէ. Բիրոգ. ԺԷ. 105. Նէօրէփօլէ, Պղուտ. Որէէփօլէ, Ալխանոս Ձ. գ. Ստրաբոն, Փիղոստրատոս, Նոյօրփօլէ:

423. Եւ շխօղմօմբէ Իփօղօսօյոսն. Պղուտարքոս յայսմ վայրի առէ այսպիսի ինչ. ''Եւ զահն Աղեքսանդրի մի ինչ ի պատճառաց աջողութեան Հռոմայեցւոցն համարիմ .... որ իբրեւ զաստղ այնպէս յելից արեգական վազէր յարեւմուտս, եւ յիտաղիս իսկ արկանէր զփայլուն փայլատականց զընուն իւրոյ,,:

449. Որդէ Ժօմբէլօյն. Օրէնք իսկ էին զի մանկունք այնոցիկ որ ի վերայ հայքենի աշխարհին անկեալ էին, կըրթեսցին ի հասարակաց ընչից. զայս յիշէ Պղատոն ի կատարած կոյս Մենեքսենեայ, Թուկիդիդէս Բ. ը:

463. Որ լօտօն ղօմբնէօին էյէ. Ասէ յայսմ վայրի Կուրտիոս թէ թէպէտ եւ կայ եւս գրեալ ի մատենագրաց թէ յառաջ քան զմեռանել իւր բաժանեաց Աղեքսանդրոս զտէրութիւն իւր, այլ զուր խիմ է. այսպիսի ինչ եւ Յուստինոս ասէ: Այլ այսպէս իսկ ոմանց յառողջ քննչաց թուի թէ արդարեւ բաժանեաց յառաջ քան զմեռանել իւր: Ջի յառաջագոյն իսկ, ասեն, իմացաւ

թէ մեռանի եւ գայր նորա ժամանակ ժառանգս ամէրութեանն կացուցանելոյ զվաստակակիցս գործոց իւրոց։ Եւ այն եւս, տեսն, անպատեհ է զի յարուցեալ կայցէ յանկարծակի ի միջի եղբայր մի Աղեքսանդրի, միայն յետ Աղեքսանդրի մեռանելոյ, եւ այն յայտնեալ եւ ի մէջ բերեալ յառնէ միոջէ անծանօթէ։ Եւ առաւել իսկ քան զամենայն ճոխութիւն գրոց սրբոց, որ յԱ. գիրս Մակաբէացւոցն Գլ. Ա. 7. ասէ իսկ յայտնապէս թէ "Իբրեւ ետես թէ մեռանիմ, կոչեաց նա զծառայսն զդայեկորդիսն իւր (զչորեսին) փառաւորեալս ի նմանէ, որ ընդ նմա իսկ սնեալ էին ի մանկութենէ եւ բաժանեաց ետ նոցա զարքայութիւնն իւր, մինչ դեռ ինքն կենդանի էր։ "Աւելի իմն է ի Հայ թարգմանութեանն ըստ բնագրին. καὶ ἔγνω ὅτι ἀποθνήσκει, καὶ ἐκάλεσε τοὺς παῖδας αὐτοῦ τοὺς ἐνδόξους τοὺς συντρόφους αὐτοῦ ἀπὸ νεότητος, καὶ διεῖλεν αὐτοῖς τὴν βασιλείαν αὐτοῦ ἔτι ζῶντος αὐτοῦ.

Զայս ամենայն [illegible] մասանցն ի Փրեյնշեմիայ [illegible] [illegible] ի [illegible]։

